ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ԿԵՆԴՐՈՆԱԿԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑԻ



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ

ԳՐԵՑ

ՍՏԵՓԱՆՆՈՍ ՊԱԼԱՍԱՆԵԱՆ

ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



ԹԻՖԼԻՍ
Տպարան Տ. Մ. Ռօտինեանցի
1902

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԻՑ ՄԻՆՉԵՒ ԱՐԱԲԱՑՈՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ (300—640)



## ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### ԱՐԱԲԱՑՈՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԸ (640—1080)



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ (1080—1375)

## ՎԵՑԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԻՑ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ (1080—1885)





# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ




Ներկայ աշխատութիւնը յօրինուած է այն սկզբունքների և ծրագրի համեմատ, որ ուրիշ տեղ երկարօրէն բացատրած ենք *)։

Բացի մեր հին պատմիչներից, որոնք իբրև հաստատուն ուղեցոյցներ առաջնորդեցին մեզ մեր երկարատև ուղևորութեան մէջ, աչքի առաջ ունեցանք նոյնպէս սոյն նիւթի վրայ հրատարակուած գրուածները, և սեպհականեցինք նոցանից այն՝ ինչ որ մեր հայեացքներին և ուղղութեանը նպաստաւոր էր։ Այս կողմից առանձին ծառայութիւն մատուցին մեզ Հ. Ց. Գաթրճեանի Տիեզերական Պատմութիւնը և Կ. Վ. Շահնազարեանի Հայոց պատմութեան Ուրուագիծը։ Օտարական աղբիւրներից մեր հին պատմութեան նկատմամբ ոչ սակաւ նպաստեցին մեզ Գիյմէնի, Մասպէրոյի և Լընորմանի Արևելեան ազգերի Հին Պատմութիւնները. իսկ նոր պատմութեան համար, բացի զանազան գրքերից, բաւական տեղեկութիւններ մատակարարեցին մեզ մեր պարբերական հրատարակութիւնները։

Ամբողջ ազգային պատմութիւնը մէկ հատորի մէջ ամփոփելով և միանգամայն փոյթ տանելով, որ քիչ շատ

---

*) Տես «Փորձ» հանդէսի 18$^{77}/_{78}$-ի № III «Ազգային պատմութեան նշանակութիւնը» վերնագրով յօդուածը։

կարևորութիւն ունեցող պատմական դէպքերը դուրս չմնան, ստիպուած եղանք ընդհանրապէս համառօտախօս լինել. մի հարևանցի յիշատակութիւն, երբեմն մի թեթև ակնարկ բաւական համարեցինք այնտեղ՝ ուր անշուշտ աւելի երկար կը կանգնէինք, եթէ չվախենայինք գիրքը շատ ստուարացնել։ Ուսուցչին մնում է այդպիսի տե-ղերն ընդարձակել և իւր ունկնդիրների պատրաստու-թեանը նայելով՝ հարկաւոր եղած բացատրութիւնները տալ։ Այս բաւական չէ։ Պատմական անցքերը աշակերտ-ների մէջ աւելի լաւ տպաւորելու համար, անհրաժեշտ է, որ ուսուցիչը երբեմն ընտրութեամբ հատուածներ կար-դայ նոյն ժամանակակից պատմիչներից, որոնք յաճախ կենդանի գոյներով են նկարագրում իրանց օրով և իրանց աչքերի առաջ կատարուած անցքերը։ Այս ընթերցում-ները այն օգուտն էլ կ'ունենան, որ աշակերտների հե-տաքրքրութիւնը կը շարժեն և կը յորդորեն նոցա դասա-րանից դուրս կարդալ մեր պատմագիրները։

Մի վերջին նկատողութիւն էլ։ Թէև այս գիրքը իսկապէս դպրոցական գործածութեան համար է նշա-նակուած, բայց յօրինողը խոստովանում է, որ մի ուրիշ կողմնակի նպատակ էլ աչքի առաջ ունեցած է։ Մեզա-նում կան շատ կրթեալ անձինք, որոնք իրանց ժամա-նակին կամ բնաւ ազգային պատմութիւն չեն ուսել, կամ գուցէ լոկ մի քանի տարրական տեղեկութիւններ են ստացել և այժմ կը կամենային մասնաւոր ընթերց-մամբ այդ պակասը լրացնել։ Այդ եղած պատմութիւննե-րից Չամչեանը իւր ստուարութեամբ և լեզուով ամենին մատչելի չէ, իսկ մնացած գրքերի մեծ մասը տարրա-կան ձեռնարկներ լինելով՝ չեն կարող յիշեալ անձանց

հետաքրքրութիւնը յագեցնել։ Քաղցր է մեզ յուսալ, որ մեր աշխատութիւնը իւր ուղղութեամբ և ամբողջական բովանդակութեամբ բանագէտ ընթերցողի հարցասիրութիւնը կը գոհացնէ, որով և մենք միանգամայն երկու նպատակների հասած կը լինինք։

---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

*Հայաստանի դիրքը և մակերևոյթը.—Նշանաւոր լեռները, լճերը և գետերը.—Քաղաքական բաժանմունք.—Երկրի կազմութեան ազդեցութիւնը քաղաքական կեանքի վրայ.—Հայոց պատմութեան շրջանները։*

Հայաստանը մի լեռնոտ երկիր է, որ հին աշխարհի գրեթէ միջավայրումն է գտնուած։ Գտնուելով Սև ծովի, Կասպիականի ու Միջերկրականի մէջ, նա կազմում է իբրև մի լեռնակղզի, որի բարձրաւանդակները 3—8000 ոտնաչափ բարձր են ծովի մակերևոյթից։ Կենտրոնական մասից դէպի սահմանածայրերը՝ երկրի բարձրութիւնը երթալով հակվում, իջնում է հիւսիսում Կուր գետի հովիտը, հարաւում Եփրատի հովիտը, արևելեան կողմը Կասպից ծովեզերեայ դաշտավայրերը, իսկ արևմտեան կողմը Փոքր Հայքի դաշտավայրերը։

Հայոց երկիրը կարելի է համարել մի լեռնահանգոյց երեք աշխարհների՝ Փոքր Ասիայի, Մարաստանի և Ասորեստանի մէջ։ Այս լեռների ամենաբարձր կէտն է հռչակաւոր Մասիսը, որ իր ձիւնապատ գլուխը մօտ

17,000 ոտնաչափ վեր է բարձրացնում ծովի մակերեւոյթից։ Նորանից դէպի հիւսիս գտնվում է քառագագաթ Արագածը, որ 13,000 ոտնաչափից աւելի բարձրութիւն ունի՝ հաւասար Փոքր Մասիսի։ Մասիսի արեւմտեան հարաւային կողմը աղեղնաձեւ ձգվում են Բարդող, Սուկաւէտ, Սերմանց լեռները, որոնք ընդհանրապէս Տօրոսի շղթայի հիւսիսային ճիւղի մասերն են կազմում։ Նոյն լեռնաշղթայի հարաւային ճիւղի մասերն են Սասնոյ լեռները, Գրգուռ, Ընձաքիարս, Արտոս և այլն։ Այստեղից դէպի հարաւ՝ Հայաստանի սահմանածայրերի վրայ ձգվում են Կորդուաց բազմաճիւղ լեռները, որոնք մէկ կողմից միանում են Տօրոսի և միւս կողմից Ասորեստանի լեռների հետ։ Նշանաւոր են նոյնպէս Հայաստանի հիւսիսային արեւմտեան կողմը՝ Հայոց, Բարձր Հայոց և Գուգարաց լեռները, և հիւսիսային արեւելեան կողմը՝ Արցախու և Սիւնեաց լեռները։

Այսպիսի լեռնոտ երկիրը բնականապէս հարուստ պիտի լինի մեծ ու փոքր լճերով և մանաւանդ գնայուն ջրերով, այն է գետերով ու գետակներով, որոնք ցանցի պէս ծածկում են բովանդակ Հայոց աշխարհը։ Լճերի մէջ երեւելի են երեքը, որոնք իրանց մեծութեան համար ծով էլ են կոչվում. Սեւանայ լիճ կամ Գեղամայ ծով, Վանայ լիճ կամ Բզնունեաց ծով, և Ուրմիոյ լիճ կամ Կապուտան ծով։ Երեք մայր գետեր էլ կան, որոնց մէջ թափվում են միւս գետերն ու վտակները. Եփրատ, Տիգրիս և Երասխ։ Եփրատը Կարնոյ բարձրաւանդակից բղխելով՝ ոռոգում է Բարձր Հայքը և ապա ձեւում է Մեծ ու Փոքր Հայքի սահմանը, աջ կողմից ընդունելով Գայլ գետը, իսկ ձախ կողմից Արածանի մեծ գետը կամ Հայ-

Արական Եփրատը, որ իր ակիզբն առնում է Բագրեւան-դայ լեռներից և շատ գավառներ է ոռոգում։ Տիգրիսի ակզբնավայրերը կրկին են. մեկը գտնվում է Ծովք լճի հարավային ափերում (Խարբերդից ներքև), իսկ միւսը Հաշտենից գավառի Ոլոռ գիւղում։ Երկու վտակները Ակլ գիւղի մօտ խառնվում և կազմում են Տիգրիսի հզօր գետը, որ Աղձնեաց նահանգի վերնագաւառները ոռոգելով՝ շուտով հեռանում է Հայաստանի սահմաններից։ Բուն հայկական գետ է Երասխը, որ իր ակիզբն առնում և հոսանքը աւարտում է Հայոց երկրում։ Եփրատի պէս Բարձր Հայքից բղխելով, Երասխը ընթանում է դէպի արևելք անվերջ դարձուածներով և աջ ու ձախ կողմից բազմաթիւ գետակներ ընդունելով. Մուրց, Ախուրեան, Մեծամօր, Քասախ, Հրազդան, Ազատ, Տղմուտ, Կարմիր գետ և այլն։ Մուղանի անապատում Երասխը միանում է Կուր գետի հետ և թափվում է Կասպից ծովը։

Հայաստանը երկու գլխաւոր մաս է բաժանվում. Մեծ Հայք կամ բուն Հայոց աշխարհ և Փոքր Հայք։ Մեծ Հայք իւր ամենընդարձակ ժամանակը հետևեալ սահմաններն ունէր. հիւսիսից Եգերացոց, Վրաց և Աղուանից երկիրները, որոնցից բաժանվում էր Մոսքիկեան լեռներով և Կուր գետով, արևելքից Կասպից ծովը, Պարսկաստանը և Մարաստանը, հարաւից Ասորեստանն ու Միջագետքը, արևմուտքից Փոքր Ասիան, որից բաժանվում է Եփրատ գետով։ Հին բաժանմամբ Մեծ Հայքն ունէր 15 նահանգ 189 գաւառներով։ Կենտրոնում գտնվում է Արարատը, Հայոց ամէնութեան բնավայրը. նորա արևելեան կողմը՝ Սիւնիքը, Արցախը, Ուտին ու Փայտակարանը, հիւսիսային կողմը՝ Գուգարքն ու Տայքը, արևմտեան

կողմը՝ Բարձր Հայքն ու Չորրորդ Հայքը կամ Ծոփաց աշխարհը. հարաւային կողմը՝ Տուրուբերանը, Վասպուրականը, Մոկքը, Աղձնիքը, Կորճայքն ու Պարսկահայքը։ Իսկ Փոքր Հայքը ձգվում էր Եփրատից մինչև Ալիս գետը, և բաժանվում էր 3 նահանգ. Առաջին Հայք, Երկրորդ Հայք, Երրորդ Հայք։

Եթէ ուշի ուշով հետազօտենք Հայոց երկրի ձևակերպութիւնը, կը տեսնենք, որ զօրաւոր ազդեցութիւն է ունեցել ազգի պատմական բաղդի վրայ։ Ամբողջ երկիրը կտրտուած է մեծ ու փոքր լեռներով՝ որոնց հետևում են ձորեր ու հովիտներ, և բազմաթիւ գետերի ու վտակների հոսանքներով, որոնք իբրև մի մի բնական պատուար՝ բնակիչները միմեանցից անջատում և հաղորդակցութիւնը դժուարացնում էին։ Այս հանգամանքը նպաստեց ցեղական կեանքի զարգացմանը Հայոց մէջ, և հէնց սկզբից երկրի զանազան կողմերում կազմուեցան բազմաթիւ մեծ ու փոքր իշխանութիւններ, որոնք առ հասարակ ձգտում էին թագաւորութիւնից անկախ լինել։ Արարատեան թագաւորները՝ որքան և աշխատեցան, չկարողացան կատարելապէս նուաճել այդ իշխանութիւնները։ Ստիպուած լինելով մէկ կողմից ներքին թշնամիների դէմ մաքառելու, և միւս կողմից Հայաստանի շուրջը հետզհետէ կազմուող զինուորական պետութիւնների դէմ, որպիսի էին ասորաքաղդէական և մարա-պարսկական տէրութիւնները,—Հայոց թագաւորները չյաջողեցան մի կենտրոնական հզօր միապետութիւն կազմել, որ իւր իշխանութիւնը տարածէր բովանդակ երկրի վրայ։ Ընդհակառակն ներքին երկպառակութիւնները, որ հայոց տէրութեան թերի կազմակերպութեան հետևանք էին, ընդ-

Հասեցին պետութեան զարգացումը և նա թոյլ ու անպաշտպան մնաց արտաքին թշնամիների առաջ։ Այսպիսով Հայաստանը որս դարձաւ նախ Հռոմայեցոց ու Պարթևաց և ապա Բիւզանդիայի կայսրների և Սասանեան թագաւորների ձեռքը, յետոյ դատապարտուեցաւ կրել Արաբացոց լուծը և ասպատակութ լինել Թուրքերից ու Մոնղոլներից, մինչև որ վերջապէս բաժանուեցաւ Օսմանցոց ու Պարսից և վերջերը նաև Ռուսաց մէջ։

Ուշ դարձնելով այն գլխաւոր փոփոխութիւններին՝ որոնց ենթարկուեցաւ Հայ ազգը իւր երկարատև գոյութեան ընթացքում, Հայոց պատմութիւնը կարելի է վեց շրջան բաժանել.

Ա. Շրջան. Մեր ազգի ծագումից մինչև Պարթևաց Հայաստան գալը (2300—150 Քրիստոսից առաջ)։

Բ. Շրջան. Պարթևաց Հայաստան գալուց մինչև քրիստոնէութեան հաստատութիւնը (150 Քր. առաջ, 300 Քր. յետոյ)։

Գ. Շրջան. Քրիստոնէութեան հաստատութիւնից մինչև Արաբացոց արշաւանքները (300—640)։

Դ. Շրջան. Արաբացոց արշաւանքներից մինչև քաղաքական կեանքի անկումը (640—1080)։

Ե. Շրջան (միջանկեալ). Հայոց իշխանութիւնը Կիլիկիայում (1080—1375)։

Զ. Շրջան. Քաղաքական կեանքի անկումից մինչև մեր օրերը (1080—1885)։



# ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ

## ՄԵՐ ԱԶԳԻ ԾԱԳՈՒՄԻՑ ՄԻՆՉԵՒ ՊԱՐԹԵՒԱՑ ՀԱՅԱՍՏԱՆ-ԳԱԼԸ (2300—150 ՔՐԻՍՏՈՍԻՑ ԱՌԱՋ)

## Ա. ԱՌԱՋԻՆ ՆԱՀԱՊԵՏՆԵՐԸ

### 1.

*Հայաստանը որրան մարդկութեան.—Նոյի որդիքը Սենաարի երկրում.—Հայկ. նորա գալուստը Հայաստան և Հայոց տէրութեան սկզբնաւորութիւնը (2300 Քր. առաջ).—Պատերազմ Բէլի հետ.—Հայք և Հայոց աշխարհ։*

Հայոց ազգի հնագոյն աւանդութիւնները, Հայաստանի դրացի ազգերի նախնական զրոյցները, եկեղեցական հայրերի վկայութիւնները և վերջապէս արդի գիտնականների հետազօտութիւնները համաձայն Ս. Գրքի պատկառելի աւանդութեանը—«Եւ նստաւ տապանն 'ի լերինս Արարատայ», միաբերան վկայում են թէ Հայաստանը մարդկային ազգի օրօրոցն է։

Բայց Նոյի սերունդը երկար ժամանակ չմնաց Արարատեան երկրում։ Հայաստանի հարաւային կողմերը, Եփրատ և Տիգրիս գետերի մէջ կայ մի ընդարձակ երկիր, որին շուտով վիճակուեցաւ իւր գիրկն ընդունելու Նոյի որդոցը. այս երկիրն է Միջագետքը։ Այստեղ՝ Սե-

Նաար, պայծառ դաշտավայրում մարդիկ մտածեցին մի բարձր աշտարակ շինել, որի մէջ կարողանային պատսպարուել, եթէ միւս անգամ ջրհեղեղ լինէր։ Այս ամբարտաւան խորհուրդը լեզուների խառնակութեան պատճառով գլուխ չեկաւ. աշտարակը կիսակատար մնաց և այս ձեռնարկութեան առաջնորդները սկսան այնուհետև իրարու վրայ ձեռք բարձրացնել և միմեանց նուաճելու ետևէ լինել։ Ամենից աւելի զօրացաւ Նեբրովթ կամ Բէլ անունով քաջ որսորդը, Քուշի որդին ու Քամի թոռը, որի բռնութիւնից ստիպուած՝ հեռացան Սենաարի երկրից միւս ցեղերը և սկսան իրանց համար նոր հայրենիք որոնել։

Սոցա մէջ նշանաւոր էր Յաբեթի թոռան Թորգոմի որդին՝ Հայկ, մեր ազգի նահապետը, որի Հայաստան գաղթելու վրայ այսպէս է պատմում մեր ամենահին ազգային յիշատակարանը։ Հայկ տեսնելով Բէլի բռնանալը միւս ցեղերի վրայ, չէ կամենում նորա լուծի տակ ընկնել, հաւաքում է իր որդոցն ու թոռներին, թուով իբր երեք հարիւր հոգի, և ուրիշ զօրաւոր մարդիկ, որոնք եկան միաբանեցան նորա հետ, և դիմում է Արարատեան երկիրը՝ իւր հայրերի ցանկալի հայրենիքը։ Ճանապարհին պատահում է մի լեռնոտ դաշտավայրի (Ասորեստանի սահմանագլուխը), ուր ազգային աւանդութիւններին նայելով առաջուց բնակում էին մարդիկ Սեմի ցեղից, հնազանդեցնում է նոցա, շինում է դաստակերտներ և տալիս է իւր թոռանը Կադմոսին ժառանգութիւն. իսկ ինքը ճանապարհը շարունակելով՝ գնում է հիւսիսային արևմտեան կողմերը և մի բարձր դաշտավայրի վերայ հաստատում է իր բնակութիւնը։ Այնտեղ՝ ուր առաջին

անգամ Հայկ իւր տնով տեղով ոտք դրեց, կոչեց Հայք, կամենալով ցոյց տալ թէ այդ տեղում բնակեցան այն ազգի հայրերը, որոնք իրանց սկիզբն առնում են Թորգոմից։ Յետոյ ձեռք զարկեց մի գիւղ շինելու, որ իւր անունով Հայկաշէն անուանեց։ Այս դաշտի հարաւային կողմերն էլ Հայկ գտաւ մի բուռն ժողովուրդ, որ ինքնակամ հնազանդեցաւ նորան։

Սակայն Բէլ այդ միջոցում յաջողել էր իւր իշխանութիւնը տարածելու միւս ցեղերի վրայ։ Երբ որ իմացաւ Հայկի ապստամբութիւնը և հիւսիսային կողմերը գաղթելը, պատգամ ուղարկեց նորան ասելով. «Գնացիր բնակեցար ցուրտ սառնամանիքի մէջ. լաւ կ'անես, որ քո սառն հպարտութիւնը մեղմացնես և գաս հանգիստ ապրիս իմ ընդարձակ տէրութեան մէջ, ուր որ կամենաս»։ Հայկ խիստ պատասխանով յետ դարձրեց պատգամաւորներին Բաբելոն։ Զայրացաւ Բէլ Հայկի դիմադարձութեան վրայ, ժողովեց իւր խառնիճաղանճ զօրքը և գնաց զէնքով հնազանդեցնելու նորան։ Երբ Կադմոսի սահմաններին մօտեցաւ, սա թողեց իւր կալուածները և աճապարեց Հայկի մօտ՝ իրանից առաջ մարդիկ ուղարկելով նորան բռնաւորի գալը յայտնելու. «Իմացած լինիս, ասաց, ով քաջ, որ Բէլը բարձրահասակ հսկաներով և քաջ պատերազմողներով քեզ վրայ է գալիս. ուստի ինչ որ անելու ես՝ շուտով արա»։ Այս որ լսեց Հայկը, ժողովեց իւր սակաւաւոր ցեղը և աներկիւղ թշնամու առաջ գնաց։ Հասնելով մի ծովակի մօտ, որի ջուրը աղի է (Բզնունեաց ծով), քիչ կանգ առաւ, իւր գունդը կարգաւորեց և յորդորեց որ քաջութեամբ կռուին, որպէս զի կամ յաղթեն և ստրկութիւնից ազատ մնան,

կամ մեռնին և միայն այս կերպով բռնաւորը իւրանց ստացուածքին ու երկրին տէր լինի։ Երկու կողմը միմեանից պատահեցան մի դաշտում, որ շրջապատուած էր բարձր լեռներով, և կատաղաբար յարձակեցան միմեանց վրայ, բայց երկու կողմն էլ անպարտելի մնացին։ Այս անակնկալ դիպուածից զարհուրած՝ Բէլ մտածեց յետ քաշուիլ, մինչև որ իւր բոլոր բազմութիւնը հանի և նորից պատերազմ սկսի։ Այս միջոցին Հայկ, որ միայն իւր ցեղի ազատութիւնն ունէր աչքի առաջ, մօտեցաւ Բաբելոնեան հսկային և իւր նետը հասցրեց նորա զրահապատ կուրծքին. բռնաւորն ընկաւ անկենդան և նորա զօրքը ցիր ու ցան եղաւ։

Պատերազմի դաշտը Հայկ մի դաստակերտ շինեց և անուանեց Հայք, որից ժամանակ անցնելով բոլոր գաւառը կոչուեցաւ Հայոց Ձոր. Բէլի ընկած տեղն էլ կոչուեցաւ Գերեզմանք։ Սորանից յետոյ Հայկ իւրայիններով վերադարձաւ Հարք, ուր Բէլի մարմինը մի բարձր տեղ թաղել տուաւ; որ ապագայ սերունդները միշտ աչքի առաջ ունենան իւր քաջութեան գործը։

Ահա այս կերպով սկիզբ առաւ այն ազգութիւնը, որ իւր տոհմապետի անունով կոչուեցաւ Հայ; իսկ երկիրը Հայաստան կամ Հայոց աշխարհ։

---

## 2.

*Հայկի յաջորդները և նոցա գաղթականութիւնները.—Արամենակ. Արամայիս. Ամասիա. Գեղամ. Հարմա։*

Հայկից յետոյ մինչև Արամ որդոց որդի յաջորդեցին հինգ նահապետներ, որոնց միակ ջանքն ու հոգը պիտի լինէր իրանց փոքրիկ, բայց հետզհետէ աճող ժողովրդի նիւթական պիտոյքները լցնել, այսինքն բնակութեան տեղեր շինել ձմեռուան խստութիւնից պատսպարելու համար իրանց ժողովուրդը և կենդանիների երամակները, ինչպէս նաև նոր նոր արօտատեղիք և բարեբեր դաշտեր ճարել։ Հեռու էին նոցանից ամեն տեսակ աշխարհակալութեան մտքեր. սորա համար ոչ կարողութիւն ունէին և ոչ կարօտութիւն։ Որովհետև իբրև հովիւ ու երկրագործ նահապետներ, նոքա բացի նետից ուրիշ զէնք չէին ճանաչում։ Բացի սորանից իրանց ընտրած հայրենիքը հարուստ էր ամեն տեսակ բարիքներով. հարկ էր միայն որոնել ու գտնել նոցա։ Եւ ահա Հայկի յաջորդները այս ներքին գաղթականութեամբ պարապեցան։ Բայց այս տարածման ժամանակ էլ Հայկի սերունդը, իբրև արենակից եղբայրներ, մէկ ընդհանուր նահապետի իրաւունքները ճանաչեցին, թէպէտ և իւրաքանչիւր տոհմ առանձին ցեղապետի անմիջական իշխանութեան տակ էր գտնվում։

Հայկազուն նահապետները իրանց ներքին գաղթականութիւնների մէջ հարաւից հիւսիս էին գնում։ Գաղթականութեան տեղերը, ինչպէս բնական է, պիտի ընտրուէին բնութիւնից ամրացած տեղերը՝ գետերի ու ծովակների ափում։ Այս բնական աշխարհակալութեան մէջ նահապետների ազգահամարի ու ծննդեան կարգի

հետ ձեռք ձեռքի տուած գնում էր Հայաստանի հին երկրագրութիւնը։ Գաղթականութեան մէջ հետևեալ կարգն էր պահվում. երբ մի ցեղ բազմանում էր, անդրանիկ որդուն էին անցնում հօր իրաւունքները և բնակութիւնը, իսկ միւս որդիքը, որոնց հետ շատ անգամ և հայրը, գաղթում էին ուրիշ տեղեր։ Այսպէս անգգալի կերպով բաժանվում ու տարածվում էին։

Հայկի անդրանիկ որդին ու յաջորդն էր Արմենակ։ Արմենակ թողեց Հարք գաւառում իւր Խոռ ու Մանաւազ եղբայրներին և Մանաւազի Բազ որդուն, որոնցից Մանաւազ մնաց Հարքում, նորա որդին Բազ գաղթեց աղի ծովի արևմտեան հիւսիսային կողմը և այնուհետև այն ծովը նորա անունով կոչուեցաւ Բզնունեաց ծով, գաւառն էլ Բզնունեաց գաւառ, իսկ Խոռ իւր ցեղի համար բնակութեան տեղ շինեց նոյն ծովի հիւսիսային կողմերը։ Սոցանից ծագեցան երեք առանձին տոհմեր. Մանաւազեանք, Խոռխոռունիք և Բզնունիք։ Իսկ Արմենակ առաջ գնալով արևելեան հիւսիսակողմը, մի բարձր լերան ստորոտում շինեց բնակութեան տեղեր, որով այն լեառը իւր անունով կոչուեցաւ Արագած, կալուածն էլ Արագածոտն։

Արմենակի յաջորդը՝ Արամայիս, Գեհոն գետի ափի վրայ շինեց մի նշանաւոր աւան, որ իւր անունից կոչուեցաւ Արմաւիր, գետն էլ Արաստ թոռանը անունով աստւեցաւ Երասխ (Արաքս)։ Իսկ իւր որդուն՝ բազմածին ու շատակեր Շարային տնով տեղով ուղարկեց Արագած լերան հիւսիսային կողմերը Ախուրեան գետի մօտ մի պտղաբեր ու ընդարձակ դաշտ, որ յետոյ նորա անունով կոչուեցաւ Շիրակ։ Շարայի որկրամոլութիւնը հին Հայոց

մէջ առակ էր դարձել և մինչև քրիստոնէութեան դարերում յիշվում էր. շատակեր մարդուն հայ գիւղացիք ասում էին՝ «Թէ քո Ձարայի որկորն է, մեր Ձիրակայ ամբարքն չեն»։ Այս առածից երևում է, որ Ձիրակայ գաւառը հին ժամանակ նոյնքան պտղաբեր էր՝ որքան և այսօրուան Ձօրագեալը։

Արամայիսի անդրանիկ որդին Ամասիա բնակեցաւ Արմաւրում, որ այնուհետև քաղաքական կենտրոն դարձաւ բոլոր Հայկազունեաց նահապետների ու թագաւորների համար։ Ամասիա ունեցաւ երեք որդիք՝ Գեղամ, Փառոխ և Ցոլակ, որոնցից անդրանիկին թողեց Արմաւրում, իսկ Փառոխին ու Ցոլակին տարաւ Արարատ լերան ստորոտը և նոյն լերան արևմտեան հիւսիսային կողմը նոցա համար երկու աւան շինեց մի օրուան ճանապարհով միմեանցից հեռու։ Այդ աւանները նոցա անունով կոչուեցան Փառախոտ և Ցոլակերտ. Արարատն էլ Ամասիայի յիշատակի համար անուանեցաւ Մասիս։

Գեղամ իւր հօր օրինակին հետևելով՝ Արմաւիրը յանձնեց Հարմա որդուն, որ այս քաղաքը աշտարակաւոր պարիսպներով ամրացրեց. իսկ Գեղամ գնաց մի ուրիշ լերան ստորոտը արևելեան հիւսիսային կողմը, և այնտեղ մի ծովակի ափին աւան շինեց, որ իւր անունով Գեղամի կոչուեցաւ, կամ թոռանը անունով Գառնի. Ծովակն էլ կոչեցաւ Գեղամայ ծով, իսկ նորա հարաւային արևելեան ափերը՝ Գեղարքունի։ Այս տեղերը մինչև Երասխ գետը Գեղամ տուաւ իբրև ժառանգութիւն իւր երկրորդ որդուն՝ Սիսակին, որ հօր շինութիւնների վրայ նոր շէնքեր աւելացնելով՝ բոլոր երկիրը ընդունեց Սիսական կամ Սիւնիք անունը։ Ինչպէս Պատմեանց՝ այս-

պէս և Սիսակեանից ցեղից ժամանակ անցնելուց յետոյ կազմուեցան Հայոց աշխարհի երկու գլխաւորական տոհմերը, որոնցից առաջինը պահպանում էր երկրի հարաւային սահմանները, իսկ երկրորդը հիւսիսային արեւելեան կողմերը։

---

## Բ. ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ՄԻԱՊԵՏՈՒԹԻՒՆ—ԱՐԱՄ ԵՒ ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ

### 3.

*Արամ նահապետ (1300).—Նորա յաղթական պատերազմները. Մարաց Նիւքար և Ասորոց Բարշամ իշխանների դէմ.—Պայապիսի վրայ տարած յաղթութիւնը և Հայաստանի արեւմտեան կողմը տիրած երկրները.—Արամի յարաբերութիւնը Նինոսի հետ.—Արամի նշանակութիւնը։*

Հայկի յաջորդները իրանց նախահօր ընտրած կենտրոնից—Բզնունեաց ծովի ափերից՝ հեռանալով՝ քանի գնացին աւելի ու աւելի տարածուեցան ու ցրուեցան. և այն ժողովուրդը՝ որ սկզբում մէկ կլիմայի տակ բնակելով միակ ու միօրինակ կեանք էր վարում, երբ որ միմեանցից բաժանուեցան, զանազան կլիմաների ազդեցութեան տակ ընկան և կեանքի հանգամանքներն էլ փոխուեցան։ Հիւսիսային և առհասարակ լեռնոտ մասերում բնակող ցեղերի մէջ զարգացաւ անկախութեան ոգին, իսկ դաշտային տեղերում բնակողները աւելի հանդարտ ու խաղաղ կեանքի սովորեցան։ Սոքա բնականապէս վտանգի մէջ էին, երբ որ հետզհետէ տարածուելով՝ սկսան դրացի ժողովրդների հետ շփուել, որոնք

Հայոց պէս նոր էին սկսում կազմուիլ։ Հայաստանի արեւելեան սահմաններում Մարք, հարաւային կողմից Ասորեստանցիք և արևմտեան կողմից Գամիրք կամ Կապադովկացիք մէկ ժամանակից սկսան մեր երկիրը ոտնակոխ անել և մինչև մեր ժողովրդի վրայ հարկ դնել։ Հայաստանը կարօտ էր այնպիսի անձի, որ երկրի ներքին զօրութիւնները կենտրոնացնելով՝ ասպատակութիւնների առաջն առնէր։ Այս բաղդը վիճակուեցաւ Հարմայի որդուն՝ Արամ նահապետին (1300), որ «աշխատասէր ու հայրենասէր մարդ լինելով, ասում է պատմութիւնը, աւելի լաւ էր համարում իւր հայրենիքի համար մեռնել, քան թէ Հայաստանը տեսնել օտարներից ոտնակոխ եղած և իւր հայրենակիցներին օտարի լծի տակ ընկած»։

Արամի առաջին գործն եղաւ Հայաստանի այլ և այլ ցեղապետներին հաւաքել իւր դրօշակի ու իշխանութեան տակ։ Այս ցեղապետների օգնութեամբ Հայաստանի զանազան կողմերից ժողովեց մինչև 50,000 քաջ երիտասարդներ, որոնք մինչև այն ժամանակ իրանց նետ ու աղեղը միայն որսորդութեան մէջ էին գործ դրել, և նոցանով հայրենիքը թշնամիներից ազատեց։

Առաջ ու առաջ Արամ իւր զօրութիւնը ուղղեց Նիւքար Մադէս մականուամբ հպարտ ու պատերազմասէր մար ասպատակի դէմ, որ Հայաստանի արևելեան սահմանները կոխել և ժողովրդի վրայ հարկ էր դրել։ Արամ գիշերով յանկարծակի ընկաւ Նիւքարի վրայ, զօրքը ջարդեց, իրան էլ բռնեց Արմաւիր բերեց, և այն ժամանակների համար ներելի քաղաքականութեամբ՝ պարսպի բարձր աշտարակներից մէկի վրայ ողջ ողջ ճակատին երկաթի ցից զարկել տուաւ, որպէս զի Հայաստանի

թշնամիները տեսնեն ու խրատուին։ Իսկ Նիւքարի կայուածների վրայ մինչև Զարասպ լեառը հարկ դրաւ և Միսակեանց պահպանութեանը յանձնեց։

Սորանից յետոյ Արամ իւր զօրքով գնաց հարաւային կողմերը, ուր Բարշամ անունով ասորի իշխանը բռնանալով՝ շատ էր նեղացնում Հայոց։ Արամ ետեւից ընկնելով զօրքը ցրուեց և Կորդուաց լեռներից մինչև Ասորեստանի դաշտերը փախցրեց, ուր Բարշամ Արամի զինակիրներին պատահելով սպանուեցաւ։ Արամ նորա երկրների մեծ մասի վրայ հարկ դրաւ ու Կադմեանց պահպանութեանը յանձնեց։

Երբ որ այսպէս արևելեան և հարաւային կողմերից իւր հայրենիքը ապահովեց, Արամ իւր ուշքն ու միտքը դարձրեց արևմտեան սահմանների վրայ և գեղեցիկ միտք յղացաւ. Հայաստանի սահմանները այս կողմից ընդարձակել, որով հայ ժողովուրդը երկու մեծ ծովերի ափը մօտենար—Պոնտոսին (Սև ծով) և Միջերկրականին։ Այս ծովերի մէջ եղած տարածութիւնը, որ յետոյ Փոքր Ասիա կոչուեցաւ, բռնուած էր զանազան ցեղերով, որոնց մէջ նշանաւոր էին Գամիրք կամ Կապադովկացիք՝ Պայապիս Քաղեայ անունով զօրաւոր իշխանի առաջնորդութեան տակ։ Պայապիս Արամի դիտաւորութիւնը գուշակելով՝ մեծ պատրաստութեամբ մօտեցաւ Հայոց սահմաններին։ Արամ 40,000 հետևակ և 2,000 ձիաւոր զօրքով յարձակեցաւ նորա վրայ, յաղթեց ու մինչև Միջերկրականի ծովի կղզիներից մէկը փախցրեց, և բոլոր երկիրը Եփրատից սկսած մինչև Ալիւս գետը Հայաստանի հետ միացնելով՝ երեք նահանգների բաժանեց, Առաջին, Երկրորդ և Երրորդ Հայք, որ միասին առած Փոքր Հայք

կոչուեցաւ, բուն Հայաստանից որոշելու համար, որ այնուհետև Մեծ Հայք անուեցաւ։ Իսկ Մեծ Հայքի նահանգներից մէկը—Ծոփաց աշխարհը Արամի աշխարհակալած երկրներին սահմանակից լինելով՝ կոչուեցաւ Չորրորդ Հայք։ Այս նոր երկրի բնակիչներին իւր ազգի հետ ձուլելու համար՝ Արամ պարտաւորեց նոցա հայերէն լեզուն սովորել, և իւր ցեղից Մշակ անունով մէկին կուսակալ կարգեց նոցա վրայ, 10,000 զօրք յանձնելով նորան երկրի պահպանութեան համար։ Մշակի աշխարհաշինութեան պտուղն եղաւ Մշակ քաղաքի շինութիւնը, որ տեղացիք չկարողանալով արտաբերել, Մաժաք ասացին։ Այս այն քաղաքն է, որ յետոյ Յուլիոս Կեսարի ժամանակ նորոգուելով Կեսարիա կոչուեցաւ։

Արամին ժամանակակից է համարվում Ասորեստանի Նինոս թագաւորը, որ, հին պատմիչների ասելով, Բաբելոնը Ասորեստանի հետ միացնելուց յետոյ՝ իւր զէնքերը հիւսիսային կողմերը տարաւ։ Մեր ամենահին պատմական յիշատակարանը այս երևելի իշխանին Հայաստանի սահմանների վերայ բերում է Բէլի մահուան վրէժն առնելու համար։ Բայց Ասորեստանի թագաւորը կասկածելով Արամի զօրութիւնից, իրաւունք է տալիս նորան արձակ համարձակ վարել իւր իշխանութիւնը և մարգարտէ վարսակալ կապել գլխին՝ իրանից յետոյ երկրորդ համարուելով։ Դիոդորոս Սիկիլիացին Արամի (որին Բարզանէս թագաւոր է կոչում) և Նինոսի յարաբերութիւնները փոքր ինչ տարբեր է պատմում, համարելով նախ Արամին յաղթուած և յետոյ Նինոսի մարդասիրութեամբ իւր աթոռը հաստատուած։

Արամի անձնաւորութիւնը մեծ նշանակութիւն ունի

Հայոց Նախնական պատմութեան մէջ։ Այս երեւելի իշխանն եղաւ, որ առաջին անգամ ստիպեց Հայոց ցեղական կեանքից հրաժարուել, և երկրի ներքին զօրութիւնները կենտրոնացնելով մի պատկառելի տէրութիւն կազմեց, որով ոչ միայն իւր հայրենիքը օտարական ասպատակութիւններից ազատեց, այլ և նորա սահմանները ընդարձակեց։ Իւր տիրապետած երկրների անբնակ ու ամայի տեղերը մինչև իւր բնիկ սահմանները գաղթական ժողովրդներով լցրեց, կարգաւորեց ու շէնացրեց. իսկ իւր ազգը շրջակայ թշնամիների յարձակումներից ապահովելով, Հայերը սկսան յարաբերութիւններ ունենալ արեւելքից Մարաց հետ, հարաւից Ասորեստանցոց ու Բաբելացոց հետ, իսկ արեւմտեան կողմից Փոքր Ասիայի ժողովրդների հետ։ Սորանից բնականաբար պէտք է առաջանար գործունէութիւն երկրի մշակութեան մէջ և վաճառականական հաղորդակցութիւններ դրացի ազգերի հետ, այնպէս որ Ասիայի ազգերը Արամի օրերում սկսան ճանաչել Հայոց և այս նահապետի անունով մեր երկիրը Արմենիա կոչեցին և մեր ազգը Արմէն *)։

*) Ոմանք այս անունները աւելի հին են համարում Հայկի Արմենակ որդուցն առաջ եկած, որ ըստ Աբիւդինոսի եղաւ Բէլի հակառակորդն ու սպանողը։

## 4.

*Արա Գեղեցիկ, նորա պատերազմը Շամիրամի հետ և մահը.— Արայի աւանդութեան նշանակութիւնը.— Շամիրամակերտի շինութիւնը։*

Արամին յաջորդեց իւր որդին Արա Գեղեցիկ, որի հետ Նինոս Արամի հետ կապուած բարեկամութիւնը հաստատուն պահեց. բայց շուտով Նինոս մեռաւ և նորա իշխանութիւնը անցաւ Շամիրամի ձեռքը։ Այս աշխարհակալ թագուհին իւր ամուսնու նուաճած երկրների վրայ աւելացրեց Մարաստանը, Պարսկաստանը և ուրիշ երկրներ. մնացել էր Հայաստանը և այս գեղեցիկ երկրին տիրապետելու առիթը այսպէս է պատմում ազգային հին աւանդութիւնը։ Շամիրամ վաղուց լսած լինելով Արայի գեղեցկութիւնը, Նինոսի մահից յետոյ կամեցաւ նորա հետ ամուսնանալ. մարդիկ ուղարկեց նորան մեծամեծ ընծաներով, և խոստացաւ որ եթէ իւր կամքը կատարէ, Հայաստանի հետ Ասորեստանի վրայ էլ կը թագաւորեցնէ նորան։ Արա Գեղեցիկ՝ որ արդէն ամուսնական սիրով կապուած էր Նուարդ իշխանուհու հետ, մերժեց Ասորեստանի դշխոյի առաջարկութիւնը։ Շամիրամ զայրացած՝ մեծ զօրքով եկաւ Հայաստան, որպէսզի բռնի ստիպէ Արային իւր առաջարկութիւնն ընդունելու։ Պատերազմից առաջ թագուհին հրամայեց իւր զօրավարներին, որ աշխատեն Հայոց իշխանին չսպանել, այլ ողջ բռնեն և իւր մօտ բերեն։ Բայց Արան իւր զօրքի յաղթուիլը տեսնելով, դիւցազնաբար ընկաւ խառնուրդի մէջ և իւր ողջախոհութեան զոհ գնաց։ Այն դաշտը, որ ներկուեցաւ առաքինի նահապետի անունով, կոչուեցաւ

Այրարատեան դաշտ, որ յետոյ ամբողջ նահանգի վրայ փոխուեցաւ։

Պատերազմից յետոյ Շամիրամ մարդիկ ուղարկեց, որ դիակների միջից Արայի մարմինը գտնեն, և մի բարձր տեղ դնել տուեց, յուսալով, որ կախարդութեամբ կարողանայ կենդանացնել նորան. բայց երբ դիակը սկսաւ հոտիլ, հրամայեց մի ծածուկ փոսի մէջ թաղել։ Հայերը իրանց սիրելի իշխանի մահուան վրայ գրգռուած՝ նորից զէնք առին և կամեցան պատերազմն առաջ տանել։ Թագուհին հետևեալ հնարքը գործ դրեց նոցա հանդարտեցնելու համար. իւր սիրելիներից մէկին Արայի զգեստները հագցրեց և հեռուից Հայոց ցոյց տալով՝ հաւատացրեց նոցա, թէ աստուածները Արայի վէրքերը լիզելով կենդանութիւն տուին նորան։

Արա Գեղեցիկի վրայ հիւսուած զրոյցը, ինչպէս ամենայն ազգային աւանդութիւն, անտարակոյս իւր պատմական հիմն ունի, որ այսօր մեզ համար մութ է, բայց և այնպէս գեղեցիկ կերպով փայլեցնում է Հայոց նախնական կեանքի մի բարոյական կողմը։ Արայի զգաստութիւնը, որով նա անդրդուելի մնաց Ասորեստանի թագուհու բոլոր հրապոյրների առաջ, ցոյց է տալիս հին Հայոց ընտանեկան կեանքի մաքրութիւնը, առաքինութիւն՝ որ նոյն իսկ օտարների վկայութեամբ մեր ազգի յատկանիշներից մէկը համարուած է։ Դարձեալ, այս աւանդութիւնը ապացուցանում է, թէ հին Հայերը այնչափ գնահատում էին անձնական քաջութիւնը, որ նոցա կարծիքով պատերազմի դաշտում մեռնող քաջերը, կարող էին յարութիւն առնել. ուրիշ խօսքով հայրենիքի պաշտպանութեան համար արիւն թափող դիւցազունները

անմահ էին համարվում։ Այս կրօնական համոզումը այնքան խոր արմատ դրած էր հեթանոս Հայոց մէջ, որ մինչև քրիստոնէական դարերում կենդանի մնացած էր։

Պատմվում է թէ Շամիրամ ուրիշ երկրների պէս՝ Հայոց աշխարհումն էլ կամեցաւ իւր մեծագործութեան հետքը թողնել, Բզնունեաց ծովի արևելեան ափի վրայ մի հոյակապ քաղաք և ամառանոց շինելով, որ իւր անունով կոչուեցաւ Շամիրամակերտ (Վան քաղաք)։ Յայտնի է որ Հայկազանց առաջին բնակութեան տեղերը, ինչպէս Հայկաշէն, Փառախոտ, Ցոլակերտ, Գառնի և այլն, ոչ այլ ինչ էին՝ եթէ ոչ պարզ խրճիթներից բաղկացած գիւղեր, որոնց մէջ Հայկի սերունդը ձմեռ ժամանակ պատսպարվում էր ցրտի դէմ իւր կենդանիների երամակներովը և ամառուան պաշարը վայելում։ Արմաւիրը սոցա մէջ ամենից նշանաւոր աւանն էր, որ հետզհետէ մեծանալով ու զարդարուելով՝ Հայաստանի նշանաւոր քաղաքներից մէկը դարձաւ։ Իսկ կանոնաւոր ճարտարապետութեան առաջին ճաշակը մեր պատմութեան և բևեռագիր արձանագրութիւնների միաբան վկայութեամբ՝ Ասորեստանցիք մտցրին Հայոց մէջ։ Շամիրամ, ասում է պատմութիւնը, իւր համանուն Շամիրամակերտ քաղաքը շինելու համար հարկաւոր ճարտարապետներ չգտնելով Հայոց երկրում, 6,000 ճարտարապետ ու երեւելի արուեստագէտ և 12,000 գործաւոր բերել տուաւ Ասորեստանից և ուրիշ հպատակ երկրներից, որոնք մի քանի տարի գործ դրին այն հրաշակերտ քաղաքը շինելու։ Քաղաքը զարդարուած էր կրկնայարկ և եռայարկ պալատներով և չքնաղ բաղանիքներով՝ տեսակ տեսակ և գոյնզգոյն քարերից շինած։ Փողոկրդեան պիտոյքի, ինչ-

ալէս նաև բուրաստանների ու ծառաստանների պահպանութեան համար՝ գետի մէկ մասը մեծ աշխատութեամբ քաղաքը բերուած և լայնարձակ փողոցներով անց էր կացրած։ Նշանաւոր էին մանաւանդ ապառաժի մէջ փորուած ահագին սենեակներն ու սրահները, որ Մովսէս Խորենացին «տաճարս և սենեակս օթից և տունս գանձուց» է անուանում. իսկ Նոր ճանապարհորդների կարծիքով, այս ընդարձակ սրահները Թագաւորների ու իշխանների համար դիրեզմանատեղի են եղել, ինչպէս եգիպտական բուրգերը հովիւ Թագաւորների ժամանակ։ Ամբողջ քարաբլուրը, որի վրայ դեռ կանգուն մնացած է Վանայ հռչակաւոր բերդը, ծածկուած է սեպաձև արձանագրութիւններով, որոնց ընթերցումը խոստանում է մեծ լոյս սփռել նախնական դարերի Հայոց պատմութեան վրայ։

---

## Դ. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՍՈՐԵՍՏԱՆԻ ԳԵՐԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### 5.

*Հայաստանը Արա Գեղեցիկից յետոյ ըստ մեր պատմութեան.— Ասորեստանի տէրութեան պատմութիւնը բևեռագիր արձանագրութիւններից հանած.— Նոյն արձանագրութիւնները Հայաստանի քաղաքական կազմակերպութեան վրայ: Ուրարդի, Մաննա, Մուսասիր, կամ Արսիսա, Նայիրի, Միլիդ և Մելիդիա.— Նայիրիի նուաճումը Թուգլաթ-Պալասար Ա-ի ձեռքով (1130).— Ասուր-Նազիր-Պալի արշաւանքները Նայիրի, Կարքիի և Մաննայի վրայ (882—857).— Նորա յաջորդների պատերազմները Ուրարդիի թագաւորների հետ Մաննայի տիրապետութեան համար (841—726).— Ասորեստանի կրթութեան ազդեցութիւնը Հայաստանի վրայ:*

Արայի մահով Հայաստանը Ասորեստանի իշխանութեան տակ ընկաւ, և կառավարուեցաւ բնիկ կուսակալների ձեռքով, որոնք իրաւունք ունէին հայ զօրք պահել և ազատօրէն վարել երկրի ներքին գործերը, տարեցտարի նշանակեալ հարկը վճարելով Նինուէի թագաւորներին: Պատմութիւնը դժբաղդաբար գրի չէ անցրել այս իշխանների գործերը, որոնց թիւը Արայի որդուց՝ Կարդոսից մինչև Պարոյր՝ թագաւորը քսան և ութի է հասնում, և գրեթէ լոկ նոցա անունների ցանկն է պահպանել *): Կարդոս, որին Շամիրամ հօր յիշատակի համար

---

*) Անհաւասարկ նոցա անունները.— Կարդոս (Արայեան Արա), Անուշաւան, Պարէտ, Արբակ, Զաւան, Փառնաս, Սուր, Հաւանակ, Վաշտակ, Հայկակ, Ամպակ, Առնակ, Շաւարշ, Նորայր, Վստակար, Գոռակ, Հրանտ, Ընծաք, Գղակ, Հօրոյ,

Նրա անունից, Ասորեստանի դշխոյի հետ միաբանելով՝ պատերազմեցաւ Նինուասի դէմ ու մեռաւ։ Նորա որդին Անուշաւան գերի տարուեցաւ Նինուէ. Բայց Հայկի այս շառաւիղը իւր խելացի վարմունքով պալատականների սիրտը շահելով՝ յաջողեցաւ նախ Հայաստանի մի մասի և ապա բովանդակ երկրի իշխանութիւնը ձեռք բերել հարկատուութեամբ Ասորեստանցոց։

Այսպէս է մեր պատմութիւնը։ Սակայն արդի հնաբանները, հիմնուելով Ասորեստանի յիշատակների և նոցա արձանագրութիւնների վրայ, մի բոլորովին նոր պատմութիւն են ներկայացնում Ասորեստանի տէրութեան սկզբնաւորութեան և բարգաւաճման վրայ՝ տարբեր այն պատմական անուններից ու անցքերից, որ յոյն պատմիչները բերել հասցրել են մինչև մեր օրերը։ Եւ նախ Նինոս և Շամիրամ, որոնց վրայ հները այնքան բաներ են պատմում, ոչ միայն իրանց աշխարհակալութիւններից ու մեծագործութիւններից են զրկվում, այլ և կատարեալ առասպելական անձինք են համարվում, որոնց ժողովրդական զրոյցները այնպիսի աշխարհակալութիւններ են ընծայում, որ Ասորեստանի շատ թագաւորներ զանազան ժամանակներում կատարել են, ինչպէս նաև այնպիսի շինութիւններ՝ որոնցով այլ և այլ ասիական իշխաններ իրանց երկրները զարդարել են։ Նորագոյն հետազօտութիւնները հաստատում են, որ Ասորեստանի առաջին իշխանները քուրմեր էին, որոնք թագաւորե-

Զարմայր (որ Ասորեստանի Տեւտամոս թագաւորի առաջնորդութեամբ հայ ու եթովպացի զօրքով Պրիամոսին օգնութիւն գնաց Յունաց դէմ և Տրոյեւայի պարսպների տակ մեռաւ)։

դից 1800-ից մինչև 1500-ը Քրիստոսից առաջ։ Նոցանից շատերը հարկ էին տալիս Եգիպտոսի փարաւոններին, որոնց իշխանութիւնը տարածվում էր այն ժամանակները մինչև Տիգրիս գետը։ Այնուհետև գալիս են Ասորեստանի բուն թագաւորները, որոնք Եգիպտոսի հարկատուութիւնից ազատուելով և Բաբելոնը իրանց ազդեցութեանը ենթարկելուց յետոյ, ԺԲ դարու կէսից սկսում են աշխարհակալութեան զբաղիլ՝ շրջակայ երկրները իրանց իշխանութեան տակ առնելով և հեռաւորների վրայ հարկ դնելով։ Ահա այդ ժամանակներից արձանագրութիւնները սկսում են տեղեկութիւններ հաղորդել այն երկրների վրայ, որոնց հետ Ասորեստանի թագաւորները յարաբերութիւն ու գործ են ունեցել. այս երկրների թվումն է և Հայաստանը։

Արձանագրութիւններին նայելով, Հայաստանը հին ժամանակ մի դաշնակցական պետութիւն էր կազմում, որ բաղկացած էր այլ և այլ մեծ ու փոքր իշխանութիւններից։ Սոցա մէջ առաջին տեղն ունէր՝

Ա. Ուրարդիի (Արարատեան) թագաւորութիւնը, որ համարեա երկրի կենտրոնում էր գտնվում և իւր զօրութեան ու սահմանների ընդարձակութեան շնորհով իւր ազդեցութիւնը տարածվում էր շրջակայ իշխանութիւնների վրայ, որոնց անունները յայտնի են, բայց սահմանները դժուար է ճշտութեամբ որոշել։ Սոքա են՝

Բ. Մաննա (Վան), որ գտնվում էր Վանայ ծովի հարաւային արևելեան կողմը։

Գ. Մուսասիր (Մուշ) կամ Արսիսա (Արճէշ), նոյն ծովի հիւսիսային արևմտեան կողմը, Արճէշից մինչև Մուշ։

Դ. Ն ա յ ի ր ք, որ ձգվում էր Եփրատ ու Տիգրիս գետերի վերին կողմերում, բովանդակելով Հայաստանի հարաւային արևմտեան երկու նահանգները—Աղձնեաց և Ծոփաց աշխարհները։

Ե. Մ ի լ ի դ, որ գտնվում էր Նայիրիի արևմտեան կողմը՝ Մելիտինէ մայրաքաղաքով։

Զ. Միլդիս, որ կարծվում է թէ բռնում էր այժմեան Կարնոյ գաւառը։

Սոցանից Մուսասիր և Միլդիս աւելի սերտ կապուած էին Ուրարդուի հետ, որի թագաւորների առաջնորդութեամբ երկար պատերազմներ մղեցին Ասորեստանի աշխարհակալների դէմ։ Այս պատերազմների նպատակն էր Ասորեստանի ազդեցութիւնից ազատել Հայաստանի հարաւային մասը, ուր գտնվում էին Մաննայի և Նայիրիի թագաւորութիւնները։

Նայիրիի մի մասը արդէն վաղուց հարկատու էր Ասորեստանին։ Թուգլաթ-Հաբալ-ասար Ա. (1130), Ս. Գրքի Թագլաթփալասարը, կամեցաւ այս երկիրը ամբողջապէս նուաճել. «Ես անցայ անմատչելի ճահիճներով և ջերմոտ երկրներով, ասում է այս աշխարհակալը, ուր առաջուան թագաւորներից ոչ ոք երբէք ոտք կոխած չէ. դնացի դժուարանցանելի ճանապարհներով և խիտ անտառներով»։ Վերին Եփրատի արևելեան ափերի վրայ բնակող ցեղերը մեծ ընդդիմութիւն ցոյց չտուին և գրեթէ առանց պատերազմի հպատակեցան։ Դժուարութիւններն սկսան երբ Թուգլաթ Եփրատն անցնելով Նայիրիի երկիրը մտաւ։ Նայիրիի 23 թագաւորները ժողովեցին իրանց զօրքերը և քաջութեամբ ճակատեցան Ասորես-

տանցոց դէմ, բայց և այնպէս յաղթուեցան. նոցա որ-դիքը պատանդ տարուեցան։

Տիգրիսի ակունքի մօտ կանգնած կոթողի վրայ՝ Թուգլաթ մի արձանագրութիւն փորագրել տուեց, որի մէջ պարծենում է թէ երեք անգամ նուաճեց Նայիրիի երկիրը։ Այս ցոյց է տալիս թէ Հայերը որպիսի յամառութեամբ կռուեցան իրանց ազատութեան համար, և թէ յարմար առթի պիտի սպասէին օտարական լուծը թօթափելու։ Եւ յիրաւի, Թուգլաթի թոյլ յաջորդների ժամանակ Նայիրին իւր անկախութիւնը ձեռք բերեց և երկար ժամանակ Ասորեստանցոց յարձակումներից ազատ մնաց։

Սակայն Թ դարում Ասորեստանի թագաւորները զօրանալով՝ դարձեալ սկսում են աշխարհակալութեան զբաղիլ և հետամուտ են լինում իրանց տէրութեան սահմանները ամեն կողմից ընդարձակել։ Այդ ժամանակներից Նինուէի թագաւորները շարունակ յարձակում են Հայաստանի վրայ, բայց երկրի լեռնոտ դիրքը և բնակիչների քաջութիւնը թոյլ չեն տալիս նոցա այդ կողմերը շատ առաջ գնալու։ Նոքա յաջողում են իրանց իշխանութեան ներքոյ պահել միայն Տիգրիսի հովտի վերնագաւառը և Վանայ ծովի հարաւային ափերը. և եթէ երբեմն սահմանները անցնում էին, այդ լոկ Սև ծովի և Կասպիականի կողմերը ասպատակելու նպատակով էր։ Ասուր-նազիր-հաբալ (882—857) առաջինն եղաւ, որ յարձակուեցաւ արևմտեան Հայաստանի վրայ՝ Նայիրիի վերնագաւառում։ Տեղացիք անկարող լինելով բաց տեղ պատերազմել, ակնարկում է արձանագրութիւնը, «քաշուեցան անմատչելի լեռների վրայ, և ապաւինեցան նոցա կատարների վրայ, որպէս զի ես չկարողանամ

ետևներից հասնել, որովհետև այն մեծափառ կատարները սրածայր սուսերի պէս բարձրանում են, և միայն երկնքի թռչունները ճախրելով կարող են հասնել այնտեղ... Երեք օրում լերան գլուխը բարձրացայ, սարսափ տարածեցի նոցա ապաւինած տեղերում... Նոցա դիակները ծառերի տերևների նման ծածկեցին զառիվայրերը, իսկ մնացածները փախան ապաւինեցան ժայռերի մէջ»։ Նոցա գիւղերը այրելուց յետոյ, Աշուր-նազիր-հաբալ յարձակւեցաւ Կարքի կամ Կուրքիէ գաւառի վրայ, ուր «սուր քաշեցի, ասում է նա, երկու հարիւր վաթսուն պատերազմող, գլուխները կտրեցի և նոցանից բուրգեր կազմեցի»։ Այս արշաւանքը կրկնվում է 880—879-ին։ Նայիրին ասպատակելուց և մեծամեծ անգթութիւններ գործելուց յետոյ, Աշուր-նազիր-հաբալ երկրորդ անգամ մտաւ Կարքիի երկիրը, որի բնակիչները «թողին իրանց ամրոցներն ու դղեակները, և իրանց կեանքն ազատելու համար՝ փախան դէպի Մատնի զօրաւոր երկիրը։ Ընկայ նոցա ետևից, նոցա պատերազմողների հազարաւոր դիակներ ցանեցի լերան վրայ, լեառը ծածկեցի և խառոշները լցրի նոցա դիակներով։ Երկու հարիւր գերի կենդանի ձեռքս ընկել էին. նոցա դաստակները կտրտեցի»։

Այնուհետև Աշուր-նազիր-հաբալ իւր ընթացքը ուղղում է դէպի արևելք՝ Մաննայի թագաւորութեան վրայ։ Ճանապարհին հեղեղների և դժուարանցանելի տեղերի հանդիպելով, թողնում է իւր կառքերն ու ձիաները և ոտքով առաջ է գնում։ Մաննայի մի մասը նուաճելուց յետոյ, լուր է առնում, որ արևմտեան կողմերը դարձեալ ապստամբութիւն է ծագել, ուստի յետ է քաշվում և

ուզում է կրկին Նայիրիի վրայ գնալ. բայց մի աւելի վտանգաւոր ապստամբութիւն ստիպում է նորան դառնալ իւր տէրութեան հարաւային կողմերը։

Նորան յաջորդեց Սաղմանասար Գ (857—822), որ Նայիրիի երկիրը նուաճեց և մինչև մահը իւր իշխանութեան ներքոյ պահեց։ Սաղմանասար Գ հօր օրինակին հետևելով՝ կամեցաւ Մաննան նուաճել։ Այս առիթով մի մեծ պատերազմ բացուեցաւ Ասորեստանցոց և Ուրարդիի թագաւորների մէջ, պատերազմ՝ որ երկար տևեց և շատ արիւնհեղութիւնների պատճառ եղաւ. և թէպէտ արձանագրութիւններին նայելով՝ Նինուէի թագաւորները փառաւոր յաղթութիւններ տարան, բայց և այնպէս չկարողացան Ուրարդին նուաճել։

Ասորեստանցիք առաջին անգամ ոտք կոխեցին Ուրարդիի երկիրը 841-ին։ Այդ ժամանակները Ուրարդիում թագաւորում էր Արամ, որ իւր դաշնակիցների հետ միաբանած՝ ճակատեցաւ Սաղմանասարի դէմ, բայց յաղթուեցաւ։ Նոյն բաղդն ունեցաւ և նորա յաջորդը Սադուրի. Սաղմանասար Գ երկու անգամ յաղթեց նորան՝ 832-ին և 829-ին։ Այս յաջողութիւնների հետևանքն եղաւ քաղաքների ու ամրոցների առումն ու կործանումը և ժողովրդի ծանր հարկերի ենթարկուիլը. Նոյն իսկ երկրի մայրաքաղաքը Արնիէ առնուեցաւ և կրակի մատնուեցաւ։ Բայց այս բոլորը մեծ արդիւնք չունեցաւ. Հայերը անընկճելի մնացին և ոչ միայն Ուրարդին, այլ և Մաննայի ու Նայիրիի թագաւորութիւնները շարունակեցին կռուել Ասորեստանցոց դէմ։ Սաղմանասար Գ.ի որդին՝ Սամսի-Բին Գ. (822—810) մի քանի անգամ ասպատակեց Նայիրին, իսկ նորա թոռը Բին-Նիրարի Գ (810—780) եր-

կու արշաւանք յանձն առաւ Մաննայի վրայ։ Սաղմանասար Դ (780—770) իւր թագաւորութեան տարիները գործ դրեց Ուրարդիի դէմ պատերազմելով. վեց անգամ արշաւեց Հայաստանի այս հզօր թագաւորութեան վրայ, բայց ոչինչ յաջողութիւն չունեցաւ։ Այնուհետև Հայաստանը ազատ մնաց Ասորեստանոց արշաւանքներից մինչև Թուգլաթ-հաբար-ասար Բ (745—726)։ Այս աշխարհակալը երկու անգամ դնաց Ուրարդիի վրայ, Սարդա թագաւորին յաղթեց և ստիպեց նորան հաշտութիւն խնդրել։

Այս սերտ յարաբերութիւնները Ասորեստանցոց պէս քաղաքակիրթ ազգի հետ ապարդիւն չեղան Հայաստանի համար. Հայերը սեպհականեցին նոցա կրթութիւնը, արուեստները և մինչև իսկ գրութեան եղանակը։ Ուրարդիի թագաւորներից մէկը Բէլիդուրիս Ա, Նինուէից բերել տուեց դպիրներ, որոնք իրանց լեզուով ու բևեռագրերով արձանագրեցին նորա գործերը։ Ասորեստանի թագաւորներին յատուկ գովեստներ ու տիտղոսներ շռայլելով նորան։ Այսպիսով Նինուէի լեզուն մի քանի ժամանակ Ուրարդիի ուսումնական լեզուն եղաւ, մինչև որ Բէլիդուրիսի որդու՝ Իսբուինիս Ա-ի օրով Ասորեստանի բևեռագրութիւնը փոփոխութիւնների ենթարկուեցաւ և տեղական բարբառներին յարմարուեցաւ, որով այնուհետև թագաւորական արձանագրութիւնները սկսան հայերէն լեզուով խմբագրուիլ։

## 6.

*Սարուքինի պատերազմները Ուրարդիի Ուրսա թագաւորի և նորա դաշնակիցների դէմ (719—714).—Խորսապատի արձանագրութիւնը.—Արգիստիսի յաջողութիւնները.—Հայաստանի վիճակը Է դարում։*

Ասորեստանի տէրութեան ահեղ թշնամիներից և իւր երկրի մեծութեան նախանձորդներից մէկն եղաւ Ուրարդիի Ուրսա (ըստ ոմանց Հրաչեայ կամ Հրչէ) թագաւորը։ Ուրսան իւր հաւատարիմ դաշնակիցների հետ միաբանած՝ միտքը դրեց հարաւային Հայաստանը Ասորեստանցոց ազդեցութիւնից ազատելու, և այս նպատակին հասնելու համար ամեն տեսակ միջոցներ գործ դրեց։ Նա փորձեց նախ Ասորեստանի դաշնակցութիւնից անջատել Մաննայի Իրանզու թագաւորին, և երբ սա մերժեց, Ուրսան ձեռքի տակից Մաննայի ժողովրդին նորա դէմ ապստամբեցրեց։ Ասորեստանի Սուրաքին թագաւորը (721—704) շտապեց իւր դաշնակցին օգնութիւն հասնելու. յարձակմամբ առաւ Մաննայի Սուանդաքուլ և Դուրդուքա քաղաքները, որոնք թշնամիների կողմն էին անցել, կրակի մատնեց նոցա և բնակիչներին Ասորոց երկիրը փոխադրեց (719)։ Այնուհետև նա կամենում էր պատերազմն առաջ տանել Ուրսայի և նորա դաշնակիցների դէմ. բայց իւր տէրութեան զանազան նահանգներում ծագած ապստամբութիւնները ստիպեցին Սարուքինին յետ դառնալ։ Երկու տարի գործ դրեց նա այդ ապստամբութիւնները զսպելու, և երբ կրկին Հայաստան եկաւ, Մաննայի թագաւորը Իրանզու մեռած, նորա Ազա որդին մի խռովութեան մէջ սպանուած և նորան յա-

ջորդած էր Ուլլուսուն, որ ի նշան հաւատարմութեան քանհրկու բերդաքաղաք տուել էր Ուրսային։ Սարուքին վրայ հասաւ, Ուլլուսունին փախցրեց և Ուրմիոյ ու Վանայ լճերի մէջ եղած երկիրը ասպատակեց։ Բագադատտի (Աստուածատուր?), Միլդիս լերան թագաւորը, ընկաւ նորա ձեռքը և ողջ ողջ մորթեզերծ եղաւ այնտեղ, ուր Ազան սպանուել էր։ Ուլլուսուն վախենալով, որ իւր գլխին էլ նոյն դժբաղդութիւնը չգայ, «փախաւ իբրև մի թռչուն», բայց յետոյ եկաւ յաղթողի ոտքն ընկաւ։ Սարուքին ներեց նորան և կրկին իւր թագաւորութեան մէջ հաստատեց։ Ուրսան էլ ձեռք ընկնելու վրայ էր, երբ մի նոր ապստամբութիւն ստիպեց Սարուքինին իւր զէնքերը հարաւային կողմը դարձնել (716)։ Այդ միջոցին Ուլլուսուն Ուրսայից յորդորուած՝ դարձեալ գլուխ բարձրացրեց, բայց Սարուքինի երևիլը միայն բաւական եղաւ ապստամբութիւնը հանդարտեցնելու (715)։ Մարաստանի հիւսիսային կողմերը նուաճելուց յետոյ, Սարուքին մտաւ վերջապէս Ուրսայի երկիրը (714)։ Ուրսան ճակատեցաւ նորա դէմ և չարաչար յաղթուելով փախաւ լեռները, ուր հինգ ամսի չափ թափառեցաւ առանց մի ապահով ապաստան գտնելու։ Նորա երկիրը աւարի մատնուեցաւ, քաղաքներից շատը տրուեցաւ Ուլլուսունին։ Յաղթուեցաւ նոյնպէս Մուսասիրի թագաւորը՝ Ուրզանա, Ուրսայի վերջին դաշնակիցը։ Այս ձախորդութիւնների գոյժն առնելով, Ուրսան յուսահատութիւնից ինքն իրան սպանեց։

Այս անցքերը հանած են Խորսապատի *) մի արձա-

*) Խորսապատ փոքրիկ գիւղ՝ է Մուսուլի հիւսիսային արևելեան կողմը, մի քանի մղոն հեռու հին Նինուէի տեղից։ Այստեղ Բոտտա Ֆրանսիացի հիւպատոսը գտաւ մի հին պա-

նագրութիւնից, որ հետաքրքրական մանրամասներ պարունակելուն համար՝ աւելորդ չենք համարում մէջ բերել այստեղ։

«Քանի որ Իրանզու Վանեցին ապրում էր, նա հնազանդ ու հաւատարիմ էր իմ տէրութեանը. բայց ճակատագիրը տարաւ նորան։ Նորա հպատակները գահի վրայ նստեցրին Ազա որդուն։ Ուրսա Ուրարդեցին Միլդիս-Զիկարտուի և Միխանդի լեռների ժողովրդների ու Վանի մեծամեծների հետ միաբանած՝ հպատակներին յորդորեց ապստամբելու։ Սոքա իրանց տիրոջ մարմինը թողին լեռների կատարների վրայ։ Ուլլուսուն Վանեցին, Ազայի եղբայրը, որին գահի վրայ էին նստեցրել, հակեցաւ Ուրսայի կողմը և տուաւ նորան 22 ամուր քաղաքներ իրանց պահապան զօրքերով։ Սրտիս բարկութեան մէջ հաշուեցի Աշուր աստծու բոլոր զօրքերը և առաջ գնացի այն երկրի վրայ յարձակելու։ Ուլլուսուն Վանեցին իմ մօտենալը տեսնելով՝ դուրս եկաւ իւր զօրքով և մի ապահով տեղ կացաւ բարձր լեռների խոռոչներում։ Գրաւեցի և մոխիր դարձրի նորա Թագաւորանիստ քաղաքը և Իզիբիա ու Արմիտ ահագին ամրոցները։ Բոլոր Ուրսա Ուրարդեցուն պատկանողներին սպանեցի իրանց բարձր լեռներում. իմ ձեռքով բռնեցի 250 հոգի նորա գերդաստանից. գրաւեցի 55 պարսպապատ քաղաք, որոնցից ութը հասարակ քաղաքներ էին, և տասնևմէկը անմատչելի բերդեր։ Ուլլուսունի 22 ամուր քաղաքները, որ Ուրսան առել էր, միացրի Ասորեստանի հետ։ Այն

---

լատի աւերակները Քրիստոսից 700 տարի առաջ շինուած Ցուրուքին Թագաւորի ձեռքով, որի գործերը արձանագրուած են եղել նոյն պալատում։

ժամանակ Ուլլուսուն Թուշունի արագութեամբ իջաւ իւր բարձր լեռներից, և եկաւ ինձ պաշտպանելու։ Ներեցի նորան իւր անթիւ յանցանքները. յետ տուի իւր երկըրները և վերստին հաստատեցի իւր թագաւորութեան գահի վրայ։ Ուրսայի առած 2 ամրոցները և 22 մեծ քաղաքները տուի Ուլլուսունին, և շատ աշխատեցայ նորա երկրի խաղաղութեան համար։ Ուրզանա, Մուսասիր քաղաքի թագաւորը, Ուրսա Ուրարդեցուն ապաւինելով մերժել էր ինձ հպատակելու։ Իմ զօրութեամբ և խորագիտութեամբ տիրեցի Մուսասիր քաղաքին. և նա (Ուրզանան) փախաւ ապաւինեցաւ լեռները։ Տիրաբար վարուեցայ Մուսասիրի դէմ. Ուրզանայի կինը, որդիքն ու աղջիկները, անասունները և պալատում եղած բոլոր գանձերն առի, և 2,000 մարդ գերի տարայ։ Առի Ուրսայի Հալդիա և Բագաբարտու աստուածները, նոյնպէս և Ուրզանայի աստուածները և նոցա նուիրական անօթները։ Մուսասիրի առումը և Հալդիա աստծու յափշտակուիլը լսելով, Ուրսան դաշոյնով ինքն իրան խփեց, և մեռաւ իւր մեծամեծների գրկում»։

Ուրսայի մահով Ուրարդին չնուաճուեցաւ. նորան յաջորդեց իւր եղբայրը Արգիստիս (Սկայորդի?), որ պատերազմը քաջութեամբ առաջ տարաւ Ասորեստանցոց դէմ և եղբօր կորցրած գաւառները յետ խլեց նոցանից։ Ասորեստանցիք չկարողացան իրանց ձեռքը պահել նոյն իսկ Մաննայի երկիրը, որի համար պատերազմը սկսուել էր. Արգիստիս դուրս քշեց նոցա այդ նահանգից և իւր տէրութեան հետ միացնելով՝ Վանայ ծովի ափում մի նոր քաղաք շինեց իւր բնակութեան համար։ Այս նպատակով Նինուէից շատ ճարտարապետներ բերել տուեց,

որոնք քաղաքը զարդարեցին փառաւոր շինութիւններով։ Վանայ արձանագրութիւնների մէջ յիշուած Արգիստիսի անունն ու գործերը կարծել է տալիս ոմանց, թէ հէնց Վանն է եղել այս թագաւորի կառուցած քաղաքը։

Այնուհետև արձանագրութիւնները ոչինչ յիշատակութիւն չեն անում Հայաստանի մասին մինչև Ասորեստանի պետութեան կործանումը (708—606)։ Կամ այն է որ այդ հարիւր տարուան ընթացքում Հայերը բոլորովին անկախ են եղել և Հայաստանը ազատ է մնացել Ասորեստանի թագաւորների ազդեցութիւնից, կամ գուցէ պատերազմներ եղել են, բայց անյաջող ելք են ունեցել Ասորեստանցոց համար և այս պատճառով չեն արձանագրուել։ Հայոց պատմութիւնը մի վկայութիւն ունի, որով հաստատւում է թէ Հայաստանը Ասորեստանցոց իշխանութիւնից ազատ էր Է դարում։ Սենեքերիմ թագաւորի որդիքը, Ադրամելէք և Սանասար, իրանց հօրը սպանելով՝ ապաւինեցան Հայաստան և սիրալիր ընդունելութիւն գտան Պարոյրի հօր՝ Սկայորդու կողմից (680)։ Եթէ Ասորեստանցիք մի ազդեցութիւն ունեցած լինէին այդ ժամանակ Հայաստանի վրայ, ոչ հայրասպան իշխանները կը համարձակէին փախչել այնտեղ, և ոչ Սկայորդին կ՚ընդունէր և բնակութեան տեղեր կը տար նոցա իւր երկրում։

## Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԿԱԶԱՆՑ

## 7.

*Ասորեստանի տէրութեան անկումը և Պարոյրի թագաւորելը (606).—Հրաչեայի արշաւանքը Պաղեստին (600—588).—Նորա յաջորդները։*

*Ութերորդ դարու վերջերից Ասորեստանի հզօր տէրութիւնը կամաց կամաց դէպի իւր անկումն է դիմում։ Հարկատու ազգերը այս թուլութիւնից օգուտ քաղելով՝ աշխատում են օտարական լուծը թօթափել։ Հայերը, ինչպէս տեսանք, դուրս քշեցին Ասորեստանցոց իրանց երկրից. նոյնն արին և ուրիշ ազգեր, և ոչ միայն հեռաւոր նահանգները իրանց ազատութիւնը գտան, այլ և Նինուէի անմիջական իշխանութեան տակ գտնուած երկրները, ինչպէս էր Բաբելոնը, յաջողեցան անկախութիւնը ձեռք բերել։ Բայց ամենից աւելի յառաջադէմ գտնուեցան Հայոց արևելեան հարաւային դրացիները՝ Մարք, որոնց ազատիչն եղաւ Դիովկիս. իսկ սորա որդին Փրաւորդէս այնչափ զօրացաւ՝ որ Պարսկաստանը նուաճեց, և սկսաւ մինչև Նինուէի վրայ արշաւանքներ գործել։ Վերջապէս Կիաքսար Ա դաշն կապեց Հայոց Պարոյր իշխանի հետ, որ միասին գնան Ասորեստանի թագաւորութիւնը կործանելու, խոստանալով որ այս օգնութեան փոխարէն թագաւորական թագ ստանայ։ Դաշնակիցների հետ միաբանեցաւ և Բաբելացոց Նաբուպալասար իշխանը, և երեքն էլ գնացին Նինուէի վրայ։ Քաղաքը պաշարմամբ առնուեցաւ ու կործանուեցաւ, և Ասորեստանի վերջին թագաւորը Սարակոս թշնամիների*

ձեռքը չընկնելու համար՝ իւր պալատի մէջ այրուեցաւ իւր կանանց ու գանձերի հետ (606)։

Այսպիսով Պարոյր, ըստ մեր պատմութեան, եղաւ Հայոց առաջին պսակակիր թագաւորը, և այնուհետև Հայաստանը իւր դաշնակցութիւնն անխախտ պահեց Մարաց և Բաբելացոց հետ մինչև Տիգրան Երուանդեան։

Պարոյրին յաջորդեց իւր որդին Հրաչեայ, որ Բաբելացոց Նաբուգոդոնոսոր թագաւորին օգնութիւն գնաց Յուդայի թագաւորութիւնը կործանելու (600—588)։ Այս արշաւանքը լայն դռներ բաց արեց Հայոց վաճառականական գործունէութեան առաջ. Ասորոց, Հրէից, Փիւնիկեցոց, Եգիպտացոց երկիրները, որ տեղերից անցաւ քաղդէոնեան-հայկական բանակը, առատ հունձեր էին առաջարկում Հայոց։ Հրաչեան Պաղեստինից մի փոքրիկ գաղթականութիւն բերեց, որի մէջ նշանաւոր էր Շամբաթ անունով իշխանը. սորա տոհմից առաջ եկաւ Բագրատունեաց երևելի նախարարութիւնը։

Հրաչեայի անմիջական յաջորդներ եղան՝ Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ, Փաւոս, Հայկակ և Երուանդ Սակաւակեաց՝ Տիգրան Ա-ի հայրը, որոնց վրայ պատմութիւնը ոչինչ յիշատակութիւն չէ անում։

---

## 8.

*Տիգրան Ա.—Նորա արշաւանքը Փոքր Ասիա.—Տիգրանի պատերազմը Աժդահակի հետ և Մարաց թագաւորութեան կործանումը* (558).—*Տիգրանի դաշնակցութիւնը Կիւրոսին Լիւդիայի* (550) *և Բաբելոնի* (540—538) *արշաւանքների մէջ։*

Տիգրան Ա Երուանդեան Հայկազանց թագաւորների մէջ ամենից նշանաւորն էր իւր իմաստութեամբ, քաջութեամբը և աշխարհաշինութեամբը։ Ազգային երգիչները այս մեծ թագաւորի սխրագործութիւններով ոգևորուած՝ խօսք չեն գտնում նորա բարեմասնութիւնները գովելու. «Մարմնով յաղթանդամ էր նա, զուարթերես ու քաղցրահայեաց. կերուխումի մէջ պարկեշտ և ցանկութիւնների մէջ չափաւոր. մեծիմաստ և պերճաբան, և ամեն մարդկութեան հարկաւոր բաների մէջ պիտանի։ Արդարադատ ու հաւասարասէր լինելով՝ ոչ լաւերի վրայ նախանձում, և ոչ նուաստներին արհամարհում էր, այլ ամենի վրայ անխտիր տարածում էր իւր խնամքը»։

Իւր երկրի պայծառութեան վրայ հոգ տանելով, Տիգրան առանձին ուշադրութիւն դարձրեց զօրքի բարեկարգութեան վրայ։ Հեծելազօրը, որի թիւը մինչև այն ժամանակ աննշան էր, բազմացրեց ու կարգաւորեց, իսկ հետևակ զօրքը կրթեց և ամենի ձեռքը սուր, տէգ ու նիզակ տուեց. և այն զօրքը՝ որ մինչև այն ժամանակ աղեղ ու պարսաքար բանեցնելով էր պատերազմում, այժմ վահանով ու երկաթի զրահներով էր պատսպարվում։ Այսպիսի կարգաւորեալ բանակի գլուխն անցնելով՝ Տիգրան Արամի ճանապարհովը գնաց դէպի արևմուտք, և նորանից էլ հեռու անցաւ մինչև Յունաց գաղթական-

ների երկիրները՝ Եւողիա և Ցոնիա, որոնց հարկի տակ դնելով վերադարձաւ իւր երկիրը։ Այս զինական յաջողութիւնների արդիւնքն եղաւ երկրի քաղաքային կարգերի յառաջադիմութիւնը և վաճառականութեան բարգաւաճումը. այնպէս որ այնուհետև Հայերը ոչ միայն ամենօրեայ կեանքի հարկաւոր եղած նիւթերը բերում էին օտար երկրներից, այլ և շքեղութեան ու զարդարանքի իրեղէններ. ոսկին, արծաթը և պատուական քարերը, գոյնզգոյն և թանկագին կտաւեղէնները դիզուեցան Հայաստանի երևելի շահաստաններում։

Տիգրանի ժամանակակից էր Մարաց Աժդահակ թագաւորի թոռը Կիւրոս, որ իւր պապից թագաւորութիւնը խլելու գաղտնի միտքն ունենալով՝ բարեկամական դաշն կապեց Տիգրանի հետ։ Երկու իշխանների մտերմութիւնը կասկածի մէջ ձգեց ծերունի թագաւորին, այնպէս որ ցերեկը հանգիստ և գիշերը քուն չունէր։ Այս տագնապի մէջ եղած ժամանակ Աժդահակ մի զարհուրելի երազ էլ տեսաւ, որ նորա խռովութիւնը աւելի ևս սաստկացրեց։ Իբրև թէ Հայոց ձիւնապատ լեռներից մէկի գագաթին մի բարձրահասակ ու գեղեցիկ կին էր նստած, որ ծննդականութեան ցաւով բռնուելով՝ յանկարծ երեք չափահաս կտրիճներ ծնաւ։ Առաջինը առիւծի վրայ հեծաւ և արևմտեան կողմը դիմեց. երկրորդը ընձի վրայ նստած՝ դէպի հիւսիս վազեց. իսկ երրորդը մի վիթխարի վիշապ սանձելով՝ Մարաց տէրութեան վրայ արշաւեց։ Այս վերջինը հասնելով արքունի պալատի մօտ, որի վրայ Աժդահակ իւր աստուածներին զոհ էր մատուցանում, թռաւ տանիքի վրայ և կամենում էր կուռքերը կործանել։ Թագաւորը մէջ մտաւ և կռուի բռնուեցաւ այն կտրիճի

հետ՝ բայց յաղթուեցաւ ու սպանուեցաւ։— Աժդահակ սարսափած զարթեցաւ, գիշերով կանչեց իւր խորհրդականներին և տեսած երազը պատմելով՝ համոզուեցաւ, որ Տիգրան Հայոց Թագաւորի կողմից մեծ վտանգ է սպառնում իւր տէրութեանը։ Խորհրդի որոշման համեմատ՝ Աժդահակ դեսպան ուղարկեց ընծաներով Հայոց Թագաւորին և խնդրեց, որ Տիգրանուհի քրոջը իրան կնութեան տայ, յուսալով որ քրոջ ձեռքով հեշտութեամբ կը կարողանայ եղբօրը կործանել։ Տիգրան համաձայնեցաւ և մեծ փառքով ուղարկեց Տիգրանուհուն Մարաց Թագաւորութեան մայրաքաղաքը Եկբատան։ Աժդահակ իւր քաղցր վարմունքով Տիգրանուհու հաւատարմութիւնը գրաւելուց յետոյ, սկսաւ փառասիրութեան փափուկ լարերը շարժել նորա սրտում, որպէս թէ Տիգրան իւր Զարուհի կնոջ իշխանութիւնից գրգռուելով՝ կամենում է յափշտակել Մարաց Թագաւորութիւնը. ուրեմն այս երկուսից մէկը պէտք է ընտրել, կամ Տիգրանին կորցնել ու վտանգից ազատուիլ և կամ Արեաց առաջ խայտառակ մահ ընդունել։ Խորագէտ Տիգրանուհին իմացաւ Աժդահակի դաւաճանութիւնը, երեսանց հաւանութիւն ցոյց տուեց, բայց ծածուկ հաւատարիմ մարդու ձեռքով ամեն բան յայտնեց եղբօրը։ Ուստի երբ Աժդահակ Հայոց Թագաւորին հրաւիրեց որ երկու տէրութիւնների սահմանագլուխը գայ՝ իբրև թէ մի հարկաւոր գործի վրայ խորհրդակցելու համար, Տիգրան իր զօրքն առաւ և գնաց Մարաց վրայ։ Տիգրանուհին յարմար միջոց գտաւ իւր եղբօր մօտ փախչելու և թշնամական յարաբերութիւններն սկսան։ Բայց հէնց պատերազմի սկզբում Մարաց հրամանատարը Վարբակէս իւր տիրոջը դաւա-

ճանեց, և Աժդահակ անձամբ դուրս ելաւ իւր թագը պաշտպանելու։ Կռուի տաքացած ժամանակը Տիգրան իւր նիզակի հարուածով Աժդահակին սպանեց, որով և պատերազմը վերջացաւ (558)։ Մարաց թագաւորութիւնն ընկաւ Կիւրոսին, որ այսուհետև պարսկական հզօր պետութեան հիմը դրեց։ Իսկ Տիգրան 10,000-ից աւելի գերիներ հանեց Մարաստանից, որոնց մէջ էին Աժդահակի առաջին կինը Անոյշ, շատ արքայորդիք և թագաւորազն օրիորդներ, և բերեց Մասիս լերան արևելեան կողմը բնակեցրեց։ Սոցանից առաջ եկաւ Մուրացան (այսինքն Մարացոց) նախարարութիւնը կամ ինչպէս Գողթան երգերն ասում են՝ Վիշապազունք, Աժդահակի անունից առնելով, որ նշանակում է վիշապ։ Տիգրան իւր քրոջ հաւատարմութիւնը արժանապէս վարձատրեց, պարգևելով նորան իւր նորաշէն Տիգրանակերտ քաղաքը, և նոյն գաւառի եկամուտները յատկացրեց նորան, որպէս զի արքայավայել կեանք վարէ։

Մարաց թագաւորութեան կործանումը միակ գործը չէ, որի մէջ Տիգրան Կիւրոսին գործակից ու դաշնակից գտնուեցաւ։ Հայոց թագաւորի բանակը միացաւ Պարսից հետ նախ Լիւդացոց Կրեսոս թագաւորի (550) և ապա Բաբելացոց դէմ (540—538)։ Երեմիա մարգարէն յայտնի հրաւիրում է Հայոց այս վերջին արշաւանքին մասնակից լինելու. «Առէք նշան 'ի վերայ երկրիդ (Բաբելացոց), փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէք 'ի վերայ դորա գունդս. պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեանցն և Ասքանազեան գնդին. ելէ՛ք 'ի վերայ»։

## 9.

*Տիգրանի յաջորդները (520—330).—Հայաստանի հարաւային արեւմտեան մասը Պարսից տէրութեան նահանգ.—Բիւզանդնի արձանագրութիւնը.—Տերիբազ կուսակալ.—Վահէ և Հայկազանց թագաւորութեան անկումը (330)։*

Տիգրանին որդոց որդի յաջորդեցին Վահագն, Առաւան, Ներսեհ, Զարեհ, Արմոգ, Բագամ, Վան և Վահէ։ Վահագն, Տիգրան Ա-ի կրտսեր որդին, իւր քաջագործութիւնների համար երգուեցաւ հայ վիպասաններից, որոնք Հերակլէսի հետ համեմատեցին նորան և վիշապների (գուցէ Մարաց գաղթականութեան) հետ կռուած ու յաղթած համարեցին, որով Վիշապաքաղ անունը ստացաւ։ Հայերը այս դիւցազնի մարդկային ծնունդը մոռանալով՝ գեղընական ծագում տուին նորան, երկինքն ու երկիրը և ծիրանի ծովը մէկ տեղ եկած և կրակից ու բոցից ծնուած երևակայելով Վահագնին. ուստի և աստուածների կարգը դասեցին նորան և Վրացոց հետ հաւասարապէս պաշտեցին։ Տիգրանի միւս յաջորդների վրայ պատմութիւնը ոչինչ տեղեկութիւն չէ տալիս մինչև Վահէ՝ Հայկազանց վերջին թագաւորը։

Սակայն Յունաց պատմիչների խօսքերից երևում է, որ այս թագաւորները միայն Հայաստանի հիւսիսային արևելեան մասի վրայ իշխեցին, Կուր և Երասխ գետերի հովտի մէջ. իսկ հարաւային արևմտեան մասը հպատակում էր Պարսից և նոյն տէրութեան 20 նահանգներից 11-րդն էր կազմում։ Այս նահանգը բացի դրամական հարկից, տալիս էր Պարսից թագաւորներին 20,000 ձի, որոնք թէև մարմնով փոքր՝ բայց չափազանց կրակոտ էին։

Յոյն պատմիչների խօսքերը ստուգվում են Բիսութուն *) ժայռի վերջին ժամանակներումս կարդացուած սեպաձև արձանագրութիւններով, որ Վշտասպեան Դարեհի հրամանով փորագրուած և նորա գործերն են պարունակում (521—486)։ Այս արձանագրութիւնների մի հատուածը Հայաստանին է վերաբերում, և ցոյց է տալիս թէ Հայերը որպիսի յամառութեամբ կռուել են Պարսից դէմ իրանց երկրի ազատութեան համար, որի մէկ մասի վրայ իշխում էր Դարեհ։

Ահա այն հատուածը՝ այնպէս ինչպէս որ արձանագրուած է Պարսից թագաւորի բերանից.

«...Յետոյ ուղարկեցի Հայաստան Դադարշէս հային, որ իմ ծառան է, և ասացի նորան. «Գնա և խորտակէ այն ապստամբ բանակը, որ ինձ չէ հնազանդւում»։ Դադարշէս գնաց Հայաստանը նուաճելու։ Ապստամբները

---

*) Քիրմանշահից գրեթէ մէկ մղոն հեռու՝ հիւսիսում գտնվում է Բիսութուն ժայռը, որ 456 մէտր բարձրութիւն ունի։ Նորա կողերի վրայ փորագրուած են հսկայաձև պատկերներ սեպաձև արձանագրութիւններով շրջապատած, որոնք այնքան բազմաթիւ են, որ երկու ամիս ժամանակ է հարկաւոր, ասում էր Կէր Պորտըր անգլիացին, միայն օրինակելու համար այդ արձանագրութիւնները և պատկերները։ Այս քանդակներից մէկը պատկերացնում է մի թագաւոր խաղաղ դրութեան մէջ, որի առաջ շարուած են թշնամիները շղթայակապ։ Նա ոտնակոխ է անում յաղթուած թշնամիներից մէկին։ Այս թագաւորը Վշտասպեան Դարեհն է, իսկ գերիները այն իշխաններն են, որոնք օգուտ քաղելով Սմերդ մոգի պատճառով դուրս եկած խռովութիւններից, ապստամբել էին գրեթէ բովանդակ նահանգներում։ Արձանագրութիւնը պատմում է Դարեհի թագաւոր նստելը և թվում է նորա տէրութեան նահանգները։

պատերազմեցան նորա դէմ, բայց Որմիզդ օգնութիւն հասաւ ինձ, իմ բանակը շատ մարդ կոտորեց Թշնամու բանակից։

«Ապստամբները երկրորդ անգամ յարձակեցան Դադարշէսի վրայ։ Որմիզդ օգնեց ինձ և իմ բանակը չարաչար յաղթեց ապստամբների բանակին։

«Երրորդ անգամ ապստամբներն ընկան Դադարշէսի վրայ։ Որմիզդ շնորհեց ինձ օգնութիւն, իմ բանակը դարձեալ շատ մարդ սպանեց Թշնամիների բանակից։ Յետոյ Դադարշէս սպասեց Հայաստան մինչև իմ Մաքաստան գալը»։

Այս երեք պատերազմներով Պարսիկները (չնայելով Դարեհի չափազանց խօսքերին) չկարողացան զսպել Հայոց արիութիւնը։ Ընդհակառակն սոքա, ինչպէս երևում է, քշեցին Պարսից մինչև Ասորեստան, և Դարեհ ստիպուեցաւ նոր զօրավար և նոր բանակ ուղարկել Հայոց վրայ։

«Ոմիսէս իմ ծառան է։ Ես ուղարկեցի նորան Հայաստան և ասացի. «Գնա, ոչնչացրու այն ապստամբ բանակը, որ ինձ չէ հնազանդում»։ Ոմիսէս գնաց Հայաստանին տիրելու։ Ապստամբները Ոմիսէսի առաջն եկան պատերազմելու համար։ Ասորեստանում մի երկիր կայ… անունով. այնտեղ պատերազմեցան։ Որմիզդ օգնութիւն հասաւ ինձ. իմ բանակը շատ մարդ սպանեց ապստամբների բանակից»։

«Երկրորդ անգամ Թշնամիք ճանապարհ ընկան Ոմիսէսի դէմ պատերազմելու համար։ Հայաստանում մի երկիր կայ Անթիգարա (?) անունով. այնտեղ կռուեցան։ Որմիզդ շնորհեց ինձ իւր օգնութիւնը. իմ բանակը շատ

մարդ կոտորեց թշնամիներից։ Յետոյ Ոմիսէս սպառեց Հայաստան մինչև իմ Մարաց երկիր հասնելը»։

Դժբաղդաբար Դարեհ լռում է այդ պատերազմների հետևանքի վրայ, մինչդեռ միւս ապստամբող ազգերի նուաճումը յայտնի յիշվում է արձանագրութեան մէջ, որոնց առաջնորդներին Դարեհ սաստիկ տանջանքներով սպանեց։

Ինչպէս և իցէ, Դարեհի յաջորդները մինչև Հոմանուն Դարեհ Կոդոմանոս շարունակեցին իշխել Հայաստանի հարաւային արևմտեան մասի վրայ, որ կառավարում էին պարսիկ կուսակալների ձեռքով։ Արտաշէս Բ-ի թագաւորութեան ժամանակ (404—358) արևմտեան Հայաստանը կառավարում էր Պարսից երևելի իշխաններից մէկը՝ Տերիբազ։ Նորա պալատը, որ գտնվում էր Եփրատի ափերի վրայ, իւր ճոխութեամբ թագաւորական ապարանքից չէր զանազանվում։ Այս կուսակալները իրանց զօրքը հաւաքում էին Հայաստանի լեռնոտ մասերից՝ Խաղտեաց, Տայոց, Կորդուաց աշխարհներից և Արարատեան նահանգի Բասեան գաւառից։ Սոքա թէպէտ Պարսիկներից ապստամբ էին, ասում է Քսենոֆոն, և իրանց կանանց ու որդոց հետ սարերն ապաւինելով՝ մօտ չէին թողնում Պարսից, մեծամեծ քարեր գլորելով նոցա վրայ, բայց երբև վարձկան զօրք ծառայում էին արքայից արքային. որովհետև ունէին իրանց յատուկ երկաթի զէնքերը, նետ, աղեղ, սաղաւարտ և վահան։

Ահա այսպէս Բիսութունի սեպաձև արձանագրութիւնները և Յունաց պատմիչների խօսքերը փոքր ի շատէ լուսաբանում են Հայաստանի պատմութեան այն շրջանը, որ գրաւում է Տիգրանի յաջորդների ժամանակ մինչև

Վահէ, Հայկազանց վերջին շառաւիղը, որ 50,000 հետեւակ և 7,000 ձիաւոր զօրքով Դարեհ Կոդոմանոսին օգնութիւն գնաց Պարսկաստանի և իւր երկրի անկախութիւնը պաշտպանելու համար։ Արբելայի ճակատամարտը Ասիայի բաղդը վճռեց, և Հայաստանը Վահէի մահով ընկաւ Մակեդոնացի աշխարհակալի ձեռքը (330)։

---

## Ե. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ-ՍԵԼԵՒԿԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### 10.

*Հայաստանի վիճակը Արբելայի պատերազմից յետոյ.—Միհրան կուսակալ (325).—Փրատափերնէս և Նէոպտողոմէոս.—Արդուարդ Հայկազն.—Արտաւազ.—Արտաշիաս և Զարիադրէս.—Արտաւազդ։*

Վահէի մահից յետոյ Հայոց աշխարհին վիճակուեցաւ մակեդոնական-սելևկեան իշխանութեանը ենթարկուելու մինչև դրեթէ Պարթևաց Հայաստանը դալը (330—150)։ Թէ ինչ վիճակի մէջ էր Հայոց երկիրը այս հարիւր ութսուն տարուան ընթացքում, երբ Ասիայի մի մասը մակեդոնական զօրավարների փառասիրութեան ասպարէզ էր դարձել,—որոշ յայտնի չէ, որովհետև ազգային պատմութիւնը այս միջոցի վրայ ոչինչ յիշատակութիւն չէ անում. ուստի հարկ է օտարական աղբիւրներին դիմել, որոնք թէև շատ մութ, երբեմն էլ միմեանց անհամաձայն են, բայց և այնպէս փոքր ի շատէ լոյս են տալիս Հայաստանի վիճակի վրայ այն խառն ու մրրկալի միջոցում, երբ Խորենացու լակոնական վկայութեանը նայելով՝ «այր զարամբ ելանէին տիրել աշխարհիս»։

մարդ կոտորեց թշնամիներից։ Ցետոյ Ոմիսէս սպանեց Հայաստան մինչև իմ Մարաց երկիր համնելը»։

Դժբաղդաբար Դարեհ լռում է այդ պատերազմների հետևանքի վրայ, մինչդեռ միւս ապստամբող ազգերի նուաճումը յայտնի յիշվում է արձանագրութեան մէջ, որոնց առաջնորդներին Դարեհ սաստիկ տանջանքներով սպանեց։

Ինչպէս և իցէ, Դարեհի յաջորդները մինչև հոմանուն Դարեհ Կոդոմանոս շարունակեցին իշխել Հայաստանի հարաւային արևմտեան մասի վրայ, որ կառավարում էին պարսիկ կուսակալների ձեռքով։ Արտաշէս Բ-ի թագաւորութեան ժամանակ (404—358) արևմտեան Հայաստանը կառավարում էր Պարսից երևելի իշխաններից մէկը՝ Տերիբազ։ Նորա պալատը, որ գտնվում էր Եփրատի ափերի վրայ, իւր ճոխութեամբ թագաւորական ապրանքից չէր զանազանվում։ Այս կուսակալները իրանց զօրքը հաւաքում էին Հայաստանի լեռնոտ մասերից՝ Խաղտեաց, Տայոց, Կորդուաց աշխարհներից և Արարատեան նահանգի Բասեան գաւառից։ Սորա յժէպէտ Պարսիկներից ապստամբ էին, ասում է Քսենոփոն, և իրանց կանանց ու որդոց հետ սարերն ապաւինելով մօտ չէին թողնում Պարսից, մեծամեծ քարեր գլորելով նոցա վրայ, բայց իբրև վարձկան զօրք ծառայում էին արքայից արքային. որովհետև ունէին իրանց յատուկ երկաթի զէնքերը, նետ, աղեղ, սպաւարտ և վահան։

Ահա այսպէս Բիսութունի սեպաձև արձանագրութիւնները և Յոնաց պատմիչների խօսքերը փոքր ի շատէ լուսաբանում են Հայաստանի պատմութեան այն շրջանը, որ գրաւում է Տիգրանի յաջորդների ժամանակ մինչև

Վահէ, Հայկազանց վերջին շառաւիղը, որ 50,000 հետեակ և 7,000 ձիաւոր զօրքով Դարեհ Կոդոմանոսին օգնութիւն գնաց Պարսկաստանի և իւր երկրի անկախութիւնը պաշտպանելու համար։ Արբելայի ճակատամարտը Ասիայի բաղդը վճռեց, և Հայաստանը Վահէի մահով ընկաւ Մակեդոնացի աշխարհակալի ձեռքը (330)։

---

## Ե. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ-ՍԵԼԵՒԿԵԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### 10.

*Հայաստանի վիճակը Արբելայի պատերազմից յետոյ.—Միհրան կուսակալ (325).—Փրատափերնէս և Նէոպտողմէոս.—Արդուարդ Հայկազն.—Արտաւազ.—Արտաշիաս և Զատրիադէս.—Արտաւազդ։*

Վահէի մահից յետոյ Հայոց աշխարհին վիճակուեցաւ մակեդոնական-սելևկեան իշխանութեանը ենթարկուելու մինչև գրեթէ Պարթևաց Հայաստանը գալը (330—150)։ Թէ ինչ վիճակի մէջ էր Հայոց երկիրը այս հարիւր ութսուն տարուան ընթացքում, երբ Ասիայի մի մասը մակեդոնական զօրավարների փառասիրութեան ասպարէզ էր դարձել,—որոշ յայտնի չէ, որովհետև ազգային պատմութիւնը այս միջոցի վրայ ոչինչ յիշատակութիւն չէ անում. ուստի հարկ է օտարական աղբիւրներին դիմել, որոնք թէև շատ մութ, երբեմն էլ միմեանց անհամաձայն են, բայց և այնպէս փոքր ի շատէ լոյս են տալիս Հայաստանի վիճակի վրայ այն խառն ու մրրկալից միջոցում, երբ Խորենացու լակոնական վկայութեանը նայելով՝ «այր զաւրամբ ելանէին տիրել աշխարհիս»։

Օտար պատմիչների խօսքերից երևում է, որ Հայաստանը ամբողջապէս չնուաճեցաւ Յոյներից, այլ միայն երկրի այն նահանգները, որ առաջուց էլ Պարսից իշխանութեան տակ էին գտնվում։ Որովհետև այս փոփոխական ժամանակների պատմութիւնն անելիս՝ նոքա միայն Հայաստանի հարաւային և արևմտեան մասերի վրայ են ակնարկում, իսկ հիւսիսային կողմերի վրայ այն ժամանակ են յիշատակութիւն անում, երբ Արտաշիաս հայ իշխանը Սելևկացիներից ապահով մնալու համար՝ իւր աթոռը հաստատեց վերին Հայաստանում։ Բացի սրանից, յիշեալ պատմիչները որոշ ասում են, թէ Աղէքսանդրի մահից յետոյ, երբ նորա զօրավարները Ասիայի ամենագեղեցիկ երկրները իրանց մէջ բաժանեցին, հիւսիսային նահանգները, որոնց թվումն է և Հայոց երկրի մի մասը, բնիկ իշխանների ձեռքով կառավարուեցաւ։ Դժբաղդաբար պատմութիւնը չէ պահպանել այս ազգային իշխանների ոչ գործերը և ոչ նոյն իսկ անունները, որոնք իշխեցին Կուր և Երասխ գետերով պարսպարուած լեռնոտ հովտում, ուր, ինչպէս տեսանք, Հայոց անկախութեան ոգին շարունակ պահպանուեցաւ Ասիայի աշխարհակալներից։

Հարաւային արևմտեան Հայաստանում Աղէքսանդր իւր կենդանութեան ժամանակ կուսակալ նշանակեց Միհրան անունով պարսից իշխանին (325), որ Սարդայի ամրոցը յանձնել էր նորան։ Բայց մակեդոնացի աշխարհակալի կանխահաս մահից յետոյ, երբ նորա տիրապետած երկրները բաժանուեցան իւր զօրավարների մէջ, հարաւային Հայաստանը բաժին ընկաւ Փրատափերնէսին։ Միևնոյն ժամանակ Պերտիկկաս, Աղէքսանդրի ժա-

ռանգների խնամակալը, որևմտեան Հայաստանը Նէոպըտոլոմէոս յոյն իշխանին յանձնեց։ Այս երկու իշխանները իշխեցին Հայաստանի այս մասի վրայ թագաւոր անունով։ Նէոպտոլոմէոս իւր չարաբարոյ բնաւորութեամբ այնպէս նեղացնում էր Հայոց, որ Արդուարդ հայկազն իշխանը խրախուսուելով Կապադովկիայի Արիարաթ արքայորդուց (որին Պերտիկկաս իւր հայրենի աթոռից զրկելով երկիրը Եւմէնէսին էր տուել), հաւաքեց իւր դրօշակի տակ հայ զօրք, Նէոպտոլոմէոսին փախցրեց Հայաստանից և երկրի իշխանութիւնը ձեռք բերեց։ Եւմենէս Պերտիկկասի յանձնարարութեամբ զօրքով եկաւ Հայաստան և Նէոպտոլոմէոսին միւս անգամ իւր տեղը հաստատեց. բայց անհանգիստ Նէոպտոլոմէոսը շուտով միացաւ Եւմենէսի թշնամիների հետ ու պատերազմի մէջ սպանուեցաւ նորանից։ Այսպիսով Հայաստանի իշխանութիւնը դարձեալ Արդուարդի ձեռքն անցաւ։ Շուտով Եւմենէս էլ մեռաւ և Արդուարդ զօրք տուեց Կապադովկիայի արքայորդուն, որ երթայ իւր երկրին տիրէ։ Արիարաթ Հայոց օգնութեամբ Մակեդոնացոց շքեղ և հայրենի գահը բազմեցաւ։

Այս միջոցին տեղի ունեցաւ Իպսոսի հռչակաւոր ճակատամարտը Փռիւգիայում, որի հետեւանքն եղաւ մակեդոնական երկրների երկրորդ բաժանումը։ Հայաստանը այս բաժանմամբ ուրիշ երկրների հետ ընկաւ Սելևկեան թագաւորների իշխանութեան տակ (301), որոնք իրանց աթոռը հաստատեցին Ասորոց երկրում, իսկ միւս երկրները կառավարեցին իրանց զօրավարների կամ բնիկ իշխանների ձեռքով։ Այս ժամանակի առաջին հայ իշխանն եղաւ Արտաւազ, ըստ Պոլիւբի Ատրպատականի

թագաւոր։ Արտաւազ օգուտ քաղելով Անտիոքոս Գ-ի պատերազմներից, փորձ փորձեց Սելևկացոց լուծը թօթափելու, բայց առանց պատերազմի ստիպուեցաւ հնազանդել նորան։ Արտաւազի մահից յետոյ, Անտիոքոս Հայոց զսպելու համար՝ Հայաստանը երկու կուսակալութիւն բաժանեց. Մեծ Հայոց վրայ կարգեց Արտաշիսս կամ Արտաշէս հայ իշխանին, իսկ Փոքր Հայոց և Ծոփաց նահանգի վրայ Զատրիադէսին կամ Զարեհին։ Արտաշիսս այս շրջանի իշխանների մէջ ամենից նշանաւոր անձն էր։ Արուեստների, երկրագործութեան և վաճառականութեան պաշտպան լինելով, Արտաշիսս իւր իմաստուն կառավարութեամբ Հայոց սէրը գրաւեց և շահուելով Անտիոքոս Գ-ի Մագնէսիայի մօտ Հռոմայեցիներից կրած պարտութիւնից, Սելևկացոց հպատակութիւնից դուրս եկաւ և ինքնիշխան տիրեց իւր երկրի վրայ թագաւոր անունով։ Այս միջոցումն էր որ Հռոմայեցոց ոխերիմ թշնամին ու Կարթագենացոց երևելի զօրավար Անիբաղը Անտիոքոսի պալատից փախչելով ապաւինեցաւ Հայաստան։ Արտաշիսս սիրով ընդունեց Աննիբաղին և նորա խորհրդով շինեց Արտաշատ քաղաքը Երասխի ձախ եզերքի վրայ (189)։ Բայց երբ հայ իշխանը իւր երկիրը Սելևկացիներից ապահովելու համար Հռոմայեցոց հետ դաշն կապեց, Աննիբաղ կասկածելով նորա բարեկամութեան վրայ փախաւ Բիւթանիա։ Մի դաշինքով՝ որ 180-ին կապուեցաւ Փոքր Ասիայի իշխանների մէջ, Արտաշիսս Հայաստանի մեծ մասին տէր դարձաւ։ Իսկ երբ Զատրիադէս մեռաւ, Արտաշիսս կամեցաւ սպանել նորա Միհրոբարզան որդուն և երկրները գրաւել. բայց Կա-

պադովկիայի Արիաթար թագաւորը յետ պահեց նորան այս դիտաւորութիւնից։

Արտաշէսը երկար ժամանակ իշխանութիւն վարելուց յետոյ՝ խաղաղութեամբ մեռաւ, իւր տէրութիւնը թողլով անարժան Արտաւազդ որդուն, որի ժամանակ Հայերը իրանց տարտամ դրութիւնից ձանձրանալով՝ ստիպեցան դիմել Պարթևաց, որ գան ու իրանց երկրին տէրութիւն անեն (150)։

---

## Զ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԻ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ՀԻՆ ԴԱՐԵՐՈՒՄ

### 11.

*Հին Հայոց կրօնը.—Կառավարութիւն.—Տնտեսական կեանք.—Երկրագործութիւն և անասնաբուծութիւն.—Վաճառականութիւն։*

Որքան խոր թափանցենք ժողովրդական կեանքի հանգամանքների մէջ, այնքան աւելի պիտի համոզուենք, որ իւրաքանչիւր ժողովուրդ գոյութեան ամենահին ժամանակներում հարկաւորութիւն է զգում մի կրօն ունենալու, առանց որի մարդ չէ կարող ապրել, ինչպէս որ անհնար է նորան ապրել առանց հացի ու ջրի։ Հայերը անյիշատակ ժամանակներից հետևել են բնութեան կրօնին, որի մէջ գլխաւոր տեղը բռնում են երկնքի երկու մեծ լուսաւորները—արեգակն ու լուսինը։ Բնութեան այս և ուրիշ երևոյթները, որոնց ասպարէզը երկինքն է, երկրիս վրայ պատահած ամենօրեայ դէպքերի սկզբնապատճառն են համարուել։ Արեգակի և լուսա-

նի ընթացքը, աստղերի ծագելն ու մայր մտնելը սովորեցրել էին մարդոց օրերի, ամիսների, եղանակների, տարիների փոփոխութիւնները, երկրագործական աշխատանքների և քաղաքական կեանքի պարապմունքների կարգ ու կանոնը։ Աստղերի շարժման, նոցա միմեանց հետ ունեցած յարաբերութիւնների մէջ մարդիկ սկսան կարդալ իրանց ճակատագրի գաղտնիքը։ Այսպէս սկսաւ Հայոց շրջապատող ազգերի կրօնը, այսպէս և Հայոց։

Արեգակը՝ իբրև արական սեռի աստուած, լուսինը՝ իբրև իգական աստուածութիւն—«կրակ քոյր» և աստղերը անյիշատակ ժամանակներից պաշտվում էին Հայերից։ Նոցանից առաջինը՝ Արեգակն, որ ուրիշ երկու ձևով էլ է երևում—Արեգ, Արև, այնպիսի խոր արմատ էր դրել Հայոց մէջ, որ չնայելով նոցա հետևողների դէմ յարուցուած հալածանքներին, «Արևորդիքը» քրիստոնէական դարերումն էլ երկար ժամանակ շարունակեցին իրանց պաշտօնը։ Նոյն իսկ մեր եկեղեցական գրականութեան մէջ արեգակի անունը շատ անգամ է յիշվում, իբրև բարի Աստուծոյ և Փրկչի փոխանակ (Արեգակն արդարութեան)։ Հին Հայոց ամիսներից մէկը այս աստուածութեան անունով կոչվում էր Արեգ. նոյնպէս Հայաստանի գաւառներից մէկը՝ Երասխի հիւսիսակողմում ստացաւ Արևիք անունը, այսինքն Արևի կուսակիցներ։ Ոմանք մինչև անգամ կարծում են թէ Վանի սկզբնական անունը պէտք է կարդալ Ձահ-Միհր-կերտ, իբր Արեգակ աստծու նուիրուած քաղաք (որովհետև Ձահ-Միհր-զենդ լեզուով նշանակում է թագաւոր կամ աստուած Արեգակն), ինչպէս որ մի ուրիշ քաղաք Վանի հարաւակողմում—Ոստան Լուսնին էր նուիրուած։

Այսպէս ուրեմն երկնային լուսաւորները, որոնց հետ միանում էր և ջրի պաշտօնը—«աղբիւր եղբայր», Հայոց նախնական բնութեան կրօնի շրջանն են կազմում։ Բայց սորանով չէ վերջանում Հայոց կրօնը։ Ուշ դարձնելով քուն հայկական երկրորդական աստուածութիւնների բնաւորութեանը (Ցարլէզը, Քաջք, Պարիկ, Ցուշկապարիկ, Համբարու և այլն), որ քրիստոնէական գրականութիւնը պատահմամբ պահպանել է մեզ, կարելի է ենթադրել թէ Հայերը ունեցել են մի առանձին կրօնական դրութիւն, որի գլխաւոր աստուածները ժամանակ անցնելուց յետոյ տեղի են տուել ասորա-բաբելական և արիական ցեղերի աստուածներին, թէև սոցա էլ Հայերը առանձին բնաւորութիւն են տուել։ Անահիտ (ըստ Ասորեստանցոց Բելտիս կամ Բիլատ—տիկին), որ միևնոյն անունով երևում է և Պարսից մէջ, Աստղիկ (ըստ Ասոր. Իշտար, ըստ Փիւն. Աստարտա), Նանէ (ըստ Ասոր. Նանա) և Բարշամ (ըստ Ասոր. Բար-Չէմ) Ասորեստանի աշխարհակալները մտցրին Հայաստան։ Սոցանից Անահիտ տիկինը ժամանակ անցնելով մեծ նշանակութիւն ստացաւ Հայոց մէջ, իբրև «մայր ամենայն զգաստութեանց, փառք և կեցուցիչ ազգին, շունչ և կենդանութիւն աշխարհին Հայոց». իսկ Աստղիկ այնքան ժողովրդականութիւն գտաւ, որ Հայերը արժանի համարեցին նորան իրանց երևելի դիւցազնի՝ Վահագնի կին դառնալ։ Տարօն գաւառում Արշակունեաց ժամանակ մի մեհեան կար Աստղիկին ընծայուած, որ կոչվում էր «Սենեակ Վահագնի»։

Աւելի յայտնի երևում է արիական ցեղերի կրօնական ազդեցութիւնը Հայոց վրայ՝ ոչ առանձին աստուածութիւններով, այլ ամբողջ վարդապետութեամբ։ Մեր

հին լեզուի մէջ մի քանի կրօնական անուններ ենք գըտնում, որոնք Պարսից ու Հայոց յատուկ են և գրեթէ բոլոր զրադաշտական վարդապետութեան բովանդակութիւնը բացատրում են։ Բարձրագոյն էակը կոչվում էր Հայոց մէջ Արամազդ (ըստ Զենդ-Աւեստայի Ահուրա-Մազդա), որ Զրադաշտի վարդապետութեան համաձայն համարվում էր «երկնի և երկրի արարիչ», և թէպէտ բարութեան սկզբի հակառակորդ չար էակը՝ Արհմն (Ահրիման) չէ երևում Հայոց հին կրօնի մէջ, բայց նորան ծառայող ոգիները շատ անգամ յիշատակվում են։ Այսպէս և Հրեշտակ ու Դև (Փէրուէր կամ նոր ձևով Ֆէրիշտէ և Դևա, ըստ Զենդ-Աւեստայի բարի և չար ոգիներ) և Դժոխք (Դուզախ—Դևերի բնակարան) իրանց նախնական նշանակութեամբ Պարսկաստանից Հայաստան անցած և քրիստոնէական գաղափարների հետ միաւորուած են։

Կրակի պաշտօնը զրադաշտական վարդապետութեան մէջ մեծ տեղ էր բռնում։ Հայերն էլ պաշտում էին նորան միևնոյն Միհր անունով, իբրև որդի Արամազդի և ընդհանուր հրոյ նշանակ։ Միայն Հայոց կրակը մի անտեսանելի «հուր» էր, որ տարին մի անգամ ներկայացնում էին խարոյկի ձևով, իսկ Պարսիկները միշտ անշէջ էին պահում նիւթական «կրակը»։

Մի ուրիշ աստուածութիւն, որ Պարսկաստանից եկած է համարվում, էր Տիւր (պարս. Տիր), որի պարտաւորութիւնն էր հսկել մարդկանց վրայ և նոցա բարի ու չար գործերը արձանագրել «Կենաց գրքի մէջ»։ Ժողովուրդը Գրող աստուած էր կոչում նորան, իսկ քուրմերը—Գրիչ Արամազդայ և ուսուցիչ ճարտարութեան»

(արուեստների), և հաւատացնում էին թէ մարդկանց մեռնելուց յետոյ՝ նոցա հոգիքը տանում է Արամազդի առաջ, որոնց դատաստանը կատարվում է Կենաց գրքի մէջ գրուածքների համաձայն։ «Գրողը տանի քեզ, ճակատիս էս էր գրած» ասացուածները մինչև այսօր պահել են մեր ժողովրդի մէջ այս աստծու յիշատակը։

Հայկազանց ժամանակ աստուածներին երկրպագութիւն ու զոհ մատուցանելու տեղերը անտառներն ու լեռներն էին։ Շատ տարածուած չէր Հայոց մէջ աստուածներին արձաններ, բագիններ ու մեհեաններ կանգնելու սովորութիւնը. այդ սովորութիւնը մտած էր միայն մի քանի հարաւային և արևմտեան գաւառներում, իբրև հետևանք Ասորեստանի և Փոքր Ասիայի ազգերի ազդեցութեանը *)։ Արևին երկար ժամանակ լեռների գլխին էին երկրպագութիւն ու զոհ մատուցանում Հայերը, իսկ Լուսնին Սեպուհ լերան գլխին։ Առ հասարակ ժողովրդական կեանքի սկզբնական ժամանակներում քաղաքական իշխանները միևնոյն ժամանակ և կրօնական պաշտօնեաներ են։ Պատմութեան մէկ երկու ակնարկութիւններից երևում է, թէ և մեզանում առաջին նահապետները միանգամայն քրմապետներ էլ են եղել։ Սօսեաց սրբազան անտառը, որի տերևների հանդարտ կամ սաստիկ խշխշոցից զանազան գուշակութիւններ էին անում, Արմենակն էր տնկել։ Արայեան Արայի որդին՝ հանճարեղ

*) Վանի և Ասորեստանի արձանագրութիւնները յիշում են մի աստուածութիւն Հալդիա անունով, որի գլխաւոր տաճարը Մուսասիրի մէջ էր, և Երկնքի (Պարնիս) ու Արևի (Տիասպաս) հետ կազմում էր մի աստուածային երրորդութիւն. ուրեմն Հալդիա Լուսնի աստուածութիւնն էր։

Անուշաւանը Սօսեաց անտառի պաշտամանը նուիրուեցաւ և այս պատճառով «Սօսանուէր» կոչուեցաւ։ Վերջապէս Վահագնի սերունդը իրանց հօր աստուածանալուց յետոյ, Տիգրանի յաջորդների ժամանակ ստացան քրմապետութեան պաշտօնը, և այսպիսով քաղաքական և կրօնական իշխանութիւնը միմեանցից բաժանուեցան։

Կրօնի պէս կառավարութեան սկիզբն էլ խոր հնութեան մէջ ծածկուած է։ Իւրաքանչիւր ցեղ, իւրաքանչիւր ժողովուրդ, երբ միասին խմբվում է ընկերութեամբ կեանք վարելու համար, պէտք է կարգաւորեալ կառավարութիւն ունենայ որոշ օրէնքներով։

Բայց կառավարութեան մէկ կամ միւս ձևը կախուած է երկրի դիրքից, ժողովրդական կեանքի պայմաններից և շրջակայ ազգերի բնաւորութիւնից։ Պատմութիւնից տեսնում ենք, որ քարքրոտ ու աւազոտ տեղերում և ծովային ափերի մօտ բնակող ժողովրդները, իրանց չոր ու ցամաք երկրի պատճառով, շուտով ստիպվում են գաշտային երկիրները ասպատակել կողոպուտ անելու դիտաւորութեամբ։ Այսպիսի ժողովուրդների մէջ բնականապէս գերագոյն իշխանութիւնը հէնց սկզբից այն գերդաստանի ձեռքն է անցնում, որից դուրս են գալիս քաջասիրտ և յաջողակ առաջնորդներ. կազմվում է մի ժառանգական հարստութիւն և միապետական իշխանութիւնը անզգալի կերպով հաստատութիւն է առնում։ Ուրիշ բան է պատահում հովուական ու երկրագործական խաղաղ ժողովրդների մէջ։ Այստեղ առանձին գերդաստաններ միանում և ցեղական ընկերութիւններ են կազմում առանձին ցեղապետների պաշտպանութեան տակ, որոնց պարտքն է հովուել իրանց ցեղը և պաշտ-

պանել նորա սեպհականութիւնն ու աշխատանքի պտուղը
անիրաւութեան դէմ։ Այստեղ արիւնակից գերդաստան-
ներ կամաց-կամաց ցեղական ընկերութիւններ կազմելով՝
գերդաստանի հօր իրաւունքներն էլ անցնում են ցեղա-
պետին, և այսպիսով կազմվում է կալուածական կամ
տանուտիրական կառավարութիւնը, որ Հայոց էլ՝ իբրև
հովուական ու երկրագործական ժողովրդի, սեպհական
էր սկզբնական ժամանակներումը։ Մեր առաջին նահա-
պետները մինչև Արամ, ժողովրդի համար ոչ այլ ինչ
էին, եթէ ոչ հայրեր, որոնք խնամում էին իրանց ցեղը
այնպէս՝ ինչպէս որ գերդաստանի հայրը հոգում է իւր
որդոց պիտոյքը, կամ ինչպէս այժմեան գիւղական կեան-
քում «տանուտէրը» կամ «ծերը» կառավարում է իւր
գիւղը։ Զանազանութիւնը միայն նորանում էր, որ մեր
նահապետների մէջ կար մէկը, որ ժառանգութեամբ
ստանում էր ազգի ընդհանուր կառավարութիւնը և որի
հովանաւորութեան տակ գտնվում էին միւս ցեղապետ-
ները։ Այս առաւելութիւնն ունէին Հայկից յետոյ ուղիղ
գծով յաջորդող նահապետները, որոնց տանուտիրական
իրաւունքների ընդհանրութիւնը հիմնվում էր ժառան-
գական սեպհականութեան վրայ, որով մէկը իբրև գլխա-
ւոր նահապետ՝ իւր ուզածին պէս կամ հին սովորու-
թեան համեմատ բաժանում էր կալուածները արիւնա-
կից ցեղերին։ Բայց այս գլխաւորութիւնը այնպէս ան-
զգալի էր, որ երբեմն գլխաւոր տանուտէր նահապետը
իւր հայրերից իրան ժառանգութեամբ ընկած երկիրը
թողնում և ուրիշ տեղեր էր գաղթում։ Սորանից երե-
ւում է, որ գլխաւոր նահապետի իրաւունքը շատ չէր

պանդանվում երկրորդական նահապետների կամ ցեղապետների իրաւունքից։

Այս տանուտիրական խաղաղ ու պարզ կառավարութիւնը տեւեց Հայոց մէջ մինչև Արամ, որ բոլոր ցեղերը միացնելով՝ միապետական իշխանութեան սկիզբը դրեց Հայոց երկրում։ Արամի հաստատած միապետութիւնը արդիւնաւոր հետեւանքներ կունենար Հայաստանի համար, եթէ քաղաքական կեանքի այս բնական զարգացումը ընդհատուած չլինէր Ասորեստանի տիրապետութեամբ, որի շնորհիւ հայերը դարձեալ առաջուան ցեղերին բաժանուեցան։ Նինուէի թագաւորները, ուրիշ նահանգների նման, Հայաստանի հարաւային և արեւմտեան մասերը կառավարեցին բնիկ իշխանների ձեռքով, որոնց գլխաւոր պարտքն էր հարկը հաւաքել, մէկ մասը թագաւորի և միւսը տեղական պէտքերի համար։ Նոքա իրանց ձեռքի տակ ունէին բազմաթիւ դատաւորներ, որոնք ցրուած էին երկրի գաւառներում։ Այս վերջինները ունէին իրանց տեղական կառավարիչները, որոնք առանձին խորհրդի միջնորդութեամբ հոգում էին ժողովրդի պէտքերը։ Տարակոյս չկայ, որ այս վարչական ձևը առանց ազդեցութեան չմնաց Հայոց կառավարութեան վրայ Հայկազանց թագաւորների ժամանակ, որոնց կառավարութեան եղանակի մասին թէև ոչինչ չենք իմանում, բայց յայտնի է որ Տիգրան Երուանդեանի օրերից հաստատուն քաղաքային կարգեր սահմանուեցան Հայոց մէջ, և Պարսից ու Յունաց գրերի գործածութիւնը մտաւ։

Առ հասարակ Տիգրանի տուած զարկը ոչ միայն երկրի կառավարութեան, վաճառականութեան ու արուեստների վրայ ազդեցութիւն ունեցաւ, այլ և ընտա-

ձեկան կեանքի պայմանների վրայ։ Առաջին փարթամութեան նշանները այս թագաւորի ժամանակ երևում են Հայոց մէջ, որով այնուհետև քաղաքացոց ու գիւղացոց կեանքի մէջ զգալի զանազանութիւն պիտի լինէր։ Այս վերջինները, այսինքն գիւղացիք, որոնք միշտ ու ամեն տեղ ժողովրդի մեծամասնութիւնն են կազմում, շարունակեցին այնուհետև էլ նահապետական պարզ կեանքով ապրել, որ Հայոց մի առանձին յատկութիւնն է եղած։ Հետաքրքրական են Քսենոփոնի տուած տեղեկութիւնները Հայոց տնտեսական կեանքի և հիւրասիրութեան վրայ, երբ Պարսկաստանից յետ դառնալով՝ Հայոց երկրից անցնելու առիթն ունեցաւ։ Իւրաքանչիւր գիւղ կամ աւան ունէր իւր աւանապետը, որ կառավարում էր ժողովրդին հին նահապետական օրէնքներով։ Նոցա բնակարանները գետնափոր էին, որոնց դռները ջրհորի բերանների նման նեղ ու խոր էին, իսկ ներքին կողմը ընդարձակ. դռները միայն անասունների համար էին բաց անում, իսկ իրանք մարդիկը սանդուղներով երդիքից դուրս ու տուն էին անում։ Տների մէջ մի կողմը ախոռներում կապուած կերակրվում էին այծ, ոչխար, կով, հաւ. իսկ միւս կողմը շինած էին շտեմարաններ՝ լի ցորենով, գարով և տեսակ տեսակ բանջարներով, նոյնպէս և գարուց հանած մի տեսակ թունդ գինով, որ սովորողներին շատ ախորժելի էր թվում։ Այս ըմպելիքը կարասների մէջ էր պահվում, և տանեցիք ծարաւած ժամանակները մէջը եղէգ էին դնում և ծծելով խմում էին։ Մի քանի գիւղերում կային նոյնպէս հին և անուշահոտ գինիներ, և տեսակ տեսակ իւղեր, որոնցով հայ գիւղացիքը յունական սովորութեամբ քսվում էին, ինչ-

պէս նոքա իրանց ատտիկեան ձէթովը. այսինքն խաղի ճարպ և դառն նշից ու բեեկնից հանած իւղ, որոնցից նոյնպէս անուշահոտ իւղեր էին պատրաստում։ Քսենոֆոն, որ այս տեղեկութիւնները տալիս է, պատմում է թէ ինչ գեղեցիկ հիւրասիրութեամբ ընդունեցին Յունաց հայ գիւղացիքը։ Սեղանի ժամանակ նոցա առաջ բերին ամեն տեսակ մսեղէն կերակուրներ. գառն, ուլ, հորթ, խոզենի և հաւ, ցորենի և գարու հաց ու գինի։

Հայերը ի բնէ ժիր և աշխատասէր ժողովուրդ լինելով՝ շատ վաղ ժամանակներից իրանց տուին երկրագործութեան և անասնապահութեան։ Հայաստանի բերրի դաշտերը և ճոխ արօտատեղիքը այս բնական ձգտման զօրաւոր պատճառներն են։ Հայաստանի արգաւանդ դաշտերը տարէցտարի առատութեամբ տալիս էին ցորեն, գարի, բրինձ. հովիտներն էլ, որոնք լի էին արօտներով, սնուցանում էին անհամար ընտանի կենդանիներ՝ ձի, ջորի, գոմէշ, ոչխար, այծ, էշ և կով։ Բացի սորանից, իւրաքանչիւր նահանգ կամ գաւառ իւր կլիմայի և դիրքի համեմատ՝ տեսակ տեսակ բերքեր ու հանքեր էր տալիս. հիւսիսային արեւմտեան կողմերը տալիս էին աղ և բուրեղ, Աղձնիք և Տուրուբերան ունէին պղինձ, երկաթի ու կապարի հանքեր, Այրարատ և Սպեր՝ ոսկի, Փայտակարանի կողմերը՝ բամբակ, Տուրուբերան՝ գազպէն ու մեղր, Գողթն գաւառը՝ անուշահոտ ու առատ գինի, Տայքը՝ թուզ, նուռն, սերկեւիլ ու նուշ, Ուտի նահանգը՝ ձիթենի, Այրարատը՝ որդան կարմիր ներկը։ Երասխի ափերի և Սիւնեաց ու Փայտակարանի անտառները տալիս էին ամեն տեսակ ազնիւ փայտեր, որ գործ էին ածվում պալատների շինութեան համար։

Այս բնական ու արուեստական բերքերով լի երկիրը, ժողովրդի պէտքերը լցնելուց յետոյ, բնականաբար ընդարձակ վաճառականութեան ասպարէզ պիտի բանար Հայոց համար։ Եւ յիրաւի Հայերը նշանաւոր էին իրանց վաճառականութեամբ ամենահին ժամանակներում։ Հայաստանը թէև ցամաք երկիր է, բայց իւր շուրջը երեք ծով ունի և մէջը չորս երևելի գետեր, որոնց միջնորդութեամբ միանում է այն ծովերի հետ։ Ճորոխի գետով կապվում է Սև ծովի հետ, Երասխ գետով միանում է Կասպից ծովի հետ։ Եփրատ ու Տիգրիս գետերով միանում է մէկ կողմից Ովկիանոսի հետ, իսկ Եփրատը Սամոսատի և Մարաշի կողմից մօտենում է Միջերկրական ծովին։ Այսպիսի դիրք ունենալով՝ Հայաստանը դիւրութեամբ կարող էր առևտրական յարաբերութիւններ ունենալ հին ժամանակի բոլոր ծանօթ ազգերի հետ։

Բայց ծովային վաճառականութիւնից առաջ սկսաւ Հայոց մէջ ցամաքայինը. այս վերջինն էլ սկզբումը դրացի ազգերի հետ էր լինում, որոնց հետ Հայերը փոխանակում էին իրանց բերքերը։ Յետոյ կամաց կամաց սկսան հեռաւոր երկրներ գնալ և աւազակների յարձակումներից ազատ մնալու համար՝ կարաւաններով այսինքն բազմութեամբ էին ճանապարհորդում արևելեան սովորութեամբ, մինչև որ սկսան գետերի ու ծովերի վրայ գնալ։ Այնուհետև ցամաքային վաճառականութիւնը, որ մեծ նեղութիւններով էր լինում, երկրորդական տեղը սկսաւ բռնել, և ծովայինը ընդարձակութիւն ստացաւ։ Արևելքում հայ վաճառականները Երասխ և Կուր գետերով գնում էին Կասպից ծովը, այնտեղից էլ Եաքսարտէս և Ոքսոս գետերով Բակտրիացոց, Սոգդիացոց, Պարթևաց և Հնդ-

կայց աշխարհներն էին գնում և այնտեղերից իրանց ապրանքները բերելով: Սև ծովով Յունաստան և մինչև Իտալիա էին ուղարկում: Արևմտեան հարաւում կարաւաններով Կապադովկիայից Փիւնիկէ էին հասցնում հայ երկրի բերքերը: Տիւրոսի և Տարոնի վաճառանոցներում վաճառվում էին Հայոց երկրի ձիաներն ու ջորիները, որոնց վրայ Ս. Գիրքն էլ յիշատակութիւն է անում, և յետոյ տարածվում էին դրացի երկրները, մանաւանդ Պաղեստին: Նոցա տեղ բերվում էին Հայաստանի վաճառանոցները կամ «շահաստան քաղաքները» ոսկի, արծաթ, գոհարեղէն, ազնիւ կտաւեղէններ ու գոյներ, իւղ ու մեղր:

Աւելի յաճախ երթևեկութիւն ունէին Հայերը Նինուէ և Բաբելոն, ուր Եփրատ ու Տիգրիս գետերի միջնորդութեամբ նոքա տանում էին Հայաստանի գինին, մրգեղէնները, փայտը, տախտակը և ուրիշ վաճառքներ, և նոցա տեղ բերում էին Բաբելոնի գոյնզգոյն կերպասները և գորգերը: Հերոդոտոս այսպէս է նկարագրում Բաբելոն գնացող հայ նաւերի կազմութիւնը. Հայաստանում, ասում է նա, նաւերի կողերը ուռենիներից են շինում և յետոյ դրսից մորթով պատում են. նաւի ոչ առաջին կողմը յայտնի է և ոչ յետինը, ուր այլ վահանի նման բոլորակ ձև ունի: Այսպիսի նաւերի մէջ ապրանք բարձելով, մանաւանդ գինի, երկու մարդ թի քաշելով տանում են գետի վրայ: Այս նաւերի մէջ մեծեր էլ կան, փոքրեր էլ. ամենից մեծերը մինչև 1000 տաղանդի բեռն են տանում: Իւրաքանչիւր նաւ ունի իւր մէջը մէկ էշ, մեծերը շատ աւելի: Երբ որ նաւավարները Բաբելոն են հասնում և բեռը թափում, փայտն ու յարդը ծախում

են, իսկ մորթերը էշերի վրայ բարձելով՝ Հայաստան են քշում, որովհետև անկարելի է գետի ընթացքին հակառակ գնալ, այնքան սրընթաց է. հէնց այս պատճառով Նաւերը փայտից չեն շինվում, այլ մորթից։



# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՊԱՐԹԵՒԱՑ ՀԱՑԱՍՏԱՆ ԳԱԼՈՒՑ ՄԻՆՉԵՒ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ (150 ՔՐ. ԱՌԱՋ 300 ՔՐ. ՅԵՏՈՅ)

## Ա. ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ՀԱՍՏԱՏՈՒԻԼԸ ՀԱՅՈՑ ԵՐԿՐՈՒՄ

### 12.

*Պարթևաց ծագումը և հետզհետէ զօրանալը.—Արշակ Մեծ.—Վաղարշակ հիմնադիր Հայ-Արշակունեաց հարստութեան (149).—Հայոց նոր տէրութեան սահմանները և նշանակութիւնը.—Պատերազմ Մորփիւղիկէսի դէմ։*

Մեր պատմութեան հայր Մովսէս Խորենացին Պարթևաց առաջ եկած է համարում Աբրահամի երկրորդ կնոջից՝ Քետուրայից։ Իսկ օտարական պատմիչների վկայութեանը նայելով՝ Պարթևները իրանց ծագումն առնում են այն բարբարոս ցեղերից, որոնց շատ հին ժամանակ Սկիւթացիք աքսորեցին միջին Ասիայից։ Նոցա անունը սկիւթական լեզուով նշանակում է եղել աքսորեալ։ Իրանց բնակութիւնը հաստատելով Կասպից ծովի արևելեան և հարաւային լեռնոտ երկրներում, պարթևները երկար ժամանակ Արևելքի ամենաաննշան ու անծանօթ ազգն եղան։ Նոքա հպատակեցան հետզհետէ Ասորեստանցոց, Մարաց ու Պարսից, ապա նուաճուեցան Աղեքսանդր Մակեդոնացուց և վերջապէս Սելևկեանց իշխանութեան տակ ընկան։ Պարթևաց երկիրը այն ժամանակ

Սելևկացոց ամենախեղճ նահանգներից մէկն էր, բնակիչները դեռ ևս թափառական կեանք էին վարում, բայց ձի նստելում և աղեղ բանեցնելում շատ ճարտար էին։ Զանձրանալով Սելևկեան իշխանութիւնից, պարթևները 255-ին գլուխ բարձրացրին և սելևկացի կուսակալներին իրանց հայրենիքից քշեցին։ Անտիոքոս Բ Թէոս այս ապստամբութիւնը զսպեց, բայց նորա յաջորդ Սելևկոս Բ-ի ժամանակ, մի քաջ ու ճարտար Պարթև Արշակ անունով, լսելով թէ Սսորոց թագաւորը յաղթուեցաւ Գալլիացիներից, յանկարծակի ընկաւ Ագաթոկլէս կուսակալի վրայ, որ իրան անպատուել էր, սպանեց նորան և իւր երկրի անկախութիւնը ձեռք բերեց։ Այս յաջողութիւնից յետոյ Արշակ առանց ժամանակ կորցնելու գրաւեց Հիւրկանիան և մի զօրաւոր բանակ կազմելով՝ պատրաստուեցաւ թէ Սելևկացոց և թէ Բագտրիացոց դէմ պատերազմելու, որոնք սպառնում էին նորան։ Բայց Բագտրիացոց թագաւորի մահը միացրեց այս երկու ազգերին իրանց հասարակաց թշնամու դէմ։ Արշակ Բագտրիացոց օգնութեամբ յաղթեց Սելևկոսին, և այնուհետև պարթևները իւրաքանչիւր տարի իրանց ազատութեան օրը տօնեցին (238)։ Արշակ էլ համարուեցաւ հիմնադիր Պարթևաց իշխանութեանը, որոնք կամեցան, որ իրանց բոլոր թագաւորները նորա անունը կրեն։

Արշակի յաջորդները կէս դարու ընթացքում իրանց լեռնոտ երկրում փակուած՝ Սելևկացոց դէմ պատերազմեցան երկրի անկախութիւնը պահելու համար, մինչև որ վերջապէս եկաւ Միհրդատ Ա կամ Արշակ Զ Մեծ, որի ժամանակ պարթևները սկսան աշխարհակալութեան հետամուտ լինել։ Սելևկացոց տկարութիւնը մէկ կողմից և

միւս կողմից Բագտրիացոց Ներքին երկպառակութիւնները թոյլ տուին նորան իւր տէրութիւնը ընդարձակելու արևելքում և արևմտքում մինչև Ինդոս և Եփրատ գետերը։ «Այս թագաւորը, ասում է Դիոդորոս Սիկիլիացին, գթութիւնը և բարութիւնը ամեն բանից բարձր էր համարում. այս պատճառով մեծ յաջողութիւն գտաւ ամեն տեղ։ Նա մտաւ Հնդկաստան մինչև այն երկրները, ուր թագաւորել էր Պորոս, և ամենի վրայ տարածեց իւր իշխանութիւնը առանց մի արգելքի հանդիպելու։ Իսկ հպատակների հետ մարդասիրութեամբ էր վարվում և հակառակորդների դէմ քաջութեամբ կռվում. իւր նուաճած բազմաթիւ ազգերից ամենալաւ օրէնքներն ընտրեց ու տուեց պարթևներին»։ Արշակ իւր բնական թշնամիների՝ Սելևկացոց վրայ յարձակելու ամենայաջող առիթը գտաւ. այն միջոցին երբ Անտիոքոս Եպիփանի յաջորդը՝ Դեմետրիոս Սոտեր իւր պալատում փակուած գեղխ ու անառակ կեանք էր վարում, Պարթևաց թագաւորը Մարաց երկրին տէր դարձաւ (160)։ Հիւրկանիայի բնակիչները ապստամբեցան նորանից և վերստին նուաճուեցան. նոյն բաղդին վիճակուեցան և Եղիմայիսի (բուն Պարսկաստանի) բնակիչները, մինչև անգամ Սելևկեան բնկաւ նորա իշխանութեան տակ և Ասորեստանն ու Միջագետքը իրանց տէր ճանաչեցին նորան։

Ահա այս ժամանակներս էր, որ Հայերը իրանց խառնակ ու անհաստատ վիճակից ձանձրացած՝ ապաւինեցան Պարթևաց պաշտպանութեանը և նոցա հովանաւորութեան տակ մտան։ 149 թուին Արշակ ուղարկեց Հայաստան իւր եղբօրը՝ Վաղարշակին, որ Արշակունեաց

երկրորդ ճիւղի և Հայաստանի ամենափառաւոր հարստատութեան հիմնադիրն եղաւ։

Արշակ կամենալով այս երկրորդ պարթևական իշխանութիւնից մի հզօր պատուար կազմել բուն Պարթևաց և Սելևկացոց տէրութեան մէջ, որ դեռ կենդանութեան նշաններ էր ցոյց տալիս, Մեծ և Փոքր Հայաստանի հետ միացրեց հարաւային և արևելեան կողմից Ատրպատականի, Ասորեստանի և Միջագետքի մի մասը, արևմտեան կողմից երկրորդ Կապադովկիան, իսկ հիւսիսում Սև ու Կասպից ծովերի միջոցում գտնուած երկրները, այն է Եգերացոց, Վրաց, Աղուանից, Սկիւթացոց և Կասպից երկիրները, մինչև Կովկասեան սահմանները։ Սոցանից մեր ցեղակից Վրաց ազգի վրայ Հայաստանի ազդեցութիւնը զօրացաւ մանաւանդ այն ժամանակ, երբ յիսուն տարի յետոյ մի Արշակունի իշխան հայ զօրքերի օգնութեամբ քշեց Վրաստանից Փառնաւազեան հարստութեան վերջին թագաւոր Փառնաւազին և մի նոր Արշակունի հարստութեան հիմնադիր եղաւ Արշակ Ա անունով։

Այս մեծամարմին երկրից կազմուեցաւ մի առանձին հայ-պարթևական տէրութիւն, անկախ բուն պարթևական թագաւորութիւնից։ Այս բանը հաստատվում է ազգային և օտար մատենագրների խօսքերով, որոնք վկայում են թէ Հայք չնուաճուեցան Պարթևներից. այլ հրաւիրեցին նոցա իրանց երկրին տէրութիւն անելու։ Արշակ էլ իւր եղբօր գլխին Հայաստանի թագը դնելով՝ իրաւունք տուեց նորան բոլորովին ազատ ու անկախ ներգործելու իւր տէրութեան մէջ, «որչափ միտք քո և քաջութիւն հասանեն, զի սահմանք քաջաց զէնն իւրեանց; որքան հատանէ՝ այնքան ունի»։ Միայն որպէս զի երկու

միւս կողմից Բագտրիացոց ներքին երկպառակութիւնները թոյլ տուին. Նորան իւր տէրութիւնը ընդարձակելու արեւելքում և արեւմտքում մինչև Ինդոս և Եփրատ գետերը։ «Այս թագաւորը, ասում է Դիոդորոս Սիկիլիացին, գթութիւնը և բարութիւնը ամեն բանից բարձր էր համարում. այս պատճառով մեծ յաջողութիւն գտաւ ամեն տեղ։ Նա մտաւ Հնդկաստան մինչև այն երկրները, ուր թագաւորել էր Պորոս, և ամենի վրայ տարածեց իւր իշխանութիւնը առանց մի արգելքի հանդիպելու։ Իսկ հպատակների հետ մարդասիրութեամբ էր վարվում և հակառակորդների դէմ քաջութեամբ կռվում. իւր նուաճած բազմաթիւ ազգերից ամենալաւ օրէնքներն ընտրեց ու տուեց պարթևներին»։ Արշակ իւր բնական թշնամիների՝ Սելևկացոց վրայ յարձակելու ամենայաջող առիթը գտաւ. այն միջոցին երբ Անտիոքոս Եպիփանի յաջորդը՝ Դեմետրիոս Սոտեր իւր պալատում փակուած զեղխ ու անառակ կեանք էր վարում, Պարթևաց թագաւորը Մարաց երկրին տէր դարձաւ (160)։ Հիւրկանիայի բնակիչները ապստամբեցան նորանից և վերստին նուաճուեցան. Նոյն բաղդին վիճակուեցան և Եղիմայիսի (բուն Պարսկաստանի) բնակիչները, մինչև անգամ Սելևկեան ընկաւ նորա իշխանութեան տակ և Ասորեստանն ու Միջագետքը իրանց տէր ճանաչեցին նորան։

Ահա այս ժամանակներս էր, որ Հայերը իրանց խառնակ ու անհաստատ վիճակից ձանձրացած՝ ապաւինեցան Պարթևաց պաշտպանութեանը և նոցա հովանաւորութեան տակ մտան։ 149 թուին Արշակ ուղարկեց Հայաստան իւր եղբօրը՝ Վաղարշակին, որ Արշակունեաց

երկրորդ ճիւղի և Հայաստանի ամենափառաւոր հաստատութեան հիմնադիրն եղաւ։

Արշակ կամենալով այս երկրորդ պարթևական իշխանութիւնից մի հզօր պատուար կազմել բուն Պարթևաց և Սելևկացոց տէրութեան մէջ, որ դեռ կենդանութեան նշաններ էր ցոյց տալիս, Մեծ և Փոքր Հայաստանի հետ միացրեց հարաւային և արևելեան կողմից Ատրպատականի, Ասորեստանի և Միջագետքի մի մասը, արևմտեան կողմից երկրորդ Կապադովկիան, իսկ հիւսիսում Սև ու Կասպից ծովերի միջոցում գտնուած երկրները, այն է Եգերացոց, Վրաց, Աղուանից, Սկիւթացոց և Կասպից երկրները, մինչև Կովկասեան սահմանները։ Սոցանից մեր ցեղակից Վրաց ազգի վրայ Հայաստանի ազդեցութիւնը զօրացաւ մանաւանդ այն ժամանակ, երբ յիսուն տարի յետոյ մի Արշակունի իշխան հայ զօրքերի օգնութեամբ քշեց Վրաստանից Փառնաւազեան հարստութեան վերջին թագաւոր Փառնաւազին և մի նոր Արշակունի հարստութեան հիմնադիր եղաւ Արշակ Ա անունով։

Այս մեծամարմին երկրից կազմուեցաւ մի առանձին հայ-պարթևական տէրութիւն, անկախ բուն պարթևական թագաւորութիւնից։ Այս բանը հաստատվում է ազգային և օտար մատենագրների խօսքերով, որոնք վկայում են թէ Հայք չնուաճուեցան Պարթևներից, այլ հրաւիրեցին նոցա իրանց երկրին տէրութիւն անելու։ Արշակ էլ իւր եղբօր գլխին Հայաստանի թագը դնելով՝ իրաւունք տուեց նորան բոլորովին ազատ ու անկախ ներգործելու իւր տէրութեան մէջ, «որչափ միտք քո և քաջութիւն հասանեն, զի սահմանք քաջաց զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունին»։ Միայն որպէս զի երկու

տէրութիւնները սերտ կապակցութիւն ունենան միմեանց հետ, Արշակ դրամ կտրելու իրաւունքը Պարթևաց թագաւորներին վերապահեց, և Հայոց թագաւորութիւնը Պարթևաց թագաւորութեան երկրորդն անուանեց։

Թէև Վաղարշակ խաղաղութեամբ մտաւ Հայաստան և երկրի գահը բազմեցաւ, բայց այսպիսի մի յեղափոխութիւն չէր կարող առանց արիւնհեղութեան գլուխ գալ։ Փոքր Ասիայի այլ և այլ ժողովրդները՝ Խաղտիք, Լազկիացիք, Պոնտացիք, Կապադովկացիք և Փռիւգացիք, որոնք դեռ մակեդոնական իշխանութեանը հաւատարիմ էին մնացած, Կապադովկիայի Մորփիւղիկէս իշխանի առաջնորդութեամբ զէնք առին Հայոց նոր թագաւորի դէմ։ Վաղարշակ Հայաստանի զանազան նահանգներից զօրք ժողովեց և Երասխի ափին Արմաւիրի բլրի մօտ մի քանի օր կանգ առնելով՝ իւր բանակը կարգաւորեց ու կրթեց, և ապա դիմեց թշնամիների վրայ։ Պատերազմը խմբուեցաւ Կողոնիայի մօտ՝ Փոքր Հայքում։ Մորփիւղիկէս, որ յաղթանդամ ու քաջ մարդ էր մի խումբ զրահաւորուած կտրիճներով առաջ եկաւ և ճանապարհին կոտորած գործելով՝ հասաւ մինչև Վաղարշակի ամրացած տեղը։ Հայ իշխանները իրանց թագաւորին սպառնացած վտանգը տեսնելով՝ ընկան Մորփիւղիկէսի վրայ ու սպանեցին նորան, զօրքն էլ մեծ կոտորածով յետ մղեցին ու փախցրին։ Այդ յաղթութեամբ Հայաստանի ազդեցութիւնը տարածուեցաւ դրացի ազգերի վրայ. բայց այս ազդեցութիւնը տևողական անելու համար՝ հարկ էր մեր աշխարհին հաստատուն կարգեր ու օրէնքներ տալ, որոնք պիտի պատրաստէին Հայաստանի Արշակունեաց մեծութիւնը։

## 13.

*Հայոց պատմութեան գիւտը.—Վաղարշակի հաստատած կարգերը. Նախարարութիւնները և նոցա պաշտօնները.—Զինուորական և քաղաքային կարգեր.—Ժառանգութեան օրէնք.—Վաղարշակի մահը (127).—Արշակ Ա (127—114).—Նորա արշաւանքը Պոնտացոց դէմ։*

Իւր աթոռը Մծբին հաստատելուց յետոյ, որ այսպիսով եղբօր թագաւորութեան և միանգամայն Սելեկեանց մօտիկ լինի, Վաղարշակի առաջին գործն եղաւ իմանալ, թէ ովք են այն ազգի նախնիքը, որի վրայ հրաւիրուեցաւ թագաւորելու, և ով այն նախարարները՝ որոնք Հայաստանի նահանգների վրայ իշխում էին։ Եւ որովհետև Հայոց երկրում այս մասին ոչինչ տեղեկութիւն չգտաւ, թուղթ գրեց իւր եղբօրը՝ Արշակին և Մար-Աբաս Կատինա ասորի ուսումնականին յանձնեց, որ երթայ Նինուէի հին դիւանատունը և Հայոց ծագման վրայ ճիշդ տեղեկութիւններ գտնէ։ Հետաքրքրական են Վաղարշակի թղթի այն խօսքերը, որով գանգատում է եղբօրը Հայաստանի վիճակի վրայ. «Ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի և ոչ մեհենից պաշտամունք, և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն 'ի խուռն ամենայն և վայրենի»։

Արշակ սիրով ընդունեց Հայոց թագաւորի ուսումնական դեսպանին և հրամայեց, որ թոյլ տան նորան Նինուէի դիւանատան ձեռագրերը քննելու։ Մար-Աբաս գտաւ մի հին ձեռագիր, որի քաղդէական բնագիրը Աղէքսանդրի ժամանակ և նորա հրամանով յունարէն

թարգմանուած էր, և բովանդակում էր հին ազգերի պատմութիւնը։ Այս ձեռագրից քաղեց հանեց Մար-Աբաս Հայոց ազգի պատմութիւնը իւր ծագումից մինչև Հայկազանց վերջին թագաւորը Վահէ, և աստի թարգմանութեան հետ բերեց Վաղարշակին յանձնեց, որ այսպիսի թանկագին յիշատակարանի յարգը ճանաչելով՝ առաւ Մծբինի գանձատան մէջ դրեց, իսկ նորա գլխաւոր հատուածները արձանների վրայ փորագրել տուեց, որպէս զի ամենայն հայ մարդ կարողանայ իւր ազգի պատմութեանը տեղեկանալ։

Այնուհետև Վաղարշակ սկսաւ իւր թագաւորութիւնը կարգաւորել, հիմնուելով հին հայկական սովորութիւնների վրայ, բայց շատ բան սեպհականելով իւր եղբօրից, որ իւր տէրութեան մէջ սահմանած կարգերը մեծ մասամբ ասորական հին թագաւորութիւններից էր փոխ առել։ Ամենից առաջ Վաղարշակ իւր ուշադրութիւնը դարձրեց երկրի բնակիչների վրայ, որոնք միմեանցից անջատուած՝ մի մի իշխանի կամ նախարարի իշխանութեան տակ էին գտնվում։ Խորագէտ թագաւորը այս անտեղութեան առաջն առնելու համար՝ այլ և այլ պալատական պաշտօններ սահմանեց ու բաժանեց գլխաւոր նախարարութիւններին, որով երկրի իշխաններին իւր արքունիքի հետ կապելով՝ նոյա անմիջական իշխանութեան տակ գտնուած ժողովրդներին էլ իւր գահի շուրջը խմբում էր։ Բագարատ իշխանին, որ ամենից առաջ և ամեն բանում ձեռնտու էր եղել իրան, Արշակունի թագաւորին թագադրելու իշխանութիւնը և հեծելազօրի սպարապետութիւնը շնորհեց ժառանգաբար՝ «թագադիր» ու «ասպետ» անուանելով և արքունի պալատում գլխին

Երեքտակէն վարսակալ ընելու արտօնութիւն տալով նո-
րան. ցեղն էլ նորա անունով Բագրատունի անուանեց։
Մարաց գաղթականութեան նախարարին, որ Աժդահակի
ցեղից էր, թագաւորից յետոյ երկրորդական գահ ունե-
նալու պատիւը շնորհեց։ Գնթունեաց ցեղին նշանակեց
արքունի հանդերձապահ և զգեցնող, Գնունեաց՝ տակա-
ռապետ և թագաւորի սեղանի համար ըմպելիք պատ-
րաստող, Գաբեղենից՝ արքունի մատակարար, Աբեղենից՝
սպասարար, Վարաժնունեաց՝ որսերի վերակացու, Արծ-
րունեաց՝ թագաւորի առաջ արծուէնշան դրօշակներ տա-
նող, և մինչև արքունի զինարանների, հաւանոցների ու
ամառանոցների վրայ առանձին իշխաններ կարգեց, որոն-
ցից իւրաքանչիւրին նախարարական պատիւ և «ազատ»,
այսինքն ազնուական կոչուելու իրաւունք շնորհեց։

Այս և սոցա նման ուրիշ պաշտօններ ըստ մեծի
մասին օտարացեղ իշխանների յանձնեց Վաղարշակ, և
այս հանգամանքը ցոյց է տալիս թէ ինչ մեծ ազդեցու-
թեան էին հասել Հայոց երկրում գաղթական ժողովուրդ-
ները Արշակունեաց գալուց առաջ։ Սակայն Վաղարշակ
կամենալով իւր վստահութիւնը ցոյց տալ հայ ազգին,
իւր կեանքի պահպանութեան համար թիկնապահներ նշա-
նակեց Խոռ հայկազն նահապետի ցեղից—Խորխոռու-
նեաց, ինչպէս նաև արքունի վրան պահպանութեան հա-
մար չորս գունդ կազմեց նոյնպէս հայկազուն թագաւոր-
ների ցեղից։ Դարձեալ իւր պալատի կանանց պահպա-
նութիւնը յանձնեց ներքինիների, որոնց գլուխ նշանա-
կեց Հայր իշխանին, նոյնպէս հին Հայկազանց ցեղից։
Սա կոչւում էր Հայր Մարդպետ և պաշտօնը մարդպե-
տութիւն, որ բացի կանանց պահպանութիւնից, հա-

մարվում էր Թագաւորի հայր և նորա պալատի հազարապետ։ Ամենապատուաւոր պաշտօններից մէկն էլ քրմութիւնն էր, որ Վաղարշակ յանձնեց Վահագն ազգային դիւցազնի տոհմին՝ Վահունեաց, և Հայոց հին մայրաքաղաքը Արմաւիր սրբազան քաղաքի փոխեց, մեհեան շինելով այնտեղ և արձաններ կանգնելով Արեգական ու Լուսնի պատուի համար՝ խառն իւր նախնեաց արձանների հետ։

Ոչ պակաս նշանաւոր էին Վաղարշակի սահմանած օրէնքները երկրի քաղաքական և զինուորական կառավարութեան համար։ Հայաստանի նահանգներն ու գաւառները որոշ սահմանների բաժանելով, Վաղարշակ մի քանի զինուորական կուսակալութիւններ սահմանեց, որոնց պարտքը պիտի լինէր երկրի սահմանները պահպանել արտաքին Թշնամիների արշաւանքներից։ Հիւսիսային կողմից կարգեց Գուգարաց բդեշխին, հիւսիսային արեւելեան կողմից՝ Սիսակեանց, արեւելեան հարաւային կողմը՝ Կադմեանց, հարաւում՝ Աղձնեաց բդեշխին և արեւմտեան կողմը՝ Անգեղ տոհմին։ Այս կարգադրութեամբ, որ իւր սկիզբն առնում էր հայկազուն նահապետների ժամանակից, Վաղարշակ ցոյց տուեց Թէ ոչ միայն աշխարհաշէն ու կենցաղագէտ անձ էր, այլ և զինուորական արուեստին հմուտ, որովհետև Հայաստանի բուն սահմանները ծովից ու լեռներից անպատսպար լինելով, հարկ էր երկրի չորս կողմը հաստատուն զօրք պահել որ դրացի ժողովրդների և մանաւանդ հիւսիսային արեւելեան կողմերը բնակող Սարմատացոց ասպատակութիւնների առաջն առնեն։ Իսկ քաղաքական օրէնքների գործադրութեան համար՝ ամեն քաղաքներում և գիւղերում դատաւորներ

նշանակեց. և որպէս զի ցոյց տայ թէ որքան յարգում է արդարութիւնը և անիրաւութեան վրէժխնդիր է, իւր պալատում երկու մարդ նշանակեց, որոնցից մէկը թագաւորի անիրաւութիւն գործած ժամանակը՝ իրաւունքը և արդարութիւնը պիտի յիշեցնէր նորան, իսկ միւսը միտքը ձգէր յանցաւորից վրէժ առնել։ Նոյնպէս կամենալով ամեն բանի անձամբ վերահասու լինել, միանգամայն և կարգապահութեան օրինակ տալ երկրի կառավարիչներին, իմաստուն թագաւորը առանձին ժամեր որոշեց ընդունելութեան, խորհրդի և զբօսանքի համար։

Վերջապէս Վաղարշակ յաջորդութեան իրաւունքն էլ օրէնքի տակ դրեց, սահմանելով որ անդրանիկ որդին համարուի օրինաւոր ժառանգ թագաւորութեան, իսկ միւսները, իբրև արքայազն իշխաններ, թագաւորութիւնից ստանան ռոճիկ և բնակութեան տեղը։ Այս կարգադրութեան հիման վրայ իւր մօտ պահեց անդրանիկ Արշակ որդուն և Արտաշէս թոռանը, իսկ միւս որդոցը Հաշտէնից գաւառը ուղարկեց։ Այս օրէնքը երկար ժամանակ պահեցին Վաղարշակի յաջորդները. միայն երբ որ Հաշտէնից գաւառը արքայորդիներով լցուեցաւ, Վասպուրական նահանգի երկու գաւառները՝ Աղիովիտը և Առբերանին ժառանգութիւն տրուեցաւ նոցա։

Այսպիսի բարեկարգութիւններից յետոյ՝ առաջին Արշակունի թագաւորը խաղաղութեամբ մեռաւ Մծբին մայրաքաղաքում, 22 տարի թագաւորելուց յետոյ (127)։ Վաղարշակի թագաւորութիւնը մի նոր և մինչև այն ժամանակ անծանօթ գործունէութեան ասպարէզ բաց արեց Հայաստանի համար։ Այս պատճառով նորա յիշատակը անմոռանելի մնաց ազգի մէջ և նորա սահմանադրու-

թիւնները միշտ իբրև հիմն ընդունուեցան Հայաստանի քաղաքական և զինուորական կառավարութեան մէջ, և այն ոչ միայն Արշակունեաց, այլ և Բագրատունեաց և մասամբ նաև Ռուբինեանց ժամանակ։

Վաղարշակ իւր նորահաստատ աթոռը թողեց Արշակ Առաջինին (127—114), որ իւր տասներեք տարուան խաղաղ թագաւորութիւնը գործ դրեց հօր հաստատած կարգերը զարգացնելու իւր տէրութեան մէջ, և միայն մի անգամ զէնքը ձեռքին Հայաստանի հիւսիսային արևմտեան սահմանների վրայ երևեցաւ ապստամբ Պոնտացոց հնազանդեցնելու համար։ Իւր յաղթութեան յիշատակի համար՝ Արշակ Սև ծովի եզերքը մի կոթող կանգնեց և իւր նիզակը ուժով մէջը խրեց։ Պոնտացիք այս արձանը երկար ժամանակ պաշտեցին, իբրև աստուածների գործ. բայց երբ Արտաշէս կրկին նոցա վրայ պատերազմ գնաց, բարկանալով ծովը ձգեցին։

---

## Բ. ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

### 14.

*Արշակի յաջորդների ձգտումները.—Արտաշէս Ա. (114).—Նորա արշաւանքները և մահը (89)։*

Երկու առաջին Արշակունի թագաւորները իրանց իշխանութեան տարիները գործ դրին Հայաստանը նոր կարգերով օժտելու, և թէպէտ Վաղարշակի անմիջական յաջորդի վրայ պատմութիւնը լռութեամբ է անցնում, բայց նոյն իսկ այդ լռութիւնը ցոյց է տալիս, թէ Արշակ Ա-ի բոլոր մտադրութիւնը դարձած էր երկրի ներ-

քին բարեկարգութիւնների վրայ, որ այն ժամանակների պատմիչների աչքում նշանակութիւն չունենալով՝ անյիշատակ մնացին։ Այնուհետեւ եկող Թագաւորների գործը պիտի լինէր նոյն կարգերը արմատացնել երկրի մէջ, որով միայն կարելի էր ցանկացած արդիւնքը սպասել նոցանից։ Սակայն Արշակ Ա-ի յաջորդները շեղուեցան իրանց հայրերի գծած ճանապարհից և աշխարհակալութեան հետամուտ լինելով՝ ժամանակ չթողին որ յիշեալ կարգադրութիւնները ամրանան ու ազգի կեանքի մէջ հաստատուեն։ Եւ թէպէտ նոցա փառաւոր աշխարհակալութիւնները մեծ փայլ տուին Հայոց աշխարհին, բայց այդ փայլը շլացուցիչ ու ժամանակաւոր եղաւ, նման այն գիսաւոր աստղերին, որոնք մի բոպէ երեւում են երկնքի երեսին և շուտով անյայտանում՝ ոչինչ հետք չթողնելով իրանցից յետոյ. ըստ որում Հայաստանը տակաւին չունէր այն հաստատուն միութիւնը, որ հարկաւոր էր նորան իւր սահմաններից դուրս գրաւած երկրները պահելու։

Արտաշէս Ա բնութեամբ հպարտ ու պատերազմասէր լինելով՝ հօր գահը նստելուն պէս սկսաւ աշխարհակալութեան մտքերով զբաղել և իւր տէրութեան արդէն շատ ընդարձակ սահմանները աւելի ևս տարածելու հետամուտ լինել (114)։ Այս դիտաւորութեամբ Արտաշէս իւր բոլոր ուշքն ու միտքը դարձրեց զինուորութեան վրայ, և իւր հպատակներից պատերազմական բանակներ կազմեց, որոնց բազմութեան վրայ մի գաղափար տալու համար՝ հները պատմում են, որ եթէ իւրաքանչիւր զինուոր մի մի քար ձգէր մի տեղ, ահագին բլուր էր ձևանում, և եթէ մի մի նետ արձակէին՝ արեգակի լոյսը

խաւարում էր. այնպէս որ նոցա թիւը ոչ թէ համարելով՝ այլ չափելով կարելի եղաւ որոշել։ Արտաշէսի մեծ պատրաստութիւնները ցոյց են տալիս թէ ինչ յանդուգն նպատակներ ունէր այս նոր Քսերքսէսը,—Յունաց աշխարհին տիրապետել։ Սորա համար հարկաւոր էր նորան մի զօրաւոր դաշնակից գտնել ասիական թագաւորների մէջ. այդ դաշնակիցն եղաւ Պոնտոսի թագաւորը Միհրդատ Ե Եւպատոր, որին իւր Արտաշամայ աղջիկը կնութեան տուաւ և Կովկասեան ու Սև ծովի երկրների կառավարութիւնը յանձնեց։ Իւր որդուն՝ Տիգրանին զինուորական արուեստի մէջ կրթելու յանձնեց Վարաժ անունով քաջ զինաշարժին, և յետոյ Արարատեան թագաւոր նշանակեց իւր թագաւորութեան ժամանակ։

Այսպիսով իւր երկիրը ապահովեցնելուց յետոյ՝ Արտաշէս ամենից առաջ զէնքերը դարձրեց իւր ազգական Արշական կամ Միհրդատ Բ Պարթևաց թագաւորի դէմ, որից զէնքի զօրութեամբ խլեց առաջնութեան պատիւը։ Արտաշէս թագաւորների թագաւոր անուան հետ՝ փող կտրելու իրաւունքն էլ յափշտակեց Արշականից և մինչև առանձին սլալատ չինեց իւր համար Պարսից երկրում։ Այս կերպով Պարթևաց թագաւորին ստորացնելուց յետոյ՝ Արտաշէս Միհրդատի դաշնակցութեամբ անցաւ Փոքր Ասիա, Պոնտոսի ու Միջերկրականի մէջ եղած փոքր թագաւորութիւնները նուաճեց, և այս ծովերը իւր պատերազմական նաւատորմղովը ծածկելով՝ Թրակիայից անցաւ Բէոտիա և բոլոր Ելլադայի վրայ այնպիսի ահ ու սարսափ տարածեց, որ մինչև Հռոմայեցոց ականջը հասաւ։ Սակայն Հռոմայեցիք այդ միջոցին դաշնաւորների վտանգաւոր պատերազմովը զբաղած լինելով՝ ժա-

ժամանակ չունէին այս ահաւոր Թշնամու դէմ պատերազմ բանալու, ուրիշ միջոցի դիմեցին նորան կործանելու համար։ Հռոմէական ոսկին կուրացրեց Արտաշէսի զօրավարների աչքը, որոնք դաւաճանութեամբ սպանեցին նորան իւր երկրի սահմաններից դուրս։ Հպարտ ու փառասէր Թագաւորը միայն վերջին շունչը տալիս իմացաւ իւր 25 տարուան Թագաւորութեան վաղանցուկ փառքը և արտասուելով գոչեց։ «Ուա՜ղ փառացս անցաւորի» (89)։

---

## 15.

Տիգրան Բ (89)։—Պատերազմ Պարթևաց հետ.—Տիգրան Ասորոց Թագաւոր (85 – 63).—Նորա արշաւանքը Պաղեստին.—Տիգրան արքայից արքայ.—Միհրդատի առաջին պատերազմը Հռոմայեցոց հետ Հայոց դաշնակցութեամբ (88 - 86).—Երկրորդ Միհրդատեան պատերազմ (75).—Միհրդատի փախուստը Հայաստան (70).—Լուկուլլոս Հայոց երկրում. Տիգրանակերտի և Արտաշատի ճակատամարտերը (69 – 68).—Տիգրանի և Միհրդատի յաջողութիւնները.—Պոմպէոս.—Միհրդատի պարտութիւնը և մահը. - Տիգրանի հաշտութիւնը Պոմպէոսի հետ (64)։

Տիգրան Բ հօր գահի հետ ժառանգեց և նորա գոռոզութիւնն ու փառասէր նպատակները (89)։ Հայաստանը այս Թագաւորի ժամանակ իւր զօրութեան, մեծութեան ու փառքի վերջին ծայրը հասաւ։ Սորա համար Տիգրանին ոչ միջոց էր պակաս և ոչ հոգեկան արիութիւն. պատանեկութեան հասակից նա իւր կեանքը զինուորների մէջ էր անց կացրել. հօր կենդանութեան ժամանակ արդէն սովորել էր իւր կողմից հրամայել և ուրիշների կողմից հնազանդութիւն տեսնել։

Հօր մահուան և զօրքի ցրուելու լուրն առաւ թէ չէ, Տիգրան անմիջապէս զօրք հաւաքեց և գնաց Ցունաց վրայ, որոնք Հայաստանի հողի վրայ ոտք էին դրել արդէն։ Տիգրան հեշտութեամբ ցրուեց նոցա և որպէս զի կրկին չապստամբին, Կապադովկիան և բոլոր Փոքր Ասիան իւր քեռայր ու նիզակակից Միհրդատին յանձնեց, և շատ զօրք թողնելով նորա մօտ՝ դարձաւ Հայաստան։ Այս միջոցին Արշական Պարթևաց թագաւորը զէնքը ձեռքին գալիս էր իւր դէմ եղած անպատուութեան վրէժն առնելու, Տիգրանից նախագահութեան պատիւը յետ պահանջելով։ Երկու թագաւորները ճակատեցան Երասխի ափերի վրայ. դժբաղդ Արշականը այս պատերազմում սպանուեցաւ մի Թրակիացի զինուորից և Ասիայի գերիշխանութիւնը մնաց Տիգրանի ձեռքը։

Այնուհետև Տիգրան իւր թագի վրայ վստահացած՝ օգուտ քաղեց Սելևկեանց թուլութիւնից և սկսաւ խառնուել Ասորոց երկրի գործերում։ Երկու եղբայր, Անտիոքոս Եւսեբոս և Փիլիպպոս, աշխատում էին միմեանց ձեռքից իշխանութիւնը յափշտակել։ Ժողովուրդը ձանձրանալով անվերջ քաղաքական պատերազմներից և ընտանեկան կռիւներից, Հայոց թագաւորի միջամտութեանը դիմեց և Սելևկացոց թագը նորան առաջարկեց։ Տիգրան գնաց Ասորոց երկիրը և առանց մի կաթիլ արիւն թափելու՝ քշեց այնտեղից Անտիոքոսին և իւր տեղապահների ձեռքով կառավարեց Սելևկեանց երկրները 22 տարի շարունակ (85—63)։

Տիգրան այս չափով չբաւականացաւ։ Ասորոց երկիրը նոր աշխարհակալութեան դռներ բաց էր արել նորա առաջ։ Սելևկեան թագաւորութեան և Փիւնիկէին

տէր դառնալուց յետոյ, ինչպէս որ նորանից առաջ Փոքր Ասիայի նշանաւոր մասը նուաճել էր, Տիգրան իւր արշաւանքը առաջ տարաւ, հասաւ մինչև Պաղեստին, Պտողոմայիս քաղաքը մէկ յարձակմամբ առաւ ու Կղէոպատրա Թագուհուն գլխատեց որովհետև Կղէոպատրան Ասորոց ու Փիւնիկեցոց մի քանի քաղաքները նորանից ապստամբեցրել էր։ Երուսաղէմի Աղէքսանդրա Թագուհին Հայոց զէնքերի յաջողութիւնից զարհուրած՝ մեծ ընծաներով գնաց Տիգրանի առաջ ու նորա սիրտը շահեց։ Տիգրան դարձաւ Հայաստան բազմաթիւ Իսրայելացի գերիներ հետը բերելով, որոնց Արմաւրի և Վարդգէսի աւանի մէջ տեղաւորեց։

Այս ժամանակները Տիգրան իւր յաջողութեան վերջին ծայրն էր հասել. Ասիայի մեծ մասը ճանաչում էր նորան իբրև թագաւորների թագաւոր։ Մարք, Արաբացիք, Ադաբենացիք, Ատրպատականցիք, Վիրք, Աղուանք, Բաբելացիք և ուրիշ ազգեր հպատակութեան հարկ էին տալիս այս զօրաւոր թագաւորին։ Կիլիկիայի և Կապադովկիայի Յոյները նորա կամքովը տեղափոխուեցան Միջագետքի ընդարձակ դաշտերը։ Վրանաբնակ Արաբացոց էլ իրանց սովորութիւնները փոխել տուեց և վրաններից հանելով՝ իւր մօտ բնակեցրեց ու նոցա ձեռքով սկսաւ վաճառականութիւն անել։ Սակայն Տիգրան իւր գեղեցիկ փառքովը հպարտացած, ասում է Պլուտարքոս, այն աստիճան գոռոզացել էր, որ թագաւորք իշխաններ ծառայում էին նորան. չորս թագաւոր թիկնապահի պաշտօն էին վարում, և երբ հայ Սեսսատրը ձի էր նստում՝ երկու կողմից ոտքով գնում էին, իսկ գահը նստած կամ մի հրաման տուած ժամանակը՝ առաջը կանգնում էին։

Միհրդատի դաշնակցութիւնը աւելի վստահութիւն ու զօրութիւն էր տալիս Ասիայի վեհապետին. կարծես ո-չինչ արգելքի չպիտի հանդիպէր իւր ճանապարհի վրայ, երբ Հռոմայեցոց հետ կպչելու դժբաղդութիւնն ունեցաւ, որոնք նորան էլ, նորա ահաւոր դաշնակցի զօրութիւնն էլ խորտակեցին։

Այս երկարատև պատերազմների սկզբնապատճառն եղաւ Պոնտոսի թագաւորը Միհրդատ։ Միհրդատ արդէն իւր թագաւորութեան առաջին տարիներում Արտաշէս Ա-ի դաշնակցութեամբ մեծ յաջողութիւններ էր գտել Պոնտոսի հիւսիսային երկրներում, և սկսել էր խառնուել Փոքր Ասիայի թագաւորների գործերում։ Արդէն Պափ-լագոնիային, Բիւթանիային և Կապադովկիային տիրել էր, երբ Արտաշէսի յանկարծական մահը իւր ձեռնար-կութիւնները առժամանակ ընդհատեց, և Միհրդատ Հռո-մայեցոց ստիպմամբ Բիւթանիան ու Կապադովկիան յետ դարձրեց իրանց բնիկ թագաւորներին՝ Նիկոմիդէսին և Արիոբարզանին, որոնք Հռոմայեցոց կուսակիցներ էին։ Բայց Պոնտոսի թագաւորը Տիգրան Բ-ի օգնութեամբ շուտով հալածեց Արիոբարզանին ու Նիկոմիդէսին և նո-ցա երկրները գրաւելով՝ Հռոմայեցոց պատերազմ հրա-տարակեց (88)։ Թշնամական յարաբերութիւնները շու-տով սկսան։ Նիկոմիդէս բոլորովին ջարդուեցաւ Ամնիասի ափերի վրայ։ Կասսիոս հիւպատոսը և նորա զօրավար-ները աւելի յաջողութիւն չգտան։ Նոցանից մէկը Ակուի-լիոս ստիպուեցաւ մինչև Պերգամ փախչել. Ոպպիոս քշուեցաւ Պամփիւլիայի սարերը և հռոմէական նաւա-տորմիղը, որ Պոնտոսի մուտքն էր պահպանում, բոլո-րովին խորտակուեցաւ։ Միհրդատ ամեն տեղ յաղթող

Հանդիպանալով՝ անցաւ Եփեսոս, այնտեղից էլ Պերգամ, որպէս զի պատերազմական գործողութիւնների վրայ աւելի լաւ հսկէ։ Իւր հրամանով 150,000 մարդ Արքեղայոս զօրավարի առաջնորդութեամբ անցան Յունաստան, որի բնակիչները ապստամբեցան Հռոմայեցիներից. բոլոր Պելոպոնէսը, ինչպէս նաև միջին Յունաստանը հնազանդեցան Միհրդատին։

Հռոմայեցիք առանց ժամանակ կորցնելու յանձնեցին Սիլլային հինգ լեգէոն Միհրդատի դէմ պատերազմելու համար։ Սիլլան արագութեամբ հասաւ Յունաստան, ուր բաղդը ամեն տեղ հետևեց նորան։ Աթէնքը պաշարուեցաւ և առնուեցաւ։ Արքեղայոս այս անյաջողութիւնից յետոյ 120,000 զօրքով անցաւ Բէոտիա և յարձակեցաւ Սիլլայի վրայ. բայց այստեղ էլ մեծ անյաջողութեան հանդիպելով՝ յետ քաշուեցաւ։ Միհրդատ Յունաստանից քշուեցաւ և ստիպուեցաւ Սիլլայի հետ մի ամօթալի դաշն կապել, որի զօրութեամբ նա տալիս էր Հռոմայեցոց 80 նաւ և պատերազմի ծախքերը, և պարտաւորվում էր Բիւթանիան և Կապադովկիան յետ դարձնել իրանց օրինաւոր թագաւորներին (86)։

Այս անպատուութիւնից յետոյ Միհրդատ մի քանի տարի պատերազմի պատրաստութիւններ տեսաւ։ Կովկասի, Սկիւթիայի և Դանուբի եզերքում բնակող վայրենի ժողովրդների հետ դաշն կապեց, և Տիգրանին յորդորեց Կապադովկիայի վրայ արշաւելու։ Նա էլ գնաց, բոլոր նահանգին տիրեց և 20,000 մարդ գերի բերեց Հայաստան։ Այս եղաւ նշան երկրորդ և աւելի ահաւոր պատերազմի (75)։ Երկու հիւպատոս ուղարկուեցան Ասիա Տիգրանի ու Միհրդատի դէմ, Կոտտան Բիւթանիան կա-

ռավարելու, իսկ Լուկուլլոսը Կիլիկիան պաշտպանելու համար։ Միհրդատ յանձնեց Դիոփանէս զօրավարին, որ Լուկուլլոսին Կիլիկիայում փակուած պահէ, իսկ ինքը գնաց անձամբ Բիւթանիան նուաճելու. Կոտտային փախցրեց մինչև Քաղկեդոն, ուր 60 հռոմէական նաւ այրեց և մէջի զօրքը ջարդեց։ Յետոյ դարձաւ Բիւթանիա Կիզիկոն քաղաքը պաշարելու, որ Հռոմայեցոց հաւատարիմ էր մնացել։ Այդ միջոցին խորամանկ Լուկուլլոսը Կիլիկիայից ազատուելու հնարքը գտնելով՝ 32,000 զօրքով Կիզիկոնին օգնութեան եկաւ, բայց չհամարձակելով Միհրդատի բազմաթիւ զօրքի հետ պատերազմելու, մտածեց լեռների կրճերը բռնելով՝ նորա բանակի կերակուրը կտրել, և Միհրդատ սովից ստիպուեցաւ պաշարումը վերցնել և իւր երկիրը քաշուիլ։ Այն ժամանակ Լուկուլլոս ընկաւ յանկարծակի Միհրդատի վրայ, բանակը ճեղքեց ու նորանից առաջ Պոնտոս հասնելով՝ սկսաւ այս ու այն տեղ ապստամբութիւններ անել առանց մի երևելի պատերազմ տալու։ Երբ հռոմէական լեգէոնները սկսան տրտնջել այս նոր Ֆաբիոս Կունկտատորի դանդաղութեան վրայ, Լուկուլլոսն ասաց նոցա. «Պատերազմը այսպէս ուշացնելուս պատճառն այն է, որ Միհրդատ նորից զօրք ժողովէ ու գայ մեզ վրայ, և ոչ թէ փախչի և Կովկասի սարերն ապաւինի։ Դարձեալ Միհրդատի երկրից շատ հեռու չէ Հայաստանը, ուր խաղաղ կացած է Տիգրան արքայից արքան, որի զօրութիւնը շատ մեծ է...։ Այս Տիգրանը անտարակոյս մեր դէմ պատերազմ կը բանայ, եթէ Միհրդատ նորան դիմելու լինի. այն ժամանակ մենք մեծ վտանգի մէջ կ'ընկնինք... վասն զի մեզ շատ հեշտ է Կոլքիսացոց ու Կա-

պաղովկացոց հետ կռուիլ, որոնց շատ անգամ յաղթած էնք, քան թէ Հայոց ու Մարաց հետ։ Բայց իւր զօրքը զբաղեցնելու համար՝ Պոնտոսի Ամիսոս քերդաքաղաքը պաշարեց։ Միհրդատ այդ միջոցին անգործ չէր մնացել. 40,000 զօրք հաւաքելով՝ նա սպասում էր Լուկուլլոսին Կաբիրէի դաշտերում։ Լուկուլլոս երկու անգամ յարձակեցաւ Միհրդատի զօրքի վրայ և երկու անգամ յաղթուելով յետ քաշուեցաւ. բայց երրորդ պատերազմում, Ամիսոսի մօտ, Միհրդատ չարաչար յաղթուեցաւ, այնպէս որ ինքն էլ Հռոմայեցոց ձեռքը կ՚ընկնէր, եթէ խարամանկութեամբ Հռոմայեցոց մէջ շփոթութիւն ձգած չլինէր՝ իւր գանձերը տանող ջորիները նոցա առաջը թողնելով։

Միհրդատ փախաւ ապաւինեցաւ Տիգրանի մօտ. բայց Հայոց թագաւորը զայրանալով վրան իւր անյաջողութիւնների համար, և ոչ երեսը տեսնել կամեցաւ, այլ մի հեռաւոր տեղ պատսպարեց նորան Հռոմայեցոց ձեռքից (70)։ Երբ Լուկուլլոսի դեսպաններն եկան ու պահանջեցին Միհրդատին, Տիգրան մերժեց, յայտնելով թէ պատրաստ է զէնքով պատասխանելու Հռոմայեցոց։

Լուկուլլոս այն լուրն առնելուն պէս՝ շտապեց Միջագետքից Ծոփաց գաւառը մտնել, և մի քանի աննշան կռիւներից յետոյ եկաւ Տիգրանակերտը պաշարեց, ուր գտնվում էին Հայոց թագաւորի գանձերը։ Այդ միջոցին Տիգրան Միհրդատին 10,000 ձիաւոր տալով՝ Պոնտոս ուղարկեց, իսկ ինքը կարծելով թէ Լուկուլլոս դեռ Եփեսոսումն է, գլխատել տուեց մի հայ զօրավար, որ Հռոմայեցոց Հայաստան մտնելու համբաւը բերել էր։ Բայց երբ այդ մասին էլ ոչինչ կասկած չմնաց, իւր զօրավարներից մէկին ուղարկեց Լուկուլլոսի առաջը կտրելու.

հրամայելով նորան, որ Հռոմայեցոց հիւպատոսին մեռած կամ կենդանի իւր մօտ բերէ։ Բայց ինքը հայ զօրավարը յաղթուեցաւ ու սպանուեցաւ։ Այն ժամանակ Տիգրան եկաւ անձամբ Լուկուլլոսի դէմ պատերազմելու, ականջ չդնելով Միհրդատի խորհրդին, որ յորդորում էր նորան հեծելազօրով Հռոմայեցոց բանակի կերակուրը կտրել։ 6,000 ձիաւոր Հռոմայեցոց բանակը ճեղքեցին և Տիգրանակերտ մանելով՝ գանձերի մէկ մասն աղատեցին և իրանց թագաւորին բերին։

Հասաւ և Տիգրան իւր զանազան ազգութիւններից կազմած ահեղ բանակովը, որ 260,000-ի էր հասնում, և Հռոմայեցոց սակաւութիւնը տեսնելով՝ «Մէկ են սոքա, կանչեց հեգնութեամբ, եթէ դեսպանութեամբ եկած են, խիստ շատ են, իսկ եթէ պատերազմելու համար՝ քիչ են», և իւր մեծամարմին բանակը կարգաւորելու անհոգ եղաւ։

Այս անտեղի վստահութիւնից օգուտ քաղելով, Լուկուլլոս յանկարծ ընկաւ Հայոց վրայ և իւր յարձակմամբը այնպիսի մեծ շփոթութիւն ձգեց նոցա մէջ, որ Տիգրան ժամանակ չունեցաւ իւր ցրուած բանակը հաւաքելու (69)։ Յետոյ առանց ժամանակ կորցնելու գնաց Տիգրանակերտը պաշարեց, ուր Մուրենաս զօրավարը սպասում էր նորան։ Քաղաքն առնուեցաւ մէջի Յունաց մատնութեամբ, և Լուկուլլոս 8,000 տաղանդ և ուրիշ աւար առնելով՝ մտաւ Հայաստանի խորքերը։ Տիգրան նախընթաց փորձից խրատուած՝ շտապեց մի նոր բանակ կազմելու, առաջինից աւելի կիրթ ու կարգաւորեալ, և եկաւ բնակեցաւ Արածանիի ափերի վրայ իւր միւս մայրաքաղաքը՝ Արտաշատը պաշտպանելու համար (68)։ Այս նոր

պատերազմում երկու կողմն էլ մեծ յամառութեամբ կռուեցան ու շատ մարդ կորցրին, բայց Լուկուլլոսի բաղդն էլ փոխուեցաւ. Նորա զօրքը այնչափ կոտորածներից, երկարատեւ պաշարումներից և մանաւանդ ձիւնապատ անտառների միջով ման գալուց շատ թուլացաւ, այնպէս որ նա ստիպուեցաւ յետ քաշուել, և գնաց Միջագետքի Մծբին քաղաքը պաշարեց, որի քաղաքապետն էր Տիգրանի եղբայրը Գոռ։ Ամբողջ ամառը զուր աշխատելուց յետոյ, ձմեռուայ սկզբին, մի մութ ու անձրևային գիշեր, մինչդեռ պարսպի պահապանները քաղաքի երկկարգ ամրութիւնների վրայ վստահ՝ անհոգ կացած էին, Հռոմայեցիք սանդուղներով բարձրացան և առաջին պարըսպին տիրեցին։ Գոռ ստիպուեցաւ անձնատուր լինել, նախապէս երդում առնելով Լուկուլլոսից, որ քաղաքացոց մի վնաս չհասցնէ։

Մինչդեռ Լուկուլլոս Մծբինի պաշարմամբն էր զբաղած, Տիգրան ժամանակ ունեցաւ յետ դարձնելու այն տեղերը, որ Հռոմայեցիք գրաւել էին Հայաստանի արևմտեան սահմանների վրայ։ Յետոյ յարձակեցաւ Կապադովկիայի վրայ և Փաննիոս զօրապետին քշեց այնտեղից։ Միհրդատին էլ զօրք յանձնեց և ուղարկեց Պոնտոս Լուկուլլոսի թողած զօրավարների դէմ։ Իւր բանակը դրացի իշխանների ուղարկած գնդերով ստուարացնելով, Միհրդատ ընկաւ նախ Փաբիոսի վրայ և նորա զօրքը ջարդեց ու փախցրեց։ Աւելի յաջող չգտնուեցան Սոռնատ և Տրիարիոս զօրավարները, որոնց վրայ Միհրդատ մի փառաւոր յաղթութիւն տարաւ. 7,000 հռոմայեցի ընկան պատերազմի դաշտում, որոնցից 24 հազարապետ և 150 հարիւրապետ, և գուցէ ամբողջ հռոմէական բա-

նակը ջնջուէր, եթէ Միհրդատի ստացած վէրքի պատճառով նորա զօրավարները կոտորածը դադարեցրած չլինէին։ Այս միջոցին Լուկուլլոս անգործ մնացած էր իւր ձմեռոցում, որովհետև զօրքերը ապստամբած էին և չէին կամենում Միհրդատի ու Տիգրանի դէմ պատերազմ գնալ։ Այսպիսով Տիգրան վերստին հաստատուեցաւ Կիլիկիայում, Միհրդատ էլ իւր ընկերներին տիրեց և սկսաւ նորից մեծանալ։

Հռոմայեցիք շուարեցան այս ձախորդութիւնների լուրն առնելով։ Կիկերոն ծերակոյտի մէջ մի ազդու ճառ խօսեցաւ, որով համոզում էր Հռոմայեցոց Լուկուլլոսի տեղ երիտասարդ Պոմպէոսին նշանակել, «որպէս զի այս ծանր ու վտանգալի պատերազմը առաջ տանի երկու զօրաւոր թագաւորների՝ Միհրդատի ու Տիգրանի դէմ. որովհետև մինչև այն ժամանակ նշանակուած զօրավարները միայն յաղթութեան նշաններ էին տարել նոցանից և ոչ կատարեալ յաղթութիւն» (67)։ Արդարև Պոմպէոս իւր նախորդներից յաջող գտնուեցաւ և այնպէս ջարդ տուեց Միհրդատին Եփրատի ափերի վրայ, որ նա հազիւ հազ կարողացաւ 800 ձիաւորով փախչել Հայաստան. բայց Տիգրան չընդունեց նորան։ Դժբաղդ Միհրդատը առանց յուսահատելու դիմեց Կովկասեան ազգերին. այնտեղ Սկիւթացիներից զօրք կազմելով մտածում էր Աննիբալի նմանութեամբ Ալպեան լեռներն անցնել և Հռոմայեցոց հետ իրանց երկրումը պատերազմել. բայց այս յանդուգն ձեռնարկութիւնը զարհուրեցրեց իւր զօրքին։ Միւս կողմից էլ հարազատ որդին Փառնակ ապստամբեցաւ նորանից, և Միհրդատ մի բերդում պաշարուած՝

ոխպուեցաւ սուրը կործքումը ցցել, որ Հռոմայեցոց ռքը չընկնի (64)։

Իսկ Պոմպէոս Միհրդատի վրայ տարած փառաւոր յղթութիւնից յետոյ՝ աւելորդ համարեց նորա ետևից ւնել, այլ շտապեց գնալ Տիգրանի հետ զարնուելու։ ւբ Հայաստան մտաւ, Տիգրանի որդին՝ Փոքր Տիգրանը, առաջուց արդէն իւր հօրից ապստամբել և Պարթևաց ուղէս թագաւորի հետ միաբանել էր, եկաւ Պոմպէոսի ա և հրապարակաւ միացաւ նորա հետ։ Տիգրան տես-լով իրան պաշարուած արտաքին և ներքին թշնամի-րով, խոհեմութիւն համարեց առանց պատերազմի ւշտութիւն խօսել Պոմպէոսի հետ. անձամբ գնաց Հռո-յեցոց բանակը, ուր արժանաւոր պատիւներով ընդու-ւեցաւ, և խաղաղութեան դաշը կնքեց։ Այս դաշնա-ութեամբ Տիգրան հրաժարուեցաւ Գաղատիայից, Կա-պադովկիայից, Կիլիկիայից, Ասորոց երկրից և Փիւնի-կից, որոնք Հռոմայեցոց նահանգներ դարձան. Փոքր յոց մի քանի գաւառները առանձին տէրութիւններ զմեցին բնիկ թագաւորների իշխանութեան և Հռո-յեցոց պաշտպանութեան ներքոյ։ Տիգրանին մնաց ամ-ղջ Մեծ Հայքը և Հայոց Միջագետքը. միայն Կորդուաց Ծովաց նահանգները Պոմպէոս Տիգրանի հաճութեամբ մեցաւ Փոքր Տիգրանին տալ։ Դաւաճան որդին, որ ր հօր գահը առանալու յոյս ունէր, դժգոհ մնաց. մպէոս էլ իմանալով նորա գաղտնի յարաբերութիւն-ը Պարթևաց թագաւորի հետ, շղթայակապ արաւ րան և պահեց իբրև զարդ իւր յաղթանակի համար (64)։

---

## 16.

*Հայոց և Պարթևաց դաշնակցութիւնը Հռոմայեցոց դէմ. Խաղաղութիւնը (53).—Նոր արշաւանք Բարզափրան Ռշտունեաց նախարարի սպարապետութեամբ (51).—Երուսաղէմի անցքերը և հրէական գերութիւնը (39)—Վենդիդիոսի և Բակուրի կռիւը.—Տիգրանի մահը (36).*

Տիգրանի ու Պոմպէոսի մէջ կայացած հաշտութիւնը լոկ մի զինադադար էր Հայոց թագաւորի համար, որ յարմար ժամանակի էր սպասում Հռոմայեցիներից վրէժ առնելու։ Հէնց որ Պոմպէոս հեռացաւ Ասիայից, Տիգրան դարձեալ իւր ուշքը դարձրեց Ասորոց երկրի վրայ։ Պոմպէոսի փոխանորդը Գաբինոս առանց Տիգրանին պատահելու Եգիպտոսի կողմերը քաշուեցաւ, և նորա հետ ծածուկ հաշտութիւն անելով՝ Միհրդատի համանուն որդուն, որ Հռոմայեցոց մօտ պատանդ էր, նորա ձեռքը տուաւ։

Հռոմ չէր կարող ապահով լինել նորա գրաւած երկրների տիրապետութեան վրայ, քանի որ Հայոց և Պարթևաց զօրութիւնը կանգուն էր։ Ուստի երբ եռապետները հռոմէական տէրութեան նահանգները իրանց մէջ բաժանեցին, ընչաքաղց Կրասոսը ընտրեց Ասորոց երկրի կուսակալութիւնը, որ Հայոց ու Պարթևաց վրայ արշաւէ և նոցա հարուստ աւարներով յղփանայ։ Տիգրան շտապեց Որոդէս Գ Պարթևաց թագաւորի հետ բարեկամութեան դաշն կապել, նախագահութեան պատիւը յետ դարձնելով նորան և իւր աղջիկը Բակուր արքայորդուն կնութեան տալով։ Պարսից և Հայոց բանակին հրամանատար նշանակուեցաւ Պարթևաց թագաւորութեան թա-

գաղիր Սուրէն սպարապետը, որ Կրասոսի 40,000 զօրքը ամայի ու աւազուտ տեղերով մտն ածելուց յետոյ՝ Խառանի մօտ մեծ ջարդ տուաւ նոցա։ Այս առաջին պատերազմում Կրասոսի որդին համանուն Կրասոսը թշնամիների ձեռքը չընկնելու համար ինքն իրան սպանեց։ Պարթեւները նորա գլուխը կտրեցին ու Հռոմայեցոց ցոյց տուին։ Սոքա վհատեցան, բայց որդեկորոյս հօր խօսքերից սիրտ առած՝ պատերազմը նորոգեցին։ Հայոց և Պարթեւաց հեծելազօրը իրանց ճարտար նետաձգութեամբ այս անգամ էլ յաղթեցին և ստիպեցին թշնամիներին պատերազմի դաշտից քաշուիլ։ Այնուհետև խորամանկ Սուրէնը մտածեց մի կերպ Կրասոսին ձեռք ձգել։ Երբ եռապետը Խառանում նստած՝ նոր պատերազմի վրայ էր մտածում, Պարթեւաց զօրապետը հրաւիրեց նորան իւր բանակը՝ հաշտութեան վրայ խօսելու պատրուակով։ Արդէն Կրասոս Սուրէնի ուղարկած ձին հեծած նորա բանակը երթալու վրայ էր, երբ հռոմայեցի զօրավարները Պարթեւաց դաւաճանութեան վրայ կասկածելով՝ ուզեցին յետ դարձնել նորան։ Սորա վրայ կռիւ բացուեցաւ Հռոմայեցոց և Սուրէնի մարդկանց մէջ. Պարթեւներն ընկան Կրասոսի վրայ և սպանեցին նորան իւր զօրավարների հետ։ Հռոմայեցիք առանց առաջնորդի մնալով՝ ցիր ու ցան եղան. Պարթեւները ընկան նոցա վրայ և ոմին էլ կոտորեցին, ոմին էլ գերի բռնեցին։ Այս արշաւանքի ժամանակ Հռոմայեցիք մեծ կորուստ ունեցան. 20,000 հոգի սպանուեցան և 10,000 գերուեցան. պատերազմական հարուստ աւարի հետ շատ արծուէնշան դրօշակներ էլ ընկան յաղթողների ձեռքը։ Սուրէն Կրասոսի գլուխն ու ձեռքը և Երուսաղէմի տաճարից ու այլ և այլ մեհեան-

ներից ժողոված գանձերը Տիգրանի արքունիքը ուղարկեց, ուր եկել էր և Որոդէս Բակուր արքայորդու հարսանեկան հանդիսին ներկայ լինելու (53)։

Կրասոսի տեղ շուտով նշանակուեցաւ Կասիոս Տիգրանի առաջն առնելու համար, որ կամենում էր նորից ձեռք բերել Ասորոց երկիրը։ Սակայն Հայոց թագաւորը արդէն ծերացած ու հիւանդ լինելով՝ չէր կարող անձամբ առաջնորդել իւր բանակին. ուստի Որոդէսից օգնական զօրք խնդրեց և ստացաւ Բակուրի զօրավարութեամբ, և մի զօրաւոր բանակ կազմելով՝ Բարզափրան Ռշտունեաց նախարարի սպարապետութեամբ Ասորոց ու Պաղեստինացոց կողմերն ուղարկեց, պատուիրելով նորան, որ տեղական ժողովրդների հետ քաղցրութեամբ վարուի (51)։ Բարզափրան անարգել առաջ գնալով՝ Եփրատ ու Որոնդ գետերի մէջ եղած երկիրը գրաւեց և Անտիոքի մէջ պաշարեց Կասիոսին, որ անշուշտ հայ զօրապետի ձեռքը կ'ընկնէր, եթէ օգնութեան հասած չլինէր նորան հռչակաւոր Կիկերոնը, որ նոյն տարին Կիլիկիայի հիւպատոս էր կարգուել։ Այնուհետև երկար կռիւներ տեղի ունեցան, ուր երբեմն մէկ և երբեմն միւս կողմն էր յաղթում, մինչև որ վերջապէս Հայոց սպարապետը մեծ ջարդ տուեց հռոմէական լեգէոններին և մի մասը ծովը փախցրեց, մինչդեռ միւս մասը ամուր քաղաքներն ապաւինեցաւ (40)։

Այս յաղթութիւնից յետոյ Ասորիքն ու Փիւնիկէն Տիգրանի իշխանութիւնը ճանաչեցին, և Բարզափրան Պաղեստինի վրայ դիմեց։ Հիւրկանոս քահանայապետի եղբօրորդին՝ Անտիգոնոս դիմաւորեց Հայոց սպարապետին և 1,000 քանքար ոսկի խոստանալով, խօսք առաւ

որանից որ իրան Թագաւորեցնէ Հրէից վրայ։ Հասան և
իւրկանոսի հաշտութեան դեսպանները, և Բարզափրան
նէլ Գնունի Նախարարին մի գունտ հեծելազօրով ու-
արկեց Երուսաղէմ, որպէս թէ Հիւրկանոսի հետ բարե-
ամական տեսակցութիւն անելու, բայց իրօք Անտիգո-
ւսին նորա տեղը նստեցնելու համար։ Հիւրկանոս Գնէ-
ն միայն 500 մարդով քաղաքն ընդունեց. բայց յետոյ
րզափրանի տուած երդման վրայ վստահացած՝ յանձն
ւաւ անձամբ սպարապետի մօտ գնալու Եքտիպոն
ւղը, ուր և շղթայակապ եղաւ։ Գնէլ բոլոր զօրքովը
աւ Երուսաղէմ, Անտիգոնոսին Թագաւորեցրեց և Հիւր-
նոսի ստացուածքից 300 քանքար առնելով յետ դար-
ւ, ճանապարհին ասպատակելով այն քաղաքները, որ
րկանոսին հաւատարիմ էին մնացել։ Այնուհետև Բար-
փրան զօրքի հրամանատարութիւնը յանձնեց Բակու-
, և ինքը վերադարձաւ Հայաստան Հիւրկանոսի հետ
մաթիւ Հրէաներ գերի տանելով, որոնց Տիգրան
մայեց բնակեցնել Վան քաղաքի մէջ (39)։
Հռոմայեցիք գրգռուելով Հիւրկանոսի փոխանորդ
ովդէսից, որ Բարզափրանի ձեռքից փախել էր Հռոմ,
զօրք ուղարկեցին Ասորիք Վենդիդիոսի առաջնոր-
Թեամբ։ Սա երկու յաջող կռիւ ունեցաւ Բակուրի
, սպանեց նորան և քշեց Հայոց Ասորիքից. ապա
ն զօրավարին յանձնեց Եփրատի անցքը պահելու,
քը գնաց Երուսաղէմ Անտիգոնոսի վրայ (37)։ Հա-
ու Պարթևները նոր ուժով յարձակեցան Սիրոնի
և փախցրին նորան Վենդիդիոսի մօտ, մինչև որ
ապէս Անտոնիոս եռապետը անձամբ եկաւ Հայոց ու
Թևաց միաբան զօրութեան դէմ պատերազմելու։

Նոյն ժամանակները Տիգրան, որ այս բոլոր պատերազմների շունչն ու կեանքն էր, մեռաւ խորին ծերութեան մէջ 53 տարի փոփոխակի բաղդով թագաւորելուց յետոյ (36)։

## 17.

*Արտաւազդ Ա (36).—Նորա յարաբերութիւնը Անտոնիոսի հետ. Գերութիւնը և մահը (33—31).*

Արտաւազդ Ա իւր հօրից ժառանգեց մի տէրութիւն, որ անընդհատ պատերազմներից տկարացած ու աղքատացած էր (36)։ Այս վէրքերը բուժելու համար Հայոց երկիրը կարօտ էր երկարատև խաղաղութեան և խոհեմ թագաւորների կառավարութեան, որոնք հրաժարուէին ամենևին աշխարհակալութեան ձգտումներից և ամփոփուէին իրանց բնիկ սահմանների մէջ. որովհետև Հայաստանը հանգամանքների բերմամբ յանկարծ գտնուեցաւ երկու հզօր և իրարու ոսոխ տէրութիւնների՝ այն է Հռոմայեցոց ու Պարթևաց մէջ։ Այս փափուկ դրութեան մէջ դժուար էր առաջնորդել հայ ազգի բաղդին, և Արտաւազդ թէև հօր կենդանութեան ժամանակ երկար տարիներ գահակից էր եղած նորան, բայց ի բնէ զբօսասէր լինելով՝ աւելի որսերի ու կերուխումի ետևիցն էր ընկած քան տէրութեան գործերով զբաղած էր։

Անտոնիոս երևեցաւ թէ չէ, Արտաւազդ շտապեց հաշտութիւն խօսել նորա հետ, և խոստացաւ նաև օգնութիւն տալ նորան Պարթևաց դէմ յանձն առած արշաւանքի մէջ։ Բայց ծածուկ խօսք կապեց Պարթևաց Հրահատ Դ թագաւորի հետ, գրգռուելով մանաւանդ Ան-

ոնիոսի իշխանակից Օկտաւիանոսից, որ յորդորում էր
տրան չօգնել իւր ոսոխին։ Արտաւազդ Հռոմայեցոց լե-
էոններին երկար ժամանակ անծանօթ ճանապարհնե-
ով ման ածելուց յետոյ՝ ինքը մի պատրուակով յետ
աշուեցաւ։ Չնայելով որ տարուան ամենայարմար ժա-
մանակն անցել էր, Անտոնիոս ուզեց արշաւանքը շարու-
ակել և գնաց Ատրպատականի Պրասպ քաղաքը պաշա-
եց. մի զօրաբաժին էլ Մարաց կողմերն ուղարկեց։
այց շուտով պաշարի պակասութիւն զգացուեցաւ, Մա-
աստան ուղարկուած զօրքն էլ անյաջողութիւնների
անդիպեցաւ, Անտոնիոս Կրասոսների գլխին եկած դըժ-
աղդութիւնը մտաբերելով՝ հաշտութիւն առաջարկեց
արթևաց Թագաւորին, այն պայմանով որ Խառանի
ատերազմում գերուած Հռոմայեցիք և արծուէնշան դրօ-
ակները յետ տրուին։ Հրահատ խոստացաւ միայն թոյլ
ալ Հռոմայեցոց, որ անվնաս յետ դառնան։ Բայց երբ
քա վհատելով սկսան յետ քաշուիլ, Պարթևներն ըն-
ան նոցա ետևից. սովը մէկ կողմից և թշնամիների
ւրը միւսից այնպիսի կոտորած գործեցին Հռոմայեցոց
ջ, որ երբ Երասխն անցան, 24,000 մարդ էին կորց-
լ։ Անտոնիոս առանց Հայոց երկրում ձմեռելու՝ իւր
նակի մնացորդով անցաւ Միջագետք, այնտեղից էլ
աց Եգիպտոս, թողնելով որ յետոյ վրէժ առնէ Հայոց
ագաւորից այս արշաւանքի համար (34)։

Սակայն Հռոմայեցիք Միջագետքը գրաւել էին, և
տաւազդ իւր զօրքից ստիպուած՝ մի մեծ բանակ կազ-
Ատրպատականի, Կովկասեան լեռների, Աղուանից
վրաց բնակիչներից, և Միջագետք մտնելով դուրս
ց այնտեղից Հռոմայեցոց։ Այս բանի վրայ զայրացած՝

Անտոնիոս մեծ զօրութեամբ եկաւ Արտաւազդի վրայ, աւելի ևս գրգռուելով Կղէոպատրա թագուհուց, որ Հայոց դէմ ոխացած էր իւր անուանակից ազգականի Տիգրանի ձեռքից կրած աղէտների համար։ Հայերը յաղթուեցան ու յետ քաշուեցան։ Անտոնիոս ամեն տեսակ նենգաւոր հնարներ գործ դրեց Արտաւազդին բռնելու. մարդ ուղարկեց նորան և առաջարկեց իւր աղջիկներից մէկին Հայոց արքայորդուն կնութեան տալ, կամ իւր Աղէքսանդր որդուն Արտաւազդի դստեր հետ ամուսնացնել։ Երբ այս խարդախութիւնը չյաջողուեցաւ, Անտոնիոս զօրքով մտաւ Հայաստան և մասամբ քաղցրութեամբ, մասամբ էլ սպառնալիքներով համոզեց Հայոց թագաւորին իւր բանակը գալու։ Անտոնիոս իւր հետ ման ածեց նորան Հայաստանի բոլոր բերդերը, որպէս զի նոցա մէջ եղած գանձերն էլ ձեռք ձգէ, ամեն տեղ հաւատացնելով թէ այդ հարստութիւնները Հայոց երկրի պէտքերի համար պիտի գործ դրուին։ Բայց տեսնելով որ բերդապահները չեն խաբվում, Արտաւազդին ոսկի շղթաներով կապեց և բոլոր տնով տարաւ Աղէքսանդրիա Կղէոպատրա թագուհուն պարգևեց (33)։

Անտոնիոս իւր յաղթութեան յիշատակի համար ոսկի և արծաթի դրամներ կտրել տուեց, որոնց մէկ կողմը իւր գլուխը կայ առաջը Հայոց արքայական թագը դրած և շուրջը այսպիսի արձանագրութիւն. Անտոնիոս, Հայաստան յաղթուած. իսկ միւս կողմը Կղէոպատրայի պատկերը այս ընծայաբերութեամբ՝ Թագաւորների թագուհի Կղէոպատրային։

Արտաւազդ մի քանի ժամանակ բանտի կապանք-

ների մէջ մնալուց յետոյ Կղէոպատրայի ձեռքով գլխատուեցաւ, և գլուխը ուղարկուեցաւ Մարաց Արտաւազդ թագաւորին, որ Արտաւազդի ոխերիմ թշնամին էր (31)։

---

## Դ. ԱՐՏԱՒԱԶԴ ԱՌԱՋԻՆԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ ԸՍՏ ԱՐՏԱՔԻՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹԵԱՆ

### 18.

*Արտաքին և տոհմային պատմիչների անմիաբանութիւնը Արտաւազդի յաջորդների վրայ.—Արտաշէս (Բ) (33).—Նորա մահը 21).—Տիգրան (Բ) (20).—Տիգրան Փոքր և Երատոյ (5).—Արիոբարզան (2 Քրիստոսից յետոյ).—Տիգրան (Գ).—Երատոյ թագուհին երկրորդ անգամ (15).—Ոնոն Պարթեւաց թագաւորը Հայոց երկրում (16).—Արտաշէս (Գ) (18).—Արշակ (Բ) Պարթեւ թագաւոր Հայոց.—Միհրդատ Վրաց իշխանը Արշակի տեղ. որա կառավարութիւնը և վերստին գահի վրայ հաստատուիլը (35)։*

Արտաւազդից յետոյ Հայաստանի քաղաքական պատմութեան մէջ այնպիսի խառնակութիւն է տիրապետում, որ մեր այժմեան ունեցած տեղեկութիւններով անհնարին է պարզաբանել։ Լատին և յոյն պատմիչները Հայաստանի վրայ իշխող թագաւորների պատմութիւն են անում Արտաշատ մայրաքաղաքում նստող, որոնց ոչ գործերը և ոչ անուններն անգամ յիշատակուած են մեր տոհմային պատմութեան մէջ։ Միւս կողմից ազգային պատմիչները, առաջիններից բոլորովին անկախ, պատմում են Մծբին և յետոյ Եդեսիա նստող թագաւորների գործերը, որոնք արտաքին պատմագրութեան յիշած

թագաւորների գործերի հետ ոչինչ նմանութիւն չունին։ Առաջինները իրանց պատմածների ստուգութեան վկաներ ունին հայ թագաւորների անունով կտրած և մինչև մեր օրերը հասած դրամները, որոնք իրանց վրայի պատկերներով պատմուած անցքերն են ներկայացնում։ Իսկ ազգային պատմութիւնը իւր ճշմարտութեան համար նոյնպէս հաստատուն վկաներ ունի. նախ՝ ազգային պատմիչների համաձայն խօսքերը և մանաւանդ ազգի մէջ պահուած աւանդութիւնները և այս շրջանի թագաւորների անունով մնացած քաղաքները, ինչպէս են՝ Երուանդակերտ, Երուանդաւան, Վաղարշապատ և այլն։

Այս դժուար խնդիրը լուծելու դիւրին ու բնական միջոցը կը լինէր միևնոյն ժամանակ երկու թագաւորութիւն դնել Հայոց երկրում, հիւսիսային՝ մինչև Կորդուաց լեռները, և Հարաւային՝ յիշեալ լեռներից մինչև Ասորեստան, առաջինը տալով առանձին թագաւորների Հռոմայեցոց իշխանութեան տակ, իսկ երկրորդը օրինաւոր թագաւորների գայիոնի տակ, որոնք Մծբինից կամ Եդեսիայից իշխում լինէին ստորին Հայաստանի վրայ, մինչև որ այս թագաւորութեան հինգերորդ յաջորդը, Երուանդ Արշակունին, Հայոց միջագետքը Հռոմայեցոց տալով՝ նորա տեղը ստացել է բուն Հայաստանը և այսպիսով Հայոց թագաւորութեանը միութիւն տուել։ Բայց օտարազգի պատմիչները Երուանդի ժամանակից յետոյ էլ մեր պատմիչներից անկախ՝ շատ հայ թագաւորների յաջորդութեան վրայ խօսում են մինչև քրիստոնէութեան երրորդ դարու վերջերը, որոնց գոյութիւնը ուրանալ անհնարին է։ Ուր թողնենք որ Հայոց երկրի այս բաժանման մասին մի փոքր նշմարանք անգամ չէ

երևում ոչ ազգային և ոչ արտաքին պատմագրութեան
մէջ։ Ընդհակառակն Մովսէս Խորենացին բովանդակ եր-
կիրը միայնակ Արշակունի թագաւորի տակ է դնում,
որին թէպէտ նստեցնում է հարիւր տարուան միջոցում
Մծբին կամ Եդեսիա, բայց բուն Հայաստանը կառավար-
վում էր վերակացուի ձեռքով, հարկը տրվում էր Հռո-
մայեցոց ամբողջ Հայաստանից և հիւսիսային ամուր բեր-
դերը՝ Անի, Սպեր, Բաբերդ նորա իշխանութեան ներ-
քոյ էին գտնվում։ Պարձեալ արտաքին պատմիչները Ար-
տաշատ նստող թագաւորներին տալիս են նոյնպէս բո-
վանդակ Հայաստանը, որի հարաւային ամուր բերդը՝
Տիգրանակերտ յանուանէ յիշվում է Տակիտոսից, իբրև
պատերազմների ասպարէզ այս թագաւորների և Հռո-
մայեցոց ու Պարթևաց մէջ։

Այսպէս ուրեմն այս երկու պատմութիւնները թէ-
պէտ առանձին առած՝ վաւերական ու ստոյգ են, բայց
անկարելի է իրարու հետ միաբանեցնել նոցա, որ թէ
մէկի և թէ միւսի պարզութիւնը չխանգարուի։ Ուստի
այս խնդրի լուծումը ապագային թողնելով, առաջ բե-
րենք նախ արտաքին պատմութեան աւանդածները Ար-
տաւազդի յաջորդների վրայ, և ապա մեր պատմութեան
ժելը չարունակենք ազգային պատմագրութեան համա-
ձայն։

Անտոնիոս Արտաւազդին իւր բոլոր տնով գերի վարե-
լուց յետոյ, Հայաստանի վրայ թագաւորեցրեց Կղէոպատ-
րայից ունեցած որդուն՝ Աղէքսանդրին, Մարաց թագաւորի
խնամակալութեան ներքոյ, որի աղջկան հետ ամուսնացաւ
Աղէքսանդր։ Բայց Հայոց զօրքը այս օտարազգի իշխա-
նին չընդունեց և Արտաւազդի անդրանիկ որդուն Ար-

տաշէսին (Բ), որ Հռոմայեցոց ձեռքից ազատուել էր, թագաւոր նստեցրեց (33)։ Արտաշէս Անտոնիոսից քշուելով ապաւինեցաւ Պարթևաց Հրահատ թագաւորի մօտ և նորա հետ միաբանած եկաւ Մարաց թագաւորի վրայ. և թէպէտ սկզբում ձախորդութիւնների հանդիպեցաւ, բայց յետոյ թշնամիներին յաղթեց և վերստին հաստատուեցաւ իւր գահի վրայ. որովհետև Անտոնիոս Օկտաւիանոսի հետ պատերազմի բռնուած լինելով՝ չկարողացաւ օգնութիւն հասնել Մարաց։ Քիչ յետոյ երբ Անտոնիոս իւր հակառակորդից յաղթուելով անձնասպանութեամբ կնքեց իւր կեանքը, Օկտաւիանոս Արտաւազդի որդոց Աղէքսանդրիայից Հռոմ փոխադրեց. իսկ Արտաշէսին ամենևին անհանգիստ չարեց։ Բայց և այնպէս Արտաշէս երկար չվայելեց իւր թագաւորութիւնը. նա զոհ գնաց Հռոմայեցոց դէմ ունեցած ատելութեանը, որոնք այնպիսի անարգական մահով սպանել էին իւր հօրը, ինքն էլ դաւաճանութեամբ սպանուեցաւ նոցա կուսակալներից (21)։

Անմիջապէս նախարարները մարդ ուղարկեցին Հռոմ և Օգոստոս Օկտաւիանոս կայսրից խնդրեցին որ Արտաւազդի միւս որդուն՝ Տիգրանին իրանց թագաւոր տայ։ Կայսրը Հայոց մեծամեծների խնդիրքին զիջանելով, իւր Տիբերիոս որդեգրին լեգէոններով Հայաստան ուղարկեց, որ եկաւ երկիրը նուաճեց և Տիգրանին (Բ) հրապարակաւ թագաւոր պսակեց (20)։ Բայց գահը երկար ժամանակ չմնաց այս թագաւորի, ինչպէս նաև նորա որդու Փոքր Տիգրանի ձեռքը իւր Երատոյ քրոջ հետ (5)։ Սոցա տեղ Հռոմից եկաւ Արտաւազդ իշխանը, որին Տիգրան Փոքր Պարթևաց օգնութեամբ յաջողեցաւ քշել և միւս անգամ իշխանութիւնը ձեռք առնել։ Այս բոլոր յեղա-

ոխութիւնները անհրաժեշտ հետեանք էին այլ և այլ
ուսակցութիւնների, որոնք անդադար աղմկում էին եր-
իրը։ Հայ իշխաններից ոմանք Հռոմայեցոց կողմն էին
ակում, այլք Պարթեաց կողմը, ուրիշները վերջապէս
այրենասիրական ոգւով վառուած՝ ոչ Հռոմայեցոց և ոչ
արթեաց միջամտութիւնն էին կամենում։

Քրիստոսի թուականութեան 2-րդ տարին Օգոստո-
ի միւս որդեգիրը Գայիոս՝ կայսեր հրամանով եկաւ
այաստանը խաղաղացնելու։ Պարթեները յետ էին քա-
ւել, Տիգրան սպանուել էր դրացի ազգերի դէմ մղած
ատերազմում, ուր Հռոմայեցիք յարուցել էին նորա
դայ, իսկ Երատոն առ ժամանակ հրաժարուած էր։ Գա-
ոս նախարարների հաւանութեամբ Հայոց գահի վրայ
ստեցրեց Մարաց թագաւորի Արիոբարզան որդուն, որ
․ր բարեմասնութիւններով սիրելի էր եղել ժողովրդին։
ակայն ազգի մի մասը այս ընտրութիւնից աժգոհ մնա-
վ՝ զէնքի դիմեց, և մինչ Գայիոս Արտագերս ամրոցին
ստեցել էր բերդականների հետ խօսելու համար, ամ-
ոցի հրամանատարը՝ Ադդոն եկաւ և սրով վիրաւորեց
րան։ Հռոմայեցիք բերդը պաշարմամբ առին ու այրե-
ին, և Ադդոն թշնամիների վրէժխնդրութիւնից ազա-
ուելու համար՝ ընկաւ կրակի մէջ ու այրուեցաւ։

Այսպիսով երկիրը առ ժամանակ խաղաղացաւ։ Բայց
ստ չանցաւ Արիոբարզան մեռաւ և նորա որդին գահից
րժուեցաւ։ Այն ժամանակ Օգոստոս Հայոց թագաւոր-
րի տոհմից Տիգրան (Դ) իշխանին ուղարկեց, որից
տոյ Երատոյ թագուհին երկրորդ անգամ կառավարու-
եան սանձը ձեռքն առաւ (15)։ Հայերը կին թագա-
րի սովորած չլինելով՝ շուտով քշեցին նորան, և փոքր

ինչ ժամանակ անիշխանութեան մէջ մնալուց յետոյ՝ երկրի թագը առաջարկեցին Պարթեւաց Ոնոն թագաւորին, որին իւր հպատակները աթոռից քշել էին (16)։ Բայց Արտաւան Գ նորա յաջորդը պատերազմ սպառնաց նորան՝ եթէ ընդունի։ Հայերը այնքան զօրութիւն չունէին որ կարողանային պահպանել Ոնոնին, Հռոմայեցիք էլ այդ ժամանակ չէին համարձակւում օգնել նորան. ուստի Ասորոց կուսակալը Սիլանոս Ոնոնին իւր մօտ հրաւիրեց և պատւով պահեց մինչև որ կայսրը Գերմանիկոսին ուղարկեց Հայաստանը բարեկարգելու, որ առանց թագաւորի էր մնացել։ Այն ժամանակ ազգը յայտնեց իւր կամքը, խնդրելով որ իրան թագաւոր տան Պոնտոսի Պոլեմոն թագաւորի որդուն՝ Զենոնին, որ փոքր հասակից Հայոց վարքով ու սովորութիւններով մեծացած և նոցա որսերին ու զուարճութիւններին ընտելացած լինելով՝ նախարարների և ժողովրդի սիրտը գրաւել էր։ Գերմանիկոս եկաւ Արտաշատ և Զենոնին թագաւոր պսակեց։ Ժողովուրդը ողջունեց իւր նոր թագաւորին Արտաշէս (Գ) անուն տալով նորան (18)։

Արտաշէսի մահից յետոյ Արտաւան արհամարհելով Տիբերիոսի ծերութիւնը, մտաւ Հայաստան և իւր Արշակ (Բ) որդուն բռնի թագաւորեցրեց այնտեղ, կամենալով այս կերպով երկիրը իւր իշխանութեան տակ առնել։ Տիբերիոս հետզհետէ երկու հակառակորդ վեր կացրեց նորա դէմ, Հրահատ և Տրդատ, երկուսն էլ Արշակունի իշխաններ, և Վրաց Փարսման թագաւորի եղբօրը՝ Միհրդատին յանձնեց Հայաստանը նուաճել և նոյն երկրում թագաւորել։ Միհրդատ Փարսմանից օգնութեան խոստում առնելով՝ Արշակի մերձաւորներին կաշառեց և

պանել տուեց նորան։ Վրացիք մտան Հայաստան և Արտաշատ մայրաքաղաքն առին. յետոյ Պարթևաց զօրութեան դէմ դնելու համար՝ Սարմատացի վարձկան զօրք երին Հայաստան և Կասպից կամ Ալանաց դռները զգուշութեամբ պահեցին, որ Պարթևներն էլ նոցանից օգնութիւն չառնեն, որովհետև Սարմատացոց իշխանները սովորութիւն ունէին փողով երկու պատերազմող կողմերին ծառայել։ Պարթևաց թագաւորը Որոդէս, որ ուղարկել էր իւր եղբօր մահուան վրէժն առնելու, չարաչար պարտուեցաւ. նոյն բաղդն ունեցաւ և Արտաւան, որ ամբ եկաւ Վրացոց Հայաստանից քշելու։ Մինչդեռ Պարթևաց թագաւորը մտածում էր պատերազմն առաջ տանել, Հռոմայեցոց զօրապետը Վիտելլիոս սպառնաց նորա սահմանները կոխել։ Արտաւան ստիպուեցաւ յետ դառնալ և պաշտպանուիլ իւր հակառակորդ Տրդատի դէմ, Պարթևաց մեծամեծներին իւր կողմը գրաւելով՝ երի գլխաւոր քաղաքներին տիրեց և հասաւ մինչև եղբոն մայրաքաղաքը, ուր և թագաւոր պսակուեցաւ։ Արտաւան ապաւինեցաւ Սկիւթացոց սահմանները և այնտեղից զօրք ժողովելով՝ եկաւ Տրդատին քշեց. ապա շտապեց Կալիգուլա կայսեր հետ հաշտութիւն անել իւր Վարշ որդուն Հռոմ պատանդ ուղարկելով։

Այս հաշտութեան հետևանքն այն եղաւ, որ Միհրդատ Հայաստանից կանչուեցաւ ու արգելուեցաւ Հռոմ, և Պարթևները դարձեալ գրաւեցին Հայոց երկիրը։ Կալիգուլայի յաջորդը Կղօդիոս Միհրդատին ոտից հանեց և զօրք յանձնելով նորան՝ Հայաստան ուղարկեց։ Մինչդեռ հռոմէական լեգէոնները ամրոցների քաղաքների առմանն էին դրաղուած, Վրացիք դաշ-

տայքն տեղերը գրաւեցին, և Պարթևները ստիպուեցան իրանց երկիրը քաշուիլ։ Այսպիսով Միհրդատ վերստին հաստատուեցաւ իւր թագաւորութեան մէջ (35)։

---

## 19.

*Հռադամիզդ Հայոց երկրում.—Վաղարշ Ա Պարթևաց թագաւորի արշաւանքը Հայաստան.—Հռադամիզդի փախուստը. Ձենոբիա թագուհի.—Կորբուղոն. Արտաշատի աւերումը և Տիգրանակերտի առումը. Տիգրան (Դ).—Վաղարշի յաղթութիւնը Հռոմայեցոց վրայ.—Տրդատի ուղևորութիւնը Հռոմ և Ներոնի կայսրից Հայոց թագաւոր պսակուիլը* (66).—*Ալանաց պատերազմը* (75)։

Տասնևվեց տարի թագաւորել էր արդէն Միհրդատ, երբ փառասէր ու քաջ Հռադամիզդ եղբօրորդին (Փարսմանի որդին) եկաւ Հայոց արքունիքը, պատճառելով թէ իւր հօր և մանաւանդ խորթ մօր ատելութիւնից է փախչում։ Միհրդատ սիրով ընդունեց նորան և մեծամեծ պատիւների հասցրեց։ Այս ընդունելութիւնից շահուելով՝ Հռադամիզդ հայ նախարարների միաբանութեամբ դաւաճանութիւն նիւթեց հօրեղբօր դէմ, յետոյ վերադարձաւ իւր հօր մօտ, որի հետ առաջուց խօսքը մէկ էր արել, և վրացի զօրքով եկաւ Հայոց թագաւորի վրայ։ Այս անակնկալ գործը տեսնելով, Միհրդատ ապաւինեցաւ Գառնի բերդը, որի պահպանութիւնը Հռոմայեցոց էր յանձնուած։ Հռադամիզդ Գառնին պաշարեց, բայց չկարողացաւ առնել. ուստի բերդի հրամանատարին կաշառեց և յորդորեց, որ Միհրդատին համոզէ իւր մօտ գալու և հաշտութիւն անելու։ Թագաւորը յանձն առաւ

րդից դուրս գալու, և գնաց Հաղամիրդի հետ տես-
ւելու մի անտառում, ուր իբրև թէ աստուածների
ւկայութեանը խաղաղութեան դաշինքը պիտի հաս-
տուէր։ Բայց նշանակեալ տեղը հասաւ թէ չէ, ամեն
յմից ընկան վրան, ոտքերը շղթայեցին և ծանր զգեստ-
ւի տակ խեղդեցին որդոցն էլ սպանեցին, և Հաղա-
յդ յափշտակեց Հայաստանի թագը։

Այս գարշելի դաւաճանութիւնը Հռոմայեցոց աչքերի
աջ էր կատարուել։ Նոցանից ոմանք կամենում էին
դաւաճանը անպատիժ չմնայ, բայց շատերը Հաղա-
դի արարմունքին հաւանութիւն էին տալիս։ «Օտա-
յմնների կատարած բոլոր չարութեան գործերը, ա-
մ է Տակիտոս, պէտք է ուրախութեամբ ընդունուէին.
ւկ էր առելութիւնները գրգռել, հետևելով կայսրների
նակին, որոնք Հայաստանը ըստ երևոյթին իբրև
ագի՝ իսկ արդեամբ լոկ իբրև երկպառակութեան ա-
ւկայ էին տուել։ Հաղամիրդն էլ այնքան չէր ծառայիլ
մի շահերին, եթէ իւր թագը փառաւոր գործերի պար-
լան լինէր»։ Այս կարծիքը յաղթող հանդիսացաւ։

Սակայն Վաղարշ Ա (Վոլոգէս) Պարթևաց թագա-
յ յարմար առիթ համարեց Հայաստանը նուաճելու,
եւր նախորդների իշխանութեան տակ էր գտնվում,
ւաճանութեամբ օտարականների ձեռքն էր ընկել։
գիտաւորութեամբ նա զօրք հաւաքեց և պատրաս-
եցաւ Հայոց գահի վրայ նստեցնելու իւր Տրդատ եղ-
յ։ Պարթևները Հայաստանի հողի վրայ ոտք կոխե-
թէ չէ, Վրացիք առանց պատերազմելու յետ քա-
ցան, և երկրի նշանաւոր քաղաքները՝ Արտաշատ ու
ռանակերտ անձնատուր եղան։ Բայց ձմեռուայ խըս-

տութիւնը և պաշարի պակասութիւնը ստիպեցին Վաղարշին շուտով յետ դառնալ։ Այս որ լսեց Հուրդամիզդ Նորքից եկաւ. Հայաստան ու թագաւորութիւնը ձեռք առաւ, և սկսաւ առաջուանից աւելի խստութեամբ վարուել Հայոց հետ, որոնք իրանից ապստամբել և Պարթևաց կողմն էին անցել։ Զայրացած ժողովուրդն ու զէնք առաւ բռնաւորի դէմ, և Հուրդամիզդ պաշարուելով իւր պալատում՝ հազիւ կարողացաւ փախչել իւր Զենոբիա կնոջ հետ։ Դժբաղդ թագուհին յղի լինելով՝ դժուարանում էր հետևել իւր ամուսնուն, և թախանձում էր որ պատուաւոր մահով ազատէ իրան ամօթալի գերութիւնից։ Հուրդամիզդ երկար ընդդիմանալուց յետոյ՝ դաշոյնով հարուածեց նորան, քաշէքաշ տարաւ մինչև Երասխի ափը և գետը ձգեց, որպէս զի նորա դիակը չնախատուի, և ինքը փախչելով ապաւինեցաւ Վրաստան։ Բայց ալիքները ափը քշեցին Զենոբիային դեռ ևս կենդանի. անծանօթ հովիւներ պատահելով նորան, վէրքերը պատեցին և տարան Արտաշատ, ուր քիչ յետոյ Տրդատ Պարթևաց զօրքով եկաւ բնակութիւն հաստատեց, և թագուհուն արքայական պատուով պահեց իւր պալատում (42)։

Այս բոլոր անցքերը Հռոմայեցոց ականջը հասնելով, Ներոն կայսրը յանձնեց Կորբուղոն զօրապետին երթալ Հայաստան և Հռոմէական ազդեցութիւնը վերահաստատել։ Այս յաջողակ զօրավարը շահուելով Վրկանաց ապստամբութիւնից, որոնց հնազանդելու էր գնացել Վաղարշ, Տրդատին քշեց և Արտաշատն առնելով՝ այրեց ու կործանեց, որովհետև քաղաքի պահպանութեան համար շատ զօրք էր հարկաւոր, և ինքը չէր կամենում իւր զօ-

ւթիւնը բաժանել։ Յետոյ գնաց Տիգրանակերտի վրայ,
մնապարհին պատահած ամրոցներին տիրելով և խըս-
ւթեամբ վարուելով ժողովրդի այն մասի հետ, որ իւր
ացուածքն առած՝ անտառներում ու ձորերում ապա-
նած էր։ Տիգրանակերտցիք առանց ընդդիմութեան
աձնատուր եղան և Կորբուղոնի առաջ ոսկի պսակ բե-
ն ի նշան հաշտութեան։ Հռոմայեցիք ոչինչ վնաս
ացրին քաղաքին, միայն միջնաբերդը, ուր մի խումբ
ջ երիտասարդներ ամրացած էին, երկար դիմադրու-
ւնից յետոյ յարձակմամբ առնուեցաւ։ Այնուհետև Կոր-
ւղոն Հայոց վրայ թագաւորեցրեց Կապադովկիայի Ար-
զայոս թագաւորի թոռանը՝ Տիգրանին (Դ), որին Նե-
ւ կայսրը Հռոմից ուղարկել էր Հայաստան, և նորըն-
ր թագաւորը պաշտպանութեան համար զօրք թողնե-
՝ ինքը անցաւ Ասորիք (60)։

Վաղարշ Վրկանաց արշաւանքից վերադառնալով,
ւ իւր եղբօր Հայաստանի թագաւորութիւնից մեր-
ւիլը և նորա տեղ մի օտարականի կարգուիլը իմա-
ւ, սաստիկ զայրացաւ, մանաւանդ որ Տիգրան յոյսը
ոմայեցոց վրայ դնելով՝ սկսել էր Ատրպատականը աս-
տակել. ուստի կանչեց Տրդատին և իւր մեծամեծների
ւկայութեանը գլխին թագ դնելով՝ զօրքով Հայաս-
ն ուղարկեց։ Պարթևներն եկան պաշարեցին Տիգրա-
կերտը, ուր ամրացած էր Տիգրան, բայց չկարողա-
ն առնել։ Կորբուղոն մարդ ուղարկեց Վաղարշին, որ
իչ բանակի գլուխն անցած՝ Մծբինի առաջ հասած
և առաջարկեց որ գործը խաղաղութեամբ վերջաց-
ւ։ Բայց բանակցութիւնները անյաջող ելք ունեցան,
Պետոս զօրապետը ուղարկուեցաւ Հայաստանը Պար-

լթեայ պաշտպանելու, մինչդեռ Կորբուլոն Եփրատի եզերքը բռնեց, որ Պարթևները չկարողացան Ասորիք անցնել։ Վաղարշ սորան թողեց և բոլոր զօրութեամբ Պետոսի վրայ գնաց, որ մի քանի ամրոցներ առնելուց յետոյ՝ զօրքը ցրուել և Հռոմ լուր էր ուղարկել թէ պատերազմը յաջողութեամբ վերջացրեց։ Պարթևներն ընկան ցիր ու ցան եղած Հռոմայեցոց վրայ և այնպիսի ջարդ տուին նոցա, որ Պետոս հարկադրուեցաւ հաշտութիւն խնդրել և բոլոր զօրքովը Հայաստանի սահմաններից դուրս գալ։

Մինչդեռ Հռոմում Պետոսի տուած յաղթութեան աւետիսն էր տօնվում, հասան Վաղարշի դեսպանները, որոնք վերջին դէպքերը ծանուցին կայսեր և խնդրեցին որ Տրդատի թագաւորելուն հաւանութիւն տայ, բաւական համարելով որ արքայորդին հռոմայական բանակը երթայ և կայսերական պատկերի առաջ թագաւոր պսակուի։ Խռովեցաւ Ներոն և ծերակոյտի հետ խորհուրդ անելով՝ վճռեց պատերազմը շարունակել քան ամօթալի հաշտութիւն յանձն առնել։ Կորբուլոն, որ Պետոսի հետ կարգուեցաւ Պարթևաց դէմ, զօրքով մտաւ Հայաստան. բայց գործը առանց արիւնհեղութեան վերջացաւ, որովհետ Վաղարշ համաձայնեցաւ Հռոմայեցոց պահանջը կատարել և թոյլ տայ, որ Տրդատ անձամբ Հռոմ գնայ ու կայսրից ստանայ Հայաստանի թագը, «այն պայմանով միայն՝ որ նա ազատ մնայ ամեն բաներից, որ ծառայութեան նշան են համարվում. սուրը ձեռքից չառնեն, գաւառների կառավարիչները չմերժեն համբուրելու նորան և սպասել չտան իրանց դրան առաջ, և վերջապէս Հռոմում հիւպատոսական պատուով ընդունուի։ Վաղարշ,

ելացնում է Տակիտոս, չէր հասկանում Հռոմայեցոց ղաքականութիւնը, որ իշխանութեան զօրութիւնն է մենում և նորա սնոտի կողմերն անարգում է»։ Տրդատ ծ բազմութեամբ ուղևորուեցաւ Հռոմ, ուր Ներոն փա-ւոր հանդիսով թագաւոր պսակեց նորան և Հայաս-ան ուղարկեց (66)։

Տրդատի առաջին բանն եղաւ Արտաշատը նորոգել զարդարել, որի համար Հռոմից բազմաթիւ արուես-ագէտներ էր բերել։ Մի քանի տարուց յետոյ նա գնաց անաց դէմ, որոնք Մարաց երկիրը ասպատակելով յաստան էին մտել։ Այս արշաւանքի ժամանակ Տրդա-ի կեանքը վտանգի մէջ ընկաւ. Ալանք պարան ձգելով նել էին նորան, բայց Հայոց թագաւորը պարանը րեց ու ազատուեցաւ (75)։ Հռոմայեցիք պատրաստ-ւմ էին օգնութիւն գալ Հայոց, բայց էլ հարկաւոր չե-ւ, որովհետև լեռնականները շուտով քաշուեցան իրանց կիրը *)։

---

*) Սորանից յետոյ արտաքին պատմիչները ուրիշ շատ թագաւորների անուններ են տալիս, բայց նոցա վրայ պիսի կցկտուր ու անկապ տեղեկութիւններ են հաղոր-մ, որ անհնարին է նրանց ասածներից մի ամբողջ բան զմել։ Ահաւասիկ ա. դ. թագաւորների անունները.—Աշխա-ր (81), Պարթամասիր (107), Պարթամասպատ (117) Աքե-նիդ (140), Սոյեմոս (160), Սանատրուկ, Վաղարշ (195), ատ (Բ) (284), Արտաւազդ (Գ), Տրդատ (Գ) (297)։

## Դ. ՄԻՋԱԳԵՑՔԻ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐՆԵՐԸ

## 20.

*Արշամ (33—3 Քր. առաջ).—Հիւրկանոսի փախուստը Պաղեստին. Բագրատունեաց հաւատափոխութիւնը.—Արշամի գժտութիւնը Հրէից Հերովդէս թագաւորի հետ.—Աբգար (3 Քր. առաջ).—Թշնամութիւն և պատերազմ Հերովդէսի հետ.—Աբգարի ապստամբութեան խորհուրդը.—Աբգարի յարաբերութիւնը Փրկչի հետ և նորա մկրտութիւնը.—Աբգարի վերջին գործերը և մահը (35—Քր. յետոյ)։*

*Մինչդեռ երկու եռապետները Օկտաւիանոս և Անտոնիոս միմեանց հետ կռւում էին իշխանութեան համար, Հայաստանը առ ժամանակ Հռոմի արթուն հսկողութիւնից ազատ մնալով՝ շտապեց իւր վիճակը ապահովել։ Մէկ կողմից Արտաւազդի անդրանիկ որդին Արտաշէս Պարթևաց օգնութեամբ հիւսիսային Հայաստանի իշխանութիւնը ձեռք բերեց, և միւս կողմից Միջագետքում գտնուած զօրքերն ու նախարարները Մծբինում թագաւոր նստեցրին Արտաւազդի հօրեղբօրորդուն՝ Արշամին, որին Ասորիք իրանց թագաւորների անուան համեմատ Մանովա անուն տուին (33—3 Քր. առաջ)։ Արշամ իւր իշխանութիւնը և երկրի հանգստութիւնը շատ թանդ գնով գնեց, ստիպուելով դաշնակից և հարկատու լինել Հռոմայեցոց, որոնց միահեծան տէրը դարձել էր Օգոստոս կայսրը։*

*Արշամի օրով Ենանոս Բագրատունի նախարարը Հրէից Հիւրկանոս քահանայապետին ծածուկ Պաղեստին փախցրեց։ Այս բանից առիթ առնելով՝ Արշամ ուզեց գլուխ տանել այն մտադրութիւնը՝ որին ի սկզբանէ ան-*

ի հետամուտ էին եղել Արշակունի թագաւորները, այն է
ագրատունեաց տոհմին հրէութիւնը թողնել տալ և
այոց կրօնին դարձնել, որպէս զի այսպիսով աւելի սեր-
ութեամբ կապեն նոցա Հայոց արքունիքի շահերի հետ։
ոդէն Վաղարշակ յորդորել էր Բագարատ իշխանին Մով-
սական կրօնից հրաժարուիլ և հեթանոսութիւնն ըն-
ունել. բայց երբ նա յանձն չառաւ, իւր կամքին թո-
ց։ Վաղարշակի յաջորդը Արշակ Ա Բագարատի երկու
դոց, որ չուզեցին կուռքերին պաշտօն մատուցանել,
ահատակեց. միւսները թագաւորի բարկութիւնից ազա-
ւելու համար՝ յանձն առին շաբաթ օրը որսի ու պա-
հրազմի երթալ, և իրանց որդոց չթլփատել։ Տիգրան Բ
ուղ Բագրատունու լեզուն կտրեց կուռքերը անարգե-
ն համար. միւս Բագրատունիք յանձն առին զոհած
ս և խոզենի ուտել՝ առանց սակայն անձամբ զոհ մա-
ուցանելու աստուածներին, ուստի թագաւորը զօրքի
լարապետութիւնը խլեց նոցանից, և միայն թագա-
ութիւնը թողեց։ Այժմ Արշամ աւելի հեռու գնաց։ Երբ
անոս Բագրատունին չկարողացաւ Հիւրկանոսի խոս-
ացած 100 քանքար փրկանքը թագաւորական գանձա-
նին տալ (որովհետև Հիւրկանոսը Հերովդէսից սպա-
ւել էր), Արշամ Ենանոսին պատուից զրկեց և բան-
րկել տուեց։ Թագաւորի զայրոյթը մեծ եղաւ մանա-
նդ՝ երբ Զօրա Գնթունեաց նախարարը Ենանոսին ամ-
ստանեց, իբրև թէ Ենանոսի միտքը թագաւորից
լատամբելն էր ու տնով տեղով Հրէաստան գաղթել,
ժէ սոյն դիտաւորութեամբ Հիւրկանոսին արձակել էր,
պէս զի Հերովդէսից բնակութեան տեղ խնդրէ իւր
լի համար։ Այս բանի վրայ Ենանոս դառն տանջանք-

նկրի մատնուեցաւ. մի ելք էր մնում նորան, կամ խուսափել հրաժարուիլ հրէութիւնից, և կամ բոլոր ցեղովը բնաջինջ լինել։ Արդէն իւր ազգականներից մէկը սպանուել էր, և մինչ որդիքն էլ բերվում էին տանջանքի տեղը, Ենանոս իւր կանանց թախանձանքին զիջանելով՝ յանձն առաւ թագաւորի կամքը կատարել և բոլոր ազգատոհմի հետ կուռքերին երկրպագութիւն տալ։ Արշամ վերստին հաստատեց նորան իւր պատիւների մէջ, բայց զգուշութեան համար Միջագետքից հեռացրեց և վերակացութեան պաշտօնով Հայաստան ուղարկեց։

Քիչ յետոյ Արշամի և Հրէաստանի Հերովդէս թագաւորի մէջ գժտութիւն ընկաւ։ Հերովդէս շատ շինութիւններ անելուց յետոյ, կամեցաւ սալայատակել Ասորոց Անտիոք քաղաքը, որի փողոցները տղմով ու աղտեղութեամբ լի էին, և այս բանի համար Արշամից գործաւորներ խնդրեց։ Արշամ յանձն չառաւ այս անտեղի պահանջը կատարելու, և պատրաստուեցաւ զէնքով դէմ դնել Հերովդէսին. միևնոյն ժամանակ Հռոմ դեսպաններ ուղարկեց Օգոստոսին գանգատելու։ Բայց կայսրը ոչ միայն չարդարացրեց նորան, այլ և բոլոր Միջագետքի վերահայեցողութիւնը Հերովդէսին յանձնեց, և Արշամ պարտաւորուեցաւ Հերովդէսի կամքը կատարելու։

Այս վիճակի մէջ թողեց Արշամ գահը իւր որդուն, որի հայ անունը անծանօթ է և միայն ասորական Աբգար անունով յայտնի է պատմութեան մէջ ( 3 Քր. առաջ)։ Աբգարի թագաւորութեան առաջին տարիներում Օգոստոս կայսեր հրամանով աշխարհագիր եղաւ Հռոմայեցոց հարկատու նահանգներում։ Հայաստանն էլ այս աշխարհագրով կանոնաւոր հարկատուութեան տակ ընկաւ.

այց նորա թագաւորները, ինչպէս վերին՝ այսպէս և տորին Հայաստանում, այնքան ազատութիւն ունէին որ արող էին իրանց մասնաւոր թշնամիների դէմ պաշտ-պանել առանց կայսեր միջամտութեան։ Այս տեսակ կա-ռավարութիւնը հետևանք էր կայսրների քաղաքականու-թեան, որոնք հարկատու ազգերի մէջ ատելութիւնն ու թշնամութիւնը գրգռելով՝ մէկ կողմից տկարացնում էին ոցա և միւս կողմից աւելի իրաւունք էին ստանում նո-ա ներքին գործերի մէջ խառնուելու։ Արտաշատի թա-աւորութեան պատմութիւնը ամեն մի քայլափոխում րևան է հանում այս կորստական քաղաքականութեան ետևանքները։ Նոյն քաղաքականութիւնը գործ են դնում ռոմայեցիք Միջագետքի Հայոց թագաւորների վերա-երմամբ, որոնց իրանց ազգակից Պարթևներից հեռու ահելու համար՝ բաւական չհամարեցին Ասորոց երկ-ում առանձին հռոմայեցի վերակացու պահելով, այլ նգամայն աշխատում էին նոցա դէմ յարուցանել Երու-աղէմի փոքրիկ թագաւորութիւնը, ինչպէս որ վերին այաստանում Վրաց թագաւորութիւնը նոյն նպատակին ր ծառայում։

Ինչ որ պատահեցաւ Արշամի ժամանակ, նոյնը կնուեցաւ և Աբգարի օրով։ Երբ Հռոմայեցի գործա-ալները Օգոստոս կայսեր պատկերը բերին և Հայաս-անի մեհեաններում դրին, Հերովդէս պահանջեց որ իւր ատկերն էլ կայսեր կենդանագրի մօտ դրուի։ Աբգար րժեց։ Այն ժամանակ Հերովդէս թշնամացաւ նորա հետ Պարթևաց վրայ գնացող Թրակացի ու գերմանացի արձկան զօրքերին հրամայեց, որ փոխանակ Արաբիայի նապատից անցնելու՝ Աբգարի երկրովն անցնէին։ Աբգար

ընդդիմացաւ, և Հերովդէս մի բանակ ուղարկեց նորա վրայ իւր եղբօրորդու զօրավարութեամբ, որ չարաչար յաղթուեցաւ ու սպանուեցաւ Բուգնան գաւառում։ Այսպիսով թշնամութիւնը աւելի ևս կը սաստկանար երկու թագաւորների մէջ, եթէ յանկարծ Հերովդէս չմեռնէր։ Հռոմայեցիք էլ առ ժամանակ լռեցին, բայց յետոյ վրէժ առին Աբգարից, անպատուելով նորա դեսպաններին, որոնք Պարթևաց դեսպանների հետ գնացել էին Հռոմ Տիբերիոսի գահակալութիւնը շնորհաւորելու։

Այս նախատինքը չկարողանալով տանել, Աբգար միտքը դրեց Հռոմայեցիներից ապստամբել։ Այս դիտաւորութեամբ իւր աթոռը Մծբինից փոխադրեց Եդեսիա, և այս քաղաքը ամենայն կերպով ամրացնելուց յետոյ՝ մտածեց Պարթևաց հետ դաշն կապել։ Բայց որովհետև այն ժամանակները Արշաւիր թագաւորը մեռել էր և նորա երեք որդիքը դահակալութեան համար կռւում էին, ստիպուեցաւ անձամբ Պարսկաստան երթալ և խաղաղացնել նոցա։ Իմաստուն թագաւորը գահակալութեան խնդիրը յաջողութեամբ կարգադրեց, բայց դաշնակցութիւնը, հետևապէս և ապստամբութեան գործը գլուխ չեկաւ. Աբգար ծանր ախտով (ըստ Աստրոց բորոտութեամբ) հիւանդացաւ և դարձաւ իւր երկիրը։

Սակայն Աբգարի ճանապարհորդութիւնը կասկածների մէջ էր ձգել Հռոմայեցոց, որոնց աւելի էլ գրգռեցին Հայոց թագաւորի թշնամիները, մանաւանդ Հերովդէս Չորրորդապետը, որովհետև Աբգար օգնական զօրք էր ուղարկել Հերովդէսի դէմ Արաբացոց Արետ թագաւորին Խոսրան Արծրունու զօրավարութեամբ։ Աբգար իւր թշնամիների բերանը կարկելու համար՝ Հռոմայեցոց

Մարինոս վերակացուին ուղարկեց Պարթևաց արքայոր-
ւոց մէջ հաստատած դաշինքի պատճէնը։ Մարինոս մեծ
յատուով ընդունեց Աբգարի դեսպաններին Ելևթերոպօլ
ադաքում, և այսպիսով ամեն կասկածանք փարատուե-
աւ։

Բայց այս բանագնացութիւնը մի ուրիշ անակնկալ
ետևանք էլ ունեցաւ։ Աբգարի դեսպանները Երուսաղէմ
անդիպելով, ականատես եղան Յիսուսի հրաշագործու-
թիւններին և եկան իրանց տիրոջը պատմեցին։ Թագա-
որը, որ իւր հիւանդութիւնից բժշկուած չէր, շտապեց
ւր հաւատարիմ Անանէ սուրհանդակի ձեռքով թուղթ
ւղարկել Փրկչին, Աստուած կամ Աստուծոյ Որդի դաւա-
ելով Նորան, և խնդրելով որ գայ իրան բժշկէ և Հրէից
ալածանքներից ազատուելու համար իւր պալատում
նակի։ Փրկիչը յանձնեց Թոմաս առաքեալին պատաս-
անել թէ՝ Ինքը պէտք է կատարէ այն ամենը՝ ինչի
ամար եկել է, իսկ համբառնալուց յետոյ աշակերտնե-
ից մէկը կը գայ և կը բժշկէ Նորան։ Թադէոս առաքեա-
ն վիճակուեցաւ գալ Եդեսիա, որ բժշկեց Աբգարին,
կրտեց նորան իւր պալատականների և բոլոր Եդեսացոց
ետ, և Ադդէ անունով պալատական խոյրարարին եպիս-
ոպոս ձեռնադրելով՝ իւր տեղը թողեց և ինքը Աբգարի
ովարտակով անցաւ Հայաստան քարոզելու։

Այնուհետև Աբգար քրիստոնէական լուսով լուսաւո-
ւած՝ սկսաւ առաքելական պաշտօն վարել։ Առանձին
ղթեր գրեց Տիբերիոս կայսեր, Արտաշէս Պարսից թա-
աւորին և Ներսեհ Ասորեստանի թագաւորին և յորդո-
ց նոցա, որ քրիստոնէութիւնն ընդունեն. կայսրից
ամկապէս խնդրում էր, որ Քրիստոսին խաչող Հրէից

*պատժէ և Պետրոսին իշխանութիւնից ձգէ։ Բայց այս թղթերի պատասխանը չստացած՝ մեռաւ առաջին քրիստոնեայ թագաւորը* (35 *Քր. յետոյ*)։

## 21.

Անանուն (35). *Հալածանք քրիստոնէութեան դէմ.—Սանատրուկ* (35—65).—*Երուանդ Արշակունի* (65—85).—*Սանատրուկի տոհմի կոտորածը և Արտաշէս արքայորդու փախուստը Պարսկաստան.—Երուանդի զգուշութիւնները Արտաշէսի դէմ։*

*Աբգարի յաջորդը Անանուն* (35) *իւր հօր հակառակ ընթացք բռնելով՝ աշխատեց նորաբողբոջ քրիստոնէութեան սերմերը չորացնել Եդեսիայում. նա բաց արեց մեհեանները և հեթանոսութիւնը վերահաստատեց։ Միւնոյն ժամանակ մարդ ուղարկեց Ադդէին, պատուիրելով որ քրիստոնէութիւնը թողնէ և իւր առաջուան պաշտօնը ձեռք առնէ։ Բայց Ադդէն յանձն չառաւ թագ շինել «այն անարժան գլխի համար, որ Քրիստոսին երկրպագութիւն չէ տալիս», և թագաւորը զայրանալով՝ հրամայեց նահատակել նորան։ Մինչդեռ սուրբ եպիսկոպոսը աթոռի վրայ նստած քարոզում էր ժողովուրդին, թագաւորական զինակիրներից մէկն եկաւ և նորա սրունքները կտրելով սպանեց։*

*Արշամից ոչ պակաս զինուեցաւ քրիստոնէութեան դէմ նորա հօրաքեռորդին Սանատրուկ, որ զօրքի հրամանատարութիւնը իւր ձեռքին ունէր և Հայաստանի վերակացու էր կարգուած Շաւարշան գաւառում։ Աբգարի մահուան լուրն առնելուն պէս, Սանատրուկ Բագրատունեաց և Արծրունեաց նախարարների ձեռնտուութեամբ*

ծագ կալեց և Արշամից անկախ թագաւորեց Հայոց
երկրում (35—65)։ Սանատրուկ նախարարներից ակնա-
ծելով՝ ոչ միայն քրիստոնէութիւնը թողեց, այլ և Թա-
դէոս առաքեալին և իւր հարազատ դստեր՝ Սանդուխտ
կոյսին նահատակեց։ Քիչ յետոյ զօրք ժողովեց, որ Եր-
ծայ Անանունին Միջագետքից հալածէ։ Մինչդեռ նա
այս պատրաստութեան մէջ էր, Անանունն իւր պալատի
լերնասիւնը նորոգելու էր զբաղած. մի մարմարեայ սիւն
ընկաւ թագաւորի վերայ և նորա ոտքերը ջախջախեց։
Եդեսացիք պատգամաւոր ուղարկեցին Սանատրուկին և
խոստացան քաղաքն ու թագաւորական գանձերը յանձ-
նել նորան, այն պայմանով որ ազատութիւն ունենան
իրանց նոր կրօնը պաշտելու։ Սանատրուկ յանձն առաւ,
բայց երբ Եդեսիա մտաւ, իւր խոստումը դրժեց. Աբգա-
րի ցեղն էլ կոտորեց, բացի աղջկանից, որոնց ուղար-
կեց Հաշտենից գաւառը։ Իսկ Աբգարի կնոջ Հեղինէին,
որից մեծամեծ բարիքներ էր տեսել, պատուով ուղար-
կեց իւր ծննդեան քաղաքը Խառան. բայց բարեպաշտ
ծագուհին հեթանոսների մէջ բնակել չկամենալով՝ գնաց
Երուսաղէմ, ուր իւր գանձերը սպառեց սովի ժամանակ
կարօտեալներին օգնութիւն հասնելու համար, և թա-
ղուեցաւ քաղաքի դրան առաջ։

Սանատրուկի ժամանակ երևելի էր հայ նախարար-
ների մէջ Երուանդ քաջասիրտ և յաղթանդամ իշխանը,
մօր կողմից Արշակունի, որին Սանատրուկ իւր տէրու-
թեան վերին կողմերը վերակացու էր նշանակել։ Երուանդ
իւր խոնարհութեամբ և առատաձեռնութեամբ այնպէս
գրաւել էր ամենի սիրտը, որ երբ Սանատրուկ որսի մէջ
պատահմամբ սպանուեցաւ, յաջողեցաւ թագաւորական

գահը բարձրանալ. բայց Բագրատունի նախարարներից ոչ ոք յանձն չառաւ գլխին թագ դնել (65)։

Այս բանից կասկած տանելով, Երուանդ իւր ապահովութեան համար Սանատրուկի բոլոր ցեղը ջնջեց։ Միայն մի մանուկ, Արտաշէս անունով, իւր սնուցանողի ձեռքով ազատուեցաւ և տարուեցաւ Հեր գաւառը ուր նորա դայեակը՝ Սմբատ Բիւրատեան Բագրատունին հասաւ Սպեր գաւառից, և Երուանդի ուղարկած խնդրակների ձեռքը չընկնելու համար՝ երկար ժամանակ արքայորդու հետ ծպտեալ սար ու ձոր ման եկաւ հովիւների մէջ, մինչև որ յարմար միջոց գտաւ Պարսից սահմանն անցնելու։ Պարթևաց Դարեհ թագաւորը սիրով ընդունեց թագազուրկ իշխանին և պատուով պահեց իւր պալատում պարթև արքայորդիների հետ. Սմբատին էլ բնակութեան տեղ շնորհեց Մարաստանի Բատ և Ոզոմն գաւառները։

Երուանդ շատ փորձեր փորձեց Արտաշէսին ձեռք ձգելու։ Մէկ կողմից Դարեհին դեսպաններ ուղարկելով՝ աշխատում էր հաւատացնել, թէ Արտաշէս ոչ թէ Սանատրուկի, այլ մար հովուի որդի է. միւս կողմից Սմբատին անդադար մարդիկ էր ուղարկում, ասելով թէ սնուտուից խաբուելով՝ հովուի որդուն իւր դէմ սնուցանում է։ Երբ այս հնարները չյաջողեցան, Երուանդ Սմբատի կծու պատասխաններից զայրացած՝ զօրք ուղարկեց Բաբերդի վրայ, ուր Սմբատ թողել էր իւր Սմբատանոյշ և Սմբատուհի աղջիկներին, պահապաններին կոտորել տուեց, իսկ օրիորդներին գերելով փակեց Անի ամրոցում։ Ապա իւր իշխանութիւնը Պարթևաց զօրութիւնից ապահովելու համար՝ Հռոմայեցոց հետ բարեկամութեան կա-

երը ամրացնդեց, տալով նոցա Միջագետքը, և իւր
թոռը Հայոց նախնական մայրաքաղաքը Արմաւիրը փո-
ադրեց։ Բայց տեսնելով Արմաւրի անպատսպար դրու-
իւնը, մանաւանդ որ Երասխ գետն էլ քաղաքից հեռա-
ած էր և բնակիչները ջրի նեղութիւն էին կրում, ուս-
ի Արմաւրի արևմտեան կողմը Երասխի ափին մի բարձ-
ադիր տեղ ընտրեց և այնտեղ շինեց Երուանդաշատ
աղաքը, որ և պարսպով պատեց։ Միջնաբերդը ամրա-
ած էր բարձր պարսպով և պղնձի դռներով։ Երկու տե-
ակ երկաթէ սանդուղներ կային միջնաբերդը բարձրա-
ալու համար. մէկը ցերեկուան՝ արքունի սպասաւորների
սովորական անցուդարձ անողների համար, իսկ միւսը
իշերային՝ որոգայթաւոր, որպէս զի դաւաճանները մէջը
ռնուին։ Այստեղ փոխեց Երուանդ իւր արքունիքը և
րմաւրի բոլոր հարստութիւնները, բացի կուռքերից,
ախենալով որ մի գուցէ կրօնական տօնի առթով հա-
աքուող խառնիճաղանճ բազմութեան մէջ մի դաւադ-
ութիւն լինի իւր անձի դէմ. այլ Երուանդաշատից 40
յոն դէպի հիւսիս՝ Ախուրեան գետի վրայ շինեց Բա-
րան քաղաքը, և աստուածների արձանները այնտեղ
արաւ. քրմական դասն էլ իրան կուսակից ունենալու
ամար՝ հարազատ եղբօրը Երուազին քրմապետ կարգեց։

---

## Ե. ԱՐՏԱՇԷՍ Բ ԵՒ ԻՒՐ ՈՐԴԻՔԸ, ՎԱՂԱՐՇ, ԽՈՍՐՈՎ Ա, ՏՐԴԱՏ՝ ՄԻՆՉԵՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍԿԻԶԲԸ

### 22.

*Արտաշէսի դարձը Հայաստան.—Երուանդի պարտութիւնը և մահը.—Արտաշէսի թագաւորելը և իւր երախտաւորներին վարձատրելը (85). —Դաշնակցութիւն Հռոմայեցոց հետ.—Ալանաց արշաւանքը. Արտաշէսի խնամութիւնը նոցա թագաւորի հետ. —Արտաշէսի բարեկարգութիւնները. Նորա ընտանեկան անյաջողութիւնները.—Պատերազմ և հաշտութիւն Հռոմայեցոց հետ.—Արտաշէսի մահը (131).*

Մինչդեռ Երուանդ իւր գահը ամրացնելու միջոցների վրայ էր աշխատում, Արտաշէս արքայորդին խաղաղ մեծանում էր Պարթևաց արքունիքում, իսկ նորա դայեակը՝ Սմբատ Բագրատունին հաւատարմութեամբ ծառայում էր Պարթև թագաւորին, քաջութեամբ կռուելով նորա թշնամիների դէմ։ Վերջապէս թագաւորը իւր մեծամեծների միջնորդութեանը զիջանելով, հաւանեցաւ Սմբատի վաղեմի իղձը կատարել, և զօրք տուաւ նորան որ երթայ Արտաշէսին հայրենի աթոռը նստեցնէ։ Երուանդ Ուտի գաւառումն էր՝ որ Սմբատի գալու լուրն առաւ. ուստի նախարարների մի մասը այնտեղ թողեց սահմանները պահպանելու, իսկ ինքը շտապով վերադարձաւ Երուանդաշատ պատերազմի պատրաստութիւն տեսնելու համար։ Եւ որովհետև գարնան ժամանակ էր, յաջողեցաւ շուտով մի գունդ կազմել Հայերից և Վրացիներից, որոնց հետ Կապադովկիայի և Միջագետքի վարձկան զօրք խառնեց։ Նախարարներին էլ իւր կողմը պահելու համար՝ առատ առատ պարգևներ բաշխեց, մանաւանդ Արգամ

ուրացան (Մարաց զավթականութեան) հզօր նախա-
արին, որին առաջուց արդէն շնորհել էր երկրորդական
ահը, որ Տիգրան (Բ) նոցանից խլել էր։ Բայց այս բոլորը
ւր եղաւ։ Հէնց որ Արտաշէս ու Սմբատ երևեցան Ուտէա-
ւց սահմանների վրայ, այնտեղի զօրքն ու նախարար-
երը, նոցա կողմն անցան։ Այս որ լսեցին միւս նախա-
արները վհատեցան և մտածում էին Երուանդից բաժա-
ւելիլ, մանաւանդ որ Հռոմայեցոց լեգէոններն էլ ուշանում
ին իրանց դաշնակից թագաւորին օգնութիւն հասնելու։
Երկու բանակները ճակատեցան Երուանդաշատից
էպի հիւսիս՝ Ախուրեան գետի մօտ։ Չը նայելով Երուան-
ի զօրքի բազմութեանը, Սմբատ վստահ էր յաղթու-
եան վրայ. միայն Մուրացան նախարարի զօրութիւ-
նից կասկածում էր. Արտաշէս պատգամաւորի բերանով
ստացաւ երկրորդական գահի հետ ուրիշ պատիւներ
լ շնորհել նորան, եթէ Երուանդից հեռանայ։ Արտաշէսի
րօշակները երևալուն պէս՝ Արգամ իւր զօրքով մի կողմ
աշուեցաւ. իսկ երբ Սմբատ հրամայեց պատերազմական
ողերը հնչեցնել, Երուանդի բանակի աջ ու ձախ թևերի
րայ եղած նախարարները Արտաշէսի կողմն անցան.
րուանդ մնաց միայն վրացի և վարձկան զօրքերով,
այց և այնպէս կռիւը արիւնահեղ եղաւ։ Վրացիք իրանց
Փարսման թագաւորի առաջնորդութեամբ բուռն յարձա-
ում գործեցին, բայց շուտով յաղթուեցան ու փախան,
ժողնելով վարձկաններին Սմբատի առաջ, որ մեծ կո-
որած գործեց նոցա մէջ։ Այս խառնուրդի ժամանակ
մի քանի Տաւրացի քաջեր, որոնք խօսք էին տուել Ե-
ուանդին որ Արտաշէսին սպանեն, գլխեցին արքայոր-
դու վրայ։ Արտաշէսի սնտուսի որդին՝ Գիսակ մէջ

մտաւ ու ազատեց նորան, բայց իւր դէմքի կէսը սրով կտրուելով՝ մեռաւ։

Երուանդ իւր զօրքի յաղթուիլը տեսնելով՝ փախաւ Երուանդաշատ, ճանապարհին անդադար ձին փոխելով որ թշնամու ձեռքը չընկնի, որովհետև Սմբատ մի թեթև գումարտակով ետևիցն ընկած՝ հալածում էր նորան, մինչև որ գիշերով հասաւ քաղաքը դռների առաջ։ Իսկ Արտաշէս գլխաւոր բանակովը գիշերը անցկացրեց պատերազմի դաշտում, որ ի յիշատակ նոյն օրուան յաղթութեան՝ Երուանդավան կոչուեցաւ։ Հետևեալ առաւօտ մեռելները թաղել տալուց յետոյ՝ Երուանդաշատի վրայ գնաց, ուր կէսօրից առաջ հասաւ և հրամայեց զօրքին միաբերան կանչել՝ Մարամատ, որ նշանակում է Մարն եկաւ, կամենալով յիշեցնել այն նախատինքը, որ Երուանդ հասցրել էր իրան։ Անմիջապէս պատերազմը սկսաւ քաղաքի հետ. բերդականները թեթև դիմադրութիւնից յետոյ անձնատուր եղան, Արտաշէսի զօրքը մտաւ քաղաքը, ուր զինուորներից մէկը Երուանդին պատահելով՝ գլուխը ջախջախեց և ուղեղը յատակի վրայ ցրուեց։ Արտաշէս, որ Երուանդի յիշատակը ջնջելու համար Երուանդաշատի անունը Մարմէտ փոխեց, վեհանձնութեամբ վարուեցաւ նորա դիակի հետ, հրամայելով որ իբրև Արշակունի արեան խառնուրդ՝ մահարձան կանգնեն նորա վրայ։

Մտաւ Արտաշէս Երուանդի ալքունիքը, և Սմբատ գանձատան մէջ գտնելով Սանատրուկի թագը՝ իւր սանի գլխին դրեց և թագաւորեցրեց Հայոց վրայ (85)։ Նորապսակ թագաւորի առաջին գործն եղաւ իւր երախտաւորներին արժանաւոր հատուցում անել, և նախ Գար-

ժեաց զօրքին առատ պարգևներ բաշխեց. և իրանց եր-
կրը ուղարկեց։ Արգամին՝ երկրորդական գահի հետ
նորհուեցաւ յակնթակապ պսակ, երկու ականջին օղեր
մի ոտքին կարմիր կօշիկ, նոյնպէս և ոսկի գդալ,
լատառաքաղ ու բաժակ գործածելու իրաւունք։ Սմբա-
տին՝ թագադրութեան և արևմտեան զօրքի իշխանու-
թեան հետ յանձնուեցաւ բոլոր զօրքերի սպարապետու-
թիւնը, ինչպէս նաև երկրի գործակալների և արքունի-
եան վերակացութիւնը։ Գիւսակի որդին Ներսէս նախա-
րարների կարգը դասուեցաւ, ցեղի անունն էլ Գիւսակի
ւնձնուիրութիւնը յաւէրժացնելու համար՝ Դիմաքսեան
ոչուեցաւ։ Առանձին նախարարութիւն կազմեցին նոյն-
լէս Տրունիք, Տուր անունով մէկից, որին Երուանդ
պանել էր իւր գաղտնիքները Սմբատին ծածուկ հա-
ղորդելուն համար։ Թագաւորի հրամանով Սմբատ գնաց
Բագարան, Երուազին բռնեց և վզին քար կապելով Ախու-
եան գետը ձգեց. իսկ նորա տեղը քրմապետ կարգեց
Մոգպաշտէ անունով մէկին, որ Արտաշէսի մտերիմն էր.
Երուազի գանձերը, նորա 500 ծառաները, և մեհե-
ական հարստութիւնները բերաւ յանձնեց Արտաշէսին։
Թագաւորը Երուազի ծառաները Սմբատին պարգևեց,
սկ գանձերի վրայ ուրիշ թանկագին ընծաներ աւե-
ացնելով Սմբատի ձեռքով ուղարկեց Պարթևաց Դարեհ
թագաւորին։ Իւր աթոռը հաստատելով Արտաշատում, որ
Երասխի անտառների փայտերով նորոգեց ու հոյակապ
շինութիւններով զարդարեց, Արտաշէս Բագարանից այն-
տեղ փոխադրեց աստուածների արձանները, նոյնպէս և
այն բոլոր զարդերը և Հրէից գերիները, որ Երուանդ
Արմաւիրից Երուանդաշատ էր տարել։

Դեռ Սմբատ Գարսկաստանից չէր վերադարձել, որ հասան կայսերական հարկահանները։ Հռոմայեցիք մինչև այն ժամանակ հեռուից ականատես էին եղել իրանց դաշնակցի անկմանը և ոչ մի օգնութիւն չէին հասցրել նորան, գուցէ այն պատճառով որ Պարթևաց հետ պատերազմ չունէնան. «որովհետև Հռոմը փոքրից կշտացած՝ այն կէտին էր հասել, որ հանգստութիւն էր ցանկանում մինչև անգամ օտար ազգերի համար»։ Բայց այժմ որ ամեն բան վերջացած էր, նորա շտապեցին իրանց յարաբերութիւնները վերականգնել Նոր Թագաւորի հետ և իրանց պահանջումներին ոյժ տալու համար՝ բազմաթիւ զօրք հանեցին Հայաստանի սահմանների վրայ։ Արտաշէս յանձն առաւ Հռոմայեցոց դաշնակցութիւնը կրկին հարկ խոստանալով, և լեգէոնները յետ քաշուեցան։

Նոր էր Արտաշէս իւր Թագաւորութեան մէջ հաստատուել, որ Ալանները Կովկասեան լեռնականների և Վրաստանի կէս մասի հետ միաբանած՝ արշաւեցին Հայաստան։ Արտաշէս ճակատեցաւ նոցա դէմ Կուր գետի ափին. այս առաջին կռուի մէջ լեռնականները յետ մղուեցան և գետի ձախ կողմի վրայ կանգ առին, իսկ Հայերը աջ ափը բռնեցին։ Ալանաց Թագաւորը առաջարկեց միջնորդ հաշտութեան դաշն կապել Հայոց Թագաւորի հետ և խոստացաւ, որ Ալանները այլ ևս Հայոց երկիրը չասպատակեն, այն պայմանով որ իւր գերի ընկած որդին յետ տրուի. բայց Արտաշէս յանձն չառաւ։ Այն ժամանակ Ալանաց Թագաւորի աղջիկը Սաթինիկ գետի ափն եկաւ և հեռուից Թարգմանի բերանով համոզեց Արտաշէսին որ իւր եղբօրն ազատէ։ Թագաւորը Սաթինիկի իմաստուն խօսքերից ու գեղեցկու-

ժինից հրապուրուելով, Սմբատի հետ խորհուրդ առաւ
ուզեց օրիորդին իրան կին առնել։ Անմիջապէս Ալա-
աց թագաւորի վրանը ընծայ ուղարկուեցաւ շատ ոսկի
կարմիր մորթ, որ լեռնականների մէջ յարգի էր.
աշը կնքուեցաւ և Սաթինիկ մեծ պատւով բերուեցաւ
այոց թագուհի լինելու *)։

*) Վրաց հնագոյն պատմական յիշատակարանը (Քարթ-
ա Ցխովրէբա—Վրաստանի կեանք) Ալանաց այս պատերազմի
առճառն ու հետեանքները հանգամանօրէն է պատմում, որ
ալելով պատմութեան ընթացքին՝ բոլորովին ստուգութիւն
ն տանում և լրացնում են Մովսէս Խորենացու այս մասին
ածները։ – Արտաշէս Երուանդի դաշնակից Փարսման թա-
ւորից վրէժ առնելու և Հայաստանի աղդեցութիւնը Վրաս-
անի վրայ նորոգելու համար՝ Սմբատին ուղարկեց Վրաց եր-
րը, որ գնաց յարձակմամբ առաւ երկրի երկու երեւլի բեր-
րը, և յետոյ վերադարձաւ Հայաստան։ Բայց երբ յաջորդ
արին Վրաց երկու թագաւորները, Ազորք և Արմազէլի, Օ-
րի և ուրիշ լեռնականների օգնութեամբ արշաւեցին հիւսի-
ային Հայաստանի վրայ, Սմբատ երկրորդ անգամ անցաւ Կուր
տը, Վրաստանը նուաճեց և Մեսխիայում շինեց Դեմոթ
րոցը, ուր հայ բերդապահ զօրք թողեց և ինքը յետ քա-
ւեցաւ։ Սակայն Վրաց թագաւորները այնուհետև էլ հան-
ստ չմնացին։ Այն ժամանակ Արտաշէս անձամբ գնաց նոցա
ալ, Մցխէթ քաղաքը հինգ ամիս պաշարելուց յետոյ առաւ
տխլեց նոցա հպատակութեան գնով խաղաղութիւնը գնել։
կ երբ Հայոց թագաւորը զբաղած էր Հռոմայեցոց հետ պա-
րազմելու, Վրացիք միաբանելով լեռնականների հետ՝ պատ-
ատուեցան արշաւել Հայաստան։ Արտաշէս նոցա առաջ ու-
րկեց իւր Զարեհ որդուն, որ Ջաւախէթում ընկաւ թշնա-
ների ձեռքը և բանտարկուեցաւ Դարիաւանում։ Երեք տարի
ոյ, երբ Արտաշէս վերջացրեց իւր պատերազմները Հռոմա-
ոց ու Պարթեւաց հետ, իւր երեք որդոցը ուղարկեց Զարե-

Արտաշէս Բ-ի նշանակութիւնը կայանում է գլխաւորապէս այն գործունէութեան մէջ, որ այս մեծ թագաւորը ցոյց տուեց խաղաղութեան տարիներում՝ իւր բոլոր խնամքը դարձնելով երկրի ներքին բարեկարգութեան և ժողովրդի բարօրութեան վրայ։ Օտար երկրներից բազմաթիւ գաղթականութիւններ բերելով՝ Հայաստանի ամայի տեղերը բնակեցրեց ու շէնացրեց, և բոլոր գիւղերն ու ագարակները որոշ սահմաններով բաժանեց՝ սահմանագլխների վրայ քառակուսի քարեր հաստատելով։ Բացի Ամատունեաց Նախարարութիւնից, որ Ահմատանի կողմերից եկած էր, և Առաւեղեան Նախարարութիւնից, որ Սաթինիկի ազգականներն էին և նորա հետ եկել էին, Ալանաց երկրից մի մեծ գաղթականութիւն բերուեցաւ Արտաշէսի աներոջ մահից յետոյ, երբ մի բռնաւոր իշխան երկիրը խռովելով՝ արքայորդու ձեռքից գահը խլել էր. Սմբատ զօրքով ուղարկուեցաւ Ալանաց երկիրը, ուր Սաթինիկի եղբօրը թագաւորեցրեց և հակառակորդների երկրից շատ գերիներ բերաւ Հայաստան։ Արտաշէս հրամայեց բնակեցնել նոցա Ճաւարշան գաւառում, որ այնուհետև գաղթականների ծննդեան տեղի անունով՝ Արտազ կոչուեցաւ։ Արտազեան

---

հին ազատելու. նոքա հասան մինչև Թրիալէթ և առանց պատերազմելու հաշտութեան դաշն կնքեցին։ Այս դաշնադրութեան զօրութեամբ Վրացիք պարտաւորուեցան Զարեհին արձակել, Հայոց դաշնակից լինել, և Արտաշէսի պատկերով ու անունով դրամ կտրել։ Հայերն էլ յետ դարձրին Վրաստանում գրաւած բերդերն ու երկրները։ (Համեմատել Զարեհի բռնուելու անցքը Խորենացու պատմածների հետ. Գր. Բ. Գլ. ԾԳ.)։

լաղթականութիւնից աւելի մեծ բազմութիւն բերեց
մբատ Կասպիական երկրներից, երբ այդ ծովեզերեայ
ողովուրդները Պարսկաստանի խռովութիւններից գըր-
ըռուելով՝ ապստամբել էին Արտաշէսից։ Այս բոլոր
աղթականներին Հայաստանի այլեայլ կողմերը տեղա-
որելով, Թագաւորը առանձին փոյթ տարաւ երկրի
շակութեան և արուեստների բարգաւաճման վրայ, կա-
ուրջներ շինեց, ծովակներն ու գետերը նաւերով լցրեց,
ընդհանրապէս այնպիսի գործունէութիւն մտցրեց Հա-
ց մէջ, որ պատմութիւնն ասում է թէ Արտաշէսի ժա-
անակ երկիր չէր մնացել որ անմշակ լինի, մարդ չէր
նացել որ դատարկ ու անգործ շրջի։ Բացի սորանից՝
րտաշէսի օրով շինուեցան մեհեաններ, հաստատուեցան
սրգարաններ, գրի գործածութեան հետ մտաւ շա-
աթների, ամիսների և տարիների սեպհական հաշիւը
ահելու սովորութիւնը, այն որ մինչև այն ժամանակ
տարների հաշուով էր լինում։ Այս բոլորը այնպիսի
պաւորութիւն գործեց ժողովրդի վրայ, որ ազգային
գիչները այս երևելի Թագաւորի կեանքի մանրամասն
պքերը անմահացրին իրանց երգերի մէջ։

Այս երգերին նայելով, Արտաշէս, յաջող իւր բոլոր
ռնարկութիւնների մէջ, շատ ձախորդութիւնների հան-
պեցաւ ընտանեկան շրջանում։ Եւ նախ Սաթինիկ
կինը, որ այնքան փառքով բերուել էր Հայոց ար-
ւնիքը, ամուսնական հաւատարմութեան մէջ կասկա-
ւեցաւ։ Նոյնպէս արքայորդիքը այն չափ խռովու-
իւններ հանեցին, որ երկրի անդորրութիւնը վրդո-
ցին և հօր սիրտը վշտացրին։ Սոցանից անդրանիկը,
ռասէր ու նախանձոտ Արտաւազդը, Արգամի երկրոր-

դական գահի վրայ աչք ունենալով՝ հօր բարկութիւնը շարժեց նորա վրայ, որպէս թէ Արգամի միտքը թագաւորական իշխանութեան հասնելն է. և մի անգամ երբ Արտաշէս Արգամի մօտ ճաշի էր հրաւիրուած, արքայորդիքը աղմուկ հանեցին, իբր թէ Արգամ ուզում է դաւով թագաւորին սպանել, և հէնց այնտեղ սեղանի վրայ ընկան ծերունի նախարարի վրայ ու մազերը փետեցին։ Արտաշէս սաստիկ խռովեցաւ, դարձաւ Արտաշատ և իւր Մաժան որդուն մի գունդ յանձնեց որ երթայ Արգամի ցեղը կոտորէ, պալատն այրէ և ստացուածքն արքունիք գրաւէ։ Թէև երկու տարի յետոյ թագաւորը Արգամի ծերութեանը խնայելով ստացուածքը յետ դարձրեց, բայց մի նոր դժբաղդութիւն էր սպասում նորան։ Արտաւազդ երկրորդութեան պատուով չբաւականանալով, յափշտակեց Արգամից Նախիջևան քաղաքը և Երասխի հիւսիսային կողմն ունեցած բոլոր կալուածները. և երբ Արգամի որդին ուզեց զէնքով ընդդիմանալ, Արտաւազդ թէ հօրը և թէ որդուն բոլոր ցեղովը ջնջեց. միայն մի քանի հոգի Արտաշէսի պալատն ապաւինելով ազատուեցան։

Արտաւազդի նախանձից ազատ չմնաց և Արտաշէսի տան բարերարը՝ բազմարդիւն Սմբատ Բագրատունին, որին ապերախտ արքայորդին միտքը դրեց սպանել։ Վրդովեցաւ թագաւորը, բայց վեհանձն ասպետը առանց տրտնջելու քաշուեցաւ Տմորիս՝ Ասորեստանի սահմանների վրայ, և Արտաւազդ զօրքի սպարապետութիւնը իւր վրայ առաւ։ Արտաւազդի միւս եղբայրները իրանց կանանցից գրգռուելով՝ նախանձեցան իրանց անդրանիկ եղբօր վրայ, որ այսպիսով ամեն պատիւ իրան էր սեփ-

հականել։ Արտաշէս իւր որդոց խաղաղացնելու համար՝
ամենին մի մի պաշտօն տուեց. Վրոյրին արքունի տան
հազարապետ և Մաժանին քրմապետ կարգելուց յետոյ,
ւոլոր զօրքը հին սովորութեամբ չորս մաս բաժանեց.
սրևելեան բանակը Արտաւազդին յանձնեց, արևմտեանը
Տիրանին, հիւսիսայինը Զարեհին և հարաւայինը Սմբա-
ռին։ Զարեհ որ որսի մէջ ճարտար՝ բայց պատերազ-
մում զանդաղ էր, Վրաց Քարձամ թագաւորից բռնուե-
ւու և Կովկասի սարերում բանտարկուեցաւ։ Արտաւազդ
ւ Տիրան Սմբատի հետ գնացին և պատերազմով իրանց
ղբօրը բանտից ազատեցին։

Սորանից յետոյ Արտաշէս օգուտ քաղելով Հռոմայե-
ոց մէջ ծագած շփոթութիւններից, ապստամբեցաւ նո-
անից և պայմանած հարկը չտուաւ։ Հռոմայեցիք մտան
րևմտեան Հայաստան և Տիրանի հետ պատերազմելով՝
մինչև Բասենի հովիտը հալածեցին։ Այստեղ վրայ հա-
ան Արտաւազդ և միւս եղբայրները արևելեան և հիւ-
իսային զօրքերով, և կռիւը նորոգեցին։ Հայոց կողմը
ուլանալու վրայ էր, երբ փորձառու Սմբատ Բագրա-
ունին թարմ ոյժերով հասաւ, արքայորդոց ազատեց և
շնամիներին ջարդելով՝ մինչև Կապադովկիայի սահման-
րը քշեց։ Այս յաջողութիւններից խրախուսուած՝ Հա-
րն ու Պարթևները ասպատակ սփռեցին հռոմէական
կրների վրայ. Նոյն օրինակին հետևելով՝ ուրիշ հար-
ւտու ազգեր էլ ապստամբեցան։ Վերջապէս Տրայիա-
ս կայսրը մեծ բանակի գլուխն անցած՝ եկաւ Ասիա,
լիպտացոց ու Պաղեստինացոց նուաճեց, և ապա իւր
նքերը Պարթևաց դէմ դարձրեց։ Արտաշէս անճապա-
ց կայսեր առաջ մեծամեծ ընծաներով, և առաջին տա-

քիների հարկն էլ հատուցանելով՝ հաշտեցրեց նորան։ Պարթևական արշաւանքը յաջողութեամբ վերջացնելուց յետոյ՝ Տրայիանոս դարձաւ Ասորիք, ուր նորա առաջ եկաւ Մաժան և Արտաւազդի ու Տիրանի վրայ ամբաստանութիւններ արաւ, կամենալով այսպիսով Սմբատի նախատինքի վրէժը լուծել և արեւմտեան զօրքի սպարապետութիւնը իւր ձեռքը ձգել. բայց կայսրը ականջ չդրեց նորան։ Եղբայրները Մաժանի արարմունքը իմանալով՝ որսի ժամանակ սպանեցին նորան։

Իսկ Արտաշէս այնուհետև իւր դաշնակցութիւնը հաստատ պահեց Հռոմայեցոց հետ։ Մինչ Ադրիանոս կայսեր առաջարկութեամբ գնում էր Պարթևաց երկիրը դաշն կապելու համար, ճանապարհին Մարանդ գաւառի Բակուրակերտ աւանում հիւանդացաւ. Աբեղեան տոհմի Աբեղոյ նախարարը, որ մի շողոքորթ մարդ էր, հրաման առաւ որ երթայ Երիզա Անահիտ դիցուհուց առողջութիւն և երկայն կեանք խնդրելու թագաւորի համար. բայց դեռ չվերադարձած՝ Արտաշէս մեռաւ և փառաւոր յուղարկաւորութեամբ թաղուեցաւ։ Ամբողջ երկիրը ողբաց այս նշանաւոր թագաւորի կորուստը. ոմանք էլ նորա գերեզմանի վրայ կամաւոր մահով մեռան (131)։

---

## 23.

Արտաւազդ Բ (131).— Տիրան Ա. (131 - 151).— Տիգրան Գ.
(151—193). արշաւանք Փոքր Ասիա.—Վաղարշ (193—213).
իր աշխարհաշինութիւնը.—Խազրաց ու Բասլայ արշաւանքը.
Խոսրով Ա (213). Վաղարշի մահուան վրէժխնդրութիւնը.—
Պարսկաստանի քաղաքական յեղափոխութիւնը (226).—Ար-
տաշիր Սասանեան.—Խոսրովի պատերազմները Արտաշրի դէմ.
—Իւր մահը (261).

Արտաշէսին հետզհետէ յաջորդեցին իւր երեք որ-
դիքը։ Արտաւազդ Բ հազիւ մի քանի օր թագաւորեց,
որովհետև երբ մի անգամ ձի նստած Արտաշատի կա-
մրջովն անցնում էր որսի գնալու, յանկարծ խելագնո-
ւեցաւ և ձիովը միասին մի խոր վհի մէջ ընկաւ ան-
րևութացաւ։ Նորա տեղ անցաւ եղբայրը Տիրան Ա
131—151), որին Արտաւազդ անորդի լինելով՝ իւր մօտ
պահել էր իբրև ժառանգ, իսկ միւս եղբայրներին ու
ոյրերին ուղարկել էր Աղիովիտ և Առբերանի գաւառ-
ները բնակելու։ Տիրան երկրորդական դահի պատիւը
արեսեան գնդի զօրավարութիւնը շնորհեց Անձևա-
եաց Երախնաւու անունով քաջ ու համեստ իշխանին,
ւ Արտաւազդի վերջին կնոջ հետ ամուսնացել էր. իւր
րանեակ աղջկանն էլ Տրդատ Բագրատունի իշխանին
ուԹեան տուաւ։ Իսկ ինքը թագաւորը արքունիքը Եկե-
ղաց գաւառի Զրմէս աւանում հաստատելով՝ որսով ու
ւօսանքով էր անցկացնում իւր օրերը, և մեռաւ ճանա-
պարհին ձիւնի տակ թաղուելով։

Տիրանի եղբայրը Տիգրան Գ. (151—193) Հռոմա-
ցոց հարկատուութիւնից ազատուելով, միաբանեցաւ
արթևաց Պերոզ թագաւորի հետ և միասին արշաւե-

ցին հռոմէական նահանգների վրայ։ Պերոզ անցաւ Ասորոց երկիրը և մինչդեռ Տիգրան էլ պատրաստվում էր արևմտեան կողմը գնալ, Սևերիանոս Կապադովկիայի իշխանը նորա դէմն եկաւ, բայց չարաչար յաղթուեցաւ ու սպանուեցաւ։ Այս յաղթութիւնից յետոյ Տիգրան դիմեց Փոքր Ասիայ, ուր մի յոյն իշխանուհի խարդախութեամբ բռնեց նորան ու բանտարկեց։ Լուկիոս Վերոս կայսրը մեծ զօրութեամբ եկաւ Արևելք, Հայաստանը նուաճեց, Տիգրանին բանտից արձակեց և իւր ազգականներից Ռոփի անունով կոյսին կնութեան տալով նորան՝ իւր աթոռի վրայ հաստատեց։ Ժամանակ անցնելուց յետոյ Տիգրան Ռոփիին թողեց և նորանից ունեցած որդոց Արշակունեաց տոհմի հետ չխառնելու համար՝ առանձին նախարարութիւն կարգեց Ռոփսեան անունով։

Վաղարշ, Տիգրան Գ-ի որդին ու յաջորդը, իւր թագաւորութիւնը շինութիւններով սկսաւ և պատերազմով վերջացրեց (192—213)։ Իւր ծննդավայրում, Բասեն գաւառի մէջ, այնտեղ ուր Մուրց և Երասխ գետերը խառնվում են, մի քաղաք շինեց և իւր անունով Վաղարշաւան անուանեց։ Նոյնպէս Վարդգէսի աւանը ամուր պարսպով պատեց և աթոռը այնտեղ փոխելով՝ Վաղարշապատ անուանեց։ Վաղարշ Հայոց տարեմտին՝ Նաւասարդ ամսի առաջին օրը մի ազգային տօն հաստատեց, որ ամեն տարի մեծ հանդէսով էր կատարվում Բագաւանում՝ իւր հօրեղբօր Մաժան քրմապետի գերեզմանի վրայ, ուր Տիգրան Գ մի բագին էր շինել տուել՝ անցաւորներին այնտեղի զոհերից կերակրելու և գիշերը պատսպարելու համար։

Վաղարշի թագաւորութեան վերջերում Խազրաց և

Բասլաց սարմատական ցեղերը, որոնք Կովկասի հիւսի-
սային մասումն էին բնակւում, Կուր գետն անցնելով՝ ասպատակեցին Հայոց երկիրը։ Վաղարշ մեծ ջարդ տուեց նոցա և մինչև Ճորայ կապանի (Դարբանդի կիրճ) այն կողմը հալածեց, ուր լեռնականները նորից ճակատելով՝ յաղթուեցան ու ցրուեցան. բայց և Վաղարշ նորից հարուածով մեռաւ։

Նորա որդին Խոսրով Ա (213) անմիջապէս ժողովեց Հայոց զօրքերը և գնաց հօր մահուան վրէժն առնելու. անցաւ Կովկասը, յարձակեցաւ թշնամիների վրայ իրանց երկրում, խորտակեց նոցա զօրութիւնը և յոյն գրով արձան կանգնելով ի յիշատակ իւր յաղթութեան՝ հարիւրից մէկին պատանդ առաւ և դարձաւ իւր երկիրը։ Այնուհետև Խոսրով խաղաղութեամբ վարեց իւր իշխանութիւնը Պարթևաց և Հռոմայեցոց հետ բարեկամական յարաբերութիւններ պահպանելով, և բոլորովին չէզոք մնաց յիշեալ տէրութիւնների միմեանց հետ ունեցած կռիւների մէջ. մինչև որ մի մեծ յեղափոխութիւն, որ տեղի ունեցաւ Պարսից երկրում, ստիպեց նորան մեծամեծ պատերազմների մէջ խառնուելու։

Պարսկաստանի Պարթևական իշխանութիւնը վաղուց արդէն մօտենում էր իւր անկմանը։ Ներքին խռովութիւնները, որ մասամբ ժողովրդի անհանգիստ բնաւորութիւնից և մասամբ քաղաքական կարգերի թերութիւնից էին առաջ գալիս, հետզհետէ թուլացրել էին երկիրը։ Թէև կառավարութիւնը միապետական էր և ժառանգական, բայց ժառանգութեան իրաւունքը որոշ օրէնքներով սահմանուած չէր. ուստի միշտ կարելի էր թագաւորող տանից դուրս մէկին գահը բարձրացնել,

քաւական էր միայն որ Արշակունեաց ցեղից լինէր։ Եթէ նախարարները տժգոհ լինէին թագաւորից, մի հակառակորդ էին յարուցանում նորա դէմ, որ զէնքով աշխատում էր իշխանութեան հասնել։ Սորանից ծագում էին անընդհատ երկպառակութիւններ և ներքին պատերազմներ, որոնք առիթ էին տալիս Հռոմայեցոց անդադար Պարթևաց գործերի մէջ խառնուելու։ Այս օտարական միջամտութիւնը, Պարթևաց գոռոզութիւնն ու անգթութիւնները, նոցա հելլենամոլութիւնը, նոցա ապականեալ վարք ու բարքը,—այս բոլորը այնքան զզուեցրեց Պարսից, որ նոքա վաղ թէ ուշ պէտք է գլուխ բարձրացնէին Պարթևաց դէմ և աշխատէին պարսկական տէրութիւնը վերականգնել։ Ապստամբութեան գլուխը կանգնեցաւ Արտաշիր Ստահրացին, Սասան պարսկի որդին, որ մի հզօր կուսակցութիւն կազմելով՝ ոտքի կանգնեցրեց նախ Միջագետքը, Մարաստանը և ապա բովանդակ Պարսկաստանը։ Ապստամբութեան մէջ պարսիկ իշխանների հետ խառն էին և Պարթևական տոհմի երկու ճիւղերը, այն է Սուրէնեան և Ասպահապետեան Պահլաւունիք, որոնք թշնամական աչքով էին նայում թագաւորող Կարենեան տան վրայ։ Զուր Արտաւան Դ թագաւոր սպառնաց սոսկալի տանջանքներով սպանել իւր ապստամբ հպատակին. Արտաշիր շարունակեց իւր երկրի ազատութեան գործը, և շուտով այն աստիճանի զօրութեան հասաւ, որ կարողացաւ Արտաւանի դէմ կռուել։ Պարթևները երեք մեծ ճակատամարտի մէջ յաղթուեցան. վերջին կռւում Արտաւան սպանուեցաւ և Արտաշիր նոր հարստութեան հիմնադիր դարձաւ, որ իւր հօր անունով Սասանեան կոչուեցաւ (226)։

Պարսկաստանի յեղափոխութիւնը բնականաբար մեծ
տանգ էր սպառնում Հայոց երկրին, ուր թագաւորում
էին նոյնպէս Արշակունիք։ Խոսրով Ա Արտաւանի ձա-
սորդութիւնները լսելով՝ շտապեց իւր ազգակցին օգնու-
թիւն հասնելու։ Արդէն Սասանեանի խորերն էր հասել,
րբ Արտաւանի մահուան գոյժն առնելով՝ տրտմութեամբ
տ դարձաւ և սկսաւ պատերազմի պատրաստութիւն-
ներ տեսնել։ Մինչ մէկ կողմից Խոսրով Աղէքսանդր Սևե-
ոսի օգնութեանն էր դիմում, միւս կողմից հասան Ար-
աշրի դեսպանները, որ պահանջում էին կայսրից հռո-
էական զօրքերը Ասիայից հանել։ Աղէքսանդր ոչ այն-
ան Արտաշրի սպառնալիքներից վախեցաւ, որքան Հա-
ստանի վրայ ունեցած ազդեցութիւնը կորցնելու, ուս-
ի շտապեց Հայոց թագաւորին օգնութիւն հասնելու։
րովհետև յայտնի է 'թէ Հռոմայեցոց կայսրները Օգոս-
ոսի քաղաքականութեանը հաւատարիմ մնալով՝ աշխա-
ում էին միշտ Հայաստանի անկախութիւնը անխախտ
ահել։ Ծերակոյտը այս երկիրը հռոմէական նահանգ-
երի համար իբրև մի պատուար էր համարում՝ արևե-
ան կողմից Պարսից դէմ, իսկ հիւսիսային կողմից
ովկասեան լեռնականների դէմ։ Արտաքին պատմիչների
օսքով՝ Աղէքսանդր Սևերոս անձամբ եկաւ Արևելք, և
այ-հռոմէական բանակը երեք կողմից յարձակեցաւ Ար-
աշրի 120,000 զօրքից բաղկացած բանակի վրայ։ Իսկ
ռոմային պատմութիւնը համարում է թէ Խոսրով ա-
ռանց կայսեր անձնական մասնակցութեան յարձակեցաւ
տաշրի վրայ, Սասանեանն ասպատակեց և հասաւ
նչև Տիզբոն Հռոմայեցոց օգնութեամբ, որ իբրև թէ
իլիպպոս կայսրը և Ա. Սևերոս ուղարկել էր նորան։

Ինչպէս և իցէ, Խոսրով նախ հռոմայեցոց օժանդակութեամբ և ապա մենակ շարունակեց կռուել Արտաշրի դէմ, մինչև որ փախցրեց նորան Հնդկաստան։

Այս մեծ վտանգից յանձն առաւ ազատել Արտաշրին Սուրէնեան տոհմի իշխաններից մէկը, երևելի իւր դաւաճանութեամբ և որդու փառքովը, Անակ Պահլաւունին, որ Քուշանաց թագաւորութեան խոստմամբը հրապուրուած՝ բոլոր ընտանիքովը ապաւինեցաւ Հայաստան, կեղծաւորելով որ իբր թէ Արտաշրի ձեռքից փախչում է. Պարսից զօրքն էլ ետևից ընկած՝ հալածեց նորան մինչև Ատրպատականի սահմանագլուխը։ Խոսրով սիրով ընդունեց Անակին իւր ձմեռոցը՝ Ուտի գաւառի Խաղխաղ քաղաքում։ Գարունը բացուելուն պէս արքունիքը տեղափոխուեցաւ Վաղարշապատ, և մի օր երբ Խոսրով որսի գնացած էր, Անակ խաբէութեամբ թագաւորին նախարարներից հեռացրեց, իբրև թէ մի ծածուկ բան ասելու համար, և մահացու հարուած տալով նորան՝ փախաւ։ Նախարարները հասան դաւաճանի ետևից Արտաշատի կամրջի վրայ, բռնեցին նորան իւր եղբօր հետ և երկուսին էլ Երասխ գետը ձգեցին։ Նոյնպէս և Անակի ցեղը մեռնող թագաւորի վերջին հրամանի համեմատ՝ կոտորուեցաւ (261)։

---

## 24.

*Նրտաշիր Հայոց երկրում* (261).—*Հայաստանը Պարսից տէրու-*
*Թեան նահանգ* (261—287).—*Արտաշրի սահմանած կարգերը.*
*րդատի մանկութիւնը.—Նորա դարձը Հայաստան և Թագա-*
*որութեան մէջ հաստատուիլը.—Հին պատմութեան վախ-*
*ճանը։*

*Խոսրովի մահով Արտաշիր ազատուեցաւ իւր անար-*
*յու Թշնամուց, և այնուհետև Հայաստանի ճանապարհը*
*աց էր նորա առաջ։ Թէև Հայոց Նախարարները Փռիւ-*
*գիայից հռոմէական գնդեր բերելով՝ մի քիչ ընդդիմու-*
*Թիւն ցոյց տուին նորան, բայց շուտովստիպուեցան*
*ռեղի տալ Պարսից զօրութեան առաջ։ Արտաշիր մտաւ*
*Հայաստան, հռոմէական զօրքը փախցրեց և երկրի մեծ*
*մասը իւր իշխանութեան տակ առաւ։ Նախարարները*
*որա վրէժխնդրութիւնից ազատուելու համար՝ մասամբ*
*երդերն ապաւինեցան, մասամբ էլ Յունաստան փախան։*
*Արտաւազդ Մանդակունին Տրդատ արքայորդուն փախց-*
*եց Հռոմ, իսկ Օտա Ամատունի նախարարը Թագաւո-*
*ական գանձերն առաւ և Խոսրովիդուխտ արքայադստեր*
*ետ ապաւինեցաւ Անի ամրոցը։ Արտաշիր՝ Մանդակու-*
*եաց բոլոր ցեղը ջնջեց. ազատուեցաւ միայն Արտաւազ-*
*դի քոյրերից մէկը, որին Տաճատ Աշոցայ իշխանը փախց-*
*եց Կեսարիա և նորա հետ ամուսնացաւ։*

*Այս միջոցին Հռոմայեցիք պատերազմի մէջ էին*
*Գկիւթական ազգերի հետ, որոնք արևմտեան նահանգ-*
*ները ասպատակում էին. ուստի Վալերիանոս կայսրը*
*չկարողացաւ օգնութիւն հասնել Հայոց. նոյնպէս և նո-*
*րա անմիջական յաջորդները կարճատև Թագաւորութեամբ*

միմեանց փոխանակելով՝ ժամանակ չունեցան արևելեան գործերով զբաղուելու։ Վերջապէս Տակիտոս կայսրը եկաւ Պարսից վրայ, բայց յաղթուեցաւ և շուտով էլ դաւով սպանուեցաւ. իսկ նորա յաջորդը Պրոբոս Պարսից հետ հաշտութիւն անելով՝ վիճելի երկրները միմեանց մէջ բաժանեցին։ Այս հաշտութեամբ Հայաստանը Սասանեան թագաւորութեան նահանգ ճանաչուեցաւ և 26 տարի կառավարուեցաւ պարսիկ գործակալների ձեռքով (261—287)։

Արտաշիր Հայոց աշխարհին տէր լինելով, ձեռք զարկեց երկիրը բարեկարգելու։ Արշակունեաց տոհմի իշխաններին առաջուան պէս Այրարատ նահանգում բնակեցրեց, և արքունի գանձարանից ռոճիկ կապեց նոցա։ Նոյնպէս գաղթած նախարարներին յետ դարձրեց, բերդերն ապաւինածներին էլ իջեցրեց և ամենին իրանց կալուածներում վերահաստատեց. միայն Օտա Ամատունին Անիի ամրութեան վրայ վստահացած՝ չուզեց անձնատուր լինել, և երկայն տարիներ ապահով մնաց այնտեղ Պարսիկներից։ Արտաշիր Հայաստանը իւր տէրութեան հետ աւելի սերտութեամբ կապելու համար՝ Արտաշէս Բ-ի հաստատած սահմանաքարերը փոխեց և իւր անունով Արտաշիրական անուանեց. Նոյնպէս Արշակունեաց ասուածների արձանները խորտակեց և հրամայեց, որ Որմզդական կրակը անշէջ պահուի Բագաւանում։ Տուրքերի քանակութիւնը որոշեց, և ընդհանրապէս վարչութեան այն եղանակը սահմանեց, որով կառավարվում էին միւս հպատակ նահանգները։

Այս միջոցում Տրդատ արքայորդին մտքով և մարմնով զարգանում էր Հռոմում Լիկիանոս կոմսի հովանա-

որութեան տակ, որին շուտով շատ սիրելի եղաւ իր
աջութեան և անձնուիրութեան համար։ Իւր արտաքոյ
արգի ուժովը և ճարտար զինաշարժութեամբը Տրդատ
եծ անուն հանեց Հռոմայեցոց մէջ։ Յաճախ Ողիմպիա-
ան խաղերին մասնակից էր լինում և իւր ախոյեան-
երին գերազանցելով յաղթութեան մրցանակը տանում
ր։ Այսպէս մի անգամ վայրենի ցուլի եղջիւրները մէկ
եռքով բռնելով՝ դուրս պոկեց, վիզն էլ ոլորեց ու սպա-
եց։ Մի ուրիշ անգամ էլ Հռոմում կառարշաւի ժամա-
ակ, մինչ հակառակորդը առաջ անցնելու համար՝ ճար-
իկութեամբ կառքից վար էր ձգել նորան, Տրդատ վա-
եց հակառակորդի կառքի ետևից այնպէս պինդ բռնեց,
ր ձիաները տեղնուտեղը կանգնեցան։ Մեծ եղան նոյն-
էս Տրդատի գործած քաջութիւնները Հռոմայեցոց բա-
ակի մէջ։ Գթաց դէմ պատերազմելիս՝ նա առիթ ու-
եցաւ Լիկիանոսին մահից ազատելու. մինչ Հռոմայեցիք
ովից կատաղած՝ ընկան Պրոբոս կայսեր վրայ ու սպա-
եցին, Տրդատ մէն մենակ Լիկիանոսի դրան առաջ կանգ-
ած՝ թոյլ չտուեց որ ապստամբ զինուորները ներս
տնեն (282)։ Դարձեալ երբ Կարոս կայսրը Պարսից
րայ պատերազմ գնաց, Տրդատ, որ Հռոմայեցոց բա-
ակի մէջ էր, քաջութեամբ կռուեցաւ. բայց կայսրը
աղթուեցաւ և լեգէոնները ցրուեցան, Տրդատ չկարողա-
աւ փախչողների ետևից գնալ որովհետև ձին պատե-
ազմում սպանուել էր. ուստի իւր զէնքերն ու ձիու
արքը շալակն առած՝ Եփրատը լողալով անցաւ և ան-
նաս հասաւ Հռոմայեցոց բանակը (284)։ Վերջին քա-
ութեան գործն եղաւ Դիոկղետիանոս կայսեր տեղ Գթաց

Հաչէ թագաւորի հետ մենամարտելը, որին յաղթելով բռնեց ու կայսեր առաջը բերեց։

Սորանից քիչ յետոյ Դիոկղետիանոս կայսրը Տրդատին զօրք տուեց և ուղարկեց Հայաստան, որ իւր հօր թագաւորութիւնը ձեռք բերէ։ Կեսարիայում դիմաւորեցին նորան շատ հայ նախարարներ, որոնցով շրջապատած մտաւ Հայոց երկիրը։ Այստեղ նորա առաջ եկաւ Օտա Ամատունին, բերելով Խոսրովիդուխտ օրիորդին և թագաւորական գանձերը, որ մինչև այն ժամանակ պահել էր Անի ամրոցում։ Տրդատ Օտայի հաւատարմութիւնը վարձատրելու համար՝ տէրութեան հազարապետ կարգեց նորան. իսկ Արտաւազդ Մանդակունուն, որ իւր ազատարարն էր եղած, զօրքի սպարապետութիւնը յանձնեց. Տաճատին էլ Աշոցյայ նախարար անուանեց։ Այնուհետև Տրդատ իւր ձեռքի տակ ունեցած հայ և հռոմայեցի զօրքով ընկաւ Պարսից վրայ, Հայաստանից հալածեց և բոլոր երկիրը իւր իշխանութեան ներքոյ առաւ։ Յաջորդ տարին արշաւեց Պարսկաստան և մինչև երկրի ներսերը հասաւ իւր յաղթական բանակով։ Այս արշաւանքի ժամանակ Տրդատ քաջութեան հրաշքներ գործեց, շատ անգամ անձամբ կռուելով և իւր կեանքը վտանգի ենթարկելով։ Այս սխրագործութիւններից յափշտակուած՝ հայ ժողովուրդը առակի պէս ասում էր. «Իբրև զսէգն Տրդատ՝ որ սիգալովն իւրով աւերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ 'ի սիգալ իւրում զյորձանս ծովուց»։

Պարսկական պատերազմից յետոյ՝ Տրդատ Սմբատ Բագրատունուն ուղարկեց, որ Աշխադար թագաւորի Աշխէն աղջկան իրան կնութեան բերէ, և Արշակունի գրելով նորան՝ թագ ու ծիրանի հագցրեց և Հայոց թագու-

նի հրատարակեց։ Սակայն պատերազմը դեռ երկար ժամանակ տևեց Պարսից հետ, մինչև որ Հայաստանը բո-
որովին ազատուեցաւ նոցա ազդեցութիւնից և երկու
ողմերի մէջ հաշտութիւն եղաւ։ Այս խաղաղութեան
տարիներում Աւետարանը քարոզուեցաւ Հայոց աշխար-
ում, և Հայերը ազգովին ընդունեցին քրիստոնէութիւնը։

Այստեղ իսկապէս վերջանում է մեր ազգի հին պատ-
ութիւնը, որ պարունակում է հեթանոսական կրօնի
իրապետութիւնը Հայաստան աշխարհի վրայ։ Կրօնը
մենազօրաւոր կերպով ներգործում է այն ազգերի
եանքի վրայ, որոնց մէջ քաղաքակրթութիւնը և բա-
ոյական զարգացումը այն կէտին չեն հասել, որ կարո-
անան իշխել մարդկանց ըղձերի և գործողութիւնների
այ։ Քրիստոնէութիւնը նոր և ճշմարիտ քաղաքակըր-
ութեան ասպարէզ է բաց անում Հայոց առաջ, և Աւե-
արանի լոյսը այնպիսի յեղափոխութիւն է ձգում ազգի
ջ, որ թէ նորա ներքին կեանքի պայմանները և թէ
ղաքական յարաբերութիւնը բոլորովին կերպարանա-
ոխ են լինում, ինչպէս որ շուտով պիտի տեսնենք։

---

## Ջ. ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԻ ՊԱՏՄԱՆՆԵՐԸ ՀԵԹԱՆՈՍ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ԺԱՄԱՆԱԿ

### 25.

*Տէրութեան կազմակերպութիւնը. Թագաւորը, նախարարները և ժողովուրդը.—Զօրք և զինուորական արուեստ.—Արշակունեաց աշխարհաշինութիւնը.—Որսերի նշանակութիւնը.—Արշակունեաց հելլենասիրութիւնը.—Բազմակնութիւն.—Ցուղարկաւորութեան հանդէս. եղերամայրք և ձայնարկու կուսանք.—Կրօն և քրմական դաս. Քաղաքական և մեհենական դիւաններ։*

Արշակունեաց կառավարութեան ձևը ինչպէս Պարսից՝ այնպէս և Հայոց երկրում մէկ էր—*ազնուապետական միապետութիւն*։ Թագաւորը Հայաստանի տէր ու իշխանն էր և նորա իշխանութիւնը ժառանգական. բայց այդ միապետութիւնը իսկապէս անունով էր միայն, որովհետև Թագաւորի իշխանութիւնը սահմանափակվում էր մի ուրիշ ազնուապետական իշխանութեամբ, որ մեզանում Նախարարութիւն էր կոչվում։ Նախարարութիւնը այնքան հին է, որքան և Հայոց ազգութիւնը, և Վաղարշակ հաստատելով այս ազնուապետական կաստան, վաւերացրեց այն կարգը՝ որին հնութիւնը և երկարատև սովորութիւնը օրէնքի զօրութիւն էին տուել։ Բղխելով այն ցեղական իշխանութիւններից՝ որ Հայաստանի աշխարհագրական դիրքի շնորհիւ անյիշատակ ժամանակներից կազմուել էին երկրի զանազան կողմերում, Նախարարութիւնները հետզհետէ զարգացան ու զօրացան, և Հայոց հին Թագաւորների բոլոր ջանքերը զուր եղան նուաճելու և կենտրոնական իշխանու-

թիւնը հպատակեցնելու նոցա։ Երբ Վաղարշակ ձեռնարկեց Հայաստանը բարեկարգելու, ստիպուեցաւ օրինաւոր համարել այն հին կարգը՝ որ ըստ ինքեան թագաւորական իշխանութեան համար վտանգաւոր ու վնասակար էր, նորոգելով իւրաքանչիւր նախարարութեան իրաւունքները ժառանգութեամբ ստացած կալուածների վրայ։ Նորա միակ աշխատութիւնն այն եղաւ, որ նախարարների վայելած արտօնութիւնների փոխարէն՝ մի շանի պարտաւորութիւններ դնէ նոցա վրայ և այսպիսով փորբիշատէ արքունիքի հետ կապէ նոցա։

Վաղարշակեան կարգադրութեամբ նախարարները (որոնք ընդհանուր անուամբ կոչվում էին «ազատ» և «ազատորդիք», այսինքն ազնուական, հակառակ հասարակ ժողովրդեան, որ կոչվում էր «անազատ») երկու գլխաւոր դասի էին բաժանվում. աւագ և կրտսեր նախարարներ։ Առաջինները զանազանվում էին կրտսերներից իրանց իրաւունքներով և թագաւորից ընդունում էին «բարձ և պատիւ աւագութեան», որով իրաւունք էին ստանում արքունիքում թագաւորի ներկայութեանը նստել բարձի վրայ արևելեան սովորութեամբ։ Բայց նոյն իսկ աւագ նախարարների մէջ մէկը միւսից նախապատիւ էր համարվում, նայելով իւրաքանչիւրի ազդեցութեանը և երկրի ընդարձակութեանը. այս է որ մեր պատմագիրները անուանում են «առաջին գահ, երկրորդ գահ, երրորդ գահ», և այլն։

Բոլոր նախարարները կալուածների տէր չէին. նոցա մէջ կային՝ որ միայն արքունի պալատում ծառայելով, ազատ ու նախարար էին կոչվում։ Իսկ կալուածատէր նախարարները, որոնց գլխաւորը կոչվում էր «Տէր»

կամ «Տանուտէր» և «Նահապետ», իրաւունք ունէին ա) Թագաւորից անկախ իշխել ժառանգութեամբ ստացած երկրների վրայ, բ) իրանց երկրի բնակիչների դատերը տեսնել, գ) հարկ առնել իրանց հպատակներից և դ) առանձին զօրք պահել դարձեալ իրանց հպատակներից։ Այս իրաւունքներից երեւում է, որ Թագաւորը ամենեւին չէր խառնվում նախարարի երկրի կառավարութեան մէջ։ Բայց սորա փոխարէն նախարարները հպատակութեան պարտքերով կապուած էին Թագաւորի հետ. նորա պարտական էին ա) զօրքով օգնել Թագաւորին պատերազմի ժամանակ և բ) հարկ տալ նորան։ Միայն թէ այս պարտականութիւնները միշտ ճշտութեամբ չէին կատարվում, և սորանից մեծամեծ չարիքներ էին առաջ գալիս։

Նախարարներից յետոյ գալիս էր ժողովուրդը, որ Վաղարշակի օրէնքներին նայելով՝ երկու դասի էր բաժանվում. քաղաքացիք և գիւղացիք։ Առաջինները բնակում էին քաղաքներում և բարձր էին համարվում գիւղացիներից, որոնք պարտական էին քաղաքացոց պատուել իբրև «իշխանների»։ Հարկերը և տուրքերը ծանրանում էին գլխաւորապէս ստորին կարգի ժողովրդի կամ գիւղացոց վրայ, որոնք այնքան պիտի հատուցանէին, որ երկու արքունիքի—Թագաւորի և նախարարների պէտքերը հոգացուէին։ Բացի սորանից, Արշակունեաց ընդունած սովորութեամբ՝ շինական դասը սակաւ առ սակաւ զրկվում էր հողից և երկրի հարստութիւնը կենտրոնանում էր մի քանի անհատների ձեռքում։ Վաղարշակի յաջորդները չբաւականանալով եղած նախարարական տներով, հետզհետէ նորանոր նախարարութիւններ ստեղծեցին։ Թագաւորը մի որ և իցէ հպատակի անձնուէր հա-

ւստարմութիւնը և պատերազմի ժամանակ ցոյց տուած քաջութիւնը վարձատրելու համար՝ նախարարական պատուին էր հասցնում նորան և շատ անգամ առանձին կալուածներ էր շնորհում (Վարաժնունիք, Դիմաքսեանք, Տրունիք, Առաւեղեանք, Ամատունիք և այլն)։ Միայն վերջերը, քրիստոնէութեան շրջանում, թագաւորը երբեմն անհաւատարիմ և ապստամբ նախարարի կալուածներով վարձատրում էր իւր սիրելիներին։

Արշակունիք օտարական թշնամիների հետ պատերազմելու համար մեծամեծ բանակներ էին պահում։ Չյիշելով յոյն պատմիչների փոխաբերական խօսքերը Արտաշէս Ա-ի զօրքի առասպելական բազմութեան վրայ, այս յայտնի է, որ Տիգրան Բ-ի ժամանակ Հայոց զօրքը մեծ բազմութեան էր հասնում։ Պլուտարքոս հաշվում է 260,000. ուրիշները այս թուի կրկնապատիկն ու եռապատիկն են դնում։ Արտաւազդ Ա-ից յետոյ, երբ Հայաստանի քաղաքական միութիւնը խզուեցաւ, զօրքի թիւն էլ նուազեցաւ, թէև Արտաշէս Բ-ի և Խոսրով Ա-ի թագաւորութիւնները թոյլ են տալիս ենթադրել բաւական մեծ զինուորական զօրութիւն։

Բայց զօրքի բազմութիւնը միշտ զօրութեան նշան չէ, եթէ կրթութիւնը և բարեկարգութիւնը կատարելութեան հասած չեն, և այս կողմից հեթանոս Արշակունիք իրանց զինական յաջողութիւններով ու անյաջողութիւններով խրատական օրինակ են ներկայացնում։ Արտաշէս և Տիգրան իրանց պատերազմական զօրութեամբ շատ երկրներ նուաճեցին, նոցա յաջորդներն էլ մեծամեծ յաղթութիւններ են տարել ասիական թագաւորների վրայ, բայց Հռոմայեցոց լեգէոնների առաջ շատ անգամ

տեղի են տուել։ Տիգրանակերտի պատերազմում Լուկուլլոս 20,000 զօրքով Տիգրանի ահագին բանակը ցրուեց. նոյնպէս և Արտաշատի պատերազմը մեծ հետևանք չունեցաւ Հայոց համար։ Գովկասեան լեռնականների վրայ երկու անգամ սարսափ ձգող Արտաշէս Բ-ի զօրքը, թէև Հռոմայեցոց լեգէոններն էլ քշեց, բայց շուտով Արտաշէս ստիպուեցաւ կայսեր զօրութիւնը ճանաչել։ Մէկ խօսքով Հայոց զօրքը հեթանոս Արշակունեաց ժամանակ միշտ յաջողակ էր գտնվում ասիական պատերազմներում, որոնց մէջ ամեն տեսակ պատերազմական խարդախութիւններ էր գործ դնում, և յաճախ յաղթվում էր՝ երբ գործ ունէր հռոմէական լեգէոնների հետ։ Մեծ երկիւղ էին պատճառում Հռոմէացոց Հայոց և Պարթևաց հեծելազօրը, որոնք կամ յանկարծակի յարձակում, չորս կողմից պաշարում էին թշնամիներին, կամ երբեմն փախչել էին ձևանում և յետոյ կրկին նոցա վրայ ընկնում կոտորում էին. բայց գրեթէ միշտ բաց ու կանոնաւոր պատերազմից խուսափում էին։ Նոցա գլխաւոր զէնքը նետն էր, մի մահաբեր գործիք որ երկու մասից էր բաղկանում. մէկը հաստատուն և բնի վրայ ամրացած, իսկ միւսը շարժական և առաջին սլաքի վրայ հագած. այնպէս որ եթէ նետը վէրքից հանուելու լինէր, շարժական սլաքը մարմնի մէջ էր մնում, և վէրքը ամենևին չէր բժշկվում։

Բոլոր զօրքի մէջ թէ բազմութեամբ և թէ նշանակութեամբ երևելի էին չորս կողմնակալ կամ սահմանակալ գնդերը, որոնք առանձին զօրավարների հրամանատարութեան ներքոյ էին, թէև կար մէկ ընդհանուր սպարապետ կամ միագլխապետ բոլոր զօրքերի վրայ։ Հայաս-

տանի սահմանները մշտակայ զօրքով պահպանելու սովորութիւնը, որ Վաղարշակ հաստատել էր, մի քանի անգամ խափանուեցաւ, բայց դարձեալ նորոգուեցաւ՝ իբրև անհրաժեշտ պաշտպանողական միջոց մի երկրի համար, ուր բացի ուրիշ անյարմարութիւններից հաղորդակցութիւնը դժուարութեամբ էր կատարվում։ Միւս բոլոր գնդերը նահանգների կամ նախարարութիւնների անունով էին կոչվում. այսպէս էին առաջիններից Այրարատեան գունդը, իսկ երկրորդներից՝ Մարդպետականը։

Արշակունիք մեծ սէր ունէին քաղաքներ շինելու, որոնցից ոմանք քաղաքական նպատակներով էին շինվում, բայց աւելի շատ թագաւորների զւարճութեան համար՝ իբրև ամառանոց, ձմեռոց և արքայանիստ քաղաք. գրեթէ չկայ մի թագաւոր որ մի քաղաքի շինութեամբ կամեցած չլինի իւր անունը անմահացնել։ Թէ այս ախտը որքան պիտի ծանրանար երկրի տնտեսական վիճակի վրայ, ամէն ճարտար լեզուից գեղեցիկ պատցուցանում է Սանատրուկի իւր անունով Մծբինում կանգնել տուած արձանը, որ ձեռքումը բռնած ունէր մի դրամ, իբրև ցոյց տալու համար՝ թէ քաղաքի նորոգութեան վրայ տէրութեան գանձարանը սպառուեցաւ, և միայն մի դրամ մնաց։

Արշակունեաց ամենասիրելի զբօսանքը որսերն էին։ Բայց որսորդութիւնը լոկ զբօսասիրական նպատակ չունէր, այլ Յունաց Ողիմպիական խաղերի նման՝ գլխաւորապէս արքայորդոց և արքունական անձանց զինուորական կրթութեան համար էր ծառայում, և այս սովորութիւնը Պարթևները պարսիկներից փոխ առած էին։ Պարսից հին թագաւորները, ասում է Քսենոֆոն, որսոր-

դութիւնը պատերազմի պատկեր համարելով, ամիսը մի քանի անգամ որսի էին գնում նախարարների որդոցը որսորդութեամբ զինաշարժութեան և ձիավարութեան մէջ կրթելու համար։ Մերոնց մէջ որսորդութեան ասպարէզները անտառներն էին, որոնցից մի քանը ծանր աշխատանքով տնկվում էին, էրէներով լցվում և պարսպով շրջապատվում էին։

Այսպիսի պատերազմական կրթութիւններով դաստիարակուող արքայորդիքը երբեմն ժամանակ էին գըտնում յունական լեզուով ու գրականութեամբ պարապելու. բայց այս նոցա կրթութեան սովորական շրջանից դուրս էր և միայն մի քանիսի անձնական հետաքրքրութեան և ուսումնասիրութեան պտուղ կարող էր համարուել։ Պատմութիւնից յայտնի է Արշակունեաց չափազանց սէրը Յունաց լեզուի, սովորութիւնների և կրթութեան վրայ. Նոցա դրամների արձանագրութիւնները ըստ մեծի մասին յունարէն են, իրանք էլ ուրիշ տիտղոսների մէջ հ ե լ լ ե ն ա ս է ր անունն էր կրում։ Տիգրան Բ-ի պալատը զարդարում էին շքեղ թատրոններ, ուր յոյն դերասանները ներկայացնում էին իրանց ողբերգակ բանաստեղծների հատուածները։ Պլուտարքոս ասում է, թէ Տիգրանի որդին Արտաւազդ և Պարթեւաց Որոդէս թագաւորը մեծ մտերմութիւն ունէին միմեանց հետ. երկու թագաւորները փոփոխակի խնջոյքներ էին տալիս միմեանց, որոնց մէջ սովորաբար յունարէն ոտանաւորներ էին կարդացվում. որովհետև Որոդէս յունաց լեզուի ու գրականութեան տեղեակ էր, իսկ Արտաւազդ զանազան ողբերգութիւններ, ճառեր և պատմութիւններ էր շարադրում նոյն լեզուով։ Երբ Կրասոսի գլուխը բերուեցաւ

Տիգրանի արքունիքը, Արտաւազդ և Որոդէս այս առթով մի ողբերգութիւն գրեցին ու ներկայացնել տուին յունարէն լեզուով։

Այս և ուրիշ յունական սովորութիւնների հետ Արշակունեաց արքունիքում խառն տիրապետում էին արևելեան սովորութիւնները և մասնաւորապէս բազմակնութիւնը, որ, ինչպէս երևում է, Արշակունիք առաջին անգամ մտցրին Հայաստան, և նոցանից տարածուեցաւ նախարարների՝ բայց ոչ ժողովրդի մէջ։ Հայոց բնածին և ամեն ժամանակների յատուկ բարեխառնութիւնը և ընտանեկան կեանքի մաքրութիւնը, ինչպէս նաև Հայկազանց իշխաններից մէկի՝ Արա Գեղեցիկի վրայ պատմուած և իւր հնութեամբը պատկառելի եղած աւանդութիւնը, վկայում են, որ Հայկազանց հարստութեան իշխանները և հայ ազգը ընդհանրապէս անծանօթ էին բազմակնութեան։ Իսկ Արշակունիք այնքան հեռևող էին բազմակնութեան, որ քրիստոնէութեան պարերում էլ պահեցին այս պժգալի սովորութիւնը։ Բայց և այնպէս հեթանոսական շրջանումն անգամ Թագաւորի «կանանց գլուխը» իւր դրութեամբը և նշանակութեամբը զանազանվում էր երկրորդական կանանցից կամ հարճերից։ Թագուհին կամ «տիկինը» ընտրուելուց յետոյ գրվում էր Արշակունի, հագցնում էին նորան ծիրանի, գլխին թագ էին դնում և երբ արքայական զոյգը պալատի դրանն էր հասնում, Թագաւորը ոսկի էր ցրվում ժողովրդին, իսկ Թագուհին առագաստը մտնելիս՝ մարգարիտ էր շաղ տալիս։

Մեծ շքեղութեամբ կատարվում էր նոյնպէս Թագաւորների և մեծամեծ իշխանների յուղարկաւորութեան հանդէսը։ Արիստոն Փելլացի ականատես յոյն պատմիչը

այսպէս է նկարագրում Արտաշէս Բ-ի թաղումը. «Դագաղը ոսկեղէն էր, անկողինը բեհեզեայ, մարմնի վրայ փռուած վերարկուն ոսկեթել. գլխին թագ էր դրած և առաջին ոսկի զէնքը։ Դագաղի շուրջը կանգնած էին որդիքը և բազմաթիւ ազգականները. նոցանից յետոյ գալիս էին զինուորական պաշտօնեաները, նախարարական տոհմերի նահապետները, բազմաթիւ նախարարներ ու զօրքերի գնդեր, բոլորն էլ զինուորուած և իբրև պատերազմելու պատրաստ։ Առաջին փողերն էին հնչում, և ետևից ձայնարկու կոյսերը և ողբացող կանայք սևեր հագած. ամենից վերջը գնում էր ռամիկների բազմութիւնը»։

Յուղարկաւորութեան ժամանակ պատահած յուսահատական ողբերն ու գործողութիւնները, որ ապագայ կեանքին չհաւատացող ժողովրդի համար հասկանալի են, քրիստոնէութեան դարերումն էլ երկար ժամանակ տևեցին։ Փողի, փանդռի և ուրիշ երաժշտական գործիքների տխուր ձայների հետ ընկերանում էին «ձայնարկու կուսանաց» կամ «եղերամարց» ողբերը, որոնք ննջեցեալի կեանքի արկածները պատմելով՝ յուղարկաւորների արտասուքը շարժում էին։ Իսկ ազգականների յուսահատութեան չափը չկար. նոքա մազերը փետում, կուրծքերը խփում, երեսները պատառոտում էին. արք և կանայք մի տեսակ ծանր պար բռնելով՝ ոտորվում, ծափ էին տալիս և այդպիսով իրանց սրտի ցաւը արտայայտում էին։

Արշակունեաց հելլենասիրութեան արդիւնք պէտք է համարել և այն հանգամանքը, որ Հայաստան հաստատուելուց կէս դար յետոյ արդէն սկսում են մտցնել Յունաց աստուածների պաշտօնը Հայոց մէջ։ Արտաշէս Ա Փոքր Ասիա և Յունաստան յանձն առած արշաւանքի

ժամանակ՝ բերել տուեց այն տեղերից յունական աստուածների արձանները իրանց քրմերի հետ, որ Տիգրան Բ հրամայեց տեղաւորել հայ մեհեաններում ազգային աստուածների կողքին։ Զևսը դրուեցաւ Անի ամրոցում՝ Արամազդի մօտ, Աթենասը Թիլ աւանում՝ Նանէ դիցուհու մեհեանի մէջ, Արտեմիսը Երիզայում՝ Անահտի արձանի կողքին, Հեփեստոսը Բագայառինջ գիւղում՝ Միհրի արձանի մօտ, Աֆրոդիտէն Աշտիշատում՝ Աստղիկի կողքին։ Հայերը այս կուռքերին իրանց աստուածների յատկութիւնները վերագրելով, սովորական պաշտօնն ու զոհերը մատուցանում էին նոցա։

Քրմութիւնը Հայոց մէջ առանձին դասակարգ էր կազմում։ Քրմապետութեան պաշտօնն էլ Վահունեաց (Վահագնի սերնդի) ձեռքն էր մինչև Տիգրան Բ. որ զրկեց նոցա այս պաշտօնից՝ Հերակլէսի արձանը անհրաժան իրանց գիւղը տանելուն համար։ Այնուհետև քրմապետութիւնը վարեցին զանազան անձինք, որոնց թւում երբեմն պատահում են թագաւորական գերդաստանի անդամներ (Երուազ, Մաժան)։

Քուրմերը միւս կալուածատէր նախարարների նման ունէին իրանց առանձին զօրքը—«զօրք քրմաց» և սեպհական կալուածները—«երկիր քրմաց»։ Միայն հնդկական գաղթականութեան մեհեանները և նոցա պաշտօնեաները ունէին Տարօն գաւառում վեց ընդարձակ գիւղեր (12,000 բնակիչներով) և մօտ 8,000 զօրք։

Հեթանոս Արշակունեաց օրով Հայոց միակ ուսումնավայրերը դիւանատներն էին, ուր գրվում և պահվում էին նոցա մատուոր գանձերը։ Երկու տեսակ դիւաններ կային. քաղաքական և կրօնական։ Առաջինները թագա-

ւորների պալատների մօտ էին շինուած. Նոցա պահապանները կոչվում էին «դիւանագիրք», որոնց պաշտօնն էր ժամանակակից թագաւորների գործերը գրել ժամանակագրական կարգով և դիւանների մէջ պահել։ Հայոց երկրում, ինչպէս և Պարսից մէջ, այս գրքերը ընդհանուր անուամբ կոչվում էին «Մատեան թագաւորաց», պարսկերէն Շահնամէ։ Բացի այս գրքերից, որոնք երկրի քաղաքական պատմութիւնն էին կազմում, թագաւորական դիւանների մէջ պահվում էին կառավարութեան, կալուածների և ուրիշ խնդիրների վերաբերեալ թղթեր ու դաշնագրութիւններ։ Թագաւորական մատենից յետոյ գալիս էր «Մեհենից մատեանը» կամ «Մեհենական պատմութիւնը», որի հեղինակներն ու պահապանները քուրմերն էին և գտնվում էին մեհեանների մօտ, գլխաւորապէս Դարանաղի գաւառի Անի ամրոցում։ Մեհենական պատմութիւնը նորանով էր զանազանվում թագաւորական մատենից, որ նորա մէջ առաջին տեղը բռնում էր դիցաբանական պատմութիւնը, իսկ քաղաքական անցքերը երկրորդաբար միայն յիշատակվում էին։ Մ. Խորենացու վկայութիւնից երևում է, որ թագաւորական և մեհենական մատեանները մինչև իւր օրերը հասել էին, որովհետև շատ անգամ յիշում է նոցա և Մար-Աբասից յետոյ նոցանից շատ բան է քաղել։ Նոյն պատմագրի խօսքերից երևում է դարձեալ, թէ հին ժամանակ ինչ մեծ յարգ ունէին դիւանները և թէ ինչ զարմանալի կարգ ու կանոն էր տիրում նոցա մէջ, այնպէս որ ձեռագրերը շատ հեշտութեամբ կարելի էր գտնել, որովհետև ամեն մի մատեան և գրուած առանձին թուահամարով նշանակուած էր։

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԻՑ ՄԻՆՉԵՒ ԱՐԱԲԱՑՈՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ (300—640)

## Ա. ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ ՀԱՅՈՑ ՄԷՋ— ՏՐԴԱՏ ԵՒ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

### 26.

*Աւետարանի առաջին քարոզութիւնները և քրիստոնեաների վրած հալածանքները.—Գրիգոր Լուսաւորիչ, նորա ծնունդը և կրթութիւնը.—Ս. Գրիգորի տանջանքները և Խոր-Վիրապ ձգուիլը (287).—Հռիփսիմեանց նահատակութիւնը.—Ս. Գրիգորի Վիրապից դուրս գալը և Հայոց դարձը (301).—Մեհեանների քանդումը.—Ս. Գրիգորի ձեռնադրութիւնը. Տարօնի պատերազմը։—Թագաւորի և ժողովրդի մկրտուիլը։—Քրիստոնէական դպրոցների բացումը.—Արիստակէս հայրապետ (317)։*

Դեռ Փրկիչը երկրի վրայ էր, որ նորա առաջին քարոզութիւնները արձագանք գտան Հայոց մէջ, և Աբգար Հայոց թագաւորը հեթանոս իշխանների մէջ առաջինն եղաւ որ հաւատայ թէ նա Աստուծոյ Որդի է։ Քրիստոսի համբառնալուց անմիջապէս յետոյ Աւետարանը քարոզուեցաւ Հայոց Թադէոս առաքեալի ձեռքով, որին շուտով ընկերացաւ և Բարթուղիմէոս առաքեալը. սոցա աշխատութեամբ հիմնուեցան առաջին եկեղեցիները Հայոց աշխարհում։ Բայց քրիստոնէութիւնը խոր արմատ

չդրեց հեթանոս Հայոց մէջ, որոնք դեռ պատրաստ չէին Աւետարանի բարոյական սկզբունքները հասկանալու։ Բացի սորանից, Նոր կրօնական շարժումը իսկապէս երկրից դուրս՝ Միջագետքում տեղի ունեցաւ, և մենք պատմութիւնից տեսնում ենք որ քրիստոնէութիւնը այնտեղ աւելի յաջողութեամբ տարածվում է, ուր քաղաքական իշխանութիւնը ձեռնտու և օգնական է լինում քարոզիչներին։ Նոյն իսկ Եդեսիայում, Աբգարից յետոյ, Նորա յաջորդները եկեղեցիները կործանեցին և մեհեանները կրկին բաց արին. հեթանոսութիւնը վերահաստատուեցաւ իւր բոլոր զօրութեամբ և Նորա առաջին զոհերն եղան Թադէոս և Բարթուղիմէոս առաքեալները։

Թէև այս կերպով հին կրօնը դեռ էլի երեք դար տևեց Հայոց մէջ, բայց և այնպէս քրիստոնէութիւնը բոլորովին չանհետացաւ Հայոց աշխարհից, այլ ծածուկ կերպով քարոզվում էր Նորա բնակիչներին։ Նոյն իսկ Թադէոսին աշակերտած են համարվում Ոսկեանք, որոնք երկար ժամանակ ճգնելով Ծաղկէոյ լեռներում՝ իջան Արտաշատ և մինչև Արտաշէս Բ-ի պալատը մուտ գտան, ուր Սաթինիկի ազգականներից ոմանք—Սուքիասեանք հետևեցան Նոցա։ Ինչպէս Ոսկեանք, այնպէս և Սուքիասեանք նահատակուեցան Արտաւազդ արքայորդու ձեռքով։ Այս նահատակութիւնները փոխանակ սակաւաւոր հաւատացողներին վհատեցնելու՝ աւելի ևս արծարծում էին Նոցա եռանդը, և քրիստոնեաների թիւը հետզհետէ աճում էր։ Տերտուղիանոս վկայում է, թէ երրորդ դարու սկզբին արդէն բազմաթիւ հաւատացեալներ կային Հայոց մէջ. իսկ Փիրմիլիանոս ասում է, թէ Խոսրով Ա-ի օրով այնքան բազմացել էին հայ քրիստոնեաները, որ

յիշեալ թագաւորը հալածանք հանեց նոցա դէմ և չարչարելով կոտորեց: Նորա օրինակին հետևելով, Տրդատ իւր թագաւորութեան սկզբում երկու հրովարտակ հանեց, որով սպառնում էր մահուան պատիժ տալ քրիստոնեաներին և նոցա ստացուածքը մատնողներին բաժանել. Նոյն պատիժը կրելու էին քրիստոնեաներին թաքցնողները: Այս արդէն բաւական ապացոյց էր որ հեթանոսութեան վախճանը մօտեցել էր. կրօնը բարոյական զօրութիւն է և նիւթական միջոցները անկարող են պահպանել նորան, եթէ ժողովրդի սրտում հաստատուն կայան չունի:

Այսպէս ուրեմն Թադէոսի և Բարթուղիմէոսի ցանած սերմերը մարտիրոսների թափած արիւնով ոռոգուելով աճեցան և պատրաստեցին Հայոց ազգովին քրիստոնէութիւնն ընդունելու Ս. Գրիգոր Լուսաւորչի ձեռքով:

Ծնաւ Ս. Գրիգոր 257 թուականին Վաղարշապատ քաղաքում. Նորա հայրն էր Անակ Պարթևը, մայրը կոչվում էր Ոգոհի: Խոսրովի սպանութիւնից յետոյ, Եւթաղ անունով մէկը Հայոց վրէժխնդրութիւնից ազատեց Անակի երեք տարեկան որդուն իւր Սոփիա ստնտուի հետ և փախցրեց Կեսարիա: Այնտեղ Պարթև մանուկը մկրտուելով՝ անուանուեցաւ Գրիգոր և սնուեցաւ քրիստոնէական հոգւով, ուսանելով յունարէն և ասորերէն լեզուները, միանգամայն և կրօնի վերաբերեալ գիտութիւնները: Երբ որ չափահաս դարձաւ, ամուսնացաւ Դաւիթ անունով յոյն մարդու Մարիամ դստեր հետ, որից երկու զաւակ ունեցաւ, Վրթանէս և Արիստակէս: Երեք տարուց յետոյ, երկու ամուսինները փոխադարձ համաձայնութեամբ բաժանուեցան միմեանցից. Մարիամը կրտսեր որդու

հետ կուսանաց մօտ. իսկ Գրիգոր Վրթանէսին դայեակներին յանձնելով՝ ինքը գնաց Տրդատ արքայորդու մօտ, որպէս զի հաւատարմութեամբ ծառայելով նորան՝ հօր չարագործութեան արատը սրբէ իւր վրայից։

Դեռ Հռոմ եղած ժամանակը Տրդատ յորդորում էր Գրիգորին քրիստոնէութիւնը թողնել. իսկ երբ Հայաստան եկաւ և Երիզայում Անահիտ դիցուհուն զոհ բերեց իւր հայրենի թագաւորութիւնը յաջողութեամբ վերադառնալուն համար, հրամայեց Գրիգորին որ արքայական սեղանից ծաղկէ պսակներ առնէ և կանաչ ոստերի հետ Ոսկեմօր նուէր տանի։ Գրիգոր յանձն չառաւ թագաւորի կամքը կատարելու։ Այն ժամանակ Տրդատ զանազան հնարներով աշխատեց նորա միտքը փոխել, բայց ոչինչ չօգնեց. Ս. Գրիգոր անդրդուելի մնաց թագաւորի քաղցր խօսքերի, սպառնալիքների և մինչև տանջանքների առաջ, որ շատ օրեր շարունակ տևեցին։ Մինչ նոր տանջանքներ էին պատրաստում, Տաճատ Աշոցայ իշխանը Արտաւազդ Մանդակունու միջնորդութեամբ յայտնեց թագաւորին, թէ Գրիգոր արքայասպան Անակի որդին է։ Տրդատ այս բանի վրայ աւելի զայրանալով, հրամայեց որ տանեն ձգեն նորան Արտաշատի Խոր-Վիրապը, ուր Հայաստանի ապագայ Լուսաւորչին վիճակուած էր երկար տարիներ ողջ ու անվնաս մնալ. մի բարեպաշտ կին ամեն օր մի հաց էր ձգում այն գբի մէջ և կերակրում էր նորան։

Տասնեչորս տարի էր անցել Ս. Գրիգորի մահապարտների վիհը ձգուած օրից, երբ մի խումբ հաւատաւոր կոյսեր Գայիանէի առաջնորդութեամբ Հռոմից փախչելով՝ եկան ապաւինեցան Հայաստան, բերելով ի-

րանց հետ մի կայսերազն օրիորդ, Հռիփսիմէ անունով, որին Դիոկղետիանոս կայսրը կամենում էր իրան կին առնել։ Նոքա իրանց բնակութիւնը հաստատեցին Վաղարշապատի մօտ մի հնձանի մէջ, ուր ծածուկ ապրում էին կերակրուելով ապակեայ յուլունքների գնով, որ իրանց ընկերներից մէկը շինում էր։ Կայսեր կողմից ստացած թղթի վրայ, Տրդատ հրամայեց որոնել ու գտնել կոյսերի ապաստանած տեղը։ Հնձանը շրջապատուեցաւ զինուորներով, և արքունի սպասաւորներ եկան Հռիփսիմէին թագաւորավայել զգեստներ հագցնելու և պալատը տանելու։ Կոյսը ընդդիմացաւ, և քաշէքաշ բերուեցաւ Տրդատի մօտ։ Արդէն հարսանիքի հանդէսը սկսուել էր և ժողովրդի բազմութիւնը պալատի շուրջը խռնուել, երբ Հռիփսիմէն մի քանի ժամ Տրդատի հետ կռուելուց յետոյ՝ սենեակից դուրս փախաւ, ամբոխը ճեղքեց և իւր ընկերների բնակարանն եկաւ։ Հասան ետևից դահիճները ջահերով, կապեցին նորան չորս ցցի վրայ, աչքերը հանեցին, մարմինն այրեցին և կտոր կտոր արին։ Նորա հետ միասին սպանուեցան 33 հոգի իւր ընկերներից։ Հետևեալ օրը Գայիանէ կոյսը որ բերուել էր պալատ Հռիփսիմէին համոզելու համար, սաստիկ տանջանքներով սպանուեցաւ ուրիշ երկու ընկերների հետ. որով նահատակուեցան ընդամենը 37 հոգի. մնացած մի քանիսն էլ ցրուեցան։

Այսքան անմեղների մահուան վրայ թագաւորի խիղճը սկսեց տանջել. մի տեսակ մելամաղձութիւն եկաւ վրան, և երբ մի քանի օր յետոյ իւր իշխանների հետ որսի էր գնում, կառքից դուրս թռաւ և վայրի գազանների պէս թափառում էր անտառներում. Նոյն պատիժն եկաւ շատ

պալատականների վրայ։ Այդ միջոցին Տրդատի քոյրը Խոսրովիդուխտ մի երազ տեսաւ. մի լուսազգեստ մարդ ասում էր նորան, թէ միայն Գրիգորը կարող է բժշկել թագաւորին և իշխաններին այդ աստուածային պատուհասից. բայց ով կը հաւատար թէ այնքան տարի անցնելուց յետոյ՝ նա կենդանի մնացած լինի Վիրապում։ Երբ երազը կրկնուեցաւ, Օտա Ամատունին ուղարկուեցաւ Արտաշատ. մի պարան ցած թողին վիրապի մէջ և Գրիգորին ձայն տուին. շուանը շարժուեցաւ և Աստուծոյ նահատակը դուրս բերուեցաւ այն մութ ու խոնաւ բնակարանից։ Այս սքանչելիքը շուտով տարածուեցաւ Հայոց աշխարհի մէջ։ Վաղարշապատի ճանապարհի վրայ Ս. Գրիգորի առաջ եկաւ ախտացեալ թագաւորը իւր իշխանների հետ։ Սուրբը ծունկ չոգելով՝ աղօթեց նոցա համար և նոքա փոքր ինչ թեթեւութիւն զգացին։ Յետոյ Հռիփսիմեան կոյսերի նահատակութեան տեղը գնալով, մարմինները ժողովեց, նոցա բնակած հնձանը տարաւ և իւրաքանչիւրին իւր պատառոտուն հանդերձի մէջ պատելով այնտեղ տեղաւորեց։ Երկրորդ օրը, թագաւորը, նախարարները և երկրի ամեն կողմերից հաւաքուած բազմութիւնը եկան Ս. Գրիգորի մօտ, որ համոզեց նոցա հեթանոսութիւնը թողնել և քրիստոնէական հաւատն ընդունել։ Այնտեղ՝ հնձանի մէջ Լուսաւորիչը սկսաւ քարոզել նոցա խօսելով Աստուծոյ արարչագործութեան, Քրիստոսի մարդեղութեան և Եկեղեցու հաստատութեան վրայ (301)։

Այս նախապատրաստութիւնից յետոյ, որ երկու ամիս տեւեց, Ս. Գրիգորը նորահաւատ ժողովրդի օգնութեամբ ձեռք զարկեց երեք վկայարան շինելու կոյսերի

պատուի համար. մէկը Հռիփսիմէի նահատակած տեղը,
միւսը Գայիանէի, երրորդը կոյսերի բնակած տեղը հըն-
ձանում։ Մեծ էր ժողովրդի ցոյց տուած ջերմեռանդու-
թիւնը այս աստուածահաճոյ գործի մէջ. ինքն իսկ Թա-
գաւորը բահը ձեռքին՝ կոյսերի գերեզմանատեղերը փո-
րում էր, իսկ Աշխէն տիկինը և Խոսրովիդուխտը իրանց
փէշերով հողը դուրս էին բերում։ Սորանով չբաւակա-
նանալով, Տրդատ եօթն օրուան ճանապարհ գնաց, Մասիսի
վրայ բարձրացաւ և այնտեղից ութ խոշոր քարեր բե-
րաւ Հռիփսիմէի վկայարանի շէնքում կանգնելու։ Վկա-
յարանները շինուելուց և կոյսերի մարմինները նոցա մէջ
ամփոփուելուց յետոյ, հասարակաց մաղթանքներ կատա-
րուեցան, և այնտեղ ուր Միածին Որդու շնորհով Թա-
գաւորը և ուրիշ հիւանդները բժշկուեցան, առաջին եկե-
ղեցու հիմը դրուեցաւ (Էջմիածնի մայր եկեղեցին)։

Այնուհետև Տրդատ Ս. Գրիգորի հետ սկսաւ շրջել
Հայաստանի ամեն կողմերը, ուր նոր կրօնի համբաւը
նոցանից առաջ հասել էր։ Կործանուեցան և այրուեցան
աստուածների մեհեանները, բագիններն ու արձանները.
մեհեանների տեղերը եկեղեցիների շինութեան համար ո-
րոշուեցան, և նոցա գանձերից աղքատներին մասն ու
բաժին հանուեցաւ։ Թագաւորը՝ որ երբեմն այնպէս նա-
խանձախնդիր էր հեթանոսական կրօնի պահպանութեանը,
այժմ ամենին յորդորում ու ստիպում էր հրաժարուիլ
հին կրօնի սնոտի պաշտամունքից և Քրիստոսի քաղցր
լուծն ընդունել։

Վաղարշապատ վերադառնալով, Թագաւորը հասա-
րակաց հաւանութեամբ որոշեց Ս. Գրիգորին Հայոց աշ-
խարհի ընդհանուր հովիւ կարգել։ Տասնևվեց երևելի

նախարարների յանձնուեցաւ Լուսաւորչին արքունի հրավարտակով տանել Կեսարիա, ուր Ղևոնդ մետրապօլիտը իւր ձեռքի տակ եղած եպիսկոպոսներով ձեռնադրեց նորան եպիսկոպոսապետ Հայոց (302)։ Այնտեղից Յովհաննէս Մկրտչի և Աթանագինէս վկայի մասունքներն առած՝ վերադարձաւ Հայաստան, հետը բերելով բազմաթիւ ասորի և յոյն կրօնաւորներ, որոնք պիտի օգնէին նորան Աւետարանի քարոզութեան մէջ։ Տարօն հասնելով, Ս. Գրիգոր կամեցաւ Դեմետր և Գիսանէ հնդիկ աստուածութիւնների մեհեանը կործանել։ Այս լսելով, Արձան քրմապետը և իւր որդին Դեմետր զինաւորուած քրմերով դարան մտան մի բլրի վրայ, և երբ Լուսաւորիչը մի քանի իշխանների հետ նոյն տեղին մօտեցան, քրմերը յանկարծ ընկան նոցա վրայ և բլրից ցած քշեցին։ Այս անակնունելի դիպուածի վրայ նախարարները Ս. Գրիգորին և նորա հետ եղած քահանաներին Ողկան բերդը փախցրին։ Բայց խառնուրդի մէջ Արձանը սպանուել էր Անգեղ տան իշխանի ձեռքով։ Նորա տեղ անցաւ Դեմետր։ Երկրորդ կռուի մէջ, ուր քրմերը 7000-ից աւելի զօրք ունէին, քրիստոնեաների կողմը յաղթող հանդիսացաւ և Դեմետր սպանուեցաւ։ Տարօնի պատերազմը միակ դէպքն էր, ուր հեթանոս Հայերը զէնք առին իրանց կրօնի պաշտպանութեան համար։ Ս. Գրիգորը կուռքերը և մեհեանները կործանեց, նոցա աւերակների վրայ եկեղեցիներ շինեց և Ս. Յովհաննէսի մասունքների մի մասը այնտեղ դնելով՝ ճանապարհը շարունակեց։

Սուրբ Գրիգորի վերադառնալու լուրը հասածին պէս՝ Տրդատ թագաւորը իւր ընտանիքով և զօրքով գնաց Բագրևանդի Բագաւան քաղաքը նորան գիմաւորելու։

Այստեղ մի ամիս ժողովրդին պատրաստելուց յետոյ, Լուսաւորիչ հետը բերած քահանաների գործակցութեամբ մկրտեց ու հաղորդեց Թագաւորին իւր ընտանիքով, զօրքին և բոլոր բազմութեանը. եօթն օրուան մէջ չորս միլիոնից աւելի մարդ մկրտուեցաւ։

Սորանից յետոյ անխոնջ մշակը սկսաւ շրջել Հայաստանի հեռաւոր գաւառներն ու քաղաքները, անդադար քարոզելով ու մկրտելով և մեհեանների տեղ եկեղեցիներ ու վանքեր հաստատելով։ Գործի յարատեւութեան համար՝ արքունի հրամանով քրիստոնէական դպրոցներ հիմնուեցան, յոյն և ասորի դպրութեամբ, որոնց մէջ յառաջադէմ ուսանողները քահանայ ու եպիսկոպոս ձեռնադրուեցան։ Այսպիսով գործից փոքր ինչ թեթեւանալով, սուրբը ժամանակ առ ժամանակ առանձնանում էր, և որպէս զի ժողովուրդը առանց հովուապետի չմնայ, Թագաւորի առաջարկութեամբ Նորա որդիքը Կեսարիայից բերուեցան և կրտսերը Արիստակէս հօրից եպիսկոպոս ձեռնադրուելով՝ Նորան տեղապահ կարգուեցաւ (317)։

## 27.

Տրդատի և Լուսաւորչի ճանապարհորդութիւնը Հռոմ (319).—Սղուկի ապստամբութիւնը և Հիւսիսականաց արշաւանքը.—Մամիկոնեան նախարարութեան ծագումը.—Պատերազմ Պարսից հետ.—Արիստակէս Նիկիոյ ժողովում (325).—Ս. Գրիգորի մահը (332).—Տրդատի մահը (342)։

Քրիստոնէութեան հաստատութեամբ Հայոց բարեկամութիւնը առժամանակ ընդհատուել էր իրանց արեւմտեան դաշնակիցների հետ։ Եւսեբիոս Կեսարացու վկայութեամբ՝ Հայք մեծ պատերազմ ունեցան Մաքսիմինոս կայսեր հետ, որ կամենում էր բռնութեամբ հեթանո-

սուԹիւնը վերահաստատել նոցա մէջ (311)։ Այսպիսով քննքրատինքեան լուծուել էր այն դաշը՝ որ Հռոմայեցիք ունէին Հայոց Թագաւորութեան հետ, երբ յանկարծ նոր կրօնը Կոստանդիանոսի հետ կայսերական գահի վրայ բազմեցաւ։ Տրդատ օգուտ քաղելով այս յաջող հանգամանքից, մտածեց անձամբ գնալ Հռոմ և բարեկամութեան դաշը նորոգել քրիստոնեայ կայսեր հետ։ Այս փառաւոր ուղևորութեան մասնակից եղան Ս. Գրիգորը, Արիստակէս, շատ նախարարներ և բազմաԹիւ զօրքեր, որոնց Թիւը Ագաթանգեղոսի ասելով՝ 70,000-ի էր հասնում։ Կոստանդիանոս և Սեղբեստրոս պապը սիրալիր ընդունելուԹիւն ցոյց տուին Տրդատին և Ս. Գրիգորին. երկու Թագաւորների մէջ քաղաքական դաշը կապուեցաւ, Լուսաւորիչ էլ իւր կրած չարչարանքների համար մեծ պատիւներ գտաւ եկեղեցական դասի կողմից։

Պարսից Թագաւորը Տրդատի բացակայուԹիւնը յարմար առիԹ համարելով, պատրաստուեցաւ Հայաստանի վրայ յարձակելու. միևնոյն ժամանակ Սլկունեաց Սղուկ իշխանին յորդորեց ապստամբել իւր Թագաւորից և սկիւԹական ցեղերին դրդեց հիւսիսային կողմից արշաւել Հայոց երկրի վրայ։ Սղուկ սպանելով ծերունի Օտա իշխանին, որ իւր փեսան էր, գրաւեց նորա Ողկան բերդը Տարօն գաւառում և Սիմ լերան բնակիչներին իւր կողմը ձգելով՝ ասպատակում էր երկիրը։ Հասաւ Տրդատ, ժողովեց իւր զօրքը և որովհետև ինքը կամենում էր աւելի վտանգաւոր Թշնամիների առաջը կտրել, խոստացաւ Սղուկի երկիրները նորան տալ, ով որ ապստամբին կը բռնէ։ Գարգարացոց դաշտում Տրդատ ճակատեցաւ Հիւսիսականաց դէմ և իւր սովորական քաջու-

յթեամբը զարկաւ կոտրեց թշնամիների բանակը, որոնց առաջնորդում էր Բասլաց Գեդրեհոն թագաւորը։ Գեդրեհոն իւր զօրքի յաղթուիլը տեսնելով, ձգեց իւր կաշուապատ շուանը, որ Հայոց թագաւորին բռնէ. Տրդատ մէկ հարուածով երկու կտոր արաւ Բասլաց թագաւորին և նորա խառնիճաղանճ զօրքը մինչև Հոնաց աշխարհը հալածեց։

Մինչ յաղթութեամբ և պատանդներով յետ էր դառնում իւր երկիրը, լուր առաւ թէ Տարօնի ապստամբութիւնը զսպուեցաւ։ Մամգուն արքայազն իշխանը, որ Ճենաց թագաւորի վրէժխնդրութիւնից նախ Պարսից և ապա Հայոց աշխարհն էր ապաւինել, Տրդատի խոստումը լսելով՝ իբր նորանից ապստամբած դիմեց Սլուկի մօտ և նորա հաւատարմութիւնը գրաւելով որսի ժամանակ սպանեց նորան, բերդին տիրեց և բոլոր ցեղը կոտորեց, որոնցից միայն երկու հոգի կարողացան ազատուիլ։ Թագաւորը իւր խոստման համեմատ Տարօն գաւառը Մամգունին պարգևեց և նորա ցեղը նախարարութեան պատուին արժանացրեց՝ իւր անունով Մամգունեան կամ Մամիկոնեան անուանելով։

Այս յաջողութիւններից յետոյ Տրդատին մնում էր Պարսից հետ զարնուիլ. բայց որովհետև սկիւթական արշաւանքի մէջ շատ մարդ էր կորցրել, խոհեմութիւն համարեց Հռոմայեցոց գալստեանը սպասել։ Իւր զօրքը կարգի դրեց և որովհետև յիշեալ պատերազմում ուրիշ իշխանների հետ Արտաւազդ Մանդակունի սպարապետն էլ էր ընկել, զօրավարութիւնը հին սովորութեամբ չորսի բաժանեց. հիւսիսային գունդը յանձնեց Վրաց Միհրան թագաւորին, որ միանգամայն Գուգարաց բդեշխ էր, իսկ

միւս գնդերի վրայ կարգեց Վահան Ամատունուն, Մանաճիհր Ռշտունուն և Բագարատ Բագրատունուն։ Երբ Հռոմայեցիք Ասորեստանի վրայ յարձակեցան, Տրդատ դիմեց Պարսից երկրի հիւսիսային կողմերը և Ատրպատականի մեծ մասը գրաւեց։ Շապուհ ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել Կոստանդիանոսից, և Տրդատ Դավրէժում պահապան զօրք թողնելով՝ դարձաւ Հայաստան։

Տրդատ, որ պատերազմի դաշտում քաջ զօրապետ էր, խաղաղութեան ժամանակ իբրև երկրորդ Լուսաւորիչ գործակից և օգնական էր լինում բուն Լուսաւորչին իւր առաքելական գործի մէջ։ Երբ մի քանի տարուց յետոյ Կոստանդիանոսից հրաւէր եկաւ Հայոց թագաւորին, որ Հայրապետի հետ միասին Նիկիայի ժողովը գնան, նոքա յանձն չառին երկրից հեռանալ, այլ Արիստակէսին ուղարկեցին այդ առաջին տիեզերական ժողովը, որտեղից նա բերեց հաւատոյ Հանգանակը (325)։

Արիստակէսի դարձից յետոյ Ս. Գրիգոր իւր գործը կատարած համարելով, հայրապետական թեռը բոլորովին իւր որդուն թողեց և ինքը քաշուեցաւ իւր սովորական ճգնարանը՝ Սեպուհ լերան Մանեայ այրում, որտեղից այլ ևս ոչ ոքին չերևեցաւ մինչև իւր մահը (322)։ Հովիւները նորա մարմինը գտան և նոյն այրի մէջ թաղեցին։ Հայոց եկեղեցին ամենամեծ սրբերի կարգը դասեց նորան և սահմանեց նորա յիշատակը մի քանի անգամ տօնել տարուան մէջ։

Քանի որ Ս. Գրիգորը ողջ էր, ամենքը ակնածում էին նորանից և նորա սահմանած կարգերը պահպանում. նորա մահից յետոյ շատերը, մանաւանդ նախարարների միջից, նոյն յօժարութեամբ չէին լսում Ս. Արիստակէսի

խրատներին, մինչև նոցանից մէկը՝ Չորրորդ Հայոց Արքեղայոս իշխանը սպանեց հայրապետին Ծոփաց աշխարհում (340)։ Նոյնպէս և Տրդատ շարունակում էր Թէ խօսքով և թէ գործով յորդորել ամենին, որ քրիստոնէավայել կեանք վարեն. և երբ տեսաւ որ իւր խօսքը առաջուան պէս չեն յարգում, թագաւորութիւնը թողեց և քաշուեցաւ Մանեայ այրը։ Նախարարները գնացին խնդրեցին նորան, որ յետ գայ և իշխանութիւնը կրկին ձեռք առնէ. բայց նա յանձն չառաւ, և ապերախտ իշխանները ծածուկ թունաւորեցին նորան իւր թագաւորութեան 56-րդ տարում (342)։ Այսպիսի ցաւալի վախճան ունեցաւ Տրդատ, որ Հայաստանի ամենափառաւոր և ամենալաւ թագաւորներից մէկն էլաւ։ Նորա մարմինը դրուեցաւ արծաթապատ դագաղի մէջ, որին չորս ոսկէսանձ ջորիներ էին լծուած։ Դագաղը շրջապատել էին Թագաւորի ընտանիքը, ազգականները ու բարեկամները, և երկու կարգ սպառազինուած զինուորներ. առաջից գնում էր եկեղեցական դասը երգելով և խունկ ծխելով, իսկ ետևից փող ու ռաւիղ հնչող երաժիշտներ և ողբասաց կանայք, և ամենից վերջը ժողովրդի անթիւ բազմութիւնը։ Այսպիսի հանդիսով տարուեցաւ և կճեայ տապանի մէջ թաղուեցաւ Թորդան գիւղում, ուր մի քանի տարի յետոյ ամփոփուեցաւ և Լուսաւորչի մարմինը։

## Բ. ՏՐԴԱՏԻ ԱՆՄԻՋԱԿԱՆ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ

### 28.

*Հայաստանի քաղաքական հանգամանքը Տրդատից յետոյ.— Տրդատի յաջորդների թուլութիւնը. Եկեղեցական դասի նշանակութիւնը.—Ներքին խռովութիւններ և ապստամբութիւններ. –Խոսրով Բ. (343). Ասպետների նուաճումը.—Հիւսիսականաց արշաւանքը և պարտութիւնը.—Պատերազմ Պարսից հետ. Խոսրովի մահը (352).—Մռուղի ճակատամարտը.— Տիրան Բ (353). Նորա յարաբերութիւնը երկու դրացի պետութիւնների հետ.—Տիրանի գահընկեցութիւնը (364)։*

Քանի որ Պարթևները թագաւորում էին Պարսից երկրում և Հայերը հեթանոս էին, Հայաստանը, հանգամանքներին նայելով, երբեմն Հռոմայեցոց դաշնակից էր լինում. բայց աւելի առաջինների կողմն էր հակուած, որովհետև երկու երկրների վրայ միևնոյն պարթևական-արշակունի հարստութիւններն էին իշխում և երկու ազգերի մէջ նոյն քաղաքական և ընկերական կարգերը կային։ Իսկ երբ Պարթևների գահի վրայ Սասանեանք նստան Պարսկաստանում և հեթանոսութեան փլատակների վրայ քրիստոնէութիւնը բարձրացաւ Հայոց աշխարհում, անհաշտ թշնամութիւն ընկաւ նախ երկու արքունիքների և ապա երկու ազգերի մէջ, որ քանի գնաց սաստկացաւ և տևեց մինչև Արաբացոց պատմական ասպարէզը երևելը։ Քրիստոնեայ Արշակունիք Սասանեանց վրայ նայում էին ոչ միայն իբրև իրանց ազգակիցների գահը յափշտակողների, այլ և իբրև այլակրօնների ու քրիստոնէութեան թշնամիների վրայ. մինչդեռ սորա հակառակ ամեն բան հակում էր նոցա այժմ դէ-

ն Հռոմէական պետութիւնը, և՛ կրօնի նոյնութիւնը, յունական կրթութիւնը, որ Լուսաւորչի յաջորդների խառնութեամբ սկսաւ մուտ գտնել Հայոց մէջ, և նոյն կ յաճախակի խնամութիւնները, որ կայսրները անում ն Հայոց թագաւորների հետ՝ Պարսիկներից հեռա սհելու դիտաւորութեամբ։ Բայց և այնպէս պարսկա-ին բարքն ու սովորութիւնները այնպէս խոր արմատ ն դրել Հայոց ներքին կեանքի մէջ, որ անկարելի էր ցա բոլորովին բաժանուիլ Արևելքից և վերջնականապէս անալ Արևմուտքի հետ։ Ահա այս պատճառով տեսնում ք որ Տրդատի յաջորդները յաճախ տատանում են ի-նոց ընտրութեան մէջ այն մեծ կռուի ժամանակ, որ սասանեան թագաւորները և Բիւզանդիայի կայսրները մեանց պէմ տալիս են, մինչև որ վերջապէս երկու ոխները հաշտութեան ուրիշ ելք չգտնելով՝ Հայաս-տնը միմեանց մէջ բաժանում և Հայոց ազատութիւնը ջում են։

Այս դժբաղդութեան առաջը կարող էր առնել մի-ն Հայոց թագաւորների արդար և իմաստուն ընթացքը քին կառավարութեան մէջ և աչալրջութիւնն ու խո-մութիւնը արտաքին քաղաքականութեան մէջ։ Դժբաղ-դաբար Տրդատի յաջորդները զուրկ էին այս բարեմաս-ւթիւններից. նոքա մեծ մասամբ տէրութեան գործե-վ զբաղուելու տեղ՝ լոկ կերուխումի ու զուարճութիւն-րի ետևից էին լինում, Արևելցոց յատուկ մոլորութիւն-րի հետ խառնելով և Հռոմի սասկալի վարքն ու բարքը։ անց կեանքը որսերի ու կանանոցների մէջ անցկաց-լով, նոքա ոչ երկրի բարեկարգութեանն էին խնամք տնում, ոչ էլ անձամբ մասնակից էին լինում այն պա-

տերազմներին, որոնց ասպարէզն էր Հայաստանը։ Հէնց այս պատճառով արքունի հրամանները մեծ ներգործութիւն չունէին փառամոլ նախարարների վրայ, որոնք մեծամեծ կալուածներով ու պատիւներով ճոխացած՝ մեծ ակնկալութիւն չունէին թոյլ ու մեղկ թագաւորներից և ձգտում էին ինքնագլուխ լինելու։ Ապաւինելով իրանց բերդերում, նոքա յաճախ միմեանց հետ կռւում էին, երբեմն էլ իրարու հետ միաբանում թագաւորի դէմ, և մինչև անգամ աշկարայ Պարսից կամ Յունաց կողմն էին անցնում և նոցանից զանազան խոստումներ էին ընդունում։

Կենտրոնական իշխանութեան այս թուլութեան պատճառով՝ իւրաքանչիւր թագաւորի մահուան ժամանակ գահին վտանգ էր սպառնում, և եթէ Արշակունեաց թագաւորութիւնը Տրդատից յետոյ մօտ մի դար կանգուն մնաց, այդ տալու է դրսից երկու դրացի պետութիւնների ոսոխութեանը, որոնցից իւրաքանչիւրը աչք ունէր Հայաստանի վրայ, իսկ ներսից՝ եկեղեցու պաշտօնեաներին, որոնք յիշեալ հանգամանքից օգուտ քաղելով՝ հայրենասէր իշխանների աջակցութեամբ աշխատում էին երկրի զօրութիւնները խարխալեալ գահի շուրջը կենտրոնացնել։ Սակայն անարժան թագաւորները չիմացան գնահատել իրանց երախտաւորների ծառայութիւնները, որոնք իրանց բարերարութիւնների փոխարէն անարգվում և սպանվում էին։

Տրդատի եղերական մահից յետոյ սանձարձակ նախարարները իրանց կրքերին կատարեալ ազատութիւն տուին. նոքա միմեանց երկրները ոտնակոխ անելով՝ կատաղաբար պատերազմում էին միմեանց դէմ՝ մեծ տառապանք պատ-

ճառելով ժողովրդին։ Այս կռիւների ժամանակ Բզնունեաց, Մանաւազեանց և Որդունեաց հին նախարարական տոհմերը իսպառ ջնջուեցան։ Բայց այս արիւնհեղութիւնից աւելի վտանգաւոր էին երկրի հիւսիսային և հարաւային մասերում գրգռուած ապստամբութիւնները, որոնց մէջ խառն էր և Պարսից Թագաւորի մատը։ Սանատրուկ արշակունի իշխանը, որ Տրդատից իբրև վերակացու ուղարկուած էր Աղուանից երկիրը, ինքնագլուխ Թագաւորեց Փայտակարանում, և Վրթանէսի որդուն՝ Գրիգորիս կաթողիկոսին ձիու պոչից կապելով նահատակեց Վատնեան դաշտում։ Նորա օրինակին հետևելով, Բակուր Աղձնեաց բդեշխը ապստամբեցաւ և կամեցաւ ինքնագլուխ իշխել իւր երկրների վրայ։

Այս անկարգութիւնները տեսնելով, մի քանի հայրենասէր իշխաններ Վրթանէս կաթողիկոսի հետ խորհուրդ արին, և Մար ու Գադ Ծոփաց և Հաշտենից նախարարների դեսպանութեամբ ուղարկեցին Կոստանդ կայսեր մօտ, խնդրելով որ վերջին դաշնադրութեան համեմատ՝ օգնական զօրք ուղարկէ և Տրդատի որդուն Խոսրովին Թագաւորեցնէ։ Անտիոքոս, կայսերական տան վերակացուն, լէգէոններով եկաւ Հայաստան, հետը Թագաւորական Թագ և ծիրանի բերելով։ Խոսրով Բ նստաւ իւր հօր գահը (343), և անմիջապէս Տրդատի կարգած չորս զօրավարները իրանց պաշտօնի մէջ հաստատուեցան։ Մանաճիհր Ռշտունին ուղարկուեցաւ Ասորեստանի և Միջագետքի կողմերը, Վահան Ամատունին գնաց Ատրպատականի սահմանները պահպանելու, իսկ ինքը Անտիոքոս Բագարատ ասպետի և Միհրան Բդեշխի հետ դիմեց Սանատրուկի վրայ, Փայտակարանից Պարսկաս-

տան քշեց նորան և Հայաստանի հարկերը ժողովելով՝ վերադարձաւ կայսեր մօտ։

Միևնոյն ժամանակ հարաւում Մանաճիհր Աղձնեաց ապստամբութիւնը զսպեց և Պարսից օգնական զօրքը հալածեց. Բակուրը սպանուեցաւ և նորա Հեշա որդին թագաւորին ուղարկուեցաւ։ Բայց Ռշտունեաց իշխանը անզգուշութեամբ վարուեցաւ Աղձնեաց և Միջագետքի բնակիչների հետ, յանցաւորների հետ շատ անմեղ մարդիկ կոտորելով ու գերելով։ Զուր Ս. Յակոբ Մծբնայ հայրապետը յորդորեց նորան որ կալանաւորուած անմեղներին արձակէ. երբ հայրապետը թագաւորին բողոքեց, Մանաճիհր զայրացած՝ նորա ութ սարկաւագներին, որ գերեալների մէջ էին, հրամայեց ծովը ձգել, և սուրբը անիծեց նորա գաւառը։

Երբ այս կերպով երկիրը խաղաղացաւ, Խոսրով սկսեց զբօսանքի ու օրսորդութեան ետևից լինել. այս նպատակով նա տնկել տուեց Ազատ գետի ափին մի արուեստական անտառ, որ իւր անունով Խոսրովակերտ կոչուեցաւ. շինեց նոյնպէս Դուին քաղաքը և իւր պալատը այնտեղ փոխադրեց։ Հայոց թագաւորի անհոգութիւնը տեսնելով, Շապուհ Բ մի ուրիշ փորձ փորձեց Հայաստանի խաղաղութիւնը վրդովելու. նորա դրդմամբ հիւսիսային լեռնականներից 20,000 Մազքթաց Սանեսան թագաւորի առաջնորդութեամբ արշաւեցին Հայաստան, Միհրանի զօրքը ջարդեցին, իրան էլ սպանեցին և անարգել եկան Վաղարշապատ քաղաքը պաշարեցին։ Վրայ հասան Բագարատ և Վահան արևմտեան և արևելեան գնդերով, և առանց ժամանակ տալու թշնամիներին արձակ դաշտում նետաձգութեամբ պատերազմելու

բշեցին նոցա մինչև Օշական գիւղի քարքրոտ տեղերը. այստեղ Վահան Ամատունին ընկաւ Մաղքթաց Թագաւորի վրայ, ձիուց վայր ձգեց նորան ու սպանեց. նորա զօրքը յաղթուեցաւ ու փախաւ: Այս միջոցին Թագաւորը Վրթանէս կաթողիկոսի հետ Ծոփաց գաւառի Դարենից բերդում ապաւինած՝ պատերազմի ելքին էին սպասում: Եկան զօրավարները յաղթութեան աւետիսը բերին իրանց տիրոջ, և արդարասէր Բագարատ ասպետը պատմեց նորան Վահան Ամատունու սխրագործութիւնը: Խոսրով պարգևեց Վահանին Օշական գիւղը. իսկ Միհրանի տեղ՝ հիւսիսային գնդի զօրապետ կարգեց Գարջոյլ Խորխոռունուն:

Հիւսիսականաց արշաւանքից յետոյ յայտնի թշնամութիւն ընկաւ Հայոց և Պարսից մէջ: Խոսրով Շապուհի մեքենայութիւններից գրգռուած՝ դադարեցաւ հարկ տալու նորան և Պարսից զօրքը մտաւ Հայաստան: Հայերը դիմաւորեցին նոցա Հեր և Զարևանդ գաւառում, ուր մեծ կոտորած եղաւ և երկու կողմից շատ զօրավարներ ընկան, ի թիւս որոց և Արտաւազդ Մանդակունու որդին Վաչէն, որին յանձնուած էր հայ զօրքի սպարապետութիւնը: Ինքը Խոսրով էլ այնուհետև երկար չապրեցաւ. նորա վերջին գործն եղաւ Վաչէի որդուն՝ պատանի Արտաւազդին պատուաւոր սպարապետութիւնը տալ (352): Այսպիսով Խոսրով թէև հօր քաջութիւնը չունէր, բայց նորա բարեպաշտութիւնից և զգաստասէր բարքից անմասն չեղաւ. իւր աննախանձ բնաւորութեամբ նա գիտաց գնահատել հաւատարիմ իշխանների անձնուիրութիւնը, որոնք Հայաստանը թշնամիներից ազատեցին և իւր գահի նեցուկներն եղան:

Անմիջապէս Վրթանէս կաթողիկոսը նախարարներին խորհրդի գումարեց, և որոշուեցաւ երկրի վերակացութիւնը ժամանակաւորապէս յանձնել Արշաւիր Կամսարականին, մինչև որ Տիրան արքայորդին Կոստանդնուպօլսից վերադառնայ, ուր կաթողիկոսի հետ գնաց Կոստանդ կայսրից Հայաստանի թագն առնելու։ Այս հանգամանքից օգուտ քաղելով, Շապուհ Բ իւր Ներսեհ եղբօրը բազմաթիւ զօրքով ուղարկեց, որ Հայոց նուաճէ և երկիրը գրաւէ։ Արշաւիր Կամսարականը դուրս եկաւ Ներսեհի առաջ և Մռուղ դաշտի վրայ ջարդելով Պարսից՝ քշեց նոցա իրանց երկրի սահմանները։

Տիրան Բ, որ հօր նման թոյլ էր առանց նորա առաքինութիւնները ունենալու, գահը բարձրանալուն պէս (353) Շապուհ Բ-ի հետ հաշտութիւն արաւ, և կրկնակի հարկ տալով Յունաց և Պարսից՝ խաղաղ կեանք էր վարում։ Շապուհ Յունաց հետ պատերազմելու դիտաւորութիւն ունենալով, իւր բարեկամութիւնը հաստատ պահեց Տիրանի հետ. մինչև անգամ երբ հիւսիսային ազգերը իրանց սովորութեամբ արշաւեցին Հայաստան, Հայոց թագաւորին օգնեց նոցա ասպատակութիւնների առաջն առնելու։

Բայց և այնպէս Տիրան չկարողացաւ մինչև վերջը չէզոքութիւն պահպանել երկու տէրութիւնների մէջ։ Կոստանդի յաջորդը Յուլիանոս Ուրացող մեծ զօրութեամբ Պարսից վրայ գալով, Տիրան ստիպուեցաւ օգնել Յունաց Եփրատի կամրջումն անցնելու, և թէպէտ պատերազմ չգնաց, բայց իւր երրորդ որդուն Տրդատին և Տիրիթ թոռանը պատանդ տուեց կայսեր, ինչպէս նաև մի գունդ օգնական զօրք Զօրա Ռշտունեաց նա-

ւարարի առաջնորդութեամբ։ Միևնոյն ժամանակ ինչան պատակութեան՝ կայսեր պատկերը բերեց և Տոփաց աւառի թագաւորական եկեղեցու մէջ կախեց։ Ցուսիկ, րթանէսի որդին ու յաջորդը, որ շատ անգամ թագաւրին յանդիմանել էր իւր անկարգ վարքի համար և ինչև իսկ եկեղեցու դռները նորա առաջ փակել էր, այսեր պատկերը ոտնակոխ արաւ. Տիրան զայրացած՝ ամայեց բրածեծ անել նորան, մինչև որ հայրապետը ոգին աւանդեց։ Երբ Դանիէլ ծերունին քահանան յանդիմանեց նորան իւր անօրէնութեան համար, թագաւորը րան էլ խեղդել տուեց։

Այս անցքերը լսելով և Ուրացող կայսեր համար ատերազմել չկամենալով, Զօրա նախարարը համոզեց ր զօրքին յետ դառնալ Հայաստան։ Նա քաշուեցաւ նորիս գաւառը, ուր Հայր մարդպետը (ներքինապետ) լաւ և խաբէութեամբ հրաւիրեց նորան որ թագաւորի ա երթայ։ Եւ որովհետև զօրքը ցրուել էր, Զօրա ամայ գնաց և Տիրանի հրամանով բոլոր ցեղովը սպաւեցաւ։ Նորա տեղ հարաւային գնդի զօրապետ կարւեցաւ Սաղամուտ Անձտայ իշխանը։

Իսկ Ցուլիանոս իւր յաղթական բանակով Պարսից ղ տեղը ձգելով, Տիզբոնի առաջ չարաչար յաղթուել ու սպանուեցաւ։ Ձապուհ Ցունաց հալածելուց յեյ, Տիրանին բարեկամաբար իւր մօտ հրաւիրեց և րքերի առաջ նախատելով նորան իւր ուխտադրժութեան համար, աչքերը հանեց և ուղարկեց Կուաշ աւանը 64)։

---

## 29.

Արշակ Բ (364). *Նորա յարաբերութիւնը Հռոմայեցոց և Պարսից հետ.—Տիգրանակերտի պաշարումն ու առումը.—Ներսէս Մեծի աքսորը.—Գնէլ. Նորա սպանումը.—Փառանձեմ թագուհի.—Արշակաւանի շինութիւնը. Կամսարականաց կոտորածը.—Արշակի կալանաւորութիւնը.—Փառանձեմի և Արշակի վախճանը* (282)։

*Պարսից թագաւորը իւր վրէժխնդրութիւնը յագեցնելուց յետոյ, Հայոց սիրտը շահելու և միանգամայն իւր ազդեցութիւնը Հայաստանի վրայ զօրացնելու համար, Տիրանի տեղ թագաւորեցրեց նորա որդուն Արշակ Բ-ին* (364)։ *Միևնոյն ժամանակ իւր ապահովութեան համար՝ Վահան Ամատունու տեղ արևելեան գնդի զօրապետ կարգեց Պարսից կուսակից Վաղինակ Սիւնեցուն, և ինքը վերադարձաւ իւր երկիրը հիւսիսային ազգերի արշաւանքի առաջն առնելու համար։ Վաղենտիանոս կայսրը Հայոց երկրի անցքերը իմանալով, դեսպան ուղարկեց Արշակին, յորդորելով որ Պարսից դաշնակցութիւնից յետ կանգնի և իւր յետ միաբանի. բայց Հայոց թագաւորը Յունաց դեսպաններին անպատուութեամբ յետ դարձրեց։ Կայսրը զայրացաւ և Արշակի եղբօր Տրդատին, որ իւր մօտ պատանդ էր, սպանեց, միանգամայն Թէոդոս զօրապետին զօրքով Հայաստան ուղարկեց։ Զարհուրեցաւ Արշակ և Ներսէս Մեծի* (*Յուսիկի թոռան*) *միջնորդութեամբ դիմեց կայսեր հետ հաշտուելու համար։ Վաղենտիանոս զիջաւ և իւր մօտ եղած պատանդներին արձակելով՝ կայսերական տանից Ողիմպիադա անունով օրիորդին Արշակին կնութեան ուղարկեց, որպէս զի այսպի-*

Հայոց թագաւորին Բիւզանդիայի արքունիքի հետ
լէ։

Շապուհ հարկաւ չէր կարող անտարբերութեամբ
ել Հայոց քաղաքականութեան փոփոխութեան վրայ.
ռի և հիւսիսային ազգերի պատերազմը վերջացնելուց
ոյ, սկսաւ Հայաստանի վրայ արշաւելու պատրաս-
թիւն տեսնել։ Արշակ աճապարեց Տիրիթ եպբօրոր-
ւ իւր զինակից Վարդան Մամիկոնեանի հետ Տիզբոն
ւրկել հաշտութիւն խօսելու համար, և Շապուհ ո-
նեան կայսեր հետ պատերազմելու դիտաւորութիւն
ր՝ համաձայնեցաւ, այն պայմանով որ Հայոց թա-
որն էլ իւր զօրքով Յունաց վրայ երթայ։ Արշակ
ծեց ոչ Բիւզանդիայի հետ յայտնի թշնամանալ և ոչ
անեան թագաւորի կամքը չկատարած համարուիլ,
ռի զանազան պատճառներ բերելով՝ անձամբ պատե-
մ չգնաց, այլ միայն մի փոքրիկ օգնական գունդ
ւրկեց Պարսից. և որովհետև Տիրիթն ու Վարդանը
ել էին Շապուհին Հայոց դաշնակցութիւնը հաշտու-
ռն պայման դնելու, սաստիկ նախատեց նոցա։ Վի-
որուած իշխանները Արշակի պալատից հեռացան և
ապարհ ընկան Շապուհի մօտ գնալու. բայց Վասակ՝
ղանի եղբայրը Թագաւորի հրամանով ետևներից հա-
և երկուսին էլ սպանեց։

Այդ միջոցին Շապուհ Հայաստանի հարաւային կող-
անցնելով՝ Յունաց վրայ էր գնում։ Երբ Տիզբոնա-
ոփ մօտ հասաւ, կամեցաւ քաղաքը մտնել, որ իւր
ակի համար պաշար առնէ. բայց Անդովկ Սիւնեաց
անը քաղաքի դռները փակեց Պարսից առաջ։ Շա-
հ ժամանակ չկորցնելու համար իւր ճանապարհը շա-

րունակեց, թողնելով որ դարձին Տիգրանակերտյոց պլատ-ժէ, ինչպէս որ արաւ էլ։ Քաղաքը մեծ ընդդիմութիւ-նից յետոյ առնուեցաւ յոյն գերիների օգնութեամբ. բնա-կիչներից որը կոտորուեցան, որն էլ Պարսկաստան գերի տարուեցան։

Մինչ Պարսկաստանը Հայաստանի մէկ սահմանից աւարով ու գերիներով դուրս էին գալիս, միւսովը մըտ-նում էին Յոյները Թէոդոսի առաջնորդութեամբ, որ գա-լիս էր Արշակի վրայ Պարսից օգնութիւն տալուն հա-մար։ Արշակ դարձեալ Ներսէս Մեծի միջնորդութեանը դիմեց, որ Թէոդոսին համոզեց և Արշակի արդարացու-ցիչ նամակովը և շատ ընծաներով գնաց կայսեր մօտ։ Վաղէս կայսրը ոչ Արշակի թուղթը կարդաց, ոչ էլ Ներ-սէսին կամեցաւ տեսնել, այլ հրամայեց մի անմարդա-բնակ կղզի աքսորել նորան։ Այսպիսով Արշակ իւր երկ-դիմի քաղաքականութեամբ չկարողացաւ ոչ Տիզբոնի և ոչ Բիւզանդիոնի բարեկամութիւնը գրաւել. ընդհակա-ռակն՝ երկու կողմի թշնամութիւնը գրգռեց իւր դէմ և եթէ երկու անգամ կայսեր բարկութիւնից ազատուե-ցաւ, Պարսից թագաւորը նոյն դժբաղդութիւնը պիտի բերէր նորա գլխին, որի փորձը արդէն առել էր հայրը Տիրան։

Հայոց թագաւորի փրկութեան միակ յոյսը երկրի ներքին անդորրութիւնն էր և իշխանների սէրն ու միա-բան գործակցութիւնը. բայց դժբաղդաբար թէ նախա-րարների և թէ իւր ազգականների հետ ըժտութեան մէջ էր Արշակ։ Ներսէս մեծի խնդրանօք Բիւզանդիայից արձակուած պատանդներից մէկը, Գնէլ (Տրդատի որդին) հիւպատոսութեան պատուով ու գանձերով ճոխացած՝

բաղարձել էր Հայաստան իր նախանձոտ հօրեղբօր-
դու Տիրիթի հետ։ Գնէլ բնակեցաւ Կուաշ աւանում
կուրացած պապի մօտ, որ Տրդատի անմեղ մահուան
այ վշտացած՝ իր բոլոր կալուածները թոռանը պար-
եց։ Շուտով Գնէլ ամուսնացաւ Սիւնեաց Անդովկ նա-
րարի դստեր՝ գեղեցիկ ու հնարագէտ Փառանձեմի
ո և թագաւորավայել հարսանիք արաւ. և նախարար-
ը, որոնց Գնէլ իր բարեմասնութիւններով և առա-
ձեռնութեամբ սիրելի էր եղել, իրանց որդոցը երի-
սարդ իշխանի պալատը ուղարկեցին։ Այս բանից ա-
թ առնելով, Տիրիթ Վարդան Մամիկոնեանի հետ միա-
նած՝ Արշակի սիրտը կասկած ձգեցին, որ իբրև թէ
էլ մտածում է նորան սպանել և թագաւորութիւնը
իշտակել։ Թագաւորի հրամանով Գնէլ նախարարների
ոց արձակեց և ինքը Այրարատից քաշուեցաւ իր
րենի ժառանգութիւնը՝ Ձահապիվան։ Տիրան իր
ռանը եղած անիրաւութեան վրայ նեղացած՝ սաս-
կ յանդիմանութիւն ուղարկեց Արշակին, և սա անգթա-
ր խեղդել տուեց իր հօրը։ Ապա Գնէլի փարթամ
ւնքի վրայ նախանձելով և նորա կնոջ վրայ աչք ու-
ալով, միտքը դրեց սպանել նորան, և մի անգամ
չ եղբօրորդու մօտ հիւր էր գնացած՝ Վարդան Մա-
ոնեանը որսի ժամանակ թագաւորի հրամանով սպա-
Գնէլին իբրև սխալմամբ։ Արշակ իր չարագործու-
ւնը ծածկել ուզելով, սուգ արաւ Գնէլի վրայ և նո-
մարմինը մեծ հանդէսով թաղել տուեց. բայց յետոյ
ը բացուեցաւ, երբ թագաւորը նորա Փառանձեմ կնոջ
ն հարճ առաւ։ Այս փառասէր կինը իր անգթու-
ամբ Արշակից պակաս չեղաւ. կամենալով Ողիմպիա-

գայի տեղը բռնել, Մրջիւնիկ անունով քահանայի ձեռքով Թունաւորեց Նարան հաղորդութեան ժամանակ. Նոյնպէս Վաղինակ Սիւնեաց իշխանին սպանել տուեց և նորա տեղը իւր Անդովկ հօրը կարգել տուեց։

Քիչ յետոյ Արշակի նախարարների հետ էլ Թշնամութեամբ ընկաւ։ Այս Թշնամութեան պատճառն եղաւ Արշակաւան քաղաքը, որ Թագաւորը մտածեց շինել Մասիսի ստորոտում. և որպէս զի շուտով բազմամարդանայ, հրաման հանեց որ այնտեղ ապաստանող յանցաւորները դատաստանից ազատ մնան։ Կարճ միջոցում Արշակաւանը լցուեցաւ ամեն տեսակ չարագործներով, որոնք նախարարների երկրներից փախել ապաւինել էին այնտեղ։ Նախարարները բողոքեցին, և երբ տեսան որ Թագաւորը չէ լսում, դիմեցին Պարսից օգնութեանը, որոնք այդ ժամանակ Յունաց արշաւանքից վերադարձած՝ Տիգրանակերտի պաշարմամբն էին զբաղուած։ Շապուհ մի գունդ օգնական զօրք ուղարկեց, որոնք Անի ամրոցն առին, Թագաւորական գանձերը կողոպտեցին և մինչև Արշակունի Թագաւորների ոսկորները գերեզմանից հանեցին, որ հետները Պարսկաստան տանեն. բայց նախարարները ձեռքերից առին Աղցք աւանումը Թաղեցին։ Յետոյ հայ իշխանները իրանց զօրքով ընկան Արշակաւանի վրայ, բնակիչներին անխնայ կոտորեցին և քաղաքը կործանեցին։ Հասաւ Ներսէս Կաթողիկոսը և նոցա ձեռքից ազատեց կաթնակեր մանուկներին, որոնց նախարարները իբրև գերիներ իրանց մէջ բաժանել էին։ Նախարարների արարմունքից նեղացած՝ Արշակ, որ Պարսից հալածանքից փախել էր Վրաստան, այժմ իւր սակաւաթիւ կուսակիցներով և Վրացի գնդով եկաւ հայ իշ-

ններքի վրայ, որոնք Ներսեհ Կամսարականի առաջ-
պութեամբ պատերազմի բռնուեցան Թագաւորի հետ։
ժամանակ կաթողիկոսը, որ Գնէլի սպանութիւնից
յոյ արքունիքից հեռացել էր, շատերի խնդիրքով մէջ
աւ և Թագաւորքին նախարարների հետ հաշտեցնելով՝
գամիջեան կռուին վերջ տուեց. միայն Մերուժան
Արծրունին և Վահան Մամիկոնեանը չկամեցան հաշ-
ւել, և գնացին Պարսից ծառայութեան մէջ մտան։

Սակայն Արշակ նախարարների դէմ ոխ էր պահել,
ներոջէսի աքսորելուց յետոյ իւր խօսքը դրժելով՝ շա-
րից վրէժ առաւ, և առաւելապէս Կամսարականներից,
նք բոլոր ցեղով կոտորուեցան, մարմինները գազան-
ին կերակուր ձգուեցան և կալուածները արքունիք
աւուեցան. միայն Սպանդարատ (Ներսեհի եղբօրոր-
ն) իւր տնով ազատուեցաւ և փախաւ Յունաստան։
ւղացի սայլորդները, որոնց հրամայուած էր Կամսա-
կանների գանձերը Երուանդաշատից Արմաւիր կրել,
նապարհին իրանց տէրերի ոսկորները տեսնելով՝ ժո-
լեցին ու թաղեցին, և թագաւորը հրամայեց կախել
յա։

Այսպիսով Արշակի թագաւորութեան վերջին տարի-
ում նախարարների սիրտը կտրուել էր թագաւորից,
նոքա միմեանց ետևից դիմում էին Պարսից արքու-
ը, ուր մեծամեծ պատիւներ գտնելով վերադառնում
ն իրանց երկիրը։ Վերջապէս Ալանոզան պարթև իշ-
ւնը զօրքով ուղարկուեցաւ Հայոց թագաւորին բռնե-
։ Արշակ իրաններից անօգնական մնացած՝ փորձեց
րսից զօրավարի սիրտը զանազան խոստումներով գրա-
ւ, բայց բոլորը զուր եղաւ։ Ալանոզան թոյլ չտուեց

Նորան Յունաց երկիրը փախչելու, և Արշակ անճարացած՝ անձնատուր եղաւ և տարուեցաւ Շապուհի մօտ, ուր պատուով պահուեցաւ, մինչև որ Փառանձեմ և բոլոր նախարարների կանայք Պարսից դուռը բերուէին։ Բայց նախարարները Շապուհի դիտաւորութիւնը հասկանալով, զղջացան իրանց արածի վրայ, ընկան հալածեցին Հայաստան եկած պարսիկ զօրքը և ընտանիքներն առած Յունաստան փախան։ Իսկ Փառանձեմ թագաւորական գանձերն առնելով՝ գնաց ամրացաւ Արտագերս բերդում, սպասելով որ որդին Պապ Բիւզանդիայից շուտով օգնութիւն կը հանի։

Այս լսելով, Շապուհ սաստիկ բարկացաւ, հրամայեց Արշակին շղթայակապ անել և Խուժաստանի Անյուշ բերդը տանել, և Մերուժան Արծրունուն և Վահան Մամիկոնեանին զօրքով Հայաստան ուղարկեց։ Արտագերսը պաշարուեցաւ և առնուեցաւ. թագուհին գերի տարուեցաւ Ասորեստան, և այնտեղ ցցի հանուեցաւ։ Արշակ Անյուշ բերդի մէջ այս թշուառութիւնները լսելով, յուսահատութիւնից՝ ինքն իրան սպանեց (382)։ Նորանից առաջ մորթազերծ մահով սպանուել էր անվեհեր Վասակ Մամիկոնեան սպարապետը։

---

## 30.

*Մերուժան Արծրունու գործերը.—Պապ (382). Ձիրաւի ճակատամարտը.—Ներսէս Մեծի մահը (383). Պապի ապստամբութիւնը Յոյներից և գլխատումը (388),—Վարազդատի չորսամեայ թագաւորութիւնը (391—394).*

Արշակ Բ-ի գերութիւնից յետոյ Հայոց երկրում կրկնուեցան Տրդատի և Խոսրով Բ-ի մահից յետոյ պատահած անցքերը։ Շապուհ միտքը դրեց Հայոց թագաւորութիւնը իսպառ վերացնել և այդ երկիրը Պարսկաստանի հետ միացնել։ Նա յոյս ունէր այս մտադրութիւնը աջողութեամբ գլուխ տանել, որովհետև նախարարների մեծ մասը, ինչպէս և կաթողիկոսը, հայրենիքից դուրս էին և երկիրը բոլորովին անպաշտպան էր մնացել։ Իւր Որմզդուխտ քրոջը Մերուժան Արծրունուն կնութեան տալով, Շապուհ մեծ պատրաստութեամբ Հայաստան ուղարկեց նորան, խոստանալով որ եթէ Հայոց նուաճէ և Պարսից կրօնին դարձնէ, Հայաստանի թագաւորութիւնը նորան կը տայ։ Մերուժան եկաւ և նորա առաջին գործն եղաւ արժանաւոր եկեղեցականներին զանազան պատճառներով կալանաւորել և Պարսկաստան ուղարկել։ Յետոյ, Հայոց և Յունաց եղած հաղորդակցութիւնը կտրելու մտքով, ամեն տեղ գտած յոյն գրքերը այրեց և յոյն լեզուի ուսումը խստիւ արգելեց։ Դարձեալ, րուած նախարարներին երկիւղ ազդելու և իւր կողմը դարձնելու դիտաւորութեամբ, նոցանից շատերի Հայաստան մնացած կանանցը բռնեց ու բերդերի մէջ փակեց։

Հայաստանի թշուառ վիճակը իմանալով, Ներսէս Մեծը, որ աքսորից նոր էր վերադարձել և Բիւզանդիոնում էր գտնվում, միջնորդեց Թէոդոս Ա կայսեր առաջ,

որ գոնէ արևելեան քրիստոնէութեան պաշտպանութեան համար թագաւորեցնէ Պապին Հայոց վրայ և Հայաստանը Պարսկից ձեռքից ազատէ։ Կայսրը համաձայնեցաւ և Տերենտիանոս զօրապետին լեգէոններ յանձնելով Պապի հետ ուղարկեց Հայաստան (382)։ Նորապսակ թագաւորի հետ վերադարձան նրանց հայրենիքը կաթողիկոսը և պանդուխտ նախարարները։ Մերուժան Յունաց և Հայոց միաբան զօրութեան առաջ տեղի տուաւ և փախաւ Պարսկաստան, բերդապահներին նախապէս պատուէր ուղարկելով, որ նախարարների կանանց բերդերի պարսպներից կախեն։

Շապուհ չվհատեցաւ, այլ հպատակ ազգերից զօրք ժողովելով՝ Մերուժանի ձեռքով ուղարկեց Հայաստան։ Միւս կողմից և կայսրը Տերենտիանոսի թելադրութեամբ օգնական գնդեր հասցրեց Աղդէ կոմսի զօրութեամբ։ Երկու կողմի զօրքերը միմեանց հանդէպ բանակեցան Ձիրաւ դաշտի վրայ, Նպատ լերան մօտ, որի գագաթին հայրենասէր հայրապետը թագաւորի հետ կանգնած՝ բազկատարած աղօթում էր Հայոց զէնքերի յաջողութեան համար։ Պատերազմը կատաղի եղաւ, որովհետև երկու կողմն էլ քաջութեամբ կռուեցան. բայց յաղթութիւնը քրիստոնեաների կողմը մնաց, վասն զի զօրավարների ռազմագիտութեամբ Հայոց հեծելազօրը այն առաւելութիւնն ունէր Պարսիկներից, որ պաշտպանվում էր Յունաց վահանակիրների հետ։ Կռուի տաքացած ժամանակը Սպանդարատ Կամսարականը սպանեց Ղեկաց Շերգիր թագաւորին, իսկ Մուշեղ Մամիկոնեան վիրաւորեց Աղուանից Ուռնայր թագաւորին։ Պարսիկները փախան. քաջ Սմբատ Բագրատունին հասաւ Մերուժանի

տանից, որի ձին վիրաւորուած լինելով յետ էր մնացել,
և հրաշէկ շամփուրը պսակաձև բոլորած գլխին դնելով՝
ասաց հեգնութեամբ. «Պսակում եմ քեզ, ով Մերուժան,
որովհետև ցանկանում էիր Հայոց թագաւոր լինել, և ես
իբրև թագադիր ասպետ պէտք է հայրական պաշտօնս
կատարեմ»։ Այսպիսի վախճան ունեցաւ դաւաճան Մե-
րուժանը. նորանից առաջ մեռել էր իւր գործակից Վա-
հան Մամիկոնեանը՝ հարազատ Սամուէլ որդուցը սպա-
նուելով։

Պատերազմից յետոյ կաթողիկոսը հաշտութեան միջ-
նորդ լինելով՝ յորդորեց թագաւորին որ իւր հօր արած
վնասները հատուցանէ նախարարներին և հայրաբար վա-
րուի նոցա հետ, իսկ նախարարները հաւատարմութեամբ
ծառայեն իրանց տիրոջը։ Թագաւորը յետ դարձրեց բո-
լոր նախարարների կալքերը. Սպանդարատին իւր քա-
ջութեան փոխարէն տուեց Կամսարականաց երկրները՝
Շիրակայ և Արշարունեաց գաւառները, զօրքի սպարա-
պետութիւնն էլ յանձնեց Մուշեղ Մամիկոնեանին։ Բայց
շուտով Պապ իւր գեղխ ու անառակ կեանքով ցոյց տուեց
որ իւր նախորդների արժանաւոր սերունդն է։ Զուր
Ներսէս կաթողիկոսը յորդորեց նորան իւր ընթացքը
փոխել. թագաւորը նորա խրատներից ձանձրացած՝ ծա-
ծուկ թունաւորեց նորան։ Ներսէս Մեծի անուան հետ
կապուած են այն բարեգործական հաստատութիւնները,
որոնք նպաստեցին աւետարանական սկզբունքները ար-
մատացնելու Հայոց մէջ։ Բացի հարիւրաւոր վանքերից,
Ներսէս բազմաթիւ հիւանդանոցներ, աղքատանոցներ,
որբանոցներ և հիւրանոցներ շինեց երկրի զանազան կող-

մերում, և այս ամեն հիմնարկութիւնները հաստատուն եկամուտներով ապահովեց։

Հայրենասէր կաթողիկոսի տարապարտ մահը շատերի սրտին մեծ ցաւ պատճառեց և պաղեցրեց թագաւորից, որ իւր անկարգութիւնների համար քանի գնում աւելի ատելի էր լինում։ Շուտով գժտութիւն ընկաւ Պապի և Տերենտիանոս զօրապետի մէջ, որ զօրքով կենում էր Հայաստան իբր Հայոց թագաւորի պաշտպանութեան համար, բայց իրօք նորա գործողութիւնների վրայ մօտիկից հսկելու համար։ Այս դրութիւնը անտանելի երևեցաւ Պապին և նա մտածեց ազատուիլ Յունաց հոգաբարձութիւնից և Պարսից կողմը հակուիլ։ Օգուտ քաղելով Յունաստանի մէջ եղած խռովութիւններից, Պապ կայսերական զօրքերը Հայաստանից դուրս քշեց և սկսաւ պատերազմի պատրաստութիւն տեսնել։ Բայց Տերենտիանոս առանց ժամանակ տալու նորան՝ նոր զօրքով հասաւ, բռնեց թագաւորին ու տարաւ Կոստանդնուպօլիս, ուր կայսեր հրամանով Պապ գլխատուեցաւ 7 տարի թագաւորութիւն անելուց յետոյ (388)։ Փաւստոս Բիւզանդացու պատմելովը, Պապ դաւաճանութեամբ սպանուեցաւ իւր թագաւորութեան մէջ, մինչդեռ յոյն զօրավարի վրանում անհոգ նստած՝ կերուխումի հետ էր լինում։

Պապի տեղը կայսրը Հայոց թագաւոր ուղարկեց նորա եղբօրորդուն Վարազդատին, որովհետև սպանուած թագաւորի որդիքը անչափահաս էին (391)։ Վարազդատ Արշակ Բ-ի բռնուելուց յետոյ ուրիշ նախարարների հետ Պարսից ձեռքից փախել էր Յունաստան և անձնական ոյժով ու քաջութեամբ մեծ անուն էր հանել բռնամար-

*ւի ու գաղանամարտի, ինչպէս նաև Լանգոբարդացոց դէմ մղուած պատերազմի մէջ։ Յունաստանում անցկացրած տարիները բաւական երաշխաւորութիւն էին համարվում, որ նա հաւատարիմ պիտի մնայ կայսրութեանը։ Բայց Վարազդատ Հայաստան գալով՝ Պապի օրինակին հետևեցաւ և կամեցաւ Յունաց խնամակալութիւնից ազատուել. ուստի ծածուկ բանագնացութեան մէջ մտաւ Շապուհ Բ-ի հետ և խնդրեց որ իւր աղջիկներից մէկին իրան կնութեան տայ, խոստանալով որ Հայաստանը Յունաց իշխանութիւնից ազատէ և Պարսից հովանաւորութեան տակ դնէ։*

*Այս բանը կայսեր ականջը հասնելով, յոյն զօրավարներին հրաման եկաւ Վարազդատին բռնել և Կոստանդնուպօլիս ուղարկել, եթէ ինքը չհամաձայնի գնալ։ Վարազդատ յուսալով որ կարող է իւր անձը արդարացնել, իւր կամքով գնաց. բայց Թէոդոս և ոչ տեսութեան արժանի արեց Հայոց թագաւորին, այլ շղթայել տուեց նորան և աքսորեց Թուլիս (Իսլանդիա) կղզին* (394)։

## Գ. ՎԵՐՋԻՆ ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

## 31.

*Արշակ Գ. և Վաղարշակ Բ* (394).—*Հայաստանի բաժանումը Պարսից և Յունաց մէջ. Խոսրով Գ* (396).—*Գժտութիւն և պատերազմ Արշակի և Խոսրովի մէջ.— Խոսրով Գ առանձին* (399). — *Խոսրովի կալանաւորութիւնը* (400)։

*Թէոդոս կայսրը Հայաստանը հպատակութեան մէջ պահելու համար, Վարազդատի տեղ թագաւորեցրեց Պապի երկու որդոց՝ Արշակ Գ-ին և Վաղարշակ Բ-ին,*

որոնք Կոստանդնուպոլսում պատանդ էին և նոցա Զարմանդուխտ մօրը իւր մօտ պահելով՝ իրանց յոյն զօրքով Հայաստան ուղարկեց (394)։ Արշակ իւր աթոռը հաստատեց Դուինն քաղաքում, իսկ Վաղարշակ Եկեղեաց գաւառի Երիզայ քաղաքում. բայց նոյն տարին կրտսեր եղբայրը մեռաւ, և Արշակ Գ թագաւորեց մենակ բոլոր Հայաստանի վրայ։

Շուտով մեռաւ և Թէոդոս՝ հռոմէական ընդարձակ կայսրութիւնը կտակով իւր երկու որդոց մէջ բաժանելով. Արևմուտքը ստացաւ Ոնորիոսը, իսկ Արևելքը Արկադիոսը, որ իւր թուլութեամբը պալատականների ձեռքին խաղալիկ դարձաւ։ Խորամանկ Շապուհը Արկադիոսի հետ բանակցութեան մէջ մտաւ, և երկու կողմերն էլ համաձայնեցան Միջագետքը և Հայաստանը միմեանց մէջ բաժանելու։ Այս բաժանմամբ Հայաստանի արևելեան մեծագոյն մասը Պարսից ձեռքն ընկաւ, իսկ արևմտեան փոքրագոյն մասը Յունաց ձեռքը։ Արշակ Գ չկամենալով հեթանոս թագաւորի ձեռքի տակ մնալ, Այրարատը թողեց և Յունաց մասը գնաց. Նորա հետ գնացին շատ նախարարներ իրանց ընտանիքով, աւելի լաւ համարելով իրանց կալուածներից զրկուիլ, քան պարսիկ մարզպանի իշխանութեան տակ մնալ։ Շապուհ ստիպուեցաւ Պարսից մասի Հայաստանի վրայ թագաւոր կարգել Խոսրով Գ Արշակունի իշխանին (396), միանգամայն գաղթող նախարարներին հրովարտակով հրաւիրեց որ իրանց տեղերը վերադառնան, և սպառնաց հակառակ դէպքերում նոցա կալուածները արքունիք գրաւել։ Այս լսելով նախարարների մեծ մասը գնացին մտան Խոսրովի իշխանութեան տակ, Արշակի մօտ մնացին նորա մի քանի

րձաւոր իշխանները, Դարա Սիւնեաց իշխանը՝ Թա-
ւորի աներորդին, Գադաւոն Կամսարականն՝ Սպանդա-
տի որդին և ուրիշները։

Սահակ Բագրատունի ասպետը, Վաղարշակ Բ-ի ա-
րը, որին Արշակ իւր կնոջից գրգռուած՝ անպատիւ էր-
րել, իբրև թէ նորա մօտ թագաւորական զարդեր կան-
ացած իւր փեսայից, նոյնպէս գնաց Խոսրովի մօտ,
այելով որ իւր կալուածները Յունաց բաժնումն էին։
եղեան թագաւորը մեծ պատուով ընդունեց նորան և
ւր զօրքի վրայ սպարապետ կարգեց, Արշակի մօտ մնա-
ած նախարարների կալուածներից մասն հանելով նո-
ան։ Շուտով Սահակ ասպետը առիթ ունեցաւ իւր պա-
երազմական ընդունակութիւնները ցոյց տալու։ Վա-
անդեցի ասպատակներ Տայոց լեռներում ապաւինած՝
րկու թագաւորների երկրները ոտնակոխ էին անում։
ասրով ուղարկեց նոցա վրայ Սահակ ասպետին, որ
աղթեց նոցա, մի մասը ջարդեց և մնացածներին հա-
ածեց մինչև Մանանաղի գաւառը։ Այստեղ պատահմամբ
անդիպեցաւ Սամուէլ Մամիկոնեանին, որ Արշակի զօր-
ով ընկել էր մի քանի նախարարների ետևից, որոնք
ռաջուց խօսք էին կապել Սահակի հետ, և այժմ Ար-
ակի գանձերը յափշտակած Խոսրովի մօտ էին գնում։
ահակ Սամուէլին քշեց և նախարարներին իրանց ապա-
ինած այրերից դուրս բերելով՝ տարաւ հասցրեց Խոս-
ովի մօտ, որ բերուած գանձերի մի մասը Պարսից թա-
աւորին ուղարկեց և նորա հաճութեամբ իւր մօտ եկած
ախարարներին կալուածներ պարգևեց։ Արշակ գանձերը
ետ պահանջեց, և երբ Խոսրով մերժեց, պատերազմ
եց նորա վրայ։ Խոսրով շտապեց առաջ գնալու, որ-

պէս որ հակառակորդին ժամանակ չտայ իւր երկրի սահմանները կոխելու. բայց Արշակ արդէն հասել էր Վանանդ գաւառի Երեւել դաշտը, ուր և պատերազմը տեղի ունեցաւ։ Արեւմտեան թագաւորը յաղթուեցաւ, նորա սպարապետ Դարա Սեւնին սպանուեցաւ և զօրքը ցրուեցաւ։ Սահակ ասպետը ընկաւ Արշակի ետեւից, որ անշուշտ կը բռնէր, եթէ Գաղաւոն Կամսարականը ժամանակ առժամանակ յետ դառնալով և հալածողների վրայ յարձակուելով՝ թագաւորին փախչելու ժամանակ տուած չլինէր։

Այս պատերազմից յետոյ Արշակ մեռաւ Եկեղեաց գաւառում՝ առանց որդի թողնելու (399), և կայսրը նորա տեղ ուրիշ թագաւոր չկարգեց, այլ իւր բաժնի Հայաստանը յոյն գործակալների ձեռքով կառավարեց, որոնք կոմս անունն էին կրում։ Սակայն Յունաց մասի նախարարներին ծանր թուեցաւ առանց թագաւորի մնալ, ուստի Գազաւոն Կամսարականի միջնորդութեամբ բանակցութեան մէջ մտան Խոսրով Գ-ի հետ և յանձն առին հպատակելու նորան, եթէ կը ներէ իրանց յանցանքը, կալուածները յետ կը դարձնէ և խօսք կը տայ պաշտպանելու Յունաց գործակալներից այն նախարարներին, որոնք նոցա բաժնում կալուածներ ունէին։ Խոսրով ընդունեց այս պայմանները և բոլոր նախարարները անցան նորա երկիրը Գազաւոնի առաջնորդութեամբ, որին թագաւորը խոստացել էր Արշակունի գրել։ Միայն Սամուէլ Մամիկոնեան, իւր հօրն ու մօրը հաւատուրացութեան պատճառով սպանած լինելուն համար, վախեցաւ Պարսից մասը երթալ, այլ երկու կողմերի թղթերը ձեռք ձգելով գնաց Յունաստանի կայսեր մօտ։ Խոսրով չտապեց

ւր կողմից մի դեսպանութիւն ուղարկել Արկադիոս կայ-
եր, խնդրելով որ Յունաց մասի տեսչութիւնն էլ իրան
ննձնէ՝ հարկ տալու պայմանով։ Կայսրը վախենալով որ
ն գուցէ Հայերը միաբանին իւր մասը Պարսից ձեռքը
ալու՝ ընդունեց նորա առաջարկութիւնը, և այսպիսով
'սրով բոլոր Հայոց վրայ թագաւորեց։

Բայց երկար ժամանակ չմնաց նա այնուհետև իւր
ահի վրայ։ Կայսեր հետ կապած բարեկամութիւնը Տիզ-
ոնի արքունիքին կասկածի մէջ ձգեց. այս կասկածը
սաստկացաւ մանաւանդ այն ժամանակ, երբ Խոսրով ա-
ռնց Պարսից թագաւորի հաճութիւնն առնելու՝ Հայոց
ռայ կաթողիկոս կարգեց Ներսէս Մեծի որդուն՝ Սահակ
արթևին, որի վրայ, ինչպէս ընդհանրապէս Լուսաւոր-
ւ բոլոր սերնդի վրայ, Պարսիկները նայում էին իբրև
յսերական քաղաքականութեան ջերմ կուսակիցների
ռայ։ Խոսրով Շապուհի սպառնալիքներին պատասխա-
ւց Արկադիոսի հետ նոր բանակցութիւն սկսելով,
ւի արդիւնքը պիտի լինէր ամբողջ Հայաստանը Յունաց
ւվանաւորութեան տակ դնել, եթէ միայն կայսրը յանձն
ռնէր նորան օգնելու։ Հայոց թագաւորի այս դիտա-
րութիւնը նախարարներից ոմանք ծածուկ հասցրին
սրսից դուռը։ Անմիջապէս Արտաշիր արքայորդին զօր-
ւվ ուղարկուեցաւ Հայաստան, և Խոսրով, որ ոչ կայս-
ւց և ոչ հիւսիսային ազգերից կարողացաւ օգնութիւն
ռնել, ստիպուեցաւ գնալ Արտաշրի մօտ, որ զրկեց նո-
ւն թագաւորութիւնից և Գագաւոն Կամսարականի հետ
թայակապ Պարսկաստան տարաւ (400)։ Գագաւոնի
'քայրը Շաւարշ և Պարգև Ամատունին կամենալով ի-
ւնց թագաւորին ազատել, 700 հոգով ընկան Արտաշրի

զօրքի վրայ. բայց Հաւարշ կռուի մէջ սպանուեցաւ, իսկ Պարթև բռնուելով՝ մորթազերծ եղաւ։

## 32.

Վռամշապուհ (400—421).—Սահակ Պարթևի Պարսից դուռը երթալը.—Խոսրով Գ երկրորդ անգամ (421).—Շապուհ Պարսիկ.—Անիշխանութիւն. Սահակ Պարթև Յունաց մասում.—Արտաշէս Գ կամ Արտաշիր (426).—Արտաշէսի գահընկեցութիւնը (432).—Արշակունեաց թագաւորութեան բարձումը։

Մինչ դժբաղդ Խոսրով Գ Անյուշ բերդն էր գնում, Հայոց տէրութեան սանձն առաւ նորա եղբայրը Վռամշապուհ, որին հպատակութեան մէջ պահելու համար՝ Արտաշիր մի պարսկական գունդ էր թողել Հայոց երկրում։ Վռամշապուհի 21 տարուան խաղաղ ու արդիւնաւոր թագաւորութիւնը (400—421) ցոյց է տալիս, թէ ինչ բարիքներ կարող է անել մի իշխան, որ խմաստութեամբ և զգուշութեամբ է առաջնորդում իւր ազգին, ճանաչելով իւր փափուկ դրութիւնը դրացի հզօր պետութիւնների մէջ։ Եւ արդարև Վռամշապուհ իւր խոհեմութեամբ այն աստիճանի վստահութեան արժանացաւ Տիզբոնի և Բիւզանդիայի արքունիքների կողմից, որ միանգամ երբ Պարսից և Յունաց գործակալների մէջ գժտութիւն ընկաւ Միջագետքում, Հայոց թագաւորը յիշեալ տէրութիւնների հրաւիրանօք գնաց տեղի վրայ երկու կողմի վէճերը քննեց և գործը արագութեամբ կարգի դրեց։

Վռամշապուհի թագաւորութեան երկու լուսափայլ աստղերն էին Սահակ Պարթև, Լուսաւորչի ցեղի վերջին շառաւիղը, և Մեսրոպ Մաշտոց։ Սահակ, որ Խոս-

լ Գ-ի հետ կաթողիկոսութիւնից զրկուել էր, Վռամ-
պուհի օրով դարձեալ բարձրացաւ հայրապետական
ոռը։ Իւր միամօր Սահականոյշ դստերը ամուսնաց-
ով Համազասպ Մամիկոնեանի հետ, կաթողիկոսը Սա-
կ Բագրատունու մահից յետոյ՝ մի քանի անգամ միջ-
դել էր Խոսրով Գ-ի մօտ, որ սպարապետութեան
տիւը իւր փեսային շնորհէ. բայց թագաւորը ակնա-
ով Գազաւոն Կամսարականից՝ չկատարեց նորա խըն-
ը։ Երբ Վռամշապուհ թագաւոր նստաւ, հայրապետը
ոգեց իւր խնդիրը։ Զգուշաւոր թագաւորը իւր նա-
րդի օրինակից խրատուելով՝ խոհեմութիւն չհամարեց
անց Պարսից թագաւորի գիտութեանը այդպիսի մի
գադրութիւն անել, այլ յանձնարարական թուղթ
լով Սահակին՝ ուղարկեց Արտաշրի մօտ, որ հօր տեղը
գաւոր էր նստել։ Արտաշիր մեծ պատւով ընդունեց
ոց կաթողիկոսին, որ Լուսաւորչից սկսած այս առա-
անգամն էր գնում Պարսից դուռը, և առանձին հրո-
տակով Հայոց թագաւորին պատուիրեց սպարապե-
թիւնը տալ Համազասպին և Մամիկոնեանց տոհմը
սարարութեան հինգերորդ աստիճանը բարձրացնել.
Կամսարականաց և Ամատունեաց կալուածները, Սա-
ի միջնորդութեան համաձայն՝ յետ դարձնել, առանց
ա նախնական աստիճանը տալու։

Վռամշապուհ մեռաւ՝ թողնելով մի դեռահասակ որդի,
հազիւ տասը տարեկան էր, ուստի Սահակ Պարթևը
սարարների համաձայնութեամբ գնաց Պարսից դուռը
ազկերտ Ա թագաւորից խնդրեց, որ Խոսրով Գ-ին
ուշ բերդից արձակէ և կրկին Հայոց վրայ թագաւո-
ւէ։ Խոսրով վերադարձաւ Հայաստան, բայց հազիւ

մի տարի ապրեցաւ և գահը դարձեալ անթագաւոր մնաց (421)։

Այնուհետև Յազկերտ չկամեցաւ Արշակունի թագաւոր տալ Հայոց, այլ իւր Շապուհ որդուն Հայոց թագաւոր անուանելով՝ ուղարկեց Հայաստան, մտածելով որ մեծամեծները նորա պալատը երթևեկելով և Պարսից հետ խնամութիւն անելով՝ կամաց կամաց Արեաց կրօնին ու սովորութիւններին կ՚ընտելանան, և այսպիսով հայ ազգը անզգալի կերպով Պարսից հետ կը ձուլուի։ Հայերը յայտնի ընդդիմութիւն ցոյց չտուին Շապուհին, որովհետև Համազասպ Մամիկոնեան սպարապետը մեռած էր և չկար մէկը, որ առաջնորդէր նոցա. ուստի Պարսից արքայորդին անարգել մտաւ երկիրը հետը բերելով Պարսկաստան եղած հայ իշխաններին։ Բայց նա ամենևին չկարողացաւ նախարարների սիրտը շահել որոնք անարգում էին նորան՝ կրակի որդի ու կնամարդի անուանելով։ Այսպէս 4 տարի անարգաբար թագաւորելուց յետոյ, երբ լսեց որ հայրը հիւանդացել է, գնաց Պարսկաստան նորա աթոռը ժառանգելու, հրաման թողնելով իւր տեղապահին, որ Հայոց մեծամեծներին բռնութ և Պարսկաստան բերէ։ Նախարարները այս դաւաճանութիւնը իմանալով ժողովեցին իրանց գնդերը և Ներսէս Ճիճրակացու առաջնորդութեամբ ընկան Պարսից վրայ, նոցա զօրավարին սպանեցին, զօրքն էլ Հայաստանից քշեցին։

Պարսկաստանում Շապուհ հակառակ կուսակցութիւնից սպանուելով, Յազկերտի տեղ նստաւ Վռամ Ե, որ նոր բանակ ուղարկեց Հայոց աշխարհը, բայց Հայերը բերդերում ու լեռներում ապաւինած՝ անվախաբար յարձա-

ում էին Պարսից վրայ, որով և երկիրը աւերվում էր։
ս թշուառութիւնը տեսնելով, Սահակ Պարթևը անցաւ
ւնաց բաժնի Հայաստանը, որի վիճակը ըստ երևու-
ին աւելի լաւ էր, բայց իրօք ժողովուրդը այնտեղ էլ
ծում էր յոյն գործակալների բռնութեան տակ։ Նոյն
կ կաթողիկոսը լաւ ընդունելութիւն չգտաւ այնտեղ յոյն
ռավարիչներից, և ստիպուեցաւ Մեսրոպ Մաշտոցին
ւր թոռանը՝ Վարդան Մամիկոնեանին ուղարկել Թէո-
ս Բ կայսեր մօտ միջնորդելու, որ իրաւունք տրուի
ան այդ կողմերը հայ դպրոցներ բանալու և հայերէն
լուն ուսուցանելու։ Կայսրը իրաւունք տուաւ, բայց
նոյն ժամանակ իւր այդ նահանգը ներքին ապստամ-
ւթեան և արտաքին յարձակումների դէմ պաշտպանելու
մար, Անատոլ զօրապետին հրաման ուղարկեց որ Կա-
ւ քաղաքը ամրացնէ, շուրջը աշտարակաւոր պարիսպ
շելով և ներսը յոյն զօրք բնակեցնելով։
Պարսից թագաւորը համոզուելով որ առանց նա-
րարների կամքին չէր կարող տիրել Հայոց աշխար-
ւ, Սմբատ Բագրատունու միջնորդութեամբ կամեցաւ
շտութիւն խօսել։ Նախարարները Սահակ Պարթևի
ո խորհուրդ արին, և Սմբատ ասպետն ու Վարդան
միկոնեանը ուղարկուեցան Վռամի մօտ, որ անցեալը
ւացութեան տալով՝ Վռամշապուհի որդուն Արտաշէ-
թագաւորեցրեց Հայոց վրայ տալով նորան Արտա-
պարսկական անունը (426)։
Սակայն երիտասարդ թագաւորը իւր անկարգ կեան-
շուտով ատելի եղաւ նախարարներին։ Սահակ կա-
ղիկոսը մի քանի անգամ խրատեց նորան որ հրա-
րուի իւր անարժան գործերից, նախարարներին էլ

յորդորեց ներողամիտ ու համբերող լինել, յուսալով որ Թագաւորը կը զգաստանայ։ Բայց ամեն բան զուր եղաւ։ Նախարարները խորհուրդ արին իրանց մէջ վճռեցին գնալ խնդրել Պարսից Թագաւորից, որ Արտաշէսին աթոռից հրաժարեցնէ և պարսիկ մարզպան ուղարկէ Հայաստան։ Եկան իրանց որոշումը յայտնեցին Սահակ Պարթևին։ Հայրենասէր կաթողիկոսը չմիաբանեցաւ նոցա հետ, այլ աշխատեց համոզել նոցա որ յետ կանգնին իրանց անխորհուրդ դիտաւորութիւնից, հասկացնելով թէ ինչ վատ հետևանքներ կ՚ունենայ Հայոց թագաւորութեան կործանումը և ազգը Պարսից անմիջական իշխանութեան ենթարկելը. «Քաւ լիցի ինձ, ասում էր, իմ հիւանդոտ ոչխարը առողջ գազանի հետ փոխել, որի առողջութիւնն իսկ մեզ համար պատուհաս է»։ Բայց Նախարարները կարծելով թէ կաթողիկոսը ուզում է բանը ձգձգել, որպէս զի իրանց խորհուրդը Թագաւորին յայտնէ, վճռեցին որ խնդրեն Ս. Սահակին էլ պաշտօնից հրաժարեցնել. ուստի Սուրմակ անունով փառամոլ երէցին հետներն առած՝ գնացին դուռը և իրանց Թագաւորին ամբաստանեցին, իբրև թէ Յունաց հետ միաբանել է և կամենում է Պարսից Թագաւորից ապստամբել։ Վռամ կանչեց իւր մօտ Հայոց Թագաւորին ու կաթողիկոսին և առանց նոցա խօսքերը լսելու՝ առաջինին զրկեց Թագաւորութիւնից, իսկ երկրորդին հայրապետութիւնից, և երկուսին էլ Պարսկաստան պահեց. ապա Վեհմիհրշապուհ անունով պարսկին մարզպան (կուսակալ) անուանեց, Սուրմակին էլ կաթողիկոս, և Նախարարների հետ Հայաստան ուղարկեց (432)։

Այսպէս վերջացաւ Հայաստանի Արշակունեաց Թա-

ատրութիւնը 582 տարի տևելուց յետոյ, ինչպէս և նախարապետութիւնը Լուսաւորչի ցեղից՝ 132 տարի տևելուց յետոյ։ Այնուհետև կաթողիկոսական աթոռի վրայ բարձրացան հետզհետէ Սուրմակ, Բրքիշոյ և Շմուէլ (վերջին երկուսը ասորի) անարժան հովիւները, որոնց անօրէնութիւնները եկեղեցու և եկեղեցականների վարքը ժողովրդի աչքում կոտրելու նպատակով Տիզբոնի արքունիքը չտեսնելու էր տալիս։ Ազգի մի մասի խնդիրքով, Վռամ Բրքիշոյից յետոյ՝ Սահակ Պարթևին թոյլ տուեց իւր հօտի հոգևոր պիտոյքները հոգալ, բայց ոչ կաթողիկոսական իշխանութիւնը վարել, որի համար առնակուեցաւ Շմուէլ։

## Դ. ԱՌԱՋԻՆ ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ

## 33.

*Արշակունեաց թագաւորութեան անկման նպաստող հանգամանքները.—Պարսից դիտաւորութիւնը Հայաստանի քրիստոնէութիւնը ջնջելու.—Յազկերտ Բ-ի արշաւանքը Յունաց դէմ.—Միհրներսեհ հազարապետ.—Վասակ Սիւնի և Վարազվաղան.—Հոնաց արշաւանքը (442—449).—Դենշապուհ պարսկործերը Հայոց երկրում.—Միհրներսեհի թուղթը և Հայոց պատասխանը.—Նախարարների Պարսկաստան կանչուիլը և նրանց ուրացութիւնը.—Նոցա դարձը Հայաստան մոգերով (450)։*

Արշակունեաց թագաւորութեան անկմամբ վերջապէս գլուխ եկաւ այն նենգաւոր քաղաքականութիւնը, որին այնքան յամառութեամբ հետևել էին Սասանեան թագաւորները. Հայոց ազգը զրկուեցաւ իւր քաղաքական կեանքից։ Այս յեղափոխութիւնը յառաջ եկաւ մէկ կող-

մից անձնասէր ու փառասէր նախարարների ձեռնտուութեամբ, որոնք ինքնագլուխ լինելու ևս և Հայոց թագաւորութիւնը ձեռք ձգելու խաբուսիկ յոյսերից գրգռուած՝ Հայաստանի թշնամիների ձեռքին անարգ գործիք էին դարձել, իսկ միւս կողմից Արշակունի թագաւորների վատթարութեամբ, որոնց դրութիւնը վերջերը այն աստիճանի խեղճութեան էր հասել, որ նոցա իշխանութիւնը լոկ անուանական էր և ոչ մի նշանաւոր կարգադրութիւն չէին կարող անել իրանց երկրում առանց արքայից արքայի կամքին։ Այս վիճակի մէջ թագաւորութիւնը մեծ վարկ չէր կարող ունենալ ազգի մեծամասնութեան աչքում, որ անտարբերութեամբ ականատես եղաւ գահի խորտակմանը՝ առանց իւր կողմից մի ընդդիմութիւն ցոյց տալու։ Պարսից և Յունաց անդադար միջամտելը Հայոց գործերի մէջ, հայ թագաւորների նոցա ձեռքով գահից ու կեանքից զրկուիլը, անիշխանութեան ժամանակների յաճախ կրկնուիլը,—այս բոլորը կամաց կամաց պատրաստեց ազգին հպատակութեամբ ընդունելու այն փոփոխութիւնը իւր կեանքի մէջ, որ հեռատես մարդիկ արդէն վաղուց նախատեսել էին։

Իւր ծրագրի առաջին մասը յաջողութեամբ գլուխ տանելուց յետոյ, Տիզբոնի արքունիքին մնում էր յաջորդ վճռական քայլն անել—քրիստոնէութիւնը ջնջել և զրադաշտական կրօնը հաստատել Հայոց աշխարհում, որով միայն կարելի էր այդ երկիրը անքակտելի կերպով կապել միացնել Պարսկաստանի հետ։ Այս փորձը, որ անպտուղ կերպով արել էին Շապուհ Բ և Յազկերտ Ա, կամեցաւ կրկնել Վռամի յաջորդ Յազկերտ Բ (438—457), և յոյս ունէր անշուշտ յաջողել այժմ որ Հայաստանը իւր

անմիջական իշխանութեան ներքոյ էր գտնվում։ Միակ խոչնդոտը՝ որին կարող էր հանդիպել Պարսից թագաւորը իւր ձեռնարկութեան մէջ, Հայաստանի արևմտեան հիւսիսային դրացիներն էին, որոնք կարող էին օգնութեան ձեռք կարկառել Հայոց և այսպիսով իւր բոլոր դիտաւորութիւնները խորտակել։ Մանաւանդ Յոյները կարող էին օգնել Հայոց՝ ամբողջ երկիրը իրանց ձեռքը ձգելու յուսով. ուստի հարկ էր նախ Բիւզանդիայի զօրութիւնը խորտակել, որպէս զի այդ կողմից Պարսից տէրութիւնը ապահով լինի։

Այս մտքով Յազկերտ յանկարծ յարձակեցաւ Միջագետքի Յունաց երկրների վրայ, հասաւ մինչև Մծբին քաղաքը, շատ գաւառներ աւերեց ու կողոպտեց և բոլոր եկեղեցիները այրեց։ Միւս կողմից, որպէս զի Հայերը ապստամբին և Յունաց հետ չմիանան, մի գունդ պահապան զօրք ուղարկեց Բագաւան։ Թէոդոս Բ, որին ժամանակի հանգամանքները թոյլ չէին տալիս Պարսից հետ պատերազմելու, Անատոլ սպարապետին ընծաներով ուղարկեց Յազկերտի մօտ հաշտութիւն խօսելու։ Դաշնադրութեան ամօթալի պայմաններից մէկի զօրութեամբ կայսրը պարտաւորվում էր Արևաց թագաւորի ձեռքը տանել այն պարսիկներին, որոնք քրիստոնէութեան պատճառով ապաւինել էին Յունաց երկիրը։

Մինչ այսպէս յաղթութեամբ հպարտացած՝ Յազկերտ պատրաստվում էր Հոնաց վրայ արշաւելու, տէրութեան հազարապետը Միհրներսեհ, որ Պարսից քաղաքականութեան ղեկավարն էր և յունական արշաւանքի գլխաւոր պատճառն էր եղել, խորհուրդ տուեց թագաւորին իւր մտադրութիւնը գործ դնելու Հայոց և ուրիշ

քրիստոնեայ ազգերի նկատմամբ, որ Պարսից տէրութեան ներքոյ էին։ «Դուք ինքներդ գիտէք, ասաց նա, թէ ինչ պիտանի երկիր է Հայաստանը, բայց կայսեր իշխանութեան սահմանակից է և միևնոյն հաւատն է պաշտում ինչ որ Յոյները։ Բայց եթէ նոցա մեր հաւատքին դարձնէք, այնուհետև կը սիրեն ձեզ և Արեաց երկիրը. և եթէ Հայերը մեզ հետ սերտ կապուած լինեն, Վրացիք և Աղուանք մերն են ու մերը»։ Նոյնը հաստատեցին մոգերը և գրան մեծամեծները։

Ժամանակը յարմար էր, հանգամանքները ամեն կերպով յաջողութիւն էին խոստանում Պարսից. մանաւանդ որ Հայոց աշխարհումն էլ կային մարդիկ պատրաստ օգնելու նոցա խորհրդով ու գործով։ Շապուհ Բ-ի օրով Պարսից արքունիքը իւր քաղաքականութեան մէջ ջերմ գործակցութիւն էր գտել Արծրունեաց ցեղի կողմից, Յազկերտի օրով նոյն դերը կատարելու էր Սիւնեաց տոհմը։ Այս երկու նախարարութիւնները իրանց երկրներով Պարսից սահմանակից լինելով և միևնոյն ժամանակ Հայոց աշխարհում բարձր դիրք ունենալով, մեծ մասամբ պարսկական քաղաքականութեան կուսակից էին Յունաց և նոյն քսկ իրանց հայրենիքի դէմ, որի վրայ թագաւորելու յոյսն ունէին Արեաց թագաւորին մատուցած ծառայութիւնների փոխարէն։ Այս յոյսն էր որ այնքան անօրէնութիւններ գործել տուեց իւր ժամանակին Մերուժան Արծրունուն. նոյն ակնկալութիւնն էր որ աւելի մեծ չարիքներ պիտի գործել տար այժմ Վասակ Սիւնեաց իշխանին։ Պատանեկութեան հասակից Վասակ իւր խելքով և վարմունքով ամենին սիրելի էր եղել, և երբ իւր հօրեղբայրը Վաղինակ իշխանութիւնից ու կեանքից զրկուեցաւ իբրև Պար-

ւից տէրութեան վնասակար մարդ, Սիւնեաց երկրի տա-
ուտէրութիւնը անցաւ Վասակի ձեռքը (410)։ Արդէն
լորանից առաջ նորա բարի անունը տարածուել էր երկ-
ի մէջ, երբ Մեսրոպին օգնեց իւր քարոզութիւնների
մէջ Սիւնեաց երկրում, ուր զանազան դպրոցներ հիմ-
ուեցան մանուկների կրթութեան համար։ Սակայն իւր
արեմասնութիւններով հանդերձ Վասակ անսահման փա-
ռասիրութեան տէր էր, ուստի և շուտով Տիզբոնի ար-
ունիքի ուշադրութիւնը իւր վրայ դարձրեց, իբրև մի
արդ՝ որին նա կարող էր օգտակար կերպով իւր նպա-
ակներին ծառայեցնել։ Այս դիտաւորութեամբ էր ան-
ուշտ, որ Վեհմիհրշապուհից յետոյ՝ Վասակ կարգուեցաւ
արզպան Հայոց վրայ։

Մի անակնկալ դէպք շուտով արդարացրեց Պարսից
յսը։ Վասակ մի փեսայ ունէր Վարազվաղան անունով,
ոյնպէս Սիւնեաց ցեղից, որ իւր կնոջ հետ լաւ չէր վար-
ւում և այս պատճառով աները Հայաստանից դուրս քշեց
որան։ Վարազվաղան գնաց Դուռը, Պարսից կրօնն ըն-
ունեց և Միհրներսեհին խորհրդակից ու գործիք դար-
աւ իւր հայրենիքի դէմ, յուսալով որ այսպիսով իւր
շնամուն կը վնասէ և ինքը մեծ պատիւների կը հասնի։
այց խորամանկ ու ճարպիկ Վասակը ժամանակ չտուեց
որան, այլ շտապեց իւր ծառայութիւններն առաջար-
ել Միհրներսեհին, որ հարկաւ մարզպանին և նախա-
ատւութիւն պիտի տար իւր խորհուրդների մէջ, թէև
արազվաղանին էլ չհեռացրեց իրանից։

Այս վիճակի մէջ էր գործը, երբ Հոնաց արշաւանքի
ատրուակով՝ Հայոց և միւս քրիստոնեայ ազգերի մե-
ամեծները կանչուեցան Պարսկաստան, որպէս զի ժո-

ղովուրդը անպաշտպան մնալով՝ չկարողանալ Դրան կարգադրութիւնների դէմ դնել։ Հայ նախարարները Յունաց պարտութիւնը տեսնելով՝ թէև կասկածի մէջ ընկան, բայց և այնպէս ճանապարհ ընկան և Պարսից հետ միաբանած՝ գնացին Հոնաց վրայ (442—449)։ Երկու տարի պատերազմեցաւ Յազկերտ Հոնաց հետ, բայց ոչինչ յաջողութիւն չունեցաւ։ Երբ տեսաւ որ գործը ձգձգվում է, առաջուան զօրքերը արձակեց և նոր զօրք բերել տուեց իւրաքանչիւր երկրից. այս կերպով եօթը տարի տևեց պատերազմը, մինչև որ վերջապէս Հոնաց զօրութիւնը բոլորովին խորտակուեցաւ։ Այս միջոցին թագաւորը աշխատում էր զանազան հնարներով իւր բանակներում եղած քրիստոնեայ իշխաններին համոզել, որ Պարսից կրօնն ընդունեն։ Բայց տեսնելով որ քաղցրութեամբ ոչինչ չէ կարող անել, երբ պատերազմը յաջողութեամբ վերջացրեց, սկսաւ բուռն միջոցների դիմել. հրովարտակ հանեց որ իւր իշխանութեան տակ գտնուող քրիստոնեաները իրանց կրօնը թողնեն և արեգակին երկրպագութիւն անեն, կրակը պաշտելով և մոգութեան օրէնքները կատարելով։ Միևնոյն ժամանակ Հայոց, Վրաց և Աղուանից զօրքերը Պարսկաստան արգելելով՝ ամեն տեսակ նեղութիւններ էր տալիս նոցա, թոշակները նուազեցնում էր, ձմեռը անտանելի տեղեր էր բնակեցնում, դժուար տեղեր պատերազմի էր ուղարկում և կոտորել տալիս։

Մինչ Հայերը օտար երկրում այսպիսի նեղութիւնների մէջ էին, Պարսից թագաւորի հրամանով եկաւ Հայաստան Դենշապուհ իշխանը աշխարհագիր անելու, որպէս թէ ժողովրդին հարկերից ազատելու և զօրքը թե-

կացնելու մտքով. բայց լիօք պատուէր էր ստացել ա-
ն միջոց գործ դնել երկրի ներքին կարգերը քանդելու:
ղեկավարականներին ցրուելու և ժողովրդին աղքատացնե-
լ նպատակով, Դենշապուհ եկեղեցիների ու վանքերի
այ հարկ դրեց և ընդհանրապէս երկրի տուրքերը ծան-
ացրեց, որպէս զի այսպիսով Հայերն ակամայ ստիպուին
դութեան օրէնքն ընդունելու: Բացի սորանից նախա-
սրների մէջ բանսարկութեամբ խռովութիւն սերմանեց,
ահան Ամատունու դէմ էլ, որ երկրի հազարապետն էր,
մբաստանութիւն հանեց և պաշտօնից հրաժարեցնելով՝
րա տեղ մի պարսիկ բերեց Հայաստան. հոգևորական
ռեաններն էլ խափանելու մտքով՝ մի մոգպետ դատա-
ր նշանակեց:

Այս ամեն բաներից յետոյ, Միհրներսեհը մոգպետի
րծակցութեամբ մի թուղթ գրեց Հայոց մեծամեծնե-
ն, որի մէջ զրադաշտական վարդապետութեան սկըզ-
ւնքը ներկայացնելուց և քրիստոնէական կրօնը պա-
սրակելուց յետոյ, պատուիրում էր նոցա կամ իւր նա-
մակի խօսքերին մի առ մի պատասխանել և կամ ան-
ջապէս Պարսից դուռը գալ: Ազգի եկեղեցական և աշ-
արհական գլուխները Յովսէփ կաթողիկոսի նախագա-
ւթեամբ ժողով կազմեցին Արտաշատում և մի զօրա-
ր պատասխան գրեցին հազարապետին, յայտնելով թէ
խարհային գործերի մէջ պատրաստ են ինչպէս միշտ
ազանդելու թագաւորին, իսկ կրօնի մասին ոչ նա ի-
աւունք ունի հակառակ հրաման տալու, և ոչ իրանք
սրտաւոր են հնազանդելու: Նամակը կնքվում էր այս-
իսի վճռական խօսքերով. «Այս հաւատից մեզ ոչ ոք չէ
րող շարժել, ոչ մարդիկ, ոչ հուր ոչ սուր: Մեր բո-

լոր հարստութիւնը քո ձեռքն է, մարմիններս էլ քո առաջը, արա ինչ որ կամենաս. քեզանից տանջանք և մեզանից համբերութիւն, քո սուրը և մեր պարանոցները»։

Բարկացաւ Թագաւորը Հայոց յանդգնութեան վրայ և իսկոյն հրովարտակ ուղարկեց Նախարարներին, որ գան իրան ներկայանան։ Նոքա խորհուրդ արին և վճռեցին գնալ, նախապէս խօսք տալով կաթողիկոսին, որ իրանց հաւատի վրայ հաստատուն կը մնան։ Գնացողների գլխաւորներն էին Վասակ մարզպանը, Վարդան Մամիկոնեան սպարապետը, Նախարդ հազարապետ Վահան Ամատունին, Ներշապուհ Արծրունին, Գադիշոյ Խորխոռունին և այլք. շատերը արդէն առաջուց Պարսից արքունիքում կամ բանակումն էին։ Յազկերտ սովորական պատուով չընդունեց Նախարարներին, այլ խստութեամբ վարուեցաւ նոցա հետ, սպառնալով որ եթէ իւր կամքը չկատարեն ամեն տեսակ տանջանքներ կը տայ նոցա, Հայաստան զօրք կ'ուղարկէ, նոցա կանանց ու որդոց կը կոտորէ և բոլոր ազգը բնաջինջ կ'անէ։ Նախարարները տեսնելով որ Թագաւորը ոչինչ խօսք չէ ուզում լսել, ժամանակ խնդրեցին մտածելու. նոքա յոյս ունէին որ պարսիկ իշխաններին պարգևներ խոստանալով՝ կը կարողանան մի կերպ այդ որոգայթից ազատուիլ. բայց ոչինչ չօգնեց։ Անճարացած՝ նոքա վճռեցին երեսանց քրիստոնէութիւնն ուրանալ, որպէս զի կարողանան գնալ իրանց երկիրը վերահաս վտանգից ազատել. ամենից վերջը համաձայնեցաւ իւր ընկերների հետ Վարդան Մամիկոնեան սպարապետը։

Նախարարների որոշման վրայ Թագաւորը անչափ ուրախանալով, առատ պարգևներ շնորհեց նոցա և մեծ

տուով յետ ուղարկեց. միայն ապահովութեան համար
տանդ պահեց իւր մօտ Վասակի երկու որդոց։ Նա-
րարների հետ մի գունդ զօրք էլ դրեց և 700 մոգ,
նք պատուէր ստացան բոլոր եկեղեցիները փակել և
սները արքունի գանձարանին յանձնել. քահանա-
ը չպիտի համարձակէին ուսուցանել ժողովրդին, այլ
ն կարգի մարդիկ ու կանայք աշխարհականի հա-
սա պիտի հագնէին, ամուսնութեան օրէնքը պիտի
ձուէր և բազմակնութիւնը հաստատուէր, որպէս զի
ազգը աճի ու բազմանայ։ Դեռ իրանց տեղերը չհա-
ր՝ մոգերը վիճակ էին ձգում թէ որ ազգը որ խմբին
ոի աշակերտ դառնայ (450)։

## 34.

*նարարների ուրացութեան գործը Հայոց երկրում.—Մոգ-*
*րի առաջին փորձի անյաջողութիւնը.—Վասակի նենգու-*
*նը.—Ուխտապահ Նախարարների միաբանութիւնը.—Մո-*
*ի կոտորածը.—Հայոց զօրքի բաժանումը և Վարդանի յաղ-*
*թիւնը Աղուանից երկրում (450).—Վասակի ուխտանենգ-*
*գութիւնը.—Վարդանի դարձը։*

Դեռ Նախարարները Պարսկաստանումն էին, որ
ոց բանակի մէջ եղած քահանաները շտապով մարդ
արկեցին Հայաստան նոցա ուրացութեան գործը տա-
Ամբողջ երկիրը մէկ ծայրից միւսը գրգռեցաւ. Հա-
ը հասկացան վտանգի բոլոր մեծութիւնը և ազգովին
քի դիմեցին, ոչ միայն մարդիկ, այլ և կանայք, հաս-
տ վճռելով քաջութեամբ մեռնել քան թոյլ տալ որ
նց եկեղեցուն ձեռնամերձ լինին։ Ընդհանուր ոգևո-
թիւնը մինչև այնտեղ հասաւ, որ որոշուեցաւ ամե-
մօտ ազգականներին անգամ չխնայել կրօնի փրկու-

թեան համար. եղբայրը եղբօր դէմ պիտի կռուէր, որդին հօր դէմ, կինը իւր ամուսնու դէմ՝ եթէ սոքա ուրանային ազգային եկեղեցին։

Այս տրամադրութեան մէջ էր երկիրը, երբ նախարարները մոգերի հետ հասան Հայաստան և բանակեցան Ծաղկոտ գաւառի Անգղ գիւղում, ուր մոգպետը կամենալով առաջին փորձն անել, մի կիրակի օր մոգերի ու զինուորների բազմութեամբ գնաց եկեղեցին կործանելու։ Ղեւոնդ երէցը, որ այդ միջոցին պատարագ էր մատուցանում, եկեղեցականների ու ժողովուրդի գլուխն անցած՝ փայտերով մոգերի գլուխները ջարդեց ու յետ քշեց։ Տրտմեցաւ վհատեցաւ մոգպետը և Վասակին մեղադրելով, որ գործի դրութիւնը ինչպէս հարկն է չէ հասկացրել Պարսից թագաւորին, «Թող գրեմ թագաւորին, ասաց, որ յետ կանգնի իւր դիտաւորութիւնից, որովհետև եթէ իրանք աստուածներն էլ օգնութիւն գան մեզ, անհնարին է մոգութեան օրէնքները հաստատել Հայոց մէջ. անզէն մարդիկ որ այսպիսի ոյժ գործ դրին, եթէ զինուորներն էլ իրանց հետ միաբանեցնեն, ով կը կարողանայ նոցա դէմ կանգնել»։ Վասակ հանդարտեցրեց մոգպետին և յորդորեց որ փոքր ինչ համբերէ։ Անմիջապէս Սիւնեաց երկրից զօրք բերել տուեց մոգերին թիկունք և օգնութիւն լինելու համար. ապա սկսեց խաբխբել ոմանց քաղցր խօսքերով, ուրիշներին պարգևներով, մի քանիսներին էլ սպառնալիքներով. միևնոյն ժամանակ նախարարների տները մոգեր էր բաժանել տալիս, ստիպելով որ զոհած միս ուտեն և արեգակին երկրպագութիւն տան. ինքն էլ ամբողջ գիշերները երգերով, գինարբութեամբ և անվայել պարերով էր լու-

նում, որպէս զի այսպիսով մարդկանց սրտերը գրաւէ ուլացնէ։ Այս բոլորը այնպէս էր անում Վասակ, է թէ իւր մտքը ոչինչ բանում խառն չէ. բայց շաը կասկածում էին նորա վրայ, ոչ միայն նորա հաոր որդիքը պատանդ էին, այլ որովհետև գիտէին ս փառասիրութիւնը։

Եկեղեցական դասը, որ այս ազգային շարժման չն ու հոգին էր, տեսնելով Վասակի նենգութիւնը՝ բազմութեամբ դիմեց Ձահապիվան քաղաքը, ուր րապետը նախարարների հետ խորհրդի էր նստած, որդորում էր որ կատարուած անօրէնութիւնների ժն առնուի։ Վարդան հասկանալով որ շատ թոյլ ւուց գործը կարող է վնասուիլ, կանչեց բոլորի ներութեանը. «Մինչև երբ պիտի համբերենք և ճշմարթիւնը թագցնենք»։ Բոլոր նախարարները Աւետաի վրայ երդուեցան հաւատարիմ մնալ եկեղեցուն և նց արիւնը չխնայել նորա պաշտպանութեան համար։ անից մէկը, Զանդազան, իրանց հետ միաբանել չոււն համար՝ բռնուեցաւ ու քարկոծուեցաւ. այդ դէպքը ազդեցութիւն արեց ամենի վրայ։ Այնուհետև նարարները սպարապետի հետ գնացին մարզպանի մօտ տիպեցին որ իւր միտքը յայտնէ։ Վասակ հարկադրեցաւ նոցա հետ միաբանելու և ինչան հաւատարմուան մատանիով աւետարանը կնքեց. նոյնն արին բո՝ որոնց մատանիով աւետարանը կնքուած չէր։

Այս եղելութիւններից սարսափած՝ մոգպետը իւր ութիւնը կենտրոնացրեց Զարեհաւան քաղաքի մօտ րևանդ գաւառում։ Նշանակեալ օրը Հայերը յարձաան մոգերի վրայ, շատերին կոտորեցին, մնացածնե-

րին ցրուեցին և կրակատունները քանդեցին։ Յետոյ ընկան այն բերդերի ու քաղաքների վրայ, որ Պարսիկները գրաւել էին, և ամեն տեղից քշեցին նոցա։ Այս առաջին յաջողութիւնից յետոյ, Յովսէփ կաթողիկոսը մարզպանի, սպարապետի և բոլոր աւագ նախարարների հետ միաբանած՝ Ատոմ Գնունու և Հմայեակ Մամիկոնեանի ձեռքով նամակ ուղարկեցին Թէոդոս Բ կայսեր, խնդրելով որ ի սէր քրիստոնէութեան օգնէ Հայոց այս մեծ ճգնաժամի մէջ։ Նոյն մտքով զանազան թղթեր ուղարկուեցան Յունաց Հայաստանի հայ իշխաններին և Անտիոքի Անատոլ սպարապետին։

Բայց դէպքերը այնպէս արագ յաջորդում էին միմեանց, որ անկարելի էր պատասխանի սպասել։ Մի գունդ պարսկական զօրք Ճորայ մարզպան Սեբուխտի առաջնորդութեամբ հոնաց կողմերից ուղարկուել էր Աղուանից երկիրը 300 մոգերով, որոնք երկրի մէջ ցրուելով՝ կամենում էին եկեղեցիներն աւերել և կրակատուններ շինել։ Աղուանից կաթողիկոսն ու հազարապետը եկան Հայերից օգնութիւն խնդրելու այն պայմանի զօրութեամբ, որ կապուել էր երեք ազգերի՝ Հայոց, Վրաց և Աղուանից մէջ։ Հայերը անմիջապէս իրանց զօրքը երեք գունդ բաժանեցին. առաջին գունդը յանձնեցին Ներշապուհ Արծրունուն և ուղարկեցին Ատրպատականի կողմը, որ Հայաստանի սահմանը Պարսիկներից պահպանէ. երկրորդ գունդը տրուեցաւ Վարդանին, որ Վրաստանի վրայով Աղուանից օգնութիւն գնաց. իսկ երրորդ գունդն առաւ ինքը Վասակ, իբրև թէ Հայաստանի կենտրոնը պահպանելու համար. բայց իրօք նա շրջապատեց իրան համախոհներով և սկսեց վնասել ընդհանուր գործին։

րդ ուղարկեց Սեբուխտին յայտնելու, թէ Հայոց մաս
ւ արեց ու թուլացրեց, և թէ նա համարձակ կարող
առաջ գնալ Վարդանի հետ պատերազմելու։ Սեբուխտ
յաւ Կուր գետը և երկու բանակները միմեանց պա-
հեցան Խաղխաղ քաղաքի մօտ։ Առաջին յարձակմամբ
երը պարսից գնդի աջ թեւը խորտակեցին և փախըս-
կաններին մինչև Լափնաս գետը հալածելով՝ կոտորե-
կամ գետի մէջ խեղդեցին։ Նոյնպէս և Պարսից մե-
մեծները՝ մինչ նաւակներով փախչում էին, Կուր գետի
խորասուզուեցան։ Իսկ հայ զօրավարներից միայն
ւշ Դիմաքսեանը ճախճախուտ տեղերի պատահելով
անուեցաւ։

Այնուհետև Վարդան հետզհետէ առաւ Աղուանից
րի այն բերդերն ու քաղաքները որ Պարսիկները
ուել էին, մոգերին կոտորեց և կրակատուները կոր-
նեց։ Աղուանից իշխաններն ու գիւղականները, որոնք
րսից ահից սարերն էին ապաւինել, եկան խառնուե-
ն Հայոց զօրքի հետ, և միասին գնացին հասան մինչև
ւաց սահմանագլուխը, քանդեցին Ճորայ դուռը, որ
րսից թագաւորը շինել էր լեռնականներին զսպելու
մար, և Վարդան Հոնաց մօտ դեսպան ուղարկելով
չն կապեց նոցա հետ, որ Հայոց օգնեն Պարսից դէմ
0)։

Այս յաջողութիւնների ժամանակ յանկարծ դեսպան
սաւ Հայաստանից և յայտնեց Վարդանին, թէ Վա-
կ իւր երդումը դրժեց, բերդերի պահպանութիւնը
ւ կողմի մարդկանց յանձնեց, շատ քաղաքներ ու գիւ-
ւ այրեց, եկեղեցիներ քանդեց և քահանաներ բան-
րկեց, ուխտապահ նախարարների գերդաստանները

իրանց բնակութեան տեղերից հալածեց և նոցա ոսկերը Սիւնեաց երկրի ամրոցներում փակեց. և այս բոլորը անպարգել գործեց նա, որովհետև արևելեան գունդը չկարողացաւ օգնութեան հասնել։

Վարդան աճապարեց Հայաստան վերադառնալու. բայց Վասակ, սպարապետի յաղթութեան լուրն առնելով, բռնած գերիները ու հարուստ աւարները թողել, գիշերով Այրարատից փախել էր իւր երկիրը։ Այսպիսով Այրարատը իւր ամրութիւններով դարձեալ ուխտապահ նախարարների ձեռքն անցաւ։ Որովհետև ձմեռը վրայ էր հասել և բաւական պաշար չկար, սպարապետը զօրքի մեծ մասը ցրուեց, պատուիրելով որ գարնան նորից հաւաքուին. իւր մօտ միայն մի քանի գունդ պահեց, որոնց շուտ շուտ ուղարկում էր ասպատակելու Սիւնեաց երկիրը։

## 35.

*Պատրաստութիւն պատերազմի. Վասակի նոր նենգութիւնները.—Հայոց հաստատամտութիւնը.—Միհրներսեհ Փայտակարանում.—Պարսից և Հայոց խմբուիլը Արտազու դաշտում.—Աւարայրի ճակատամարտը (451).—Մանր կռիւներ.—Ատրորմիզդ մարզպան. խոստումն թողութեան.—Նախարարների Պարսկաստան գնալը։*

Ձմեռը երկու կողմից պատրաստութիւնների մէջ անցաւ։ Վասակը Սիւնեաց երկրից ամեն տեսակ միջոցներ էր գործ դնում Հայոց միաբանութիւնը քանդելու և իւր բանակը ստուարացնելու նորանոր կուսակիցներով։ Անդադար նամակներ էր գրում Հայոց իշխաններին, գիւղականներին ու քահանաներին, հաւատացնելով թէ

Թագաւորը թոյլ է տալիս քրիստոնէութիւնը պաշտելու,
պստամբութեան և մոգերի սպանման համար էլ անյի-
աշար կը լինի՝ եթէ հեռու մնան Վարդանից և նորա
նկերներից։ Իսկ դուրսը աշխատեց և յաջողեցաւ հեռու
ահել Հայերից Վրացոց ու Աղուաններին, ինչպէս և
ունեաց մասի հայ իշխաններին, որոնցից Աղձնեաց իշ-
անը մտադիր էր օգնելու Հայոց. Հոնաց էլ անգործ
ահելու համար՝ արքունի զօրք բերել տուեց Ճորայ
ահակը պահպանելու համար։

Բայց և այնպէս Վասակ չկարողացաւ վհատեցնել
այոց. ազգի մեծագոյն մասը իւր իշխանների և բովան-
ակ հոգեւորական դասի հետ անյողդողդ մնաց իւր որոշ-
ան մէջ՝ մինչև վերջին շունչը պաշտպանել ազգային
օնն ու եկեղեցին։ Գործի իսկական դրութիւնը Պար-
ց թագաւորին հասկացնելու համար՝ Հայերը մի պար-
կ կապանքից արձակեցին և պատգամաւոր ուղարկե-
ն նորա մօտ, յայտնելով թէ Հայաստանի քարուքանդ
ելու և արքունի զօրքի կոտորուելու պատճառը քա-
քական ապստամբութիւն չէ, այլ այն՝ որ ստիպում
Նոցա ակամայ իրանց հայրերի կրօնից բաժանուել,
Վասակ թագաւորին խաբել է, հաւատացնելով որ
ր թէ Հայերը յօժար են մոգութիւնն ընդունելու։ Յազ-
տ մեղմացաւ կամ գոնէ այնպէս ձևացրեց, որովհետև
նաց հետ նոր անյաջողութիւն էր ունեցել և բացի
անից՝ վախենում էր որ չլինի թէ կայսրը պաշտպան
րս գայ Հայոց. ուստի հրովարտակ ուղարկեց Հայաս-
ն՝ անցածի համար ընդհանուր թողութիւն և կրօնի
տարեալ ազատութիւն խոստանալով։ Բայց շուտով
ոքը փոխեց, երբ հաստատ իմացաւ որ Յոյները ամե-

նեխին դիտաւորութիւն չունէին օգնելու Հայոց։ Արդարև Թէոդոս Բ Հայոց պատգամաւորութեան խնդիրքը լսելով՝ խոստացել էր օգնական զօրք ուղարկել Հայաստան. բայց մահը վրայ գալով՝ նորա յաջորդը Մարկիանոս յետ կանգնեցաւ այդ դիտաւորութիւնից, որովհետև հէնց այդ ժամանակ Հոնք Ատտիղայի առաջնորդութեամբ սպառնում էին կայսրութեանը։ Կայսեր որոշմանը ոչ սակաւ նպաստեց և այն թուղթը, որ Վասակ Սիւնին ներկայացրեց նորան համանուն և համամիտ Վասակ Մամիկոնեանի միջնորդութեամբ, որի մէջ մարզպանը յայտնում էր, թէ Ցազկերտ քրիստոնէութեան ազատութիւն է տալիս և թէ Հայերը խօսք լսել չեն ուզում, որովհետև նոցա միտքը Պարսից դէմ ապստամբելն է։

Այսպէս ամեն կողմից անօգնական էին մնացել Հայերը՝ յոյսերը Աստուծոյ և իրանց քաջուկների զօրութեան վրայ դրած, երբ Միհրներսեհ արքունի զօրքով եկաւ ու բանակ դրեց Փայտակարան քաղաքում, որպէս զի ամեն բան մօտիկից դիտէ ու ստուգէ Հայոց տրամադրութիւնը, նոցա զօրքի թիւը, զօրավարների հմտութիւնը և այլն։ Այս բոլոր տեղեկութիւնները որը անձամբ որը Վասակի միջնորդութեամբ առնելուց յետոյ, հազարապետը զօրքը յանձնեց Մուշկան Նիւսալաւուրտ զօրապետին, պատուիրելով նորան որ ամեն բանի մէջ Վասակի խորհրդով շարժի, և ինքը դարձաւ Պարսկաստան։

Նոր էին անցել Զատկի օրերը, որ յանկարծ լուր եկաւ թէ Պարսից բանակը եկել հասել է Հեր և Զարեւանդ գաւառը, և այնտեղից զանազան տեղեր ասպատակ է սփռում։ Վարդան անմիջապէս հրաւէր ուղարկեց

նախարարներին, որ իրանց զօրքերով գան ժողովուելու Արտաշատ քաղաքը. հաւաքուեցան 66,000 հոգի։ Սպարապետը հանդէս արաւ զօրքին և բոլոր պակասութիւնները լրացրեց. ապա տեղեկութիւն առնելով, որ թշնամին առաջ է գալիս և շուտով կը մտնէ Հայոց միջին նահանգները, Վարդան աճապարեց գնալ Պարսից առաջ, որ գուցէ սահմանագլխի վրայ կարելի լինի պատերազմը վերջացնել և այսպիսով երկիրը պատերազմի չարիքներից ազատ պահել։ Բայց Պարսիկները արդէն հասել էին Արտազ գաւառը, երբ Հայերը եկան բանակեցան նոցա հանդէպ Աւարայր գիւղում՝ Տղմուտ գետի ափին. Նոցա հետ էին Յովսէփ կաթողիկոսը, Ղեւոնդ երէցը և ուրիշ եկեղեցականներ։

Վասակ պատգամաւորների բերանով մի անգամ էլ փորձեց վհատեցնել ու ցրուել Հայոց՝ Թագաւորի կողմից ներումն խոստանալով, բայց ամեն բան զուր եղաւ։ Նոյն երեկոյին Ղեւոնդ երէցը կաթողիկոսի հրաւիրանօք մի հոգեշունչ քարոզ ասաց ու քաջալերեց զօրքին։ Խօսեցաւ և Վարդան և մի գեղեցիկ ճառով բացատրեց նոյն պատերազմի նշանակութիւնը. յետոյ Ս. Գիրքը ձեռքն առած՝ այս նոր Մակաբէն կարդաց բոլորի առաջ Մակաբայեցոց նկարագրութիւնը։ Լուսադէմին պատարագ մատուցուեցաւ և ամենքը հաղորդուեցան. և բոլոր զօրքը միաբերան աղաղակեց. «Թո՛ղ Աստուած մեր մահը արդարների մահուան հաւասար համարի և իւր որդոցը հեթանոսների ձեռքը չմատնէ»։

Մուշկան Նիւսալաւուրտ առաջ բերեց իւր փղերը և դաշտի երկայնութեամբ տեղաւորեց, ամեն մի փղի աջ ու ձախ կողմը հազար զինուոր դնելով. ամրացրեց

մանաւանդ իւր գնդի աջ թևը, որ ուղղակի Հայոց սպարապետի դէմ պիտի կռուէր. որովհետև Վարդան էլ պատերազմական խորհրդի համաձայն՝ իւր զօրքը չորս գնդի բաժանեց. առաջին գունդը յանձնեց Ներշապուհ Արծրունուն, երկրորդը Խորէն Խորխոռունուն, երրորդը Թաթուլ Վանանդեցուն, իսկ չորրորդ գունդը պահեց իրան՝ օգնական առնելով Արշաւիր Կամսարականին և Համազասպ եղբօրը։

Պատերազմը սկսաւ նետաձգութեամբ գետի երկու կողմից։ Հայերը իրանց զօրապետի ձայնից քաջալերուելով՝ անցան գետը և սկսան ջարդել պարսից։ Վարդան կոտրեց թշնամիների աջ թևը և մինչև անգամ Մատեան գնդի մէջ շփոթութիւն ձգեց. պարսիկները փախչելու վրայ էին։ Այդ տագնապի ժամանակ Հայոց զօրքի մի մասը թուլացաւ և յետ քաշուեցաւ. Պարսից զօրավարը սիրտ առաւ, քաջալերեց իւր զօրքը և պահեստի փղեր բերելով՝ շրջապատեց Վարդանին իւր ընկերներով։ Դիւցազնը ընկաւ, և պատերազմը վերջացաւ ամբողջ օրը տևելուց յետոյ։ Վարդանի հետ այս անմոռանալի ճակատամարտի մէջ մեռան Խորէն Խորխոռունին, Արտակ Պալունին, Հմայեակ Դիմաքսեանը, Ներսեհ Քաջբերունին, Վահան Գնունին, Արսէն Ընծայեցին, Գարեգին Սրուանձտեանը և շատ գլխաւորներ, ընդամենը 1036 հոգի։ Իսկ Պարսից կողմից ընկան 3544 մարդ, որոնցից ինը զօրավար (451 յուլիսի 2)։

Այսպիսով պատերազմի դաշտը թէև Պարսից մնաց և Հայերը ցրուեցան, բայց յաղթութիւնը թանգ արժեցաւ նոցա։ Հայերը յաղթուեցան պարսկական ոյժերի առաւելութիւնից, բայց բարոյապէս անընկճելի մնացին և շարունակեցին մաքառել թշնամիների դէմ. Սակայն

արավհետև սպարապետը և շատ զորավարներ մեռել էին,
չէր կարելի այնուհետև բաց դաշտում պատերազմել.
ուստի մնացած զօրքերը քաշուեցան երկրի բերդերն ու
բնական ամրութիւնները և հայկական սովորութեամբ
սկսան մանր կռիւներ տալ Պարսից դէմ։ Հարաւում՝
Տմորիսի ամուր բերդերից յարձակուելով պարսկական
սահմանների վրայ, շատ տեղեր ասպատակում, կողոպ-
տում ու այրում էին։ Հիւսիսում՝ Արցախի խիտ ան-
տառների մէջ ապաւինողները դեսպան ուղարկեցին դաշ-
նակից Հոնաց մօտ, որոնք արշաւեցին Պարսկաստանի
վերին կողմերի վրայ և շատ գաւառներ աւերեցին։ Միջին
Հայաստանի բերդերը պաշարուեցան Պարսիկներից, բայց
շատը անվնաս մնացին, մանաւանդ Կապոյտ լերան հզօր
ամրութիւնները, որոնց մէջ ապաստանողները մեծ տագ-
նապ էին բերում Պարսից վրայ։ Զօրաւոր խմբեր կազ-
մուել էին նոյնպէս Խաղտեաց սահմանի վրայ Հմայեակ
Մամիկոնեանի ձեռքով, որ Գարխար լերան ամրութիւն-
ներից անդադար յարձակւում էր Տայոց ձորագաւառի
վրայ և մեծ կոտորածներ անում այնտեղ գտնուող Պար-
սից մէջ. այստեղ երկար ժամանակ դիմանալուց յետոյ՝
քաջութեամբ ընկաւ Վարդանի եղբայրը արիւնահեղ
կռուի մէջ։ Մուշկան Նիւսալաւուրտ իր կրած վնաս-
ները տեսնելով՝ զօրքը կենտրոնացրեց և գործի դրու-
թիւնը յայտնեց Տիզբոն՝ բոլոր ձախորդութիւնների յան-
ցանքը Վասակի վրայ բարդելով, որի խորհրդով յանձն
էր առել բերդերի պաշարումը։

Շփոթեցաւ Յազկերտ իր ձեռնարկութեան անյա-
ջող ելքը տեսնելով, տրտմեցաւ մանաւանդ Հոնաց ամ-
բութիւնների աւերուելու վրայ, որոնք այնքան դժուա-

րութեամբ էին շինուել։ Հրաման ուղարկեց Մուշկան Նիւսալաւուրտին, որ պատերազմական գործողութիւնները դադարեցնէ Հայոց երկրում և Հոնաց վրայ երթայ. Ատրորմիզդին էլ մարզպան կարգեց Վասակի տեղ, որին պատուիրեցաւ անյապաղ դուռը գալ։ Ատրորմիզդ թագաւորից ստացած յանձնարարութիւնների համեմատ, հրամայեց որ եկեղեցիները բացուին և ամեն մարդ իւր կրօնը ազատ պաշտէ, ակամայ մոգութիւն ընդունողներն էլ իրաւունք ունենան իրանց առաջուայ կրօնը դաւանելու. Նոյնպէս խոստացաւ հարկերը թեթևացնել և Հայոց երկիրը պահպանող Պարսից զօրքը քշացրեց։ Իսկ բերդերում ապաւինած նախարարներին և գիւղականներին քաղցրութեամբ որսալու համար՝ թագաւորի կողմից մարդիկ ուղարկեց որ գան և ամենքը իրանց ստացուածքի տէր դառնան. միայն Յովսէփ կաթողիկոսը և Ղևոնդ երէցը՝ իբրև ապստամբութեան յորդորողներ և Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսը և մի քանի քահանաներ կրակատուններ քանդելուն համար, ինչպէս նաև Մամիկոնեան և Կամսարական տոհմերի մանուկները, կալանաւորուեցան և ջորիների վրայ կապած ուղարկուեցան Պարսկաստան։ Նոցանից յետոյ ճանապարհ ընկաւ Վասակ՝ իւր ծառայութիւնների փոխարէն Հայոց թագաւորութիւնը ստանալու համար։ Ճանապարհին Ղևոնդ երէցը սթափեց նորան իւր ցնորքից՝ մինչ կեղծաւորութեամբ ողջունելով անցնում էր կապեալների մօտով, ետևիցը կանչելով. «Սիւնեաց Տէր, եթէ դու կարողանաս գլուխդ ուսերիդ վրայ մէկ էլ Հայաստան վերադառնալ, այն ժամանակ թող Աստուած պատիժս տայ»։

Շուտով նախարարներն էլ կանչուեցան Պարսկաստան. և սոքա տեսնելով որ երկրի մէջ խաղաղութիւն չէ ընկնում, յանձն առին երթալ և բոլոր վնասների պատճառը հասկացնել Թագաւորին։

---

## 36.

*Նախարարների և Վասակի դատաստանը արքունի ատենի առաջ.—Վասակի դատապարտութիւնը և մահը.—Քահանաները և նախարարները Նիւշապուհի բերդում. քահանաների նահատակութիւնը (454).—Նախարարների ազատութիւնը և դարձը Հայաստան (463)։*

Երբ Կաթողիկոսը քահանաների ու իշխանների հետ հասան արքունի ձմերոցը, Միհրներսեհը Յազկերտի հրամանով նախ մի ընդհանուր հարցափորձ արաւ. ապա ատեան բացուեցաւ, և Թագաւորը անձամբ դատաւոր նստաւ նախարարների ու Վասակի մէջ։ Ուխտապահ իշխանները Յազկերտի առաջ կապուած բերուեցան՝ իբրև ապստամբներ, իսկ Վասակ եկաւ իւր բոլոր նշաններով զարդարուած. նա հագել էր Թագաւորից ստացած պատուական հագուստը, գլխին ոսկեղէն խոյր էր դրել, մէջքին մարգարտազարդ և ականակուռ ոսկեձոյլ կամար, ականջներին օղեր, վզին գումարտակ և ուսերին սամոյր. միայն արքայական պատիւն էր պակաս, և այն էլ յոյս ունէր շուտով ստանալու։ Հայ իշխանները Արշաւիր Կամսարականի բերանով ներկայացրին Թագաւորին իրանց դատը բոլոր պարագաներով։ Կարդացուեցաւ այն նամակը, որ Վասակ գրել էր Վարդանին, երբ սա Պարսկաստանից վերադարձած՝ իւր ընտանիքով գնում էր

Յունաց երկիրը. Վասակ խարդախութեամբ յետ դարձ-
րեց նորան ճանապարհից, որ գայ Պարսից դէմ պատե-
րազմելու, ասելով որ եթէ ոչ Յունաց կայսրը, գոնեա
Հոնաց Թագաւորը անպատճառ կ'օգնէ Հայոց։ Մէջ բե-
րուեցան նոյնպէս կայսեր և Անատոլ սպարապետի անու-
նով գրուած Թղթերը, ինչպէս նաև Յունաց մասի Հայ
իշխաններին ուղարկուած նամակները, բոլորն էլ Վա-
սակի սեղՀական մատանիովը կնքուած, որոնք ներկա-
յացնում էին նորան իբրև ապստամբութեան գլխաւոր
առաջնորդը։ Մողերը Հաստատեցին, Թէ Վասակի մասը
խառն էր իրանց ընկերների սպանման գործի մէջ Զա-
րեՀաւանում։ Մուշկան Նիւսալաւուրտի ամբաստանու-
Թիւնից էլ ստուգուեցաւ, որ նա անՀաւատարիմ գտա-
նուեցաւ արքունի Հարկերի մատակարարութեան մէջ։
Նոյն իսկ Վասակի ազգականները Հրապարակ Հանեցին
նորա խարդախութիւնները և վկայեցին, Թէ նա նեն-
գութեամբ սպանել տուեց իւր Վաղինակ Հօրեղբօրը
Սիւնեաց երկրի իշխանութիւնը ձեռք ձգելու Համար։

Թագաւորը Վասակի երեսովը տուեց իւր բոլոր
խարդախութիւնները, Հրամայեց բանտարկել նորան և
նորա տան վրայ աՀագին տուգանք դրեց արքունի Հար-
կերի պակասորդը լրացնելու Համար։ Հանեցին նորա
փառաւոր զարդերը և մաՀապարտի Հագուստ Հագցնե-
լով՝ ձեռք ու ոտքը կապեցին, կանացաբար մատակ ձիու
վրայ նստեցրին և տարան մութ բանտի մէջ փակեցին։
Այնտեղ մի քանի տարի մնաց դառն տանջանքների ու
աղքատութեան մէջ, այնպէս որ ծառաները Հաց էին
մուրում և բերում նորա Համար. մինչև որ վերջապէս
ոսկալի ցաւերի մէջ ընկած՝ որդնալից մեռաւ, գերեզ-

*մանի տեղ անգամ ունենալու չարժանանալով այն երկրում, որի վրայ մասնութեամբ կամենում էր Թագաւորել։ Իսկ Սիւնեաց երկրի իշխանութիւնը Վասակի դաւաճանութեան օրը ստացաւ նորա փեսան՝ Վարազվաղան Սիւնին։*

*Իսկ քահանաները շղթայակապ պահուեցան նախ այնտեղ արքունի ձմեռոցում, և ապա Ապար աշխարհի Նիւշապուհ քաղաքի բերդում. Նոցա հետ Յազկերտ իւր երդման հակառակ՝ բանտարկեց բոլոր նախարարներին, թուով 35 հոգի, որոնք առհասարակ Արծրունեաց, Մամիկոնեանց, Կամսարականաց, Ամատունեաց, Գնունեաց և ուրիշ տոհմերից էին։ Շուտով կապեալ քահանաները արժանացան մարտիրոսական պսակն ընդունելու։ Մինչ Յազկերտ Քուշանաց դէմ յանձն առած արշաւանքի անյաջողութեան պատճառներն էր որոնում, մոգերը Միհրներսեհի դրդմամբ բոլոր մեղքը քրիստոնեայ քահանաների վրայ ձգեցին, որոնք այնքան կրակատուններ էին կործանել և դեռ աստուածների վրէժը չէր առնուել նոցանից. և Թագաւորը հրամայեց սաստիկ տանջանքներով սպանել սուրբերին, ոմանց հէնց այնտեղ բանտում, մեծ մասն էլ Նիւշապուհ քաղաքից դուրս մի անապատ տեղ, որպէս զի քրիստոնեաները նոցա մարմինները չգտնեն* (454)։

*Նախարարները այնուհետև դեռ մի քանի տարի էլ անտրտունջ կրեցին բանտի տանջանքները հեռու իրանց հայրենիքից ու գերդաստաններից։ Նոցա կանայքը թէև ազատ էին, բայց կամաւոր նեղութիւնների ենթարկեցին իրանց անձինքը իրանց ամուսինների սիրոյ համար. Նոքա իրանց ձեռքերի աշխատութեամբ էին կերակրվում,*

և արքունիքից նշանակուած ռոճիկը ուղարկում էին իրանց ամուսիններին. միևնոյն ժամանակ խնամք էին տանում իրանց զաւակների կրթութեան վրայ, յորդորելով նոցա որ իրանց հայրերին հետևող լինին։ Վերջապէս Ձորմշապուհ իշխանի միջնորդութեամբ Յազկերտ հաւանեցաւ ազատել նախարարներին բանտի կապանքներից, ռոճիկ կապեց նոցա և խոստացաւ արձակել իրանց երկիրը՝ տալով ամեն մէկին իւր հայրենի իշխանութիւնը. բայց մահը թոյլ չտուեց նորան իւր խոստումը կատարելու։ Նորա երկու որդիքը գահակալութեան համար միմեանց դէմ պատերազմելով, կրտսերը Պերոզ սպանեց անդրանիկ Որմզդատ եղբօրը և նստաւ հօր տեղը։ Այս խռովութիւնը և Աղուանից թագաւորի ապստամբութիւնը Հայոց նախարարներին դեռ երկար ժամանակ Պարսկաստան արգելուելու պատճառ եղան։ Աղուանից թագաւորը զղջալով իւր հաւատուրացութեան վրայ՝ միաբանել էր լեռնական թագաւորների հետ և պատերազմ էր հրատարակել Պարսից, որոնց երեսովն էր տալիս Հայոց դէմ գործած ապերախտութիւնը. «Այնքան սիրոյ և ծառայութիւնների փոխարէն, ասում էր նա, փոխանակ լաւութիւն անելու Հայոց՝ արևից զրկեցիք նոցա»։ Հաշտութիւնը կայացաւ Աղուանից թագաւորի քրիստոնեայ մնալու պայմանով և հայ իշխանները կարողացան վերջապէս դառնալ իրանց հայրենիքը 12 տարի բանտի ու պանդխտութեան մէջ անցկացնելուց յետոյ (463)։

---

## Ե. ԵՐԿՐՈՐԴ ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ

## 37.

*Պարսից նոր փորձը Հայոց հաւատափոխ անելու.—Գիւտ կաթողիկոս (465—475). Դեսպանութիւն Լևոն Ա կայսեր.—Համայեակ Մամիկոնեանի որդիքը. Վահան Մամիկոնեան.—Վրաստանի անցքերը և Հայոց ապստամբութիւնը. Սահակ Բագրատունի մարզպան և Վահան Մամիկոնեան սպարապետ (481)։*

*Տեսանք թէ ինչպէս Պարսից զօրութիւնը խորտակուեցաւ Հայոց միաբանութեան առաջ. զուր Յազկերտի բուռն հալածանքը փոխանակ ընկճելու Հայոց, ընդհակառակն խրախուսեց նոցա աւելի յամառութեամբ պաշտպանելու իրանց ազգային իրաւունքները։ Հայերը միանգամ էլ հաստատեցին այն ճշմարտութիւնը, թէ բարոյական ոյժը նիւթականից գերազանց է, որքան և այս վերջինը զօրաւոր լինի։ Տիզբոնի արքունիքը համոզուեցաւ որ իւր ձեռնարկութեան մէջ յաջողելու համար՝ պէտք է քաղաքականութիւնը փոխէ, ուստի և նոր՝ հրահանգներ ուղարկեց Դուինի մարզպանին։ Արդէն Ատրորմիզդ պատուէր էր ստացել արքունիքից քաղցրութեամբ վարուել Հայոց հետ և նոցա սիրտը շահել։ Այժմ նորա յաջորդը Ատրվշնասպ աշխատում է առանց խռովեցնելու Հայոց՝ կամաց կամաց թուլացնել նոցա եռանդը և անզգալի կերպով տարածել նոցա մէջ արեգակի ու կրակի պաշտօնը. նորան խորհրդակից և օգնական են լինում ուրացեալ նախարարները, որոնց գլխաւորներն էին այդ ժամանակ Գադիշոյ Խորխոռունին և Գդիհոն Սիւնին՝ Վարազվաղանի յաջորդը։ Սոոր ու անարժան անձինք առաջ էին տարվում հաւատուրացութեան համար, իսկ*

արժանաւոր մարդիկը, որքան և մեծ ծառայութիւններ մատուցանէին, անարգվում էին, եթէ քրիստոնէութեան մէջ հաստատ էին մնում. փառք, պատիւ, պաշտօն, տանուտէրութեան իշխանութիւն շռայլաբար տրվում էին անխտիր ամեն տեսակ անպիտան անձանց, որոնք հաւատափոխութիւնը յանձն էին առնում։ Այսպիսով ինչ որ չյաջողուեցաւ անել մի ժամանակ բանտն ու սուրը, այժմ գլուխ էր բերվում պատիւների ու մեծութեան հրապոյրներով։ Ուստի պէտք էր տեսնել, ասում է ժամանակակից պատմագիր Ղազար Փարպեցին, թէ ինչպէս հեռացել էր Հայաստանի միջից լաւութիւնը, ինչպէս կորել էր իմաստութիւնը, մեռել քաջութիւնը, ծածկուել թաք կացել քրիստոնէութիւնը։ Հայոց զօրքը, որ մի ժամանակ ամենից քաջանուն էր երևում և զօրագլուխները անուանի ու յաղթող, այժմ ամենի համար ծաղրի ու կատակի առարկայ էին դարձել։ Մինչև անգամ ինքը Պերոզ թագաւորը յայտնի ասում էր թէ՝ «անպիտան մարդ կամ յետնեալ զօրք եթէ իմ տէրութեան մէջ կայ՝ Ասորին է, բայց Ասորուց էլ անպիտանն ու յետնեալը Հայն է»։

Ժամանակի կաթողիկոսը Գիւտ (465—476) իբրև արթուն հովիւ հսկում էր իւր հօտի վրայ, յորդորելով ամենին որ ուղիղ ճանապարհից չշեղուին և իրանց հայրերի առաքինութեանը հետևող լինեն։ Բայց վտանգը մեծ էր և պէտք էր աւելի ազդու միջոցների դիմել նորա առաջն առնելու համար։ Առաքինի իշխաններից ոմանք խորհուրդ արին կաթողիկոսի հետ որ Յունաց օգնութեամբ ազգը ազատագրեցնեն։ Երկու անգամ ծածուկ դեսպաններ ուղարկուեցան Լևոն Ա կայսեր, բայց

գործն երկարացաւ և ապստամբութեան խորհուրդը յետաձգուեցաւ։ Կաթողիկոսը սկսաւ այնուհետև յայտնի զգուշացնել ժողովրդին Պարսից լարած թակարդներից. թուլացեալներին համոզում էր հաստատ մնալ իրանց կրօնի մէջ, և ուրացեալներին ծանր խօսքերով յանդիմանում էր։ Գաղիշոյ Խորխոռունին իր անպատուութեան վրէժն առնելու համար՝ գնաց մատնեց նորան Պերոզին։ Գիւտ կանչուեցաւ Դուռը և կաթողիկոսութիւնից զրկուելով՝ վերադարձաւ Հայաստան։

Սակայն Հայաստանի փրկութիւնը պէտք է գար դարձեալ այն տոհմից, որ մի անգամ ազատել էր նորան վերահաս վտանգից։ Վարդան արու զաւակ չթողնելով, Մամիկոնեան նախարարութեան տանուտէրութիւնը անցաւ Հմայեակի որդոց, որոնց Պարսից ձեռքից ազատել էր Վրաց Աշուշա բդեշխը, Հմայեակի փեսան, և յանձնել էր իրանց Ձուիկ մօրը (454)։ Այնտեղ Վրաստանում անցան երեք եղբայրների՝ Վահանի, Վասակի և Արտաշէսի մանկութեան առաջին տարիները իրանց իմաստուն մօր խնամակալութեան ներքոյ. իսկ կրտսեր եղբայրը Վարդ մնացել էր դայեակների մօտ Տայոց երկրում։ Յետոյ Հայաստան գալով, Գիւտ կաթողիկոսի կրթութեան խնամքը վայելեցին Արշաւիր Կամսարականի որդոց հետ, որոնք մօտիկ ազգակցութիւն ունէին նոցա հետ։ Շուտով Մամիկոնեան եղբայրները իրանց խելքով և ճարտարութեամբ ամենի ուշադրութիւնը իրանց վրայ դարձրին, մանաւանդ անդրանիկը Վահան, որ իւր խոհեմութեամբ և ոսկեհատի գործի մէջ ցոյց տուած հաւատարմութեամբ այնքան սիրելի եղաւ արքունի գործակալներին, որ նորա համբաւը մինչև թագաւորի ականջն հա-

սաւ։ Բայց նախնեաց գործերի յիշատակը չէր թոյլ տալիս նորան արժանաւոր պատիւ ընդունելու, մանաւանդ որ նորա նախանձորդները անդադար վախեցնում էին Պարսից ասելով. «Երբ և իցէ սա էլ նոյն խռովութիւնները պիտի հանէ ձեր գլխին»։ Վահան չարախօսների բերանը կարկելու ուրիշ հնար չգտնելով՝ գնաց դուռը և հաւատն ուրացաւ։ Բայց այս հաւատափոխութիւնը, որ իւր հօրեղբօր նման առերես էր յանձն առել, մտատանջութեան մէջ ձգեց նորան և նա այնուհետև մի յարմար առիթի էր սպասում ազատելու իւր անձը խղճահարութիւնից, միանգամայն և իւր ազգը Պարսից նեղութիւններից։

Առիթը շուտով ներկայացաւ։ Վախթանգ Վրաց թգաւորը, օգուտ քաղելով Պերոզի Հեփթաղաց դէմ ունեցած պատերազմից, սպանեց Վազգէն ուրացող թագաւորին, որ Վարդանի դստեր Շուշանիկի այրն էր, և Վրացոց ապստամբեցրեց Պարսից դէմ։ Հայոց զօրքը, որ այդ ժամանակ Աղուանից երկրում գումարուած էր Հոնաց դէմ, եկաւ բանակ դրեց Շիրակայ դաշտում, որպէս զի պատրաստ լինի Վրաստանի վրայ գնալու։ Մի քանի նախարարներ, որ Վահանի գիտաւորութիւնը գիտէին, եկան առաջարկեցին նորան որ հանգամանքներից օգուտ քաղէ և ապստամբութեան դրօշակը բարձրացնէ։ Խորագէտ Վահանը բացէիբաց մերժեց, պատճառ բռնելով Պարսից զօրութիւնը և Հայոց անօգնական վիճակը. «Բայց ամենից աւելի դուք ինքներդ ձեզանից վախեցէք, ասաց նա, որովհետև խաբեբայ ու վախկոտ մարդիկ էք. լաւ է ուրեմն որ ձեր դատարկ ու անպէտք խորհրդներիւ համար ինձ նեղութիւն չտաք»։ Այս կծու խօսքերը Վա-

հանի սպասած ազդեցութիւնը գործեցին իշխաններու
վրայ. բոլորն էլ ոտքի կանգնեցան և միաբերան գոչե-
ցին. «Լաւ է մի ժամում մեռնինք քան ամեն օր եկեղե-
ցու ու ժողովրդի անպատուութիւնը տեսնենք». և ամենքը,
քրիստոնեայ և ուրացող, աւետարանի վրայ երդուեցին
հաստատուն մնալ իրանց խօսքին։ Բայց այս անգամ էլ
մի դաւաճան գտնուեցաւ ժողովրդի մէջ, Վարազ-Շապուհ
Ամատունին, որ գիշերով գնաց նախարարների խորհուրդը
յայտնեց Ատրվշնասպ մարզպանին։ Շփոթեցաւ մարզպանը,
առաւօտը վաղ ինքը և Պարսից կուսակից նախարար-
ները բոլոր բազմութեամբ գնացին բանակ դէպի Անի
ամրոցի մօտ, իսկ գիշերը փախան ապաւինեցան Արտա-
շատի բերդը, այնտեղից էլ յաջորդ գիշերը անցան Ատր-
պատական։ Հայերը ընկան փախչողների ետևից, ձեռք
ձգեցին նոցա թողնուած ձիաները և եկան գրաւե-
ցին մարզպանական քաղաքը Դուին։ Այստեղ կազմուե-
ցաւ մի ժամանակաւոր կառավարութիւն, որի գլուխը
ընդհանուր հաւանութեամբ դրուեցան Սահակ Բագրա-
տունի ասպետը իբրև մարզպան և Վահան Մամիկոնեանը
իբրև սպարապետ (481)։

## 38.

*Ակոռու կռիւը.—Պատրաստութիւն նոր պատերազմի.—Ներսեհապատի ճակատամարտը* (482). *Վարդ Մամիկոնեան.—Վրաց Վախթանգ թագաւորի խարդախութիւնը. Ճարմանայնի ճակատամարտը. Վահանի դժուարութիւնները.—Վրաց նոր խաբէութիւնը. Զարմիհր Հազարաւուխտ.—Երէզի և Շաէի կռիւները.—Վահան Դուինում* (483)։

Ատրվշնասպ ուրացեալ հայ իշխաններից գրգռուած՝ ջանաց շուտով յետ դառնալ և քանի որ դեռ Հայերը լաւ պատրաստուած չեն, ապստամբութիւնը իւր բնում խեղդել. ուստի Ատրպատականի կողմերից զօրք ժողովելով՝ աճապարեց հասաւ Երասխի ափը Նախիջևանի դէմուդէմը։ Հայերը՝ թէև իրանց զօրութիւնը դեռ չէին հաւաքել, Վախթանգից էլ կապուած դաշինքի համեմատ Հոնաց օգնական զօրք չէին ստացել բայց և այնպէս չվհատեցան. կազմուեցաւ մի փոքրիկ գունդ 400 հոգուց բաղկացած, որ Յովհան Մանդակունի կաթողիկոսի օրհնութիւնն առնելուց յետոյ՝ ուղարկուեցաւ թշնամու դէմ. իսկ մարզպանը և սպարապետը մնացին Դուին ընդհանուր գործողութիւնների վրայ հսկելու համար։ Վարագկերտ գիւղը որ հասան, նախարարները լուր առին թէ Պարսից զօրքը գետն անցել է և թւում 7,000 է. խորհուրդ արին և որոշեցին դաշտից սարի կողմն անցնել որպէս զի անյաջողութեան դէպքում լեռները իրանց ապաւէն ունենան. ուստի գնացին բանակ դրին Մասիսի տակ Ակոռի գիւղի մօտ։ Պարսիկները Հայոց սակաւութիւնը տեսնելով, կարծեցին թէ խելքները կորցրել, մեռնելու են եկել, և իսկոյն յարձակեցան նոցա վրայ։

Կռուի սկզբում Գարջոյլ Խորխոռունին իւր գնդով անցաւ Պարսից կողմը, բայց և այնպէս Հայերը քաջութեամբ պատերազմեցան։ Ատրվշնասպ մարզպանը սպանուեցաւ և նորա զօրքի մէջ շփոթութիւն ընկաւ. Հայերը քշեցին Պարսից մինչև հեռաւոր ձորերն ու քարքրոտ տեղերը։ Գարջոյլ ցրուած զօրքի մի մասը ժողովելով՝ փորձեց ետևի կողմից Հայոց վրայ ընկնել. բայց Հրահատ և Ներսեհ Կամսարականները վրայ հասան փախցրին նորան։ Այս յաղթութեան աւետիսը Դուին հանելով, Կաթողիկոսը խուռն բազմութեան ներկայութեանը մաղթանք կատարեց եկեղեցում։

Ձմեռը հանգստացան և պատերազմի պատրաստութիւն տեսան գարնան համար։ Սպարապետը մարդիկ ուղարկեց ամեն նախարարութիւններին, յայտնելով նոցա բոլոր եղելութիւնները և հրաւիրելով որ գան միաբանին իւր հետ հասարակաց թշնամու դէմ։ Բայց այս հրաւէրը շատ քիչ անձանց սրտում արձագանք գտաւ. միայն Յովհան Անձևացին և Ներսեհ Երուանդունին իրանց զօրքերն առած՝ գնացին Դուին։ Նոյնպէս և Վախթանգ իբր իւր խոստումը կատարելու համար՝ մի տեղից 300 Հոն ժողովեց և ուղարկեց Հայաստան. բայց մի ամիս յետոյ այն էլ յետ կանչեց զանազան պատճառներ բերելով։

Գարնան սկզբին Պարսիկները Ատրներսեհի առաջնորդութեամբ մտան Հեր և Զարեւանդ գաւառը. նոցա գլխաւոր ուղեցոյցն էր Գդիհոն Սիւնին։ Շտապեցաւ և Վահան իւր զօրքով և մարզպանի ու կաթողիկոսի ուղեկցութեամբ հասաւ հուչակաւոր Արտազ գաւառը, ուր երեսուն տարի առաջ Հայերը այնքան արիութեամբ կռուել էին միևնոյն թշնամիների դէմ և նոյն սուրբ

գործի համար։ Այստեղ, կաթողիկոսի օրհնութիւնը առնելուց յետոյ, Ներսեհապատ գիւղի մօտ սպարապետը զօրքը կարգի դրեց և պատերազմը սկսաւ։ Կռուի սկըզբում Հայոց զօրքը Պարսից բուռն յարձակումից շփոթեցաւ, աջ թևը յետ մղուեցաւ և սկսաւ փախչել։ Վահան տեսնելով որ իւր հրամանները լսող չկայ, երեսը խաչ հանեց և Կամսարական եղբայրների հետ ընկաւ Պարսից ձախ թևի վրայ ու մեծ կոտորածով յետ մղեց. փախստականները քաջալերուած յետ են դառնում և նոր զօրութեամբ յարձակւում են թշնամիների վրայ։ Յաղթութիւնը կատարեալ էր, Պարսիկները ցրուեցան պատերազմի դաշտը դիակներով ծածկած թողնելով. ընկածների թւումն էր Ատրվշնասպ մեծ իշխանը։ Մինչ յաղթութեամբ և աւարով վերադառնում էին կաթողիկոսի օրհնութիւնն առնելու, բանակի մէջ ձայն տարածուեցաւ թէ սպարապետի եղբայրը Վարդ, որ Պարսկաստանում պատանդ էր թողած, բանդից ազատուելով եկաւ իւր ծառաների հետ (482)։

Արտազից Հայոց զօրքը գնացել էր Ծաղկոտն գաւառը փոքր ինչ հանգստանալու, երբ յանկարծ Վախթանգից դեսպան եկաւ դաշնակից Հայոց օգնութիւնը խնդրելու Պարսից դէմ, որոնք Միհրանի զօրավարութեամբ պաշարել էին Վրաց երկիրը, և թագաւորը չկարողանալով դէմ դնել նոցա, ապաւինել էր Հայոց սահմանակից լեռները. դեսպանը հաւատացնում էր թէ մինչև Հայոց գալը հոնաց գունդն էլ կը հասնի։ Հայերը առանց ժամանակ կորցնելու գնացին բանակ դրին սահմանագլխի բարձրութիւնների վրայ, որտեղից Վախթանգ խաբէական խօսքերով տարաւ նոցա Ճարմանայի դաշտը Կուր

գետի ափին, ուր իբրև թէ հոնք սպասում էին Հայոց։ Բայց Հոնաց տեղ շուտով եկաւ Միհրան իւր զօրքով և Կուր գետի միւս կողմը կանգ առաւ։ Վախթանգի խարդախութիւնը աշկարայ եղաւ, բայց էլ ճար չկար. հարկ էր պատերազմ տալ Պարսից անհադին բազմութեանը, որոնց զօրավարին Հայոց գնդի մի մասը առաջուց խօսք էր տուել անգործ մնալու։ Վահան, որից այդ դաւը ծածուկ էր մնացել, իւր սովորական քաջութեամբ ընկաւ Պարսից վրայ, մինչ սոքա Կուր գետն անցնում էին, և մեծ կոտորած գործեց։ Բայց այդ միջոցին Հայոց և Վրաց զօրքի մի մասը երեսները դարձրին և սկսան փախչել նենգութեամբ կանչելով. «Հայերը փախա՜ն, գլուխներդ ազատեցէք»։ Այս աղաղակը պատերազմող զօրքի մէջ մեծ խառնակութիւն ձգեց, և ամենքը առհասարակ փախչող փախչողի եղան։ Պարսիկները ընկան Հայոց և Վրաց ետևից և նոցանից շատ մարդ կոտորեցին։ Այս դժբաղդ կռուի մէջ Հայերը մեծ կորուստ ունեցան. Սահակ մարզպանը և Վասակ Մամիկոնեանը սպանուեցան, Հրահատ Կամսարականը գերի ընկաւ, իսկ Բաբգէն Սիւնին վիրաւորուած գտնուեցաւ և ազատուեցաւ Վահանի ձեռքով։

Այնուհետև պիտի սկսէին Վահանի բուն դժուարութիւնները, որոնց մէջ ակն յայտնի փայլեցան նորա աչալրջութիւնը, անվեհերութիւնը և ռազմագիտական ընդունակութիւնները։ Չկարողանալով արձակ դաշտում պատերազմել, առանց զօրքի և միայն փոքրիկ խմբեր ունենալով իւր ձեռքի տակ, արտաքին և ներքին թշնամիներով շրջապատուած, անդադար տեղէտեղ փոխուելով, ցերեկը հանգիստ և գիշերը քուն չունենալով, որպէս զի մի թակարդի մէջ չընկնի,—այս զարմանալի

մարդը իւր յանկարծական յարձակումներով յոգնեցնում, Թուլացնում էր Պարսից բանակները, այնպէս որ վերջապէս ահ ու սարսափ ձգեց Թշնամիների վրայ. Պարսից զօրավարների բոլոր ջանքերը գուր եղան նորան բռնելու կամ դաւաճանութեամբ սպանել տալու։ Վրաստանի պատերազմից յետոյ Միհրան իւր բոլոր զօրութեամբ ընկաւ Վահանի ետևից, որ Տայոց կողմերը ապաւինած՝ հազիւ հարիւր մարդ ունէր իւր հետ։ Յուսալով որ սպարապետը առանց ընդդիմութեան անձնատուր կը լինի, Միհրան բանագնացութեան մէջ մտաւ նորա հետ, բայց այդ միջոցին հրաման եկաւ նորան Պարսկաստան վերադառնալու, և նա ճանապարհ ընկաւ՝ գերիներին հետը տանելով։ Ճանապարհին Հրահատ Կամսարականը յաջողեցաւ փախչելով ազատուել նորա ձեռքից։

Դարձաւ Վահան Այրարատ նահանգը և Վաղարշապատի մայր եկեղեցում ուխտապահ նախարարների հետ Աստուծոյ գոհաբանութիւն մատուցանելուց յետոյ, գնաց Դուին ձմեռն անցկացնելու համար։ Վրացիք մի անգամ էլ փորձեցին խաբելու Հայոց սպարապետին, սուտ լուր ուղարկելով նորան՝ Թէ Սահակ Մարզպանը և Վասակ Մամիկոնեանը մեռած չեն, այլ պատերազմում վիրաւորուած ընկնելով՝ մի քանի ազատեց տարաւ նոյա իւր վանքը և այժմ ձորերի մէջ ծածկվում են Թշնամուց, որ ետևներիցն ընկած է։ Վահան ոչինչ հաւատ չընծայեց այս խօսքերին. բայց շատերը, մանաւանդ յիշեալ նախարարների ընտանիքը, համոզեցին Մուշեղ Մամիկոնեանին, որ մի գնդով երԹայ ազատէ նոցա, չնայելով սպարապետի իմաստուն խորհրդներին, որ հաւատացնում էր Թէ այդ արշաւանքը միայն այն օգուտը կ՚ունե-

նայ, որ Հայոց քիչ զօրութիւնն էլ կը բաժանէ և մեծ դժբաղդութեան պատճառ կարող է լինել այսպիսի տագնապալից ժամանակում։

Շուտով Վահանի գուշակութիւնը կատարուեցաւ։ Գարունը բացուելուն պէս՝ Զարմիհր Հազարաւուխտ զօրապետը մեծ բանակով մտաւ Հայաստան և Արտաշատի մօտ Երասխն անցնելով՝ այնտեղ ուխտանենգ նախարարներից իմացաւ որ Հայոց գնդի կէսը Վրաստան է գնացած, ուստի և ուղղակի Դուինի վրայ գնաց։ Սպարապետը չկարողանալով իւր քիչւոր զօրքով պատերազմ տալ, քաշուեցաւ Խաղտեաց ամուր տեղերը. այնտեղ եկաւ և Մուշեղ ամբողջ ձմեռը Վրաստանի զանազան կողմեր զուր թափառելուց յետոյ։ Հազարաւուխտ ընկաւ Վահանի ետևից, հասաւ մինչև Ցունաց բաժնի Հայաստանը, ուր լրտեսներից տեղեկացաւ թէ սպարապետը Վարայվարոյ գիւղումն է մի յոյնի տանը. բայց այնտեղ գտաւ միայն Կամսարականների կանանց, որոնց գերեց, յուսալով թէ նոցանով կը կարողանայ Վահանին որսալ, և դարձաւ Բասեն գաւառը։ Այստեղ Տիզբոնից հրաման եկաւ նորան որ երթայ Վրաստան և չթողլ տայ Վախթանգին միաբանելու Հեփթաղաց հետ, որոնց վրայ արշաւում էր Պերոզ։ Վրաստանն էլ Հայաստանի պէս երկպառակութեան մէջ էր. Պարսից կուսակից իշխանները միաբանեցան Հազարաւուխտի հետ և Վախթանգ փախաւ Եգերացոց երկիրը։ Իսկ իւր տեղը Հազարաւուխտ մարզպան թողեց Շապուհ Միհրանեանին, պատուիրելով նորան որ Վահանին ողջ կամ մեռած ձեռք ձգէ. նորան օգնական տրուեցաւ Գդիհոն Սիւնին։

Վահան այս նոր զօրավարին էլ երկար ժամանակ

խալացրեց՝ անակնկալ յարձակումներով վռնտելով Պարսից գնդերին, որոնք այս այն կողմը ցրուած՝ զուր աշխատում էին բռնել նորան։ Արշարունեաց գաւառի Երէզ գիւղումն էր, երբ յանկարծ իմացաւ որ Ճապուհ իւր բոլոր զօրքով մօտենում է նոյն գիւղին։ Հնարագէտ Վահանը ժողովեց Երէզի բնակիչներին և իւր գնդի հետ խառնելով՝ գիշերով ընկաւ Պարսից բանակի վրայ և այնպիսի շփոթութիւն ձգեց նոցա մէջ, որ սկսան միմեանց կոտորել. իսկ ինքը անվնաս գնաց Ճոէ գիւղի ձորերում գիշերուան մնացած մասը անցկացնելու։ Առաւօտեան տեսաւ որ Ճապուհ ետևից հասել է, ժողովեց իւր փոքրիկ գունդը, մի քանի քաջալերական խօսքեր ասաց և մինչ կամենում էր յարձակուիլ, շատերը վհատած թողին ու փախան. մնացին միայն Մուշեղ և Կամսարական եղբայրները 40-ի չափ զինուորներով։ Խմբից մէկը ձայն տուեց. «Զգոյշ եղիր, տէր, անձդ պահպանէ»։ —«Էլ զգոյշ լինելու ժամանակ չէ», կանչեց Վահան և երեսը խաչակնքելով առաջ դիմեց։ Հաւատարիմ խումբը հետևեցաւ նորան, ճեղքեց անցաւ ապշած Պարսից միջով աջ ու ձախ մահ սփռելով։ Ընկածների մէջ էր և հպարտ Գդիհոն Սիւնին, որ պարծենում էր թէ «ես Վահանի ու բոլոր այդ Հայոց հետ ոչ թէ նետով կը կռուիմ այլ նետիս կոթովը բոլորին կը ցրուեմ»։

Ճապուհ վհատեցաւ, մանաւանդ որ այնուհետև շուտով լուր առաւ թէ Պարսիկները մեծ անյաջողութիւն ունեցան Հեփթաղաց աշխարհի մէջ, ուր Պերոզ սպանուել էր, և ինչպէս Հազարաւուխտ Վրաստանից, այսպէս և Ճապուհ Հայաստանից կանչվում էր պետական խորհրդի ներկայ լինելու համար։ Սովորական մաղթանք-

ներ Վաղարշապատում կատարելուց յետոյ, արքունիքը
գնաց Դուին, որտեղից ուշադրութեամբ հետեւում էր
Պարսկաստանի անցքերին (483)։

---

## 39

*Առաջարկութիւն հաշտութեան Պարսից կողմից.—Նուարսակի
դաշնագրութիւնը (484).—Վահան Պարսից երկրում.—Վահան
մարզպան (485)։*

Պարսից մեծամեծների ժողովը գաւող Պերոզի տեղ
գահի վրայ նստեցրեց նորա հեղ ու խաղաղասէր Վա-
ղարշ եղբօրը։ Նորընտիր թագաւորի առաջ մանրամա-
նօրէն ներկայացրին Հայոց երկրի հանգամանքները, ա-
պստամբութեան պատճառն ու հետեանքները, և Վաղարշ
Հազարաւուխտի ու Ճապուհի խորհրդով՝ Նիխոր իշխա-
նին յանձնեց գնալ Հայաստան և հաշտութիւն անել Վա-
հանի հետ։ Եկաւ Նիխոր զգուշութեան համար հետը զօրք
բերելով, և չվստահանալով երկրի ներսերը մանելու՝
կանգ առաւ Հեր և Զարեւանդ գաւառի Նուարսակ գիւ-
ղում. այստեղից պատգամաւոր ուղարկեց Դուին իւր
գալստեան նպատակը յայտնելու։ Վահան ժողովեց իւր
հաւատարիմ ընկերներին՝ որոնք նեղութեան օրերին
անբաժան էին մնացել իրանից, և նոցա հաւանութեամբ
հաշտութեան պայմանները հետեւեալ երեք կէտերի մէջ
ամփոփեց. 1. Քրիստոնէութիւնը Հայոց աշխարհի օրի-
նաւոր կրօնը պիտի ճանաչուի, ոչ մի հայ մարդ բռնի
չպիտի ստիպուի կրօնափոխ լինել և ոչ ոքի հաւատու-
րացութեան համար մեծութիւն ու իշխանութիւն պիտի

չտրուի, կրակատուններն էլ ամեն տեղ պէտք կործանուին։ 2. Արժանաւոր ու անարժան անձանց մէջ խտրութիւն պիտի լինի, անպիտան ու վնասակար մարդիկը հեռու պիտի պահուին և լաւերն ու օգտակարները առաջ պիտի քաշուին։ 3. Թագաւորը ամեն ամբաստութիւններին չպիտի հաւատայ, այլ ինքն անձամբ պիտի քննէ ամեն բան և այնպէս դատաստան անէ։ «Եթէ այս պայմանները կ'ընդունիք, ասաց Վահան պատգամաւորներին դառնալով, կը հաշտուինք ձեզ հետ և դարձեալ կը հնազանդւինք ձեզ. իսկ եթէ չէք ընդունիլ, պատրաստ ենք մինչև մեր վերջին շունչը կռուելու, և աւելի ուրախութեամբ կը մեռնինք, քան պարսիկ մարդու առաջ գլուխներս կը խոնարհեցնենք»։

Նիխոր ուրախութեամբ ընդունեց հաշտութեան նախապայմանները և Վահանին իւր մօտ հրաւիրեց վերջնական դաշնագրութիւնը կնքելու համար։ Սպարապետը ուխտապահ նախարարների և զօրքի հետ գալով Արտագաւառի Եղինդ գիւղը, Նիխորից պահանջեց ու ստացաւ իբրև պատանդ Պարսից մեծամեծներից ութ հոգի, և ապա դիմեց պարսկական բանակը դրօշակները պարզելով և պատերազմական փողերը հնչեցնելով։ Պարսիկները այլայլեցան, կարծելով թէ Վահան խաբէութեամբ պատերազմելու է գալիս. առաջ եկան հրաւիրակները Պարսից զօրապետի կողմից, հասկացնելով նորան թէ միայն Արեաց սպարապետը իրաւունք ունի փողեր հնչեցնելով բանակը մտնել։ «Դու առաջ ինձ Արեաց թագաւորին հպատակ արա, պատասխանեց խրոխտ Մամիկոնեանը, յետոյ առանց քո ասելուդ՝ ես ինքս էլ լաւ գիտեմ ձեր երկրի կարգն ու կանոնը»։ Նիխոր մեծ պատուով ընդու-

նեց Վահանին և նորա ուխտակից ընկերներին, փառաւոր հացկերոյթ տալով և ուրախութիւն անելով նոցա հետ, մինչդեռ ուխտանենգները դուրսը կանգնած մնացին ամօթահար։ Հաշտութիւնը Վահանի ուզածին պէս կայացաւ և երկու կողմի իշխանները գոհ սրտով բաժանուեցան միմեանցից (484)։

Քիչ ժամանակից յետոյ Վահան առիթ ունեցաւ ցոյց տալու իւր հաւատարմութիւնը Պարսից թագաւորին։ Պերոզի Զարեհ որդին Վաղարշից ապստամբելով, կամենում էր թագաւորութիւնը խլել նորանից։ Վահան Նիխորի խնդրանօք մի գունդ օգնական զօրք ուղարկեց Պարսկաստան Վրէն Վանանդեցու առաջնորդութեամբ։ Զարեհ յաղթուեցաւ ու սպանուեցաւ։ Արդէն ամեն բան վերջացել էր, երբ հասաւ Դուռը Վահան իւր զօրքով։ Նա ներկայացաւ թագաւորին և Նուարսակի դաշնադրութեան հաստատութեան հետ ստացաւ Մամիկոնեան տոհմի տանուտէրութիւնը և հայ զօրքի սպարապետութիւնը. Նորա խնդիրքով Հրահատին էլ շնորհուեցաւ Կամսարականաց տանուտէրութիւնը։ Ապա Վահան վերադարձաւ Հայաստան, ուր Յովհան կաթողիկոսը դիմաւորեց նորան և բոլոր ուխտապահներին, և Վաղարշապատում գոհաբանական մաղթանքներ անելուց յետոյ՝ ամենքը միասին գնացին Դուին մայրաքաղաքը։

Այսպիսով Հայաստանը խաղաղացաւ չորս տարի պատերազմների ասպարէզ լինելուց յետոյ։ Անդեկան պարսիկը, որ նոյն տարին մարզպան ուղարկուեցաւ Հայաստան, խորհուրդ տուեց թագաւորին մարզպանութիւնը հայ մարդու յանձնել, որ օտարից լաւ է ճանաչում երկրի բոլոր կարօտութիւնները. մանաւանդ երբ

Վահանի նման խելացի ու արդարասէր մարդ կայ, ա-սում էր նա, «անյարմար է ուրիշ մարզպան նշանակել»։ Վաղարշ համոզուեցաւ և մարզպանութեան իշխանու-թիւնը հրովարտակով յանձնեց Վահանին։ Արքունի հրո-վարտակը ստացուելուն պէս՝ Վահան բոլոր նախարար-ների հետ եկեղեցի գնաց Աստուծոյ փառաբանութիւն մատուցանելու համար, և Յովհան կաթողիկոսը խուռն բազմութեան ներկայութեանը մի հոգելից ճառ խօսե-ցաւ, որով շնորհաւորում էր ուխտապահներին իրանց տարած յաղթութիւնը և յորդորում էր նոցա ներողամիտ լինել և գթութեան ձեռք կարկառել ուխտանենգնե-րին (485)։

---

## Զ. ՊԱՐՍԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԸ

### 40.

*Հայաստանի վիճակը պարսկական տիրապետութեան վերջին շրջանում.—Յունաց կրօնական ատելութեան սկիզբը.—Կաւատի հանած հալածանքը Հայոց դէմ. Վահան Մամիկոնեանի դի-մադրութիւնը* (493).—*Վարդ. Մժէժ Գնունի* (518 - 548).—*Սուրէն. Հայոց ապստամբութիւնը և նուաճումը. Վղոն-Միհր մարզպան* (578)։

Վարդանանց և Վահանեանց փոթորկալի ժամա-նակներից յետոյ Հայաստանը մէկ ու կէս դարու չափ դարձեալ մնաց Սասանեանց իշխանութեան տակ։ Այս շրջանի Պարսից թագաւորները, մանաւանդ առաջին-ները, հետևեցան իրանց նախորդների քաղաքականու-թեանը և աւելի կամ պակաս խիստ միջոցներով աշխա-

տեցան գլուխ տանել այն ձեռնարկութիւնը, որի համար Ցազկերտի ու Պերոզի օրով այնքան արիւնհեղութիւններ էին եղել։ Հայ մարզպանների տեղ գալիս են մի շարք Պարսիկ մարզպաններ, որոնց վարչական գլխաւոր գործունէութիւնը հայ ազգը կրօնափոխութեամբ պարսկացնելու անպտուղ ջանքերի մէջ է կայանում։ Բայց կամաց կամաց հանգամանքները փոխվում են։ Պարսկաստանը ներքին երկպառակութիւններով և գահակալութեան համար մղուած կռիւներով այն աստիճանի թուլութեան է հասնում, որ Տիզբոնի արքունիքը ստիպվում է ոչ միայն քաղցրութեամբ վարուիլ Հայոց հետ, այլ և նոցա օգնութեանը դիմել ներքին և արտաքին թշնամիների դէմ։ Պարսիկ մարզպանների տեղ բռնում են հայ իշխանները, որոնք իրանց սուրը գործ են դնում երբեմն Արեաց թագաւորին իւր գահի վրայ պահպանելու։

Այդ միեւնոյն ժամանակներում Բիւզանդիայի կայսրութիւնը արևմտեան ազգերի արշաւանքներից ազատուելով՝ իւր ուշադրութիւնը դարձնում է Արևելքի վրայ։ Նշանաւոր կայսրներ, որպիսի են Անաստաս, Մօրիկ, Հերակլ (Ե—Է դար) իրանց պատերազմներով կայսրութեան ընկած վարկը բարձրացրին արևելցոց աչքում։ Հայերը թշնամանալէս պարսկական բռնութիւնից ազատուելու համար՝ պիտի յարէին քրիստոնեայ յոյն ազգին և ոչ միայն կայսրների հովանաւորութիւնը խնդրէին, այլ նոյն իսկ նոցա իշխանութեան տակ մտնելու յօժարութիւնը պիտի ցոյց տային։ Սակայն իրանց Յունաստանի ազգակիցների վիճակը խրտնեցնում էր նոցա Յոյներից, որովհետև առանձին անհատներ մեծամեծ պատիւներ էին հասնում այնտեղ, մինչև նոցանից մէկը՝ Մօրիկ Զ-րդ

դարու վերջերը կայսրութեան գահը բարձրացաւ, բայց ժողովուրդը տանջվում էր յոյն գործակալների հարստահարութիւնից։ Հայերը շուտով հասկացան նենգաւոր Յունաց քաղաքականութեան նպատակը, նոքա տեսան թէ մի պայմանով միայն կարող են կայսրների օգնութեան վրայ յոյս դնել, այն է կրօնական միութեան կամ նոյն է՝ ազգային միութեան պայմանով, որովհետև քաղաքական կեանքի անկումից յետոյ, եկեղեցին ազգային ինքնապահպանութեան միակ գրաւականն էր մնում Հայոց համար։ Մինչև այդ ժամանակները Հայերը մասնակից էին եղել տիեզերական ժողովներին, իսկ Քաղկեդոնի ժողովին նրանք ներկայ չգտնուեցան, նախ՝ որովհետև մի ստիպողական հարկ չկար և երկրորդ, որովհետև մինչդեռ Յոյնք և Լատինք աստուածաբանական նուրբ վէճերով էին զբաղուած, Հայերը պատերազմի դաշտում պաշտպանում էին քրիստոնէութեան գործը։ Բիւզանդիան իւր քաղաքական նպատակներին հասնելու գլխաւոր արգելք համարելով այս հանգամանքը, հէնց սկզբից ամենայն յամառութեամբ աշխատեցաւ ընդունել տալ Հայոց Քաղկեդոնի որոշումները և Վաղարշապատի ժողովը, որ գումարեց Բաբգէն կաթողիկոսը և ուր հրապարակաւ մերժուեցաւ Քաղկեդոնի ժողովը, եղաւ սկիզբն այն մեծ ատելութեան Յունաց և Հայոց մէջ, որ տևեց մինչև նորագոյն ժամանակները և մեծամեծ դժբաղդութիւնների պատճառ եղաւ (491)։ Այս հանգամանքների մէջ Հայերը քրիստոնեայ Յոյներից լաւ համարեցին հեթանոս Պարսից իշխանութեան տակ մնալ, երբեմն խաղաղ կեանք վարելով, երբեմն էլ մաքառելով նոցա անիրաւութիւնների դէմ, մինչև որ վերջապէս Է-րդ դա-

քում մահմէտականութիւնը երևեցաւ Արաբիայում և այս քոլոր կռիւներին վերջ դրեց՝ Հայաստանը Պարսկաստանի հետ Խալիֆների նահանգ դարձնելով։

Հայաստանը Վաղարշի թագաւորութեան ժամանակ խաղաղութիւն վայելելով, նորա մահից յետոյ դարձեալ ալեկոծեցաւ։ Կաւատ, արիւնարբու Պերոզի որդին, մոգերի դրդմամբ իւր նախորդների տուած արտօնութիւնները ջնջեց և նոր հալածանք հանեց Հայոց դէմ։ 493-ին Հայաստանը կրկին լցուեցաւ մոգերով, որոնք եկան կրակատուններ շինելու և մոգութեան ուսում սերմանելու Հայոց մէջ։ Վահան ստիպուեցաւ միւսանգամ զէնք առնել այն սուրբ գործի համար, որի պաշտպանութեանը նուիրել էր իւր կեանքի ամենալաւ տարիները. նախարարների հետ միաբանած դուրս ելաւ նա Պարսից դէմ, զօրքն ու մոգերը կոտորեց և կրակատունները կործանեց։ Կաւատ զայրացած՝ պատրաստվում էր անձամբ արշաւել Հայաստան, երբ յանկարծ ներքին ապստամբութեամբ գահից զրկուեցաւ, և թէպէտ շուտով կրկին թագաւորութիւնը ձեռք ձգեց, բայց պարտաւորուեցաւ հաշտութիւն անել Հայոց հետ, և նոցանից օգնութիւն առնելով գնաց Յունաց վրայ, որոնք կամենում էին նորից հաստատուել Միջագետքում։ Այնուհետև Վահան խաղաղութեամբ անցկացրեց իւր իշխանութեան տարիները և մեռաւ 510-ին 25 տարի խոհեմութեամբ և իմաստութեամբ ազգը կառավարելուց յետոյ։

Նորա տեղ մարզպան նստաւ եղբայրը Վարդ։ Բայց շուտով Կաւատ ամբաստանութիւններ հանել տուեց Վարդի դէմ և իշխանութիւնից զրկելով նորան՝ պարսիկ մարզպան կարգեց։ Թէև մի քանի տարի յետոյ Կաւատ

ստիպուեցաւ պարսիկ իշխանին յետ կանչել և Հայոց մարզպանութիւնը յանձնել Մժէժ Գնունի քաջ իշխանին (518—548), որ Հոնաց Հայաստանի յանձն առած արշաւանքի առաջը կտրելով մեծ համարում էր ստացել, բայց Մժէժից յետոյ դարձեալ Դենշապուհ պարսիկն եկաւ։ Զուր Մովսէս Բ կաթողիկոսը, Հայոց Տոմարի նորոգիչը, Խոսրով Նուշիրվան թագաւորին բողոքեց նոր մարզպանի անիրաւութիւնների դէմ, յիշելով Վաղարշի կրօնական ազատութեան համար տուած հրովարտակը. Դենշապուհ յետ կանչուեցաւ, բայց նորան յաջորդեցին մի քանի պարսիկ մարզպաններ, մէկը միւսից աւելի դաժան մարդիկ, մանաւանդ վերջինը՝ Սուրէն, որ անօրէնութիւնների չափն անցկացրեց, ժողովրդին չարչարելով և նախարարների հետ ընկնելով, որոնցից Մանուէլ Մամիկոնեանին սպանեց։ Հայերը ստիպուեցան ոտքի կանգնել. այս նոր ապստամբութեան գլուխ կանգնեցաւ Մանուէլի եղբայրը Վարդան Մամիկոնեան, որ Յուստինոս կայսեր խոստման վրայ վստահացած՝ նախարարների միաբանութեամբ ընկաւ Սուրէնի վրայ, սպանեց նորան և Պարսից զօրքն ու մոգերը կոտորեց։ Խոսրով հետզհետէ երկու բանակ ուղարկեց Հայաստան, որոնցից առաջինը խորտակուեցաւ Հայոց միաբանութեան առաջ, իսկ երկրորդի առաջ՝ նախարարների մէջ ծագած երկպառակութեան պատճառով տեղի տուեց Վարդան և գնաց Կոստանդնուպօլիս Յուստինոսի օգնութիւնը խնդրելու։ Կայսրը զօրք ուղարկեց Հայաստան, բայց արդէն ուշ էր. Պարսիկները երկիրը գրաւել էին և կայսերական լեգէոնները երկար ժամանակ անպտուղ կերպով կռուելուց յետոյ՝ ստիպուեցան յետ քաշուիլ Հայաստանը

Խոսրովի ձեռքը թողնելով։ Թագաւորը Վղոն-ճիհր իշխանին մարզպան կարգեց, պատուիրելով նորան որ Հայոց հետ քաղցրութեամբ վարուի (578)։ Վղոն-ճիհր Հայաստանի վերջին պարսիկ մարզպանն եղաւ։

---

## 41.

*Պարսկաստանը Խոսրով Նուշիրվանից յետոյ. Սմբատ Բագմայաղթ.—Տարօնի Պատերազմները. Գայլ Վահան և Սմբատ.—Դուին Սահառունի և Վարազտիրոց Բագրատունի մարզպաններ. Թէոդորոս Ռշտունի։*

Խոսրով Նուշիրվան Սասանեան հարստութեան վերջին նշանաւոր թագաւորն եղաւ. նորանից յետոյ Պարսից թագաւորութիւնը կամաց կամաց դէպի իւր անկումն է դիմում։ Արքայից արքան, որից երբեմն դողում էին իւր ընդարձակ տէրութեան հպատակները, այժմ իշխանների ձեռքին խաղալիք է դառնում և մինչև իսկ իւր գահի վրայ ապահով չէ։ Խոսրով Բ, Նուշիրվանի թոռը, իւր իշխանների ձեռքով թագաւորութիւնից զրկուելով՝ Մօրիկ կայսեր օգնութեանը դիմեց, որի հետ մօտիկ բարեկամութիւն ունէր։ Կայսրը օգնութիւն ուղարկեց նորան Ներսէս հայ իշխանին յոյն զօրքով, որի հետ միացան նաև Տարօնի իշխան Մուշեղ Մամիկոնեանը և Սմբատ Բագրատունին իրանց զօրքերով։ Խոսրով միւս անգամ թագաւորութեան հասնելով երեք հայ իշխանների ձեռնտուութեամբ, մեծամեծ պարգևներ ու պատիւներ տուաւ նոցա, մանաւանդ Սմբատ Բագրատունուն, որին կարգեց Հայաստանի և Վրկանից մարզպան, ապա իւր զօրքի սպարապետութիւնն էլ նորան յանձնեց։

Իբրև պարսից սպարապետ, Սմբատ մեծ յաղթութիւններ արաւ Խոսրովի թշնամիների դէմ, մանաւանդ Հեփթաղաց դէմ, որոնց թագաւորին սպանեց մենամարտութեան մէջ, և այս պատճառով Բագմայաղթ կոչուեցաւ։

Ինչ որ պատահեցաւ Տիզբոնում, նոյնը շուտով կրկնուեցաւ և Բիւզանդիոնում. Մօրիկ կայսրը դաւաճանութեամբ սպանուեցաւ և նորա տեղ նստաւ Փոկաս զօրապետը։ Խոսրով 140,000 զօրքով արշաւեց Յունաստան իւր բարեկամի ու բարերարի մահուան վրէժն առնելու համար. Մուշեղ Մամիկոնեանին էլ պատուէր ուղարկեց, որ ինքն էլ իւր զօրքով Յունաց վրայ երթայ։ Մուշեղ ըստ ոմանց Խոսրովի հետ թշնամացած լինելով, բայց աւելի հաւանականաբար նոր կայսեր վրէժխնդրութիւնից վախենալով, մանաւանդ որ իւր երկիրը Յունաց բաժնի Հայաստանումն էր գտնվում, տեղից չշարժեցաւ, այլ Տարօն գաւառը ամեն կողմից ամրացրեց, լաւ գիտենալով որ Պարսից թագաւորը այդ անհնազանդութիւնը անպատիժ թողնելու չէ։ Եւ յիրաւի Խոսրով իւր արշաւանքից վերադառնալիս՝ Կարին քաղաքից Միհրան քեռորդուն 30,000 զօրքով ուղարկեց Մուշեղի վրայ։ Միհրան մտաւ Տարօն և Արձան բլրի վրայ բանակ դնելով՝ 8,000 հոգւով գնաց Մեղտիի և Աստեկօն բերդի վրայ։ Մուշեղ նորա դէմ ուղարկեց իւր ազգական Վահանին, որ իւր անօրինակ քաջութեան համար Գայլ էր ասվում։ Այս փորձառու և հնարագէտ զօրավարը չկամենալով իւր բոլոր զօրութիւնը վտանգի ենթարկել, գնաց Միհրանի մօտ և բարեկամ ձևացաւ նորան, իսկ ծածուկ առանձին գնդերով յարձակւում էր Պարսից վրայ և չարաչար կոտորում։ Նախ Օձ քաղաքի

մօտ ջարդեց 4,000 հոգի, յետոյ ուրիշ 2,000 էլ նոյն հնարքով. ապա Մեղտի գետի մօտ 1,000 մարդ կոտորեց, մի ուրիշ 1,000 էլ նոյն օրը դարան մտած Հայոց սպանել տուեց։ Այս ամենը այնպէս ծածուկ և արագութեամբ գլուխ բերեց, որ ժամանակ չտուեց Պարսից իւր խարդախութիւնները հասկանալու։ Նոյն իսկ Միհրան չազատուեցաւ Գայլ Վահանի դաւանակալութիւնից, որ իբրև բարեկամ գնալով Պարսից զօրապետի մօտ, խնջոյքի ժամանակ սպանեց նորան իւր օգնականների հետ։ Այս բոլոր գործողութիւնները կատարուեցան 604 թուին. նոյն տարին մեռաւ Մուշեղ, և Տարօնի իշխանութիւնը անցաւ 88 տարեկան Գայլ Վահանի ձեռքը։

Խոսրով թէև շատ պատերազմների մէջ զբաղած էր, բայց իւր զէնքերի անպատուութիւնը չկարողանալով տանել, նոր բանակ ուղարկեց Տարօն։ Գայլ Վահան, որ 28,000 ընտիր զօրք պատրաստած ունէր խորամանկութեամբ նստած էր Մուշ և կենդանութեան նշան չէր ցոյց տալիս։ Պարսից զօրապետը Վախթանգ Վահանի անշարժութիւնը երկիւղի տեղ ընդունելով, 4,000 մարդ ուղարկեց նորա վրայ։ Դուրս եկաւ Վահան իւր Սմբատ որդու հետ, և թշնամիներին մէջ առնելով՝ գիշերով այնպիսի ջարդ տուաւ նոցա, որ հազիւ 50 հոգի ազատուեցան։ Եկան ուրիշ 5,000 հոգի. Վահան և Սմբատ սոցա էլ չարաչար ջարդեցին։ Այդ միջոցին մեռաւ անխուճ Գայլ Վահանը և նորա տեղ անցաւ իւր որդին Սմբատ (606)։ Վահանի մահը մեծ վստահութիւն տուաւ Վախթանգին. նա գնաց անձամբ Սմբատի վրայ, որ 10,000 զօրքով դուրս եկաւ նորա առաջ, խորտակեց ու ցրուեց

Պարսից բանակը. Վախթանգին էլ սպանեց և նորա կնոջն ու որդոցը գերի տարաւ։

Այնուհետև Պարսիկները դադարեցան Տարօնի վրայ արշաւելուց, մինչև որ 20 տարի յետոյ Վախթանգի եղբայրը Սուրէն եկաւ իւր եղբօր մահուան վրէժն առնելու և նորա ընտանիքը գերութիւնից ազատելու. բայց նորա զօրքը կոտորուեցաւ, ինքն էլ սպանուեցաւ (627)։ Նոյն քաղղն ունեցան ուրիշ երկու զօրավարներ, որոնք հետզհետէ եկան Սմբատի վրայ։ Սմբատ մեռաւ 632-ին և նորան յաջորդեց Տարօնի իշխանութեան մէջ որդին Վահան, որ իւր կնոջ տոհմի անունով Կամսարական էր կոչվում։

Մինչդեռ Տարօն անընդհատ պատերազմների ասպարէզ էր, Հայաստանը ընդհանրապէս խաղաղ կառավարվում էր հայ մարզպանների ձեռքով։ Սմբատ Բագրատունու տեղ Խոսրով Հայոց վրայ մարզպան կարգեց Դաւիթ Սահառունուն (600), որ վերջերը կասկածի տակ ընկնելով իբրև Յունաց կուսակից, ընտանիքն առաւ և գնաց Յունաստան 23 տարի մարզպանութիւն անելուց յետոյ։ Նորա տեղ Խոսրով մարզպան նշանակեց Սմբատ Բագրատունու որդուն՝ Վարազտիրոց Բագրատունուն, որ իւր կեանքը նոյնպէս վտանգի մէջ տեսնելով Պարսից նենգութիւնից, տնով տեղով Յունաց երկիրը տեղափոխուեցաւ։ Պարսկաստանը այդ ժամանակ ներքին խռովութիւնների մէջ լինելով՝ Յունաց ազդեցութիւնը սկսաւ զօրանալ Հայոց երկրում, և Հերակլ կայսրը Դաւիթ Սահառունուն Հայաստանի կառավարիչ կարգեց Կիւրապաղատ անունով (630)։ Բայց հազիւ թէ երեք տարի այս նոր իշխանութեան մէջ մնաց Դաւիթ, որ նախարար-

ները դուրս արին նորան, և իրանք սկսան միմեանց հետ հակառակել և Հայաստանի խաղաղութիւնը վրդովել։ Զուր Թէոդորոս Ռշտունին աշխատում էր այս խռովութիւնների առաջն առնել և իշխաններին միաբանեցնել արտաքին թշնամիների դէմ. եսականութիւնը օտարական տիրապետութեան շնորհիւ այնքան զօրացած էր այդ ժամանակ Հայոց մէջ, որ հասարակաց օգուտը մոռացութեան տուած էր և ամեն մարդ իւր անձնական շահերի վրայ էր մտածում։

---

## Է. ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՍԿԻԶԲԸ ԵՒ ԲԱՐԳԱՒԱՃՈՒՄԸ

### 42.

*Քրիստոնէութիւնը իբրև սկիզբն լուսաւորութեան.—Մեսրոպ Մաշտոց և հայ տառերի գիւտը* (406).—*Դպրոցների բացումը* (408).—*Ս. Գրքի թարգմանութիւնը* (411. 436) *սոյն թարգմանութեան նշանակութիւնը.—Սահակի և Մեսրոպի աշակերտների ուսումնական ուղևորութիւնը։*

Քրիստոնէութեան սկիզբը լուսաւորութեան սկզբնաւորութիւնն եղաւ Հայոց համար. առաջին դպրոցները Լուսաւորչի աշխատութեամբ հաստատուեցան մեր մէջ։ Սակայն Ս. Գրիգորի հիմնած դպրոցները ազգային կրթութեան համար չէին և չէին էլ կարող լինել, նախ այն պատճառով՝ որ նոցա մէջ մատակարարուած ուսումը օտար (ասորի և յոյն) լեզուներով էր լինում, և երկրորդ՝ նոցա գլխաւոր նպատակն էր Աւետարանի քարոզիչներ և եկեղեցական պաշտօնեաներ պատրաստել։

Այս առաջին փորձից յետոյ յաջորդ վճռական քայլն անելու մի մեծ արգելք կար, այն է հայ լեզուի սեպհական տառերի պակասութիւնը, և ահա այս պակասը վիճակուեցաւ լրացնել Մեսրոպ Մաշտոցին։

Տարօն գաւառի Հացիկ գիւղացին էր Մեսրոպ։ Փոքր հասակում Ներսէս Մեծին աշակերտելով, ուսումնասիրեց յոյն, ասորի և պարսիկ լեզուները, և ապա դիւանադրի պաշտօնով արքունիքը մտաւ։ Բայց շուտով նա հեռացաւ արքունիքից և աշխարհից հրաժարուելով՝ ճգնաւորական կեանք վարեց իւր մի քանի աշակերտների հետ, որոնց ձեռընտուութեամբը սկսաւ Աւետարանը քարոզել Հայաստանի այն կողմերը, ուր դեռ քրիստոնէութիւնը արմատացած չէր։ Այդ ժամանակները Ս. Գիրքը և ընդհանրապէս բոլոր ժամասացութեան գրքերը յունարէն և մանաւանդ ասորերէն լեզուով էին կարդացվում հայ եկեղեցիներում, և ժողովուրդը այդ օտար լեզուները չհասկանալով՝ անմխիթար դուրս էր գալիս Աստուծոյ տաճարից։ Այս անտեղութեան առաջն առնելու համար՝ Ս. Մեսրոպ իւր առաքելութեան մէջ ստիպուած էր Աստուածաշունչը նախ ասորերէն կարդալ և ապա հայերէն թարգմանել իւր ունկնդիրներին, որով և գործը դժուարանում էր, մանաւանդ իւր աշակերտների համար։ Այս հանգամանքն էր որ Ս. Գիրքը հայերէն թարգմանելու և հետևապէս հայ լեզուի տառերը գտնելու գեղեցիկ միտքը ներշնչեց Մեսրոպին։ Իւր խորհուրդը Սահակ Պարթևին յայտնելով, կաթողիկոսը մի ժողով գումարեց Վաղարշապատում, որի նպատակն էր հայերէն լեզուի գրերը ստեղծելու միջոցների վրայ խորհրդակցել։ Վռամշապուհ թագաւորը, որ այս ժողովին ներկայ էր, յայտնեց

թէ Սսորկք եղած ժամանակը լսել էր թէ Դանիէլ անունով ասորի եպիսկոպոսի մօտ հայ լեզուի հին տառեր կային։ Ամիջապէս մարդ ուղարկուեցաւ ասորի եպիսկոպոսի մօտ, և յիշեալ տառերը բերուեցաւ։ Սահակ և Մեսրոպ աշակերտներ ժողովեցին և փորձեցին այն տառերը սովորեցնել նոցա։ Երկու տարի անընդհատ աշխատելուց յետոյ, նոքա տեսան որ այդ նշանագրերը բաւական չեն մեր լեզուի բոլոր հնչիւնները բացատրելու. պակաս էին եօթը ձայնաւորները և եօթը բաղաձայն գրեր, որոնք հայերէնի յատուկ հնչիւններին էին վերաբերում։ Ս. Մեսրոպ դիմեց Հայաստանից դուրս այլևայլ ձեռնհաս անձանց օժանդակութեանը, բայց ոչ մի տեղից օգնութիւն չգտաւ։ Իւր բոլոր ակնկալութիւնների մէջ խաբուելով, Մեսրոպ ամենևին չվհատեցաւ, այլ ինքն իւր մէջ կենտրոնանալով գիշեր ցերեկ խորհում էր իւր գիւտի վրայ, մինչև որ վերջապէս հասաւ բաղձանքին, պատմագրի գեղեցիկ խօսքերի համեմատ՝ «երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով 'ի վերայ վիմի (406)»։

Մեսրոպեան տառերի գիւտը մի նոր դարագլուխ է կազմում հայ ազգի տարեգրութիւնների մէջ. նորանից սկիզբն են առնում ազգային կրթութիւնը և ազգային ճոխ գրականութիւնը, որոնց շնորհով Հայերը քաղաքական կեանքի անկումից յետոյ՝ իրանց գոյութիւնը պահպանեցին իբրև առանձին ազգութիւն։ «Եթէ, ասում է Նէյման գերմանացին, Հայերը բոլոր այն փոթորիկների մէջ՝ որ Ե դարուց սկսած դղրդեցին Ասիան և մանաւանդ Հայաստանը, կարողացան իբրև մի անկախ քրիստոնեայ ազգ մնալ, պատճառը գլխաւորապէս ազգային լեզուի տառերի գիւտին տալու է, որով կարելի եղաւ սեպհա-

կան գրականութիւն ունենալ և մի առանձին հոգևոր կազմութիւն պահպանել»։

Տառերի գիւտի անմիջական արդիւնքն եղան այն դպրոցները, որ Սահակ ու Մեսրոպ Վռամշապուհի ձեռնտուութեամբ բաց արին Հայաստանի այլ և այլ գաւառներում (408)։ Սոցա մէջ ժամանակով և նշանակութեամբ առաջին տեղը բռնում է Վաղարշապատի դպրոցը, որ մի տեսակ մայր ուսումնարան կամ ուսուցչանոց էր միւս դպրոցների համար։ Այստեղ կրթուեցան Սահակի և Մեսրոպի այն աշակերտները՝ որոնք տառերի գիւտի ժամանակ բաւական հասակ ունէին. և կարող էին իրանց վարդապետներին գործակից լինել թէ ուսումնատուութեան և թէ թարգմանութիւնների մէջ։ Այսպէս են՝ Յովսէփ Վայոց Ձորից և Ղևոնդ երէց Վանանդեցին, կրօնական պատերազմի երկու մեծ ախոյեանները, Եզնիկ Կողբացի, Կորիւն Սքանչելի, Յովսէփ Պաղնացի, Յովհան Եկեղեցացի և ուրիշները, որոնք ընդհանուր անուամբ կոչվում են առաջին աշակերտք կամ թարգմանիչք։ Սոքա իրանց վարդապետների առաջնորդութեամբ ցրուեցան Հայաստանի այլևայլ կողմերը, ժողովեցին բազմաթիւ «ուշեղ և քաջասուն, փափկաձայն և երկարոգի» մանուկներ, և նորաբաց դպրոցներում մատակարարեցին նոցա նոյն ժամանակի կրթութիւնը։ Այս կարգի աշակերտներիցն են Մ. Խորենացի, Մամբրէ, Դաւիթ Անյաղթ, Գիւտ, Եղիշէ, Յովհան Մանդակունի, Ղազար Փարպեցի և ուրիշ շատերը, որոնք ծանօթ են մեզ կրտսեր թարգմանիչք անունով։ Այս ուսումնավայրերի կրթութեան ծրագիրը ընդհանրապէս կրօնականաստուածաբանական բնաւորութիւն ունէր. Ս. Գիրքը,

եկեղեցական պաշտաման գրքերը, Նշանաւոր Ս. Հայրերի գրուածները,—սոքա էին հայ պատանիների ուսումնասիրութեան առարկաները, որոնք անհրաժեշտ էին եկեղեցական կոչումն ընդունող անձանց համար։ Այսպիսով հոգևորական դասը իւր կրթութեամբ և բարոյական արժանաւորութիւններով ազգի յառաջադէմ մասը կազմելով, ժողովրդական լուսաւորութեան ղեկավարութիւնը իւր վրայ առաւ։ Ամեն բանից աւելի քրիստոնէական սկըզբունքները տարածելու և մեր հայրենիքի հոգևոր պէտքերը լցուցանելու հող տանելով, բնական է որ նորա ժողովրդի մտաւոր շարժմանը կրօնական ուղղութիւն տային, և այս ուղղութիւնը ինչպէս կրթութեան՝ այնպէս և գրականութեան վրայ տարածեց իւր հզօր ազդեցութիւնը։

Դպրոցների հաստատութեան հետ Ս. Սահակ և Մեսրոպ սկսան եկեղեցական գրքերի թարգմանութեան գբաղիլ յոյն և ասորի լեզուներից, սկիզբ դնելով այն գրական շարժմանը՝ որ այնպիսի եռանդով շարունակեցին նոցա աշակերտները, և որի նմանը այնուհետև երբէք տեսնելու չէր Հայաստանը։ Այս գործունէութեան ամենամեծ արդիւնքն եղաւ Ս. Գրքի թարգմանութիւնը, որ նոյն իսկ օտարների վկայութեամբ համարվում է «դշխոյ ամենայն թարգմանութիւններ»։ Երկու անգամ թարգմանուեցաւ Ս. Գիրքը հայերէն. նախ ասորական օրինակից թարգմանուեցան այն հատուածները՝ որ անհրաժեշտ էին եկեղեցական պաշտամունքի համար(411), և ապա Եօթանասնից կոչուած ընտիր յոյն օրինակի վրայ սրբագրուեցաւ և մնացած մասերն էլ հայերէնի վերածեցան (436)։ Ընդհանրապէս Հին Կտակարանի թարգմա-

նութիւնը ամբողջապէս Ս. Սահակին է ընծայվում, բացի Առակաց գրքից, որ Նոր Կտակարանի հետ թարգմանեց Ս. Մեսրոպը. երկուսին էլ գործակցեցին երիցագոյն աշակերտներից ոմանք։

Ս. Գրքի հայկական թարգմանութիւնը բացի իւր կրօնական նշանակութիւնից՝ ունի դարձեալ մեծ նշանակութիւն հայ լեզուի զարգացման պատմութեան մէջ։ Յայտնի է որ հայերէն լեզուն շատ վաղ ժամանակներից այլեւայլ գաւառական բարբառների էր բաժանուած, առաւել կամ նուազ տարբերութեամբ միմեանցից, ինչպէս որ տարբերվում են արդի հայ գաւառական բարբառները, որոնք ոչ այլ ինչ են՝ եթէ ոչ հին գաւառալեզուների նորագոյն սերունդները։ Հեթանոսութեան վերջին դարերում այս գաւառալեզուներից մէկը, Արարատեան նահանգի բարբառը, որ ինչպէս յայտնի է՝ քաղաքական և մտաւոր կեանքի կենտրոնն եղած է միշտ, իշխեց միւս բարբառների վրայ։ Այս ա ր ք ո ւ ն ի կամ ո ս տ ա ն ի կ բարբառը գործ դրուելով իբրև խօսուն լեզու Թագաւորական պալատում և նախարարների տներում, և իբրև գրաւոր լեզու քաղաքական ու կրօնական դիւաններում, հետզհետէ կոկուեցաւ ու մշակուեցաւ։ Ե դարու սկզբին այդ լեզուն արդէն բաւական կանոնաւորուած էր և զանազան գաղափարներ բացատրելու ընդունակ, ինչպէս որ երևում է նոյն դարու հեղինակների գրուածներից. Թէև նա դեռ բոլորովին զերծ չէր արեւելեան շատախօսութիւնից, մթութիւնից ու անորոշութիւնից որ մեծ մասամբ ասորական լեզուի ազդեցութեան հետևանք էին։ Տառերի գիւտից յետոյ հայերէն լեզուն իւր պատմութեան նոր շրջանի մէջ է մտնում։

Այստեղ Ս. Գրքի և ուրիշ ինքնագիր ու թարգմանական գրուածների մէջ, հեղինակների ու թարգմանիչների կիրթ ճաշակի և մեծ հմտութեան շնորհով, լեզուն իւր կատարելութեան ամենաբարձր կէտին է հասնում. նա կոկվում ու հարստանում է, պարզ ու ճշգրիտ; ճոխ միանգամայն և ամփոփ կերպարանք է ընդունում. և այս յատկութիւնները յոյն լեզուի ու կրթութեան արդիւնք էին, որոնք նոյն ժամանակները մուտ գտան Հայոց մէջ։

Արդէն Դ դարում շատ հայ երիտասարդներ անձնական ուսումնասիրութիւնից յորդորուած՝ սկսել էին յաճախել Յունաց երկիրը գիտութեան աղբիւրից իրանց ծարաւը յագեցնելու համար։ Աթէնքի ճեմարանի մէջ նոյն դարում բազմաթիւ հայ ուսանողներ կային, որոնք իրանց գիտութեամբ ու բնատուր ձիրքերովը Յունաց նախանձը շարժում էին։ Նոցա մէջ նշանաւոր եղաւ մանաւանդ Պրոյերեսիոս կամ Պարոյր Հայկազն, Գրիգոր Նազիանզացու և Բարսեղ Կեսարացու ուսուցիչը, որի հանճարի վրայ զարմացած՝ Հռոմայեցիք պղնձէ արձան կանգնեցին նորան այսպիսի արձանագրութեամբ. «Թագաւորների թագուհին Հռոմ՝ պերճախօսութեան թագաւորին» (Regina rerum Roma, regi eloquentiae)։ Հայ գիտնականութեան այս առաջին կարապետներին Ե դարում յաջորդեցին ուրիշները։ Ս. Սահակ և Մեսրոպ տեսնելով որ չէ կարելի բաւականանալ այն կրթութեամբ որ իրանց աշակերտները ստացել էին հայ դպրոցներում, ընտրեցին նոցանից քառասունի չափ յառաջադէմ և ընդունակ երիտասարդներ, մի մասը Աղէքսանդրիա և միւսը Աթէնք ու Բիւզանդիոն ուղարկեցին, որպէս զի յոյն կըրթութեան այդ կենտրոններում հռետորական, իմաստա-

սիրական և պատմական գիտութիւններ ուսանելու, և ապա վերադառնան արևմտեան լոյսը իրանց հայրենիքի մէջ ծաւալելու։ Մօտ եօթը տարի մնացին հայ ուսանողները Յունաց երկրում և այդ միջոցում նոքա մէկ կողմից իրանց ուսուցիչների դասախօսութիւններն էին լսում, և միւս կողմից պիտանի գրքերի թարգմանութեանն էին զբաղւում, յոյն լեզուի և գիտութեան կատարեալ հըմտութեամբը նոյն ժամանակի ուսումնականների մէջ համբաւաւոր, շատերից էլ գերազանց հանդիսանալով թէ մասնաւոր յարաբերութիւնների և թէ մանաւանդ հրապարակական վիճաբանութիւնների մէջ, որ այն ժամանակները շատ սովորական էին։ Իրանց ուսումնական պարապմունքները աւարտելուց յետոյ, Աղէքսանդրիայի ուսանողները, որոնց պարագլուխն էր Մ. Խորենացին, ուղևորուեցան Աթէնք իրանց ընկերների մօտ գնալու. բայց ճանապարհին ալէկոծութեան պատահելով, նաւը ձգեց նոցա Իտալիայի ափերի վրայ։ Այս առիթով Հռոմ ևս հանդիպեցան, ուր փոքր ինչ մնալուց յետոյ՝ անցան Աթէնք, առին իրանց ընկերակիցներին և Բիւզանդիայի վրայով դարձան Հայաստան հետները բազմաթիւ յոյն գրքեր և հայ թարգմանութիւններ բերելով։

Սակայն իրանց սակաւամեայ պանդխտութեան միջոցին բոլորովին տակնուվրայ եղած էր Հայոց աշխարհը. Արշակունեաց թագաւորութիւնը կործանուած էր, ընտանի երկպառակութիւններ կեղեքում էին երկիրը, և պարսկական քաղաքականութիւնը պատրաստւում էր նորանոր աղէտներ բերել Հայոց գլխին։ Այսպիսի ազմկալի ժամանակում ազգը չէր կարող ուսման վրայ մտածել, կամ նորեկ ուսումնականների արժանիքները գնահատել։

Նա պատրաստվում էր պաշտպանուիլ մի կատաղի պատերազմում, որի մէջ թոյլ ու անօգնական քրիստոնէութիւնը բարոյական մեծ յաղթանակ պիտի տանէր խրոխտապանծ մոգութեան վրայ։ Այսպիսի դժնդակ պարագաների մէջ հայ ուսումնականներին ուրիշ ոչինչ չէր մնում անել, բայց եթէ անծանօթ տեղեր քաշուել հայրենիքի թշուառութիւնը ողբալու և իրանց ամբարած մտաւոր գանձերը ապագայ սերնդներին աւանդելու համար։

Այս ընդհանուր տեսութիւնից յետոյ թուենք համառօտապէս քրիստոնէութեան սկզբից մինչև Արաբացոց ժամանակները ծաղկած մատենագրների անունները և նոցա գրաւոր վաստակները։

## 43.

Բանաստեղծութիւն. — Պատմագրութիւն. — Վարդապետական գրուածներ. — Իմաստասիրութիւն։

Բանաստեղծութիւնը, որ ամենայն գրականութեան նշանաւոր ճիւղն է կազմում, հեթանոսութեան անկմամբ մեծ փոփոխութեան ենթարկուեցաւ ինչպէս նիւթի, այսպէս և ձևի կողմից։ Ազգային երգերը հին կրօնի վրայ հիմնուած և նորա գաղափարներով տոգորուած լինելով, չէին կարող քրիստոնէական կրօնի խիստ պահանջումների հետ հաշտուիլ. քաջութիւնն և սէրը երգող բամբիռն ու քնարը լռեցին, նոցա տեղ սկսան հնչել նոր տեսակ երգեր, որոնց նպատակն էր քրիստոնէական բարձր սկզբունքները հանդէս բերել և այդ սկզբունքների համար նահատակուող մարտիրոսներին փառաբանել։ Այս-

պիսով հայ հանճարի ստեղծական զօրութիւնը ամփոփուեցաւ բացառապէս կրօնական շրջանի մէջ, և արդարև արտադրեց վսեմ տաղեր և հոգեբուղխ երգեր, որոնք յայտնի են մեզանում շարական, մեղեդի և գանձ անուններով։

Ս. Սահակ և Մեսրոպ եղան այս կրօնական բանաստեղծութեան առաջին հեղինակները։ Սահակ Պարթև երգեց Աւագ շաբաթի շարականները, որոնք նշանաւոր են իրանց պարզ ու յստակ լեզուով, գեղեցիկ իմաստներով և բանաստեղծական հանճարով. իսկ Մեսրոպին ընծայվում են Աղուհացից կամ ապաշխարութեան օրերի շարականները։ Նոցա աշակերտներից Մ. Խորենացին յօրինեց տէրունական գլխաւոր տօների, այն է Ծննդեան, Տեառնընդառաջի և Յարութեան շարականները և Յովհան Մանդակունի՝ Ս. Անտոնի, Դաւիթ մարգարէի և Նախավկայի շարականները։ Կոմիտաս կաթողիկոսը փակում է այս շրջանի սակաւաթիւ բանաստեղծների ցանկը Հռիփսիմեանց հրաշալի շարականներով, որ իւր ընտիր լեզուով, չքնաղ իմաստներով և գեղեցիկ նմանութիւններով եկեղեցական բանաստեղծութեան գլխաւոր արտադրութիւններից մէկը կարող է համարուիլ։

Պատմագրութիւնը մեր հին գրականութեան գլխաւոր տարրն է, և այս շրջանի պատմիչները իրանց վայելուչ կարգաբանութեամբը, ընտիր լեզուովն ու ոճովը և ճշմարտասիրութեամբը մեծ յարգանք են վայելում։ Առաջին քրիստոնեայ պատմագիրն եղաւ Ագաթանգեղոս հռոմայեցին, Տրդատի «աջող քարտուղարը», որ թագաւորի հրամանով գրեց Հայոց դարձի պատմութիւնը մանրամասն պարագաներով. գրքի մի նշանաւոր մասը բռնում

են Լուսաւորչի բերանից քարոզութիւնները։ Կենդանի ու աշխոյժ ոճ ունի Ագաթանգեղոս և ընտիր՝ բայց փոքր ինչ մութ լեզու։—Նոյն դէպքերը համառօտապէս կրկնում է իւր գրքոյկի մէջ Զենոբ Գլակ ասորին, Ս. Կարապետի վանքի առաջին վանահայրը, աւելի մանրամասնաբար խօսելով Տարօնի կրօնական պատերազմի և Տրդատի Հիւսիսականաց դէմ մղած պատերազմի վրայ։ Բնագիրը Ասորոց համար գրուած լինելով՝ հաւանական է որ նոցա լեզուով էր շարադրուած է, և ապա հեղինակը կամ մի ուրիշը հայերէն թարգմանած է։—Փաւստոս Բիւզանդացին ընդարձակ ոճով պատմում է Տրդատի յաջորդների պատմութիւնը մինչև Հայաստանի բաժանումը Պարսից և Յունաց մէջ, ինչպէս նաև Լուսաւորչի տոհմի պատմութիւնը, առանձին գլուխներ նուիրելով Ներսէս Մեծի գործունէութեանը։ Փաւստոսի գրքի մէջ կան շատ պարագաներ, որոնք Խորենացու պատմածների հետ ամենևին նմանութիւն չունենալով՝ ընդհանրապէս անվաւեր են համարվում, և այս բանիս ոչ սակաւ նպաստում են հեղինակի սէրը արտաքոյ կարգի բաներ պատմելու և նորա չափազանցութիւնները (թուերի մէջ)։ Լեզուն ճոխ է և լի ընտիր բառերով ու կենդանի դարձուածներով, սակայն տեղ տեղ պատահում են կրկնութիւններ, որոնք ձանձրոյթ են պատճառում։—Կորիւն գրեց Մեսրոպ Մաշտոցի կենսագրութիւնը, որի մէջ իւր վարդապետի կեանքի առաջին մասը զանցառութեան է տալիս և միայն երկրորդ մասի վրայ է խօսում, երկարօրէն պատմելով նորա արդիւնաւոր գործերը։ Ագաթանգեղոսի ոճի հետ մեծ նմանութիւն ունի Կորիւնի ոճը. Նոյն հայկաբան լեզուն, բայց և նոյն մութ ու խրթին

դարձուածները գործ է ածում նա, որով և սոէպ իւր խօսքերը անհասկանալի են մնում։

Հայ պատմագրութեան հայրը և Ե դարու ամենամեծ պարծանքն է Մովսէս Խորենացին, որ իւր Պատմութեան բազմապատիկ թարգմանութիւններովը գիտնական աշխարհին ծանօթացած և ընդհանուր յարգանքի արժանի եղած է։ Սահակ Բագրատունի ասպետի խնդիրքով գրեց Խորենացին այս ականաւոր աշխատութիւնը, երեք գրքի մէջ ամփոփելով մեր ազգի պատմութիւնը՝ սկզբից մինչև Արշակունեաց թագաւորութեան անկումը, և իւր խօսքը կնքում է մի սրտաշարժ ողբով, որ նոյն ժամանակի Հայաստանի ցաւալի վիճակի տխուր պատկերն է ներկայացնում։ Իւր ծանր աշխատութեան ընթացքում բազմաթիւ օտարական և ազգային աղբիւրների դիմած է Խորենացին, որոնց տուած տեղեկութիւնները միմեանց հետ բաղդատելով ու քննելով՝ ստոյգ ու վաւերական համարած կտորները իւր գրքի մէջ գետեղած է։ Այլևայլ յոյն, քաղդէացի և ասորի պատմիչներ, Ս. Գիրքը, ազգային դիւանական գրուածները, ժողովրդական երգերն ու աւանդութիւնները,—ահա այն աղբիւրները, որ նպաստեցին Խորենացուն իւր աշխատութիւնը յօրինելու։ Բայց նորա պատմութեան գլխաւոր հիմը կազմում է Մար-Աբաս Կատինան, որի գրուածը դժբաղդաբար կորած և ուրիշ ոչ մի հայ պատմագրի հետազօտութիւնների նիւթ եղած չլինելով, զանազան տարակոյսների առիթ տուած է արդի բանագատներին, որոնցից ոմանք մինչև իսկ Մար-Աբասի գոյութիւնը, հետեւապէս և Խորենացու ճշմարտասիրութիւնը կասկածելի համարեցին։ Սակայն հայ պատմագրի աշխատութեան

մէջ փայլող անկեղծութիւնն ու անկողմնապահութիւնը յայտնի բողոքում են այս և ուրիշ արժանաւորութիւնները, նորա հակիրճ ու կըտրուկ ոճը և ընտիր հայկաբանութիւնը այնպիսի հեղինակութիւն տուած են նորան մեզանում, որ յետագայ հայ պատմիչները ջանացած են նորան հետևելու։ Խորենացին ունի և մի Աշխարհագրութիւն՝ Պապ և Պտղոմէոս աշխարհագիրների գրուածներից քաղուած, որի մէջ մտած յաւելուածների պատճառով՝ ոմանք անհարազատ և հեղինակից շատ յետոյ գրուած են համարում։—Պատմական գրականութեան մէջ Խորենացուն յաջորդում է մի բանաստեղծ-պատմիչ, անմահ Եղիշէն, որ առաջին կրօնական պատերազմի դէպքերը գրի առաւ ութ ընդարձակ գլուխներով կամ յեղանակներով, որոնք այն մեծ ողբերգութեան արարուածները կարող են համարուիլ։ Երբէք գեղեցիկ նիւթ աւելի գեղեցիկ գրչի չէ հանդիպած, և քանի որ հայ ազգը կեանք ունենայ և հայ լեզուն հնչէ, Եղիշէի ոսկեղինիկ մատեանը միշտ նոյն սիրով և ոգևորութեամբ պիտի կարդացուի։—Երկրորդ կրօնական պատերազմը իւր արժանաւոր պատմիչը գտաւ Ղազար Փարպեցու մէջ, որ իւր Պատմութիւնը սկսելով Արշակունեաց թագաւորութեան բաժանուելուց, կըկնում է Վարդանանց ժամանակի դէպքերը, ապա անցնում է Վահան Մամիկոնեանի գործերի նկարագրութեանը՝ մինչև նորա մարզպանութիւնը, և այս է իսկապէս հեղինակի աշխատութեան ինքնուրոյն և աւելի հետաքրքրաշարժ մասը։ Նշանաւոր է նոյնպէս Փարպեցու թուղթը առ Վահան Մամիկոնեան, որի մէջ պաշտպանվում է ժամանակակից աբեղաների ամբաստանութիւնների դէմ, և ցոյց է տալիս որ համանման հալածանք-

ների ենթարկուած են եղել իրանցից առաջ ուրիշ գրագէտներ նոյն տգէտ աբեղաների կողմից։

Զ-րդ ցամաք դարուց յետոյ յաջորդ Է դարը երկու պատմիչ է ներկայացնում, որ մեր նկարագրած շրջանին են վերաբերում։ Առաջինն է Յովհան եպիսկոպոս Մամիկոնեան, որի Պատմութեան գլխաւոր նիւթն են Գայլ Վահանի յաղթութիւնները Պարսից դէմ։ Ախորժելի պարմիչ է Յովհան, և իւր աշխոյժ ու պարզ լեզուն կարող է նոյն ժամանակի խօսուն լեզուի տիպարը համարուել. բայց նորա գրչի տակ պատմական ստոյգ դէպքերը երբեմն առասպելի կերպարանք են ընդունում։ Աւելի մեծ կարևորութիւն ունի իբրև պատմիչ Սեբէոս Բագրատունի եպիսկոպոսը, որ Մ. Խորենացուց յետոյ առաջին անգամ փորձեց մի ամբողջական պատմութիւն գրել։ Սակայն ոմանք այս աշխատութեան առաջին երկու մասերը Սեբէոսի գործը չեն համարում, այլ ուրիշ հին անծանօթ մնացած գրքերից հանած հատուածներ, ինչպէս որ նոցա հին ու վսեմ ոճը ապացուցանում է։ Սեբէոսի բուն գործը սկսում է Վահանի մարզպանութիւնից և պատմում է ամբողջ Զ դարու և Է-ի սկզբի անցքերը, Հերակլ կայսեր արշաւանքը Պարսից դէմ, Սասանեան թագաւորութեան կործանումը Արաբացոց ձեռքով, սոցա պատերազմները Յունաց, Պարսից և Հայոց աշխարհներում, մինչև 660 թիւը։ Ընդհանրապէս համառօտախօս և անաչառ պատմիչ է Սեբէոս, անձնական խորհրդածութիւններից աւելի իրերի և անձանց ճշգրիտ պատկերը ներկայացնելու հետամուտ. լեզուն էլ մաքուր ու կանոնաւոր է։

Վարդապետական մասը նոյնպէս մեծ տեղ է բռն-

նում մեր հին մատենագրութեան մէջ, և այս առաջ է գալիս գրականութեան ընդհանուր բնաւորութիւնից և հեղինակների կոչումից, որ էր կրօնի և բարոյականութեան սկզբունքն արմատացնել ազգի մէջ։ Առաջին պատկառելի հեղինակը այս մասի մէջ հանդիսանում է նոյն՝ ինքն Ս. Գրիգոր Լուսաւորիչ իւր Յաճախապատում կոչուած ճառերով, որոնց մէջ Արարչի իւր արարածների վրայ ունեցած խնամքը ցոյց տալուց յետոյ, անցնում է մարդկային պակասութիւնների վրայ խօսելու, և մեղմ խրատներ է տալիս ամեն աստիճանի ու հասակի մարդկանց։ Ինչպէս իւր բերանացի քարոզութիւնների և բոլոր գործունէութեան մէջ, այնպէս և այստեղ Ս. Գրիգոր յամառեալներին ոչ այնքան սպառնալիքներ է կարդում, որքան քաղցր խօսքերով յորդորում է առաքինութեան հետևող լինել։ Յաջորդ դարում Եղիշէն գրեց Միանձանց խրատը իրան արժանի լեզուով ու իմաստնեյով. Խորենացին՝ Հռիփսիմէ կոյսի ներբողը և Վարդավառի ճառը. Նորա կրտսեր եղբայրը Մամբրէ ճառեց Ղազարոսի յարութեան և Քրիստոսի Երուսաղէմ մտնելու վրայ. իսկ Խորենացու քեռորդին՝ Դաւիթ Անյաղթը յօրինեց և Խաչի գեղեցիկ ներբողը ժամանակակից աղանդաւորների դէմ։ Առանձին մտադրութեան արժանի են Յովհան Մանդակունու խրատական ճառերը, թւով քսան և ութ, ընտիր ոճով և իմաստներով գրուած։

Վարդապետական և իմաստասիրական գրուածների մէջ տեղը բռնում է Եզնիկի Եղծ աղանդոցը, որի մէջ հմուտ հեղինակը իմաստասէրների յատուկ ոճով խօսում է Հեթանոսների, Պարսից Յունաց և Մարկիոնի աղանդի դէմ, կրօնական ճշմարտութիւնները իբրև գլխաւոր զէնք

քանեցնելով նոցա մոլորութիւնները հերքելու համար։ Լեզուի նկատմամբ Եզնիկը անզուգական մատենագիր է, և գուցէ միայն Եղիշէն կարողանայ համեմատուիլ նորա հետ։ Բայց բուն իմաստասէր է Դաւիթ Անյաղթը; յայտնի Արիստոտէլի գրուածների թարգմանութեամբ և Սահմանք իմաստասիրութեան ինքնագիր աշխատութեամբ, Պիւռհոն իմաստասէրի հետևողների դէմ գրած, որոնք ամեն բանի վրայ տարակուսում էին և մինչև իսկ մարդկութեան գոյութիւնը կասկածի տակ էին դնում։ Հին յունական փիլիսոփայութեան կատարեալ հմտութիւն է ցոյց տալիս Դաւիթ այս աշխատութեան մէջ. ափսոս միայն որ իմաստասիրական գաղափարները հայացնելու աւելի հոգ տարած չէ, որով նորա գրուածների շատ տեղերը, մանաւանդ թարգմանութիւնների մէջ, այսօր անհասկանալի են մնում։

---

# ՉՈՐՐՈՐԴ ՀՐՋԱՆ

## ԱՐԱԲԱՑՈՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԸ (640—1080)

## Ա. ԱՐԱԲԱՑՈՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ԵՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

### 44

*Պատմութեան բնաւորութիւնը այս շրջանում.—Արաբացոց առաջին արշաւանքը (640).—Նոցա ոսոխութիւնը Յունաց հետ Հայաստանի տիրապետութեան համար (647—693)։*

Եօթներորդ դարու սկզբին Արաբացիք դուրս գալով իրանց երկրից՝ սկսան աշխարհակալութեան ետևից լինել և Մահմետի Ղուրանը տարածել։ Պարսկաստանն եղաւ առաջին երկրներից մէկը, որ նոցա իշխանութեանը ենթարկուեցաւ. Յազկերտ Գ Սասանեան վերջին թագաւորը որմզդական կրակն առած՝ փախաւ Բակտրիա, և իւր երկիրը այս նոր աշխարհակալների ձեռքը թողեց։

Պարսկաստանից յետոյ կարգը եկաւ Հայաստանին։ Խալիֆները Պարսից տէրութեան այս ժառանգութիւնը ձեռք ձգելու համար՝ մեծ յամառութեամբ կռուեցան Բիւզանդիայի կայսրների հետ, և յիսուն տարու չափ ամեն տեսակ անգթութիւններ գործուեցան երկու կողմից։ Այդ միջոցին Հայաստանը մի աղէտալի տեսարան էր ներկայացնում. Նորա դաշտերը արիւնով ներկուեցան,

գիւղերն ու քաղաքները աւարի ու կրակի մատնուեցան։ Վերջապէս Յոյները, որ միայն Հայոց հպատակութեան և հարկատուութեան արգասիքը ուզում էին վայելել առանց մի էական պաշտպանութիւն ցոյց տալու նոցա, յետ քաշուեցան և Հայաստանը Է դարու վերջին ընկաւ Արաբացոց իշխանութեան ներքոյ։

Արաբացոց քաղաքականութիւնը Հայաստանի նկատմամբ մեծ տարբերութիւն ունէր պարսկականից։ Մինչ պարսիկները իրանց ժամանակին հետամուտ էին լինում կրօնափոխութեամբ երկու ազգերը միմեանց հետ ձուլել, Արաբացոց բոլոր ջանքն այն էր՝ որ Հայաստանը հպատակութեան մէջ պահեն և որքան կարելի է աւելի օգուտ քաղեն նորանից։ Այս նպատակին հասնելու համար՝ նոքա երկու գլխաւոր միջոց էին գործ դնում. իշխանական տոհմերը գերութեամբ կամ սպանութեամբ ոչնչացնում էին, որպէս զի երկիրը անգլուխ մնայ, և ժողովրդին ծանր հարկերով աղքատութեան մէջ էին պահում, որպէս զի ապստամբութեան վրայ մտածելու կարողութիւն չունենայ։ Չնայելով այս կանոնաւոր հալածանքներին ու հարստահարութիւններին, Հայերը մի քանի անգամ գլուխ բարձրացրին իրանց նոր տէրերի դէմ, և թէպէտ չկարողացան կատարեալ անկախութիւն ձեռք բերել, բայց և այնպէս Թ և Ժ դարերում մի քանի փոքրիկ և հարկատու տէրութիւններ կազմեցին, որոնց մէջ իրանց ընդարձակութեամբ աւելի նշանաւոր եղան Բագրատունեաց և Արծրունեաց թագաւորութիւնները։ Հայերը ըստ երևութին ազատւում են Արաբացոց անմիջական տիրապետութիւնից, բայց իրօք նոցա ազդեցութիւնը առաջուայ պէս ծանրանում է Հայաստանի վրայ։

Ամիրապետները իրանց ոստիկանների միջնորդութեամբ մօտիկից հսկում են այդ մանր իշխանութիւնների վրայ և չեն թոյլ տալիս նոցա ազատ կերպով զարգանալ ու զօրանալ։ Ատրպատականի կուսակալը արևելքից և Ասորեստանինը հարաւից՝ հարկ ժողովելու կամ ուրիշ պատրուակով անդադար ոտնակոխ են անում երկիրը, և Հայերը թէև թագաւորութիւն ունէին, բայց քաղաքականապէս առաջուանից աւելի դժբաղդ էին։ Վերջապէս ԺԱ դարում Հայաստանի թագաւորութիւնները ողողուելով մէկ կողմից Սելջուկեան Թուրքերի զօրութիւնից և միւս կողմից նենգաւոր Յունաց դարանակալութիւնից, հետզհետէ ընկան և անցան նախ Բիւզանդեան կայսրների և ապա Սելջուկեան սուլթանների ձեռքը։

Արաբացիք առաջին անգամ ոտք դրին Հայաստանի հողի վրայ 640 թուականին՝ Օմարի օրով։ 18,000 արաբացի Աբդրահման զօրավարի առաջնորդութեամբ Ասորեստանի կողմից մտան և առանց մի արգելքի հանդիպելու հասան մինչև Տարօն, ճանապարհին աւեր ու կոտորած սփռելով։ Տիրան Մամիկոնեան, Գայլ Վահանի թոռնորդին, հայ իշխաններին հրաւէր ուղարկեց, որ գան միաբան զօրութեամբ հասարակաց թշնամու առաջն առնելու. բայց նորա յորդորը ոչ մի տեղ արձագանգ չգտաւ։ Տիրան, Մամիկոնեանց յատուկ հերոսութեամբ, 8,000 զօրքով ընկաւ հայրենիքի այս նոր թշնամիների վրայ. բայց պատերազմի սկզբում Սահուռ Անձևացին Արաբացոց կողմն անցաւ և սուրը իւր ազգակիցների դէմ դարձրեց։ Հայերը յաղթուեցան և Տիրան իւր երկրի ազատութեան զոհ գնաց։ Աբդրահման իւր զօրքը առաջ քշեց, մտաւ Դուին մայրաքաղաքը, ան-

գլթաքար կոտորեց ու այրեց և 35,000 հոգի գերի տարաւ։

Այս արշաւանքը լոկ իբրև մի նախապատրաստութիւն էր երկրի դրութեանը ծանօթանալու։ Արաբացիք յետ քաշուեցան և Կոստանդ կայսրը Հայոց վրայ կիւրապաղատ կարգեց Վարազտիրոց Բագրատունուն և նորա Սմբատ որդուն; Թէոդորոս Ռշտունուն էլ սպարապետութեան իշխանութիւն տուաւ. բայց ամենևին փոյթ չտարաւ Հայոց երկրի սահմանները պաշտպանելու։ Քիչ ժամանակից յետոյ, Արաբացիք ահեղ պատրաստութեամբ միւս անգամ մտան Հայաստան և հուր ու սուր սփռելով եկան գրաւեցին Այրարատը՝ Հայոց աշխարհի սիրտը։ Հայերը չկարողանալով նոցա դէմ դնել, Յոյներից էլ օգնութեան յոյս չունենալով, Օսման ամիրապետի հետ բանակցութեան մէջ մտան և հպատակեցան նորան (647)։ Այս որ լսեց Կոստանդ կայսրը, զօրքով եկաւ Հայերից վրէժ առնելու. բայց Ներսէս Գ կաթողիկոսի միջնորդութեամբ բարկութիւնից զիջաւ, և Դուինում պահապան զօրք թողնելով յետ դարձաւ։ Վրայ հասան Արաբացիք, Յունաց զօրքը Հայաստանից քշեցին մօտ 2,000 հոգի պատանդ տարան նշանաւոր տոհմերից և ժողովրդի վրայ անտանելի հարկեր դրին (652)։ Հայերը այս տուրքերի ծանրութիւնից նեղացած՝ վերստին կայսեր իշխանութեան տակ մտան, և Համազասպ Մամիկոնեանը կիւրապաղատ կարգուեցաւ։ Զայրացաւ ամիրապետը, բոլոր հայ պատանդներին կոտորել տուեց, ինքն էլ պատրաստվում էր անձամբ Հայաստան գալու, բայց զօրքի մէջ ծագած ապստամբութիւնից սպանուեցաւ, և նորա տեղ ամիրապետ նստաւ Մուավիան, Օմէյեան հարստութեան հիմնադիրը։ Նոր ամիրապետը իւր մայրաքաղաքը փոխադրեց

*Դամասկոս, և այսպիսով Արաբացոց զօրութիւնը աւելի մօտեցաւ Հայաստանին։ Հայերը չսպասեցին որ Արաբացիք նորից ողողեն իրանց երկիրը. Յունաց պաշտպանութեան արժէքը լաւ գիտենալով, մանաւանդ թէ զզուած լինելով նոցանից իրանց կրօնական ատելութեան պատճառով, ընդունեցին Արաբացոց հպատակութիւնը* (657)։ *Ամիրապետը Հայաստանի կառավարիչ կարգեց Համազասպի եղբօր Գրիգոր Մամիկոնեանին, որ* 25 *տարի երկիրը խաղաղութեան մէջ պահեց։ Այնուհետև Յոյները սկսան դարձեալ պահանջել, որ Հայերը իրանց իշխանութեան տակ մտնեն, և իրանց ասպատակութիւններով Արաբացոց էլ առիթ տուին Հայաստանը ոտնակոխ անելու։ Յուստինիանոս Բ իւր զօրավարների գործած աւերմունքներով ու կոտորածներով չկշտանալով, անձամբ եկաւ Հայաստան և շատ անգթութիւններ անելուց յետոյ՝ երկիրը նուաճեց, Ներսէհ Կամսարականին Հայոց վրայ պատրիկ կարգեց և* 30,000 *պահապան զօրք թողնելով՝ յետ դարձաւ նախարարների որդոցը իւր հետ պատանդ տանելով։ Բայց կամաց կամաց Արաբացոց ազդեցութիւնը վերստին զօրացաւ, և Յունաց զօրքերը հետզհետէ քաշուեցան Հայաստանից։ Այնուհետև Հայերը Աբդալ-Մելիք ամիրապետի օրով վերջնականապէս մտան Արաբացոց իշխանութեան տակ* (693)։

## 45.

*Ոստիկանները.—Աբդլլայ ոստիկան (694). Վարդանակերտի ճակատամարտը.—Մոհմատի պարտութիւն ու հաշտութիւնը.—Կաշմի և իւր յաջորդների անօրէնութիւնները (704—742).—Աբասեանք. Եզիտ և Հայոց ապստամբութեան խորհուրդը (758—760).—Պէքիրի և Հասանի գործերը. Հայոց ապստամբութիւնը և նուաճումը (780—786).—Սևադա պարսիկ.—Բաբան պարսկի ապստամբութիւնը Հայոց օգնութեամբ (839).—Աբուսէթ ոստիկանի սպանութիւնը (849).—Բուղայի անգթութիւնները։*

Արաբայիք մէկ ու կէս դարուց աւելի կառավարեցին Հայաստանը իրանց կուսակալների ձեռքով, որոնց մեր պատմագիրները ո ս տ ի կ ա ն, երբեմն էլ ա մ ի ր ա *) անունն են տալիս։ Ոստիկանների գլխաւոր պարտականութիւնն էր 1) հսկել Հայոց վրայ, որ ամիրապետի իշխանութեանը հնազանդ մնան և 2) նշանակեալ հարկերը ժողովել և տէրութեան գանձարանը ուղարկել։ Նոքա իրանց գործողութիւնների մէջ առաջնորդվում էին կենտրոնական իշխանութիւնից ստացած հրահանգներով. բայց լինում էին և այնպիսի ոստիկաններ, որոնք ամիրապետների կամքի հակառակ կամ նոցա պահանջածից աւելի չարչարում ու կեղեքում էին ժողովրդին։

Առաջին ոստիկանն եղաւ Աբդլլայ, որ 694-ին արաբական զօրքով եկաւ Հայաստան և իւր բնակութիւնը հաստատեց Դուին քաղաքում։ Աբդլլայի առաջին բանն եղաւ նախարարներին նենգութեամբ բռնոտել և կալուածները ձեռքերից խլել. բռնեց նոյնպէս Սահակ կա-

*) Ո ս տ ի կ ա ն լուծվում է վ ե ս տ և խ ա ն բառերով, իսկ ա մ ի ր ա արաբական է մ ի ր բառն է։

Թոդիկոսին և Սմբատ Բիւրատեան Բագրատունուն, որ Յուստինիանոսից Հայոց սպարապետ էր կարգուած, և քոլորին էլ շղթայակապ ուղարկեց Դամասկոս։ Բայց Սմբատ մի հնարքով գերութիւնից ազատուեցաւ, դարձաւ Հայաստան և անմիջապէս Յուստինիանոսի օգնութեանը դիմեց։ Կայսրը Լեոն Իսաւրացուն զօրքով ուղարկեց Հայաստան։ Վարդանակերտի մօտ արիւնահեղ պատերազմ եղաւ. Հայերը Յունաց օգնութեամբ այնպիսի ջարդ տուին Արաբացոց, որ Աբդլլան հազիւ կարողացաւ իւր գլուխն ազատել։ Յետով Լեոն կայսր նստաւ և Հայոց վրայ կիւրապաղատ կարգեց Սմբատ Բագրատունուն, որ ապահովութեան համար քաշուեցաւ Տայոց աշխարհը և այնտեղից էր կառավարում երկիրը։

Բայց այս երկար չտեեց։ Մրուան ամիրապետը իւր Մոհմատ զօրապետին յանձնեց որ գնայ Հայոց նուաճէ։ Մոհմատ անարգել հասաւ մինչև Վանանդ գաւառը, ուր Ներսեհ Կամսարականը Սմբատ Բագրատունու հետ միաբանած՝ յանկարծակի ընկան նորա վրայ. զօրքը կոտորեցին, իրան էլ փախցրին։ Դարձաւ Մոհմատ աւելի մեծ բազմութեամբ իւր պարտութեան վրէժն առնելու, և անչուշտ մեծ չարիքներ կը հասցնէր Հայոց՝ եթէ Սահակ կաթողիկոսի միջնորդութիւնը եղած չլինէր, որ հիւանդութեան պատճառով չկարողանալով անձամբ տեսնել Արաբացի զօրապետին, մեռնելուց առաջ աղաչանաց թուղթ գրեց նորան։ Աւանդութիւնն ասում է թէ երբ Մոհմատ մտեցաւ Կաթողիկոսի դագաղին, հանգուցեալը ձեռքը մեկնեց և թուղթը տուաւ նորան, որով և ոստիկանի բարկութիւնը դիջաւ։

Բայց և այնպէս պէտք էր նոր ապստամբութեան

առաջն առնելու միջոցների վրայ մտածել։ Այս նպատակով Աբդըլլայ, Մրուանի յաջորդը, Կաշմ ոստիկանին Հայաստան ուղարկեց (704)։ Այս անգութ գազանը Հայոց բոլորովին ընկճելու ուրիշ աւելի լաւ միջոց չգտաւ, բայց եթէ իշխաններին խաբէութեամբ ժողովել և Նախիջևանի եկեղեցում այրել. յետոյ ասպատակ սփռեց երկրի ամեն կողմերը և շատ մարդ գերի ուղարկեց Դամասկոս։ Անհասարակ Կաշմ և իւր յաջորդները մօտ քառասուն տարի չարչարեցին Հայոց, մինչև որ եկաւ Մրուան ոստիկանը (742)։ Այս խաղաղասէր իշխանը քաղցրութեամբ վարուեցաւ Հայոց հետ և առանձին սէր ցոյց տուեց Աշոտ Բագրատունուն, որին իշխանաց իշխան անուանեց. և երբ արաբացոց մէջ խռովութիւն ընկնելով ամիրապետը սպանուեցաւ, Մրուան Հայաստանի ոստիկանութիւնը Աշոտին յանձնեց և ինքը Հայոց և ուրիշ ազգերի օգնութեամբ գնաց խռովութիւնները դադարեցրեց և ամիրապետութեան գահը բարձրացաւ։

Ութերորդ դարու կէսին Արաբացոց մէջ նոր խռովութիւններ ծագեցան։ Մրուան, Օմէյեան տան վերջին ամիրապետը, սպանուեցաւ և իշխանութիւնն անցաւ Աբասեանց ձեռքը, որոնց ժամանակ արաբական պետութիւնը ամենաբարձր զօրութեան ու փառաւորութեան հասաւ։ Բաղդադը, նոր հարստութեան մայրաքաղաքը, գեղարուեստների ու գիտութիւնների կենտրոն դարձաւ, և արաբական զէնքերը մահմէտական իշխանապետների փառքն ու զօրութիւնը ամեն տեղ տարածեցին։ Այս զօրութիւնը զգալի կերպով ծանրացաւ հպատակ ազգերի վրայ, որոնք հեծում էին ընչաքաղց ոստիկանների ձեռքին։ Եզիտ եղաւ այս շրջանի Հայոց առաջին ոս-

տիկանը (758), որ եկաւ Հայոց վրայ առաջուանից աւելի ծանր հարկեր դրաւ և ժողովրդին չարաչար կեղեքեց։ Նախարարները չհամբերեցին և վճռեցին գլուխ բարձրացնել։ Աշոտ Բագրատունին նոցա խորհուրդին հակառակ լինելուն համար՝ բռնուեցաւ և կուրացաւ Գաւիթ ու Գրիգոր Մամիկոնեանց ձեռքով։ Բայց և այնպէս ապստամբութիւնը գլուխ չեկաւ. Եզիտ շուտով յետ կանչուեցաւ, և նորա տեղ կարգուեցաւ Սահակ Բագրատունի պատրիկը (760—767)։

Ապստամբութիւնը կրկին արծարծուեցաւ Պէքիր և Հասան ոստիկանների օրով, որոնք անասելի տառապանքներ բերին Հայոց գլխին. մանաւանդ Հասանը, որ երկրի ամեն կողմերը ասպատակներ ուղարկելով՝ քաղաքներն ու գիւղերը թալանեց։ Հայերը կատաղաբար ընկան Պէքիրի զօրքի վրայ ու կոտորեցին. բայց Միջագետքի Մուսի իշխանը օգնութիւն հասաւ նորան և ապստամբներին նուաճեց, Սահակ պատրիկին էլ բռնեց ու սպանեց (770)։ Իսկ Հասանի անօրէնութիւնների դէմ առաջին գլուխ բարձրացնողն եղաւ Մուշեղ Մամիկոնեան, որ իւր երկրի վրայ եկած ասպատակներին ցրուելով՝ գնաց Դուինի վրայ և ոստիկանին այնտեղից հալածեց։ Միւս նախարարները Մուշեղի յաջողութիւններից սիրտ առած՝ իրանց զօրքերով միաբանեցան նորա հետ և ընդհանուր ապստամբութեան դրօշակը բարձրացրին (780)։ Արաբացիք դիմեցին Հայոց վրայ 30,000 զօրքով և հայ իշխանները չկարողանալով իրանցից վեց անգամ աւելի զօրաւոր թշնամու յարձակմանը դիմանալ՝ յաղթուեցան։ Մուշեղ ընկաւ պատերազմի դաշտում 3,000 քաջերի հետ, մնացածները ցրուեցան և

քաշուեցան ամուր տեղեր։ Հայաստանը դարձեալ ոտնակոխ եղաւ Արաբացիներից. միայն Բագրատունիք և Արծրունիք քաջութեամբ պաշտպանեցին իրանց երկրները նոցա ասպատակութիւնների դէմ։ Այս վրդովումը տևեց մինչև Հարուն-ալ-Ռաշիդ, որի օրով Եզիտ ոստիկանը եկաւ և ամբողջ Հայաստանը նուաճեց մեծամեծ անգթութիւններ գործելով (786)։ Վասպուրականի Սահակ, Համազասպ և Մեռուժան իշխանները կալանաւորուեցան, որոնցից երկու առաջինները հաւատի համար նահատակուեցան, իսկ Մեռուժան ուրացութեամբ ազատուելով Դաւիթ Մամիկոնեանի ձեռքով սպանուեցաւ։

Այնուհետև Հայաստանը անտրտունջ տարաւ Արաբացոց լուծը մինչև Թ դարու սկզբները, երբ դարձեալ սկսաւ աղմկել։ Այս անգամ ապստամբութեան նշանը Պարսկաստանից եկաւ։ Սևադա պարսիկ իշխանը, որ Բագրատունեաց տոհմից կին էր առել, խօսք մէկ արաւ Սմբատ Բագրատունի սպարապետի և Սահակ Սիւնեաց իշխանի հետ, որ Արաբացիներից ապստամբեն։ Հոլ ոստիկանը, որ մի հանդարտաբարոյ մարդ էր, Դաւիթ կաթողիկոսի միջնորդութեամբ փորձեց համոզել հայ իշխաններին, որ այդ գործից յետ կանգնեն. բայց նոքա չհամաձայնեցան, և Հոլ 2,000 հոգւով յանկարծ ընկաւ նոցա զօրքի վրայ ու ցրուեց։ Սահակ իշխանը մեռաւ, Սևադան փախաւ, իսկ Սմբատին կաթողիկոսը հաշտեցրեց ոստիկանի հետ։

Մի քանի տարուց յետոյ Հոլ յետ կանչուեցաւ և նորա տեղ կարգուեցաւ Բագարատ Բագրատունի պատրիկը։ Մուտասին ամիրապետի դրութիւնը վատ էր, նորա ընդարձակ տէրութեան մէջ ամեն տեղ ապստամբութեան

տկին տիրում էր։ Բաբան Պարսիկ իշխանը կամենալով իւր երկրի թագաւորութիւնը վերականգնել, մի քանի անգամ պատերազմեցաւ Արաբացոց դէմ, յետոյ ծածուկ միացաւ Բագարատ պատրիկի հետ, եկաւ Հայաստան և իւր զօրքը կենտրոնացրեց Սիւնեաց երկրում (839)։ Ամիրապետը նորա դէմ ուղարկեց Աֆշին զօրապետին, որի հետ միաբանեցաւ և Սմբատ Բագրատունի սպարապետը իւր զօրքով։ Արարատի կողմը մեծ պատերազմ եղաւ, որի մէջ Բաբան յաղթուեցաւ և Սմբատի Սահլ որդուց բռնուելով Աֆշինի մօտ տարուեցաւ։ Դարձաւ զօրապետը Բաղդադ և ամիրապետի առաջ գովութեամբ խօսեցաւ Սահլի և Սմբատի վրայ, իսկ Բագարատ պատրիկին ամբաստանեց իբրև խարդախ ու անհաւատարիմ մարդ։ Եկաւ Աբուսէթ ոստիկանը, խարդախութեամբ բռնեց Բագարատին Տարօն գաւառում և շղթայակապ ուղարկեց ամիրապետի դուռը։ Այս բանի վրայ Սասունցիք կատաղած՝ ընկան Աբուսէթի վրայ, սպանեցին նորան, զօրքն էլ ցրուեցին (849)։

Զայրացաւ ամիրապետը Հայաստանի անցքերը լսելով, և անմիջապէս Բուղա անունով անսիրտ մարդուն զօրքով ուղարկեց, որ Հայոց պատժէ։ Բուղան արիւնով ողողեց Հայոց երկիրը. ամեն գաւառներ ասպատակներ սփռեց, քաղաքների ու գիւղերի բնակիչներին անխնայ կոտորեց, անհամար գերիներ բռնեց, որոնց մեծ մասը սաստիկ տանջանքներով նահատակուեցան։ Եւ այս բանի մէջ անօրէն ոստիկանին օգնական ու գործակից եղաւ Սմբատ Բագրատունին, որ կարծում էր թէ այդպիսով նորա բարկութիւնից կ'ազատուի. բայց Բուղան միւս նախարարների հետ Սմբատին էլ խաբէութեամբ տա-

րաւ Բաղդադ։ Ամիրապետը խստութեամբ յանդիմանեց հայ իշխաններին և պատուիրեց բանտարկած պահել նոցա մինչև որ հաւատները ուրանան։ Իշխաններից ոմանք թուլացան և ազատուեցան, ուրիշները հաւատարիմ մնացին իրանց հաւատին և չարչարուեցան։ Սոցա թւումն էր Սմբատ Բագրատունին, որ բանտի կապանքների մէջ իւր մատնութեան յանցանքը քաւեց և այս պատճառով Խ ո ս տ ո վ ա ն ո ղ կոչուեցաւ։

---

## Բ. ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

### 46.

*Արաբական տէրութեան թուլութիւնը.—Հայաստանի գլխաւոր նախարարութիւնները. Բագրատունեաց յառաջադիմութիւնը.—Միւս տոհմերի ձգտումները։*

Քաղաքական յեղափոխութիւնները, կրօնական հերձուածները և ներքին պատերազմները արդէն սաստիկ դրդուել էին Մահմէտի յաջորդի լայնածաւալ պետութիւնը, որ Թ դարուց սկսած դէպի իւր անկումն էր դիմում։ Անցել էին առաջինի Օմարի և Աբու-Բէքիրի ժամանակները. ճոխութեան և նուրբ ճաշակի հետ զեղխութիւնն ու անառակութիւնը բուն էին դրել հեշտասէր ամիրապետների պալատում, որոնք իրանց կանանոցների մէջ փակուած՝ էլ ահաւոր չէին երևում։ Հպատակ ազգերը այս անկումը տեսնելով, փորձեցին հետզհետէ օտարական լուծը թօթափել։ Հայերը երկու հարիւր տարուան ընթացքում շարունակ ապստամբել էին արաբական իշ-

խանութիւնից, և այդ ապստամբութիւնները թէև անյաջող ելք են ունեցել, բայց և այնպէս ցոյց են տալիս, թէ ազգի մէջ դեռ բաւական զօրութիւն կար հանգամանքները ներած ժամանակը իւր անկումից բարձրանալու և մի անկախ քաղաքական մարմին կազմելու։ Սակայն եսականութեան ու երկպառակութեան ոգին, որ Հռոմայեցիք, Ցոյները և Պարսիկները այնպիսի վարպետութեամբ տարածել էին Հայոց մէջ, թոյլ չտուին նոցա միաբան գործելու հասարակաց օգտի համար։ Նշանաւոր նախարարական տոհմերը, որոնք տակաւին Արշակունեաց օրով փորձել էին Հայաստանից բաժանուելու և առանձին թագաւորութիւններ կազմելու, այժմ ձեռքերը ազատ տեսնելով՝ աւելի համարձակ ձգտեցան իրանց նպատակին հասնելու։ Այս հանգամանքից լմացան օգուտ քաղել մահմէտական իշխանաւորները, որոնք հայ մեծամեծների փառասիրութիւնը գգուելով՝ նորանոր երկպառակութիւններ էին սերմանում նոցա մէջ, որպէս զի այսպիսով երկիրը միշտ թոյլ և հպատակ մնայ։

Հայաստանի բազմաթիւ նախարարութիւնների մէջ իսկզբանէ անտի չորս գլխաւոր տոհմեր կային, որոնք իրանց երկրները ընդարձակութեամբ կամ մատուցած ծառայութիւններով մեծ դեր են խաղացել երկրի պատմութեան մէջ. այդ ահագին տոհմերն են՝ Արծրունիք, Սիւնիք, Մամիկոնեանք և Բագրատունիք։ Սոցանից երկու առաջինները արդէն մի քանի դար առաջ ձգտել էին Հայաստանի թագաւորութեան հասնելու. բայց այդ բանի համար գործ դրած միջոցների մէջ խտրութիւն չանելով, ազգի սուրբ զգացմունքները վիրաւորել, հետևապէս և իրանց վարկը կորցրել էին նորա աչքում։ Մամիկոնեանք

թէև եկամուտ նախարարութիւնների մէջ նորագոյնն էին, բայց շուտով ընտելացան իրանց նոր հայրենիքին, հոգւով ու սրտով միացան այն ազգի հետ, որի հետ եկել էին իրանց բաղդը կապելու։ Ընդարձակ երկրների տէր չլինելով, նոցա փառասիրութիւնը ազգի շահերին հաւատարմութեամբ և անձնուիրութեամբ ծառայելուց այն կողմը չէր անցնում, չնայելով որ սպարապետի պաշտօն ունենալով՝ նոցա ձեռքին միշտ բազմաթիւ զօրք կար։ Մամիկոնեանք այլևայլ ժամանակ մեծամեծ հերոսներ տուին ազգին, որոնք իրանց սխրագործութիւններով ազգային պատմութեան էջերը փառաւորեցին. քրիստոնեայ Արշակունեաց օրով՝ Վասակ, Մուշեղ և Մանուէլ զօրավարները. կրօնական պատերազմների ժամանակ՝ Վարդան և Վահան. պարսկական տիրապետութեան վերջին շրջանում՝ Գայլ Վահան, Սմբատ և Վահան Կամսարական, որոնք անկախութեան դրօշակը քաջութեամբ պաշտպանեցին իրանց բնիկ Տարօն գաւառում. արաբական արշաւանքների և տիրապետութեան ժամանակ՝ Տիրան և Մուշեղ։ Այնուհետև Մամիկոնեանք չեն երևում պատմութեան մէջ. նոցա վերջին շառաւիղն եղաւ Գրիգոր Մամիկոնեան, որ մեռաւ Թ դարու կէսին։

Մնում էին Բագրատունիք։ Այս տոհմը, Մ. Խորենացու ասելովը, Պարոյրի որդին Հրաչեայ Քրիստոսից 600 տարի առաջ Հրէաստանից բերել էր Հայաստան։ Բագրատունիք մեր պատմութեան մէջ առաջին անգամ հանդէս են գալիս Պարթևաց օրով, որոնց Հայաստանը յանձնելու առաջին յօժարութիւն ցոյց տուողներից՝ լինելով՝ Վաղարշակ Բագարատ իշխանին որդոց որդի թագադիր ասպետութեան արտօնութիւն շնորհել և երևելի

նախարարութիւնների կարգը դասել էր։ Բագարատի յա-
ջորդները քաղաքական և զինուորական պաշտօնների մէջ
մտան և իրանց ընդունակութեամբն ու հաստատու-
թեամբը ամենաբարձր աստիճանների հասան. Նոցա մի-
ջից դուրս եկան շատ իմաստուն կառավարիչներ և քաջ
զօրավարներ, որոնք Բագրատունեաց անունը փառաւորե-
ցին։ Արծրունեաց և Սիւնեաց նման՝ Բագրատունիք էլ
մի ժամանակից սկսան ձգտել առաջադահութեան, բայց
ամենամեծ խոհեմութեամբ և զգուշութեամբ, աշխատե-
լով միշտ ազգի ըղձերի համաձայն վարուել և նորա հա-
մարմանը արժանի լինել. այնպէս որ արդէն Արշակու-
նեաց թագաւորութեան անկման ժամանակ՝ հեռատես
մարդիկ գուշակում էին թէ Բագրատունիք մի օր պիտի
վերականգնեն Հայոց թագաւորութիւնը *)։ Այդ ժամա-
նակից այս տոհմը սկսաւ առաջնակարգ դեր խաղալ հայ
նախարարների մէջ՝ Հայաստանը հետզհետէ կառավա-
րելով մարզպանի, կիւրապաղատի և ոստիկանի անունով,
մինչև որ Թ դարու վերջերը յաջողեցան վերջապէս թա-
գաւորի տիտղոսն առնել։

Հագիւ թէ Բագրատունիք իրանց տիրապետութիւնը
հաստատեցին Արարատեան երկրում, որ միւս իշխանա-
կան տոհմերն էլ արքայական թագի ետևից ընկան։
Արծրունիք առաջինն եղան որ Ժ դարու սկզբին Վաս-
պուրականի մէջ մի անկախ տէրութիւն հիմնեցին (908)։
Դորանից վաթսուն տարի յետոյ նոյն իսկ Բագրատու-
նեաց տունը երկպառակեցաւ, և Վանանդ գաւառում ա-

*) Մովսէս Խորենացին՝ Սահակ Արծրունուն գրած նա-
մակի մէջ։

ռանձին թագաւորութիւն ձևացաւ Կարս մայրաքաղաքով (968). ինչպէս որ Արծրունեաց երկրումն էլ ձևացան Ռշտունեաց և Անձևացեաց անկախ իշխանութիւնները։ Նոյն ժամանակները հետզհետէ կազմուեցան Սիւնեաց թագաւորութիւնը (970) և Կիւրիկեան Բագրատունեաց թագաւորութիւնը Լօռում (988). Թող ուրիշ մանր մանր իշխանութիւնները, որոնցից ամեն մէկը իւր անկախութեան նախանձախնդիր էր։

Այս բազմաթիւ իշխանութիւնները ինքնըստինքեան այնքան վնասակար չէին լինիլ, եթէ իրանց ներքին կառավարութեան մէջ անկախութիւն պահպանելով՝ ընդհանուր խնդիրների մէջ, որպիսի է օրինակի համար հասարակաց հայրենիքի պաշտպանութիւնը, իրանցից հզօրագոյնի՝ այն է Բագրատունեաց գերիշխանութիւնը ճանաչած լինէին։ Բայց դժբաղդութիւնն այն է որ նորա միշտ թշնամութեան ու պատերազմի մէջ էին, և այդ գժտութիւնները յետին թշուառութեան մէջ ձգեցին Հայոց երկիրը։

---

## 47.

*Աշոտ Բագրատունի իշխանաց իշխան (859).—Աշոտի կալուածները և զօրքը.—Ջահապ պարսկի արշաւանքը Հայաստան.—Աշոտ Ա. Թագաւոր (885).—Նորա գործերը.—Աշոտի ուղևորութիւնը Կոստանդնուպօլիս և մահը (889)։*

Բուղան Հայաստանից հեռանալով՝ իւր տեղը ոստիկան էր թողել Ձեխի անունով պարսկին։ Միևնոյն ժամանակ Աշոտ Բագրատունին, Սմբատ Խոստովանողի որդին, թէև լոկ սպարապետի անուն ունէր, սկսաւ

ջնամ տանել երկրին, աւերեալ տեղերը նորոգելով և ժողովրդին խաղաղացնելով։ Ձուռով Աշոտ իւր քաղցր վարմունքով և առատաձեռնութեամբ ամենի սիրտը գրաւեց, Բաղդադի դրանն էլ ցոյց տուած հաւատարմութեամբ համարումը այնքան մեծացաւ, որ Մահմատ-Ջաֆր ամիրապետը Ալի-Արմէն ոստիկանի ձեռքով իշխանաց իշխանի պատուանունը ուղարկեց նորան (859)։ Գերեալ իշխանները Աշոտի միջնորդութեամբ բանտից ազատուեցան և Հայաստան գալով՝ սիրալիր ընդունելութիւն գտան նորանից։ Աշոտ Հայաստանի երկու գլխաւոր նախարարութիւնները—Սիւնեացը և Արծրունեացը իւր կողմը շահելու համար՝ խնամութեամբ կապուեցաւ նոցա հետ. իւր երկու աղջիկներից մէկին տուաւ Սիւնեաց Վասակ-Գաբուռ իշխանին, իսկ միւսին՝ Արծրունեաց Գրիգոր-Դերենիկ իշխանին։ Այս երկու իշխանները զօրաւոր կերպով նպաստեցին իրանց աներոջ բարձրանալուն։

Աշոտի նախնիքը իմաստուն նախարարութեամբ ահագին ժառանգութիւն էին թողել նորան թէ դրամով և թէ երկրներով։ Հաստատուելով նախ Բարձր-Հայքի Սպեր գաւառում նորա կամաց կամաց ընդարձակեցին իրանց կալուածները՝ փողով գնելով Կամսարականաց, Մամիկոնեանց և ուրիշ նախարարութիւնների կալուածները, այնպէս որ այդ բոլոր երկրները միասին առած՝ մի պատկառելի տէրութիւն կարող էին ձևացնել։ Բացի Արարատեան և Տայոց նահանգներից, որոնց կէսից աւելի Աշոտի սեպհականութիւնն էին կազմում, նա ունէր մեծամեծ կալուածներ Տուրուբերանի, Բարձր-Հայքի և Գուգարքի մէջ. սոցա մէջ մտնում էին Դարանից բեր-

դը, Բագարան, Մուշ, Կողբ, Կարս, Շիրակաւան, Անի,
Սպեր, Ախալցխա, Արդուին, Արդահան և ուրիշ շատ
քաղաքներ։ Աշոտ միայն իւր սեպհական երկրներից մին-
չև 40,000 զօրք ունէր հաւաքած, որոնց վրայ սպարա-
պետ էր կարգել իւր Աբաս եղբօրը։

Շուտով Աշոտ առիթ ունեցաւ ցոյց տալու, թէ
ինչպէս իմաստուն կառավարիչ էր, այսպէս և երկրի
սահմանները գիտէր պաշտպանել արտաքին յարձակում-
ներից։ Ջահապ պարսիկը, այն ապստամբ իշխաններից
մէկը՝ որոնք այդ ժամանակները օգուտ քաղելով Բաղ-
դադի ամիրապետի թուլութիւնից կամենում էին ինք-
նագլուխ լինել, 80,000 զօրքով մտել էր Հայաստան։
Նորա դէմ ուղարկուեցաւ Աբաս սպարապետը հայա-
դունդ զօրքով։ Պատերազմը խմբուեցաւ Երասխի ափին.
Ջահապ չարաչար յաղթուեցաւ և ստիպուեցաւ փախչել։

Այս փառաւոր յաղթութիւնք, Աշոտի անընդհատ
խնամքը երկրի բարեկարգութեան վրայ, նորա հայրա-
բարոյ վարմունքը իշխանների հետ, վստահութիւն տուին
այս վերջիններին Ցիսէ ոստիկանի միջնորդութեամբ
խնդրել ամիրապետից, որ Աշոտին թագաւորեցնէ Հա-
յաստանի վրայ, խոստանալով որ առաջուան պէս հաւա-
տարիմ կը մնան Բաղդադի դրանը։ Ամիրապետը տեսնելով
որ Աշոտ արդէն այնքան բարձրացել է, որ այնուհետև էլ
չէր կարելի նորան սովական հպատակի տեղ դնել, ստի-
պուեցաւ Հայոց խնդիրքը կատարել։ 885 թուին Ցիսէ բե-
րեց Անի քաղաքը թագ ու թագաւորական զգեստներ և
Աշոտին հագցնելով գահի վրայ նստեցրեց. ապա Գէորգ
կաթողիկոսը նախարարների և խուռն բազմութեան ներ-
կայութեանը թագաւոր օծեց նորան։ Նոյն տարին Վասիլ

*Արշակունի Յունաց կայսրն էլ ի նշան ուրախակցութեան թագ և արքայավայել ընծաներ ուղարկեց Աշոտին։*

*Աշոտ իւր աթոռը հաստատելով Բագարանում, նորոգեց Արշակունեաց թագաւորութեան կարգերը իւր պալատի զօրքի և բոլոր վարչութեան մէջ։ Նա փոյթ տարաւ երկրագործութիւնը, վաճառականութիւնը և արուեստները ծաղկեցնելու. հարիւրաւոր քաղաքներ ու գիւղեր, որոնք երկարատև պատերազմներից քանդուել և ամայացել էին, նորոգեց ու գաղթականներով բնակեցրեց, և որպէս զի իւր ժողովուրդը խաղաղութեան բարիքները վայելել կարողանայ, շրջակայ թագաւորների ու իշխանների հետ խաղաղութեան դաշինք կապեց։ Մինչ այս գործերովն էր զբաղուած, Վանանդի և Գուգարքի բնակիչները ապստամբեցան նորանից։ Աշոտ առաջինների վրայ ուղարկեց Աբաս սպարապետին, իսկ երկրորդների վրայ իւր անդրանիկ Սմբատ որդուն, որոնք կարճ միջոցում հնազանդեցրին նոցա։*

*Այնուհետև թագաւորը իւր երկիրը շրջագայելով, անցաւ Փոքր-Հայք և այնտեղից գնաց Կոստանդնուպոլիս Լևոն կայսեր տեսութիւն, որի հետ քաղաքական և առևտրական դաշն կապեց։ Յետ դառնալիս՝ ճանապարհին հիւանդացաւ և Շիրակ գաւառի մօտերը մեռաւ, 5 տարի թագաւորելուց և ընդհանրապէս 32 տարի իշխելուց յետոյ։*

## Գ. ՍՄԲԱՏ Ա ԵՒ ԱՇՈՏ Բ ԵՐԿԱԹ

### 48.

*Աշոտի յաջորդների ձգտումը.—Սմբատ Ա (892).—Արաբի ապըստամբութիւնը.—Աֆշին ոստիկանը Հայոց երկրում.—Դողսի կռիւը.—Վասպուրականի անցքերը.—Գագիկ բռնաւորի դաւաճանութիւնը.—Աֆշինի նոր արշաւանքը.—Իւսուֆ ոստիկան. դաւադրութիւն Սմբատի դէմ.—Դժտութիւն Սմբատի և Գագիկ Արծրունու մէջ. Իւսուֆի արշաւանքը.—Սմբատ Կապոյտ բերդում. նորա մահը (914).*

Աշոտ Ա մեռնելիս թողեց մի փոքրիկ՝ բայց բաւական զօրաւոր տէրութիւն։ Իւր անմիջական յաջորդների բոլոր ջանքը պիտի լինէր այդ տէրութիւնը ընդարձակել և իրանց իշխանութիւնը հետզհետէ ամբողջ Հայաստանի վրայ տարածել։ Բայց գահակալութեան համար մղուած պատերազմները, որոնց հետևում էին ներքին ապստամբութիւնները, ինչպէս նաև արաբական ոստիկանների անընդհատ միջամտութիւնը Հայոց գործերի մէջ՝ այդ յոյսերը խորտակեցին։ Հայաստանը իւր իշխանների փառասիրութեամբ պառակտուեցաւ, նորա զօրութիւնները սպառուեցան և նա խաղալիկ դարձաւ իւր թշնամիների ձեռքին։

Սմբատ Ա հօր մահուան բօթն առնելով՝ Գուգարաց երկրից շտապեցաւ Շիրակաւան գաւառ, ուր մեծ սուգ արաւ, և հազիւ Գէորգ կաթողիկոսն ու Վրաց Ատրներսեհ իշխանը կարողացան համոզել նորան, որ սգի զգեստները հանէ և գահը բարձրանայ. իսկ թագաւորութեան հանդէսը յետաձգուեցաւ մինչև որ ըստ սովորութեան՝

Ատրպատականի Աֆշին ոստիկանը Թագի հետ ամիրապետի հաճութիւնը բերեց (892)։

Դեռ նոր էր Սմբատ կառավարութեան սանձը ձեռք առել, որ իւր հօրեղբայրը՝ Աբաս սպարապետը մի քանի կուսակիցների օգնութեամբ կամեցաւ թագաւորութիւնը յափշտակել նորանից։ Զուր Գէորգ կաթողիկոսը յորդորեց նորան, որ իւր դիտաւորութիւնից յետ կանգնի. Երկու իշխանները միմեանց վրայ դիմեցին և ազգամիջեան կռուի չար օրինակը տալով՝ շատ հայ արիւն թափեցին, գիւղեր ու քաղաքներ կործանեցին, մինչև որ Աբաս մի բերդի մէջ պաշարուելով՝ Սմբատի գթութեանը անձնատուր եղաւ։

Հազիւ թէ թագաւորական տան մէջ խաղաղութիւն ընկաւ, որ Աֆշին ոստիկանը իւր զօրքի գլուխն անցած՝ Ատրպատականից մտաւ Հայաստան, կասկածելով այն դաշնադրութիւնից որ Սմբատ իւր հօր օրինակին հետևելով՝ նորոգել էր Լևոն կայսեր հետ։ Սմբատ հասկացրեց նորան որ այդ դաշնադրութիւնը ամենևին քաղաքական նպատակ չունի և միայն վաճառականութեան դիւրութեան համար կապուած է, և Աֆշին ոչ այնքան Հայոց թագաւորի խօսքերից՝ որքան նորա զօրութիւնից համոզուելով, խաղաղութեամբ յետ դարձաւ։ Այս քաղաքական յաղթութիւնից խրախուսուած՝ Սմբատ ետևէ եղաւ երկրի այլևայլ կողմերը, որ դեռ նուաճուած չէին, իւր իշխանութեան տակ առնել, և նախ ոստիկանութեան մայրաքաղաքից սկսաւ. Դուինն երկու տարի պաշարում կրելուց յետոյ առնուեցաւ, և նորա մահմետական հրամանատարները բռնուելով՝ Լևոն կայսեր ուղար-

կուեցան։ Բայց մի տարի յետոյ Դուինն և նորա բնակիչները մեծ վնաս կրեցին (894)։

Դուինի առումը և Սմբատի ուրիշ յաջողութիւնները շատ անհանգիստ էին անում Աֆշինին, որ Հայոց թագաւորի զօրութիւնից ակնածելով՝ մտածեց թակարդի մէջ ձգել նորան։ Զայն հանեց որ իբր թէ ուրիշ տեղ պատերազմի պիտի երթայ և՝ յանկարծ Հայաստան մտաւ, հասաւ Նախիջևան, այնտեղից էլ արագութեամբ եկաւ Դուինի առաջ բանակ դրաւ։ Սմբատ անպատրաստ լինելով՝ քաշուեցաւ ամուր տեղեր, մինչև որ իւր զօրքը ժողովեց ու կարգի դրեց և Դողս գիւղի մօտ ճակատեցաւ Աֆշինի դէմ. ոստիկանի զօրքը բոլորովին ջարդուեցաւ, ինքն էլ ամօթահար դարձաւ Ատրպատական՝ հետը տանելով Գէորգ կաթողիկոսին, որ պատերազմից առաջ իբրև հաշտութեան միջնորդ եկել էր իւր մօտ, և որի համար մեծ փրկանք առնելով գերութիւնից ազատեց։

Սակայն Աֆշին շուտով հասկացաւ թէ ինչ որ ինքը չէ կարող անել, նոյնը կարելի է յաջողութեամբ գլուխ տանել հայ իշխանների ձեռքով։ Վասպուրականի Աշոտ Արծրունի իշխանը, Սմբատ թագաւորի քեռորդին, Աֆշինի օգնութեան վրայ յոյսը դնելով՝ ապստամբեցաւ թագաւորից։ Նորա աները Գագիկ բռնեց նորան իւր Գուրգէն եղբօր հետ բանտ դրեց, և ինքը տիրապետեց նորա երկրին՝ Սմբատ արքայի իշխանութեան ներքոյ։ Թագաւորը ձայն չհանեց այս անիրաւութեան դէմ, բայց շուտով դառն կերպով պիտի զղջար իւր ներողամտութեան վրայ։ Այդ ժամանակները Միջագետքի Ահմատ ոստիկանը Աղձնեաց նահանգին տէր դառնալով՝ մտել էր Տուրուբերան և Տարօնի գաւառը գրաւել էր։ Սմբատ 60,000

զօրքով գնաց նորա վրայ, և Գագիկ բռնաւորը իբրև այն կողմի ճանապարհներին ծանօթ՝ յանձն առաւ առաջնորդել Թագաւորական զօրքին. ամբողջ բանակը քարքարոտ ու անջրդի տեղերով ման ածելուց յետոյ, յոգնած ու ծարաւ բերեց գիշերով Ահմատի հետ առաջուց պայմանադրած տեղը կանգնեցրեց։ Բայց Հայերը իրանց Թագաւորի օրինակից խրախուսուած՝ այնպիսի քաջութեամբ կռուեցան Թշնամիների հետ, որ յաղթութիւնը տանելու վրայ էին, երբ դաւաճան Գագիկը ձայն տուեց թէ անհնար է Թշնամիների բազմութեան դէմ կանգնել, և ինքն իրաններով Թողեց ու փախաւ։ Այսպիսով Հայերը վհատեցան, և Սմբատ ստիպուեցաւ յետ քաշուիլ։ Ահմատ չհամարձակելով ետևից գնալ, յետ դարձաւ։ Իսկ տիրանենգ Գագիկը շուտով իւր դաւաճանութեան պատիժը ստացաւ. մինչ ջրի նստած զբօսնում էր Վանի հրապարակի մէջ, Գագիկ Արծրունին՝ Աշոտի եղբայրը սպանեց նորան, և իւր եղբայրներին բանտից ազատելով՝ երեքը միասին միւս անգամ իշխեցին Վասպուրականի վրայ։

Սմբատի պարտութիւնը նոր առիթ տուաւ Աֆշինին Հայաստանի վրայ արշաւելու, մանաւանդ որ նախարարներն էլ միմեանց հետ ընկած էին։ Թագաւորը Տայոց կողմերը քաշուեցաւ, և ոստիկանը բոլոր զօրութեամբ գնաց Կարսը պաշարեց, ուր ամրացած էին Թագուհին, Թագաւորահարսը և ուրիշ պալատական կանայք։ Բերդականները շուտով անձնատուր եղան և Աֆշին Սմբատին բռնելու յոյսը կտրելով՝ հաշտութիւն առաջարկեց նորան, այն պայմանով որ Աշոտ որդուն պատանդ՝ և Շապուհ որդու դստերը կնութեան տայ իրան։ Թա-

գաւորը անճարացած համաձայնեցաւ, և ոստիկանը փառաւոր հարստանիք անելով՝ վերադարձաւ Ատրպատական ձմեռը Դուինի մէջ անցկացնելուց յետոյ։ Այնուհետև Աֆշինն մէկ երկու անգամ էլ եկաւ Սմբատի վրայ, բայց չյաջողեցաւ բռնել նորան, մինչև որ մեռաւ և պատանդներն էլ ազատուեցան։

Աֆշինի տեղ եկաւ նորա եղբայրը Իւսուֆ, միչար և նենգաւոր մարդ։ Սմբատ կամենալով իւր երկիրը Ատրպատականի ոստիկանի ազդեցութիւնից ազատել, խնդրեց ամիրապետից և նորա հաճութիւնն առաւ, որ հարկը ինքը ուղղակի Բաղդադ ուղարկէ։ Նոր ոստիկանը իւր կողմից հասկացրեց Բաղդադի արքունիքին թէ որքան վտանգաւոր է Հայոց թագաւորին ինքնագլուխ թողնել, և ինքը Սմբատի վրայ գնաց. բայց տեսնելով նորա պատրաստութիւնը, առանց պատերազմի յետ դարձաւ։ Քիչ ժամանակից յետոյ Իւսուֆ ապստամբեցաւ ամիրապետից, և Սմբատին պատուէր եկաւ որ նորա վրայ երթայ։ Թագաւորը մտածելով թէ Իւսուֆ կարող է իւր տիրոջ հետ հաշտուիլ և անհաշտ թշնամութիւն կապել իւր դէմ, մի փոքրիկ գունդ ուղարկեց Վասպուրականի կողմերը, յայտնելով ոստիկանին թէ այդ զօրքը նորա օգնութեան համար է։ Շուտով արդարև Իւսուֆ հաշտուեցաւ ամիրապետի հետ, և սաստիկ հրաման բերաւ Սմբատի վրայ՝ որ կրկին հարկ տայ։ Նախարարները թագաւորի ժողոված ծանր հարկերից նեղացած՝ դաւադրութիւն կազմեցին նորա կեանքի դէմ, և Ատրներսեհ՝ որին Սմբատ իւր անխարդախ հաւատարմութեան և ցոյց տուած օգնութեան համար Վրաց վրայ թագաւորեցրել էր, նոյնպէս միաբանեցաւ դաւաճանների հետ. որով-

հետև Սմբատ Եզերացոց Կոստանդին Թագաւորին, որ Ատրներսեհի փեսան էր, առանց իւր աներոջ հաճութեան բանտից ազատել և իւր երկիրն էր ուղարկել։ Թագաւորը այս ապստամբութիւնը իւր բնումը խեղդեց և դաւաճաններին ամենայն խստութեամբ պատժեց։

Բայց շուտով Սմբատ իւր անխոհեմութեամբ այնպիսի չարութեան առիթ տուաւ, որ թէ իւր և թէ երկրի թշուառութեան պատճառ պիտի լինէր։ Նախիջևան քաղաքը, որ Վասպուրականի և Սիւնեաց աշխարհի սահմանի վրայ գտնուելով յաճախ գժտութեան առիթ էր լինում երկու երկրների իշխանների մէջ, Թագաւորը Սիւնեաց Սահակ իշխանին էր տուել՝ առանց Գագիկ Արծրունու բողոքներին ականջ դնելու։ Գագիկ նեղացած գնաց միաբանեցաւ Ատրպատականի ոստիկանի հետ, որ Հայաստանի զօրութիւնը բաժանելու համար՝ Թագաւորեցրեց նորան Վասպուրականի վրայ և խօսք կապեց նորա հետ Սմբատի վրայ գնալու։ Զուր աշխատեցաւ Սմբատ Յովհաննէս կաթողիկոսի միջնորդութեամբ և մեծագին ընծաներով դաժան ոստիկանի սիրտը շահել. Կաթողիկոսը բանտարկուեցաւ, և Իւսուֆ Գագիկին առաջը ձգած՝ մտաւ Հայաստան ու սկսաւ երկիրը տակնուվրայ անել։ Սմբատ քաշուեցաւ Վրաստանի կողմերը, ուր ձմեռը պատրաստութիւն տեսնելով՝ գարնան սկզբները եկաւ Շիրակաւան և իւր Աշոտ ու Մուշեղ որդոց ուղարկեց ոստիկանի բանակի վրայ, որին առաջնորդում էր Գագիկ Արծրունին։ Կռուի տաքացած ժամանակը՝ Ուտէացի գունդը Թագաւորական զօրքից բաժանուեցաւ, և Մուշեղ բռնուելով տարուեցաւ Դուին ոստիկանի մօտ։ Այնուհետև Հայաստանի գաւառները

անպաշտպան մնացին թշնամիների առաջ, որոնց անգթութիւնից ազատուելու համար՝ շատերը իրանց տուն ու տեղը թողին և ապաւինեցան լեռները ու անառիկ ամրոցները։

Գագիկ խղճահարուեցաւ այս թշուառութիւնը տեսնելով, նա մտածեց որ իւր վիճակն էլ լաւ չի լինի՝ եթէ Հայաստանը Իւսուֆի ձեռքը մնայ. ուստի ծածուկ առաջարկեց Սմբատին ոստիկանի դէմ նորա հետ միաբանելու։ Բայց թագաւորը արդէն վհատած էր. ամիրապետին ուղարկած դեսպանութիւնը անյաջող յետ էր դարձել, Յունաց կողմից էլ Լևոն կայսեր մահուան պատճառով օգնութեան յոյս չկար։ Այսպիսով ամէն կողմից անօգնական մնացած, իւր սեպհական իշխաններից էլ մոռացուած, Սմբատ մի խումբ հաւատարիմ քաջերով ապաւինեցաւ Կապոյտ բերդը, որ Իւսուֆ շուտով պաշարեց։ Բերդապահ զօրքը թագաւորի ներկայութեամբը ոգևորուած՝ Իւսուֆի մի քանի յարձակումները քաջութեամբ յետ մղեց, մեծ կոտորած գործելով նորա բանակում, որի ճակատը քրիստոնեաներից էր բաղկացած։ Մի տարուց յետոյ՝ Սմբատ սովից նեղացած և քրիստոնեաների թափուած արեանը խնայելով, անձնատուր եղաւ այն պայմանով որ իւր բոլոր բերդականների կեանքը անվնաս մնայ (913)։ Երդմնազանց Իւսուֆ Սմբատին մի ամբողջ տարի բերդի մէջ տանջելուց յետոյ, անարգ մահով սպանեց նորան Երնջակու բերդի առաջ, որի երկար դիմադրութիւնից զայրացած՝ իւր բարկութիւնը թագաւորի գլխին թափեց (914)։ Այնուհետև Երնջակն էլ շուտով առնուեցաւ։

## 49.

**Աշոտ Բ. Երկաթ և իւր առաջին յաջողութիւնները (915).—Իւսուֆի նոր արշաւանքը. սով (918).—Աշոտ Կոստանդնուպօլսում.—Աշոտի պատերազմները համանուն Աշոտ սպարապետի հետ.—Նախարարների ապստամբութիւնը.—Իւսուֆ Վասպուրականում.—Աշոտ Սևանայ կղզում. իւր մահը (928).**

Իւսուֆ Սմբատին ձերբակալելով՝ առ ժամանակ Հայաստանի տէր էր դարձել և նորա զօրքերը շատ ամուր բերդեր գրաւել էին։ Աշոտ, որ ոստիկանի կալանաւորութիւնից ազատուել էր, հօր աղէտալի մահից յետոյ արդար վրէժխնդրութեամբ բորբոքուած իւր ձեռքի տակ ունեցած զօրքով յարձակեցաւ թշնամիների վրայ և կարճ միջոցում Հայաստանը մաքրեց նոցանից. համարեա բոլոր ամուր քաղաքներն ու բերդերը, որ օտար զօրքերը բռնել էին, հետզհետէ առնուեցան և նորա մէջի զօրքերը սրի ճարակ եղան։ Այս յաղթութիւնների համբաւը նախարարներին հասնելով, որոնք իրանց բերդերում փակուած էին, եկան հաւաքուեցան և Աշոտին գահը նստեցրին (915)։

Աշոտ Բ, որ իւր զարմանալի ուժի և քաջութեան համար Ե ր կ ա թ մականունը ստացաւ, իւր թագաւորութեան տարիները անընդհատ պատերազմների մէջ անցկացրեց արտաքին թշնամիների և ներքին ապստամբութիւնների դէմ, որոնց պատճառով Հայաստանը քարուքանդ եղաւ։ Իւսուֆ իւր պահապան զօրքերի կոտորուելն ու Հայաստանից արտաքսուիլը տեսնելով, նոր զօրք ուղարկեց առաջուանից աւելի մեծ պատրաստութեամբ, որոնք երկրի զանազան կողմերը ցրուելով՝ ամեն տեսակ

անգթութիւններ գործեցին, շատ անմեղ մարդիկ կոտորեցին, քաղաքներ ու գիւղեր աւերակ դարձրին. և այս թշուառութիւնների առաջն առնել չկարողացաւ Աշոտ, որովհետև նախարարներից շատերը միմեանց հետ գժտութեան և կռուի մէջ էին։ Փոքր ինչ յետոյ ոստիկանն էլ եկաւ, իւր բնակութիւնը հաստատեց Դուինի մէջ, որտեղից անձամբ առաջնորդում էր իւր զօրքի ապստամբութիւններին։ Այդ ասպատակութիւնները մի քանի տարի տևեցին, որոնց պատճառով վարուցանք խափանուելով՝ մի սարսափելի սով առաջ եկաւ։ Ցուսահատութիւնը այնտեղ հասաւ, որ ծնողները իրանց որդոց ծախում էին, որպէս զի նոցա գնով գոնեա իրանք կարողանան վերահաս մահից ազատուիլ. գտնուեցան մինչև անգամ մայրեր, որոնք իրանց զաւակներին եփեցին ու կերան (918)։

Հայաստանի այս թշուառութիւնը արձագանք գտաւ վերջապէս Բիւզանդիայում։ Յովհաննէս կաթողիկոսը, որ մի անգամ մեծ փրկանքով ազատուել էր Իւսուֆի ձեռքից և այժմ իւր ապահովութեան համար այս ու այն կողմը թափառական շրջում էր, Վրաց թագաւորի պալատում մի մխիթարական թուղթ ստացաւ Յունաց Նիկողայոս պատրիարքից, որի մէջ Կոստանդին Պորփիւրոժէն կայսեր կողմից օգնութեան յոյս էր տրվում Հայոց։ Կաթողիկոսի գրած թախանձանաց թղթի վրայ, կայսրը հրաւէր ուղարկեց Հայոց թագաւորին և հայրապետին Կոստանդնուպօլիս գալու։ Աշոտ գնաց և մի գունդ օգնական զօրք ստացաւ կայսրից. իսկ կաթողիկոսը խոհեմութիւն չհամարեց ուղեկից լինել նորան, կասկածելով թէ մի գուցէ իւր ներկայութիւնը, մանաւանդ Հա-

յաստանի այդ ճգնաժամին, Բիւզանդիայի տիրքունիքին ու կղերին առիթ տալ կրօնական միութեան խնդիրն արծարծելու։

Ձփոթեցաւ Իւսուֆ Ցունաց օգնութեան համբաւն առնելով, և այնպիսի մի խորհուրդ յղացաւ, որ իւր բանակներից աւելի պիտի նպաստէր նորան ցանկացած նպատակին հասնելու. Աշոտի հօրեղբօրորդու՝ համանուն Աշոտ սպարապետի գլխին թագ դրաւ և Հայաստանի թագաւոր անուանեց։ Այսպիսով երկրի մէջ մի նոր պառակտում ձգեց և ինքը մի կողմ քաշուեցաւ։ Զատ պատերազմներ եղան երկու Աշոտների մէջ և Հայոց արիւնը թափուեցաւ ոչ թէ երկրի լաւութեան համար, այլ երկու իշխանների փառասիրական նպատակների համար։ Ցովհաննէս կաթողիկոսը երեք-չորս անգամ մէջ մտաւ, մինչև որ վերջապէս յաջողեցաւ հաշտեցնել՝ նոցա։ Հաշտութիւնը կայացաւ Դուինում և կնքուեցաւ փառաւոր հանդէսներով, որոնք հարկաւ չկարողացան ջնջել այնչափ անօգուտ արիւնհեղութիւնների յիշատակը։

Աշոտ սպարապետի վարմունքը իւր հետևողներին ունեցաւ։ Գուգարաց Վասակ և Աշոտ իշխանները, Ուտէացոց Մովսէս իշխանը և առհասարակ ամեն մեծ ու փոքր նախարարները պարծանք համարեցան ապստամբել թագաւորից և ինքնագլուխ լինել. մինչև անգամ Աշոտ Երկաթի աները՝ Սահակ իշխանը երկու անգամ զէնք առաւ իւր փեսի դէմ, իսկ Աբաս թագաւորեղբօր ատելութիւնը այն աստիճանի հասաւ՝ որ Աշոտի կեանքի դէմ դաւաճանութիւն կազմեց։ Աշոտ զարմանալի արիութեամբ զսպեց այդ ապստամբութիւնները և դաւաճանների բոլոր խորհուրդները խորտակեց, գլխաւոր յանցաւորներին

էլ, ինչպէս էին Մովսէս և Սահակ իշխանները, աչքերի լոյսից զրկեց։

Այդ միջոցին Իւսուֆ դարձեալ ապստամբել էր ամիրապետից և պատերազմի մէջ բռնուելով բանտարկուել էր. բայց իւր վարպետութեամբը շուտով յաջողեցաւ իւր տիրոջ սիրտը գրաւել և առաջուայ իշխանութիւնը ստանալ։ Սորպատական եկաւ թէ չէ, այս դաժան մարդը իւր ուշադրութիւնը Վասպուրականի վրայ դարձրեց, ուր Աշոտի երկրի հակառակ՝ կատարեալ խաղաղութիւն էր տիրում։ Գագիկ թագաւորը հասկանալով նորա չար դիտաւորութիւնը, իւր պատրաստութիւնները տեսաւ, և երբ Իւսուֆ Վասպուրական եկաւ, գտաւ մի անբնակ երկիր (որովհետև Գագիկ զգուշութեան համար ժողովուրդին ամուր տեղեր էր տարել) և մի բանակ պատրաստ իւր դէմ կռուելու. ուստի ծանր հարկեր առնելով բաւականացաւ, և յետ դարձաւ Նսըր անունով մէկին ոստիկան թողնելով Հայոց վրայ, որին շուտով յաջորդեց Բէշիր։

Այս երկու ոստիկանների գլխաւոր ջանքն եղաւ Աշոտ թագաւորին և Յովհաննէս կաթողիկոսին բռնել։ Աշոտ ներքին և արտաքին թշնամիներից շրջապատած՝ քաշուեցաւ Սեւանայ կղզին. միայն Գէորգ Մարզպետունի հաւատարիմ իշխանը մի խումբ քաջերով դուրս եկաւ օտարական ասպատակների դէմ, որոնք կամաց կամաց մօտենում էին Գեղամայ ծովին։ Վերջապէս Բէշիր մեծ պատրաստութեամբ եկաւ Աշոտի վրայ, վստահ լինելով թէ այս անգամ անշուշտ ձեռք կը ձգէ նորան։ Թագաւորը, անվեհեր ինչպէս միշտ, հրամայեց տասը նաւակ պատրաստել, իւրաքանչիւրի մէջ եօթ-եօթ հոգի նստեց-

րեց, գիմեց թշնամիների վրայ և արագ նետաձգութեամբ այնպիսի շփոթութիւն ձգեց նոցա մէջ՝ որ թողին ու ցրուեցան։ Միւս կողմից Գէորգ Մարզպետունին իւր զումարտակով ընկաւ Բէշիրի ետևից և սաստիկ ջարդ տալով նորան՝ մինչև Դուին փախցրեց։ Այնուհետև Աշոտ յաղթանակով դուրս եկաւ Սևանից և երբ փոքր ինչ հանգիստ պիտի վայելէր՝ մեռաւ, 14 տարի փոթորկալի թագաւորութիւն անելուց յետոյ (928)։

---

## Դ. ԱԲԱՍ, ԱՇՈՏ Գ, ՍՄԲԱՏ Բ, ԳԱԳԻԿ Ա.—ԱՆԻԻ ՇԻՆՈՒԹԻՒՆԸ

## 50.

*Աշոտ Երկաթի յաջորդների ուղղութիւնը.—Աբաս* (928—951). *իւր յարաբերութիւնը Արաբացոց հետ.—Պատերազմ Աբխազների դէմ.—Աշոտ Գ Ողորմած* (952—977). *Կարսի թագաւորութեան սկզբնաւորութիւնը.—Աշոտ Գ-ի աշխարհաշէն և ողորմած գործերը.—Իւր յաղթութիւնը Համտուն զօրապետի վրայ. Յովհ. Զմշկիկ կայսրը Հայոց երկրում.—Սմբատ Բ* (977—990). *պատերազմ Կարսի Մուշեղ թագաւորի դէմ.—Գագիկ Ա-ի աշխարհաշինութիւնը* (990—1020)։

*Բագրատունեաց առաջին թագաւորների բոլոր ջանքերը Հայաստանից մի զօրաւոր քաղաքական մարմին կազմելու ոչ միայն չյաջողեցան, այլ բոլորովին հակառակ հետևանքի հասցրին։ Երկիրը բաժան բաժան եղաւ, փոխադարձ ատելութեան ու թշնամութեան սերմերը նորա բոլոր անկիւններում բուն դրին. պարզ էր որ այս ճանապարհով այլ ևս անկարելի էր առաջ գնալ։ Եւ յի-*

ջուխ Աշոտ Երկաթի յաջորդները բոլորովին հրաժարուեցան իրանց նախորդների քաղաքականութիւնից. նոքա բաւականացան իրանց սահմական երկրներով և աշխատեցան լոկ իրանց բարոյական հեղինակութիւնը տարածել միւս երկրորդական իշխանութիւնների վրայ։ Այսպիսով ազգամիջեան պատերազմները վերջացան, երկիրը խաղաղացաւ, երկրագործութիւնը, արուեստները և վաճառականութիւնը, որոնք մի ազգի երջանկութեան աղբիւրներն են, ծաղկեցան ու նշանաւոր զարգացման հասան։

Աշոտ Բ անորդի մեռնելով, նախարարները Վասպուրականի Գագիկ Թագաւորի խորհրդով՝ նորա տեղ թագաւորեցրին Աբաս եղբօրը (928—951)։ Իւր աթոռը Կարս քաղաքի մէջ հաստատելով, Աբաս իւր բոլոր մտադրութիւնը դարձրեց ժողովրդի բարօրութեան վրայ, աշխատելով նորա վէրքերը բուժել և նիւթական ու բարոյական վիճակը ապահովել։ Աֆշինի հետ խաղաղութեան նոր դաշն կապեց և Դուինի ոստիկանի հետ բարեկամական յարաբերութիւնների մէջ մտաւ։ Գերեալ հայ իշխանները արաբացի գերիների փոխանակուեցան և իրանց առաջին տեղերը հաստատուեցան։ Այսպիսով վստահութիւնը կամաց կամաց ամեն տեղ տիրեց, և ժողովուրդը սկսաւ խաղաղութեան բարիքները վայելել։

Այս խաղաղութեան տարիներում Աբասի խնամքով շատ կործանուած քաղաքներ ու աւաններ նորոգուեցան, վանքեր ու եկեղեցիներ շինուեցան։ Մինչդեռ Կարսի հոյակապ մայր եկեղեցու շինութեանն էր զբաղուած, Աբաս ստիպուեցաւ զէնք առնել Աբխազների դէմ, որոնց Բեր թագաւորը հեգնութեամբ ուղարկել էր ասելու նորան՝ թէ գալիս է Կարսի եկեղեցին Յունաց ծէսով օծել

տալու։ Աբաս Գէորգ Մարզպետունի զօրավարի հետ գնաց նորա վրայ և Կուր գետի ափին երկու անգամ զարկեց ու ցրուեց նորա զօրքը։ Բեր բռնուեցաւ և մայրաքաղաքի եկեղեցին տեսնելուց յետոյ, աչքերի լոյսից զրկուեցաւ։

Աբաս իրանից յետոյ երկու որդի թողեց, Աշոտ և Մուշեղ։ Անդրանիկը յաջորդեց հօրը Աշոտ Գ անունով (952—977), բայց օծման հանդէսը ինը տարի յետաձգուեցաւ, մասամբ շրջակայ թշնամիների ապստամբութիւնների, մասամբ էլ եղբօր փառասիրութեան պատճառով։ Աշոտ Շիրակը տապատակներից մաքրելուց յետոյ, նախարարների ցանկութեամբ Աղուանից Փիլիպպոս թագաւորի և նոցա Յովհաննէս կաթողիկոսի ներկայութեամբ թագաւոր օծուեցաւ Անի քաղաքում, որ այնուհետև Բագրատունեաց թագաւորների անփոփոխ աթոռանիստը եղաւ։ Իւր եղբայրը Մուշեղ մի քանի կուսակիցներ ժողովեց իւր շուրջը և նոցա օգնութեամբ Վանանդ գաւառում առանձին թագաւորութիւն հիմնեց Կարս մայրաքաղաքով (968)։ Աշոտ ներքին կռիւների պատճառ չտալու համար՝ ոչ միայն ճանաչեց այս նոր թագաւորութիւնը, այլ և լաւ յարաբերութիւններ պահպանեց իւր եղբօր հետ։

Աշոտ Գ-ի թագաւորութեան գլխաւոր պարծանքը այն բարեգործական հաստատութիւններն են, որոնց վրայ մինչև այն ժամանակները համարեա միայն Եկեղեցին էր հոգում։ Բացի վանքերից ու եկեղեցիներից, շատ քաղաքներում որբերի ու աղքատների համար հիւանդանոցներ ու անկելանոցներ շինեց, որոնց մեծամեծ եկամուտներ կապեց։ Իւր խոնարհութեան ու գթութեան գեղե-

ցիկ ապացոյցն այն է, որ երբէք սեղան չէր նստում ա-ռանց իւր մօտ աղքատ ու անկար մարդիկ ունենալու։ ազգն էլ երախտագիտութեամբ Ողորմած անունը տուաւ նորան և նորա յիշատակը անջինջ պահեց։

Աշոտ իւր ժողովրդի բարոյական և նիւթական զար-գացման հետ երկրի պահպանութեան վերայ էլ առանձին խնամք տարաւ, որովհետև այնպիսի ժամանակ էր թա-գաւորում, երբ հզօրի իրաւունքից դուրս ուրիշ իրաւունք չէր ճանաչւում։ Ուստի բերդերի ու ամրոցների թիւը աւելացրեց և հէնց սկզբից մի մշտական բանակ կազմեց 90,000 հետևակ և ձիաւոր զօրքերից, որոնց վերայ զօ-րավար կարգեց Գէորգ Մարզպետունու Գոռ որդուն։ Այս պատկառելի զօրութեամբ Աշոտ մի փառաւոր պա-տերազմ տուեց և մի պատերազմից էլ պատուով ազա-տուեցաւ։ Համտոն զօրապետը ամիրապետից ապստամ-բելով, Միջագետքն ու Ատրպատականը տակնուվրայ էր արել և նոյն դիտաւորութեամբ Հայաստանի սահմաննե-րին էր մօտեցել։ Աշոտ գնաց նորա դէմ, արիւնահեղ պատերազմի մէջ յաղթեց նորան, իրան էլ բռնեց ու գլուխը կտրեց։ Այս դէպքը բնականաբար ամիրապետին հաճելի լինելով, նպաստեց բարեկամական յարաբերու-թիւնները աւելի ևս ամրապնդելու նորա և Աշոտի մէջ։

Սորանից մի քանի տարի յետոյ Յովհաննէս Չմշկիկ կայսրը Միջագետքի կողմերը գալով Արաբացոց հետ պատերազմելու, յանկարծ յետ դարձաւ և գնաց բանա-կեցաւ Տարօն գաւառում՝ սպառնալի դիրք բռնելով։ Հայերը ամեն կողմից եկան հաւաքուեցան իրանց սիրելի թագաւորի դրօշակների տակ. Նոյն իսկ Աշոտ Բ Արծր-ունին, Վասպուրականի թագաւորը, մի գունդ օգնական

զօրք ուղարկեց նորան։ Այսպիսով Աշոտ 80,000 զօրքով գնաց կայսեր առաջ, որ ակնածելով նորա զօրութիւնից՝ 10,000 հեծելազօր օգնութիւն խնդրեց Աշոտից և Հայաստանի սահմաններից հեռացաւ։ Այնուհետև Աշոտ մի քանի տարի էլ թագաւորեց և մեռաւ 26 տարի իւր ազգը հայրաբար խնամելուց յետոյ։

Աշոտ Գ-ի որդին Սմբատ Բ. հօր շաւղովը ընթանալով, իւր 10 տարուայ թագաւորութիւնը աշխարհաշինութեամբ և իւր տէրութեան ապահովութեան վրայ հոգ տանելով անցկացրեց։ Այս նպատակով նա Անի քաղաքը դրսից ամրացրեց, ներսն էլ փառաւոր շինութիւններով զարդարեց։ Այս խաղաղ պարապմունքները ընդհատուեցան մի պատերազմով, որ Սմբատ պատրաստուեցաւ տալ իւր անհանգիստ հօրեղբօր՝ Կարսի Մուշեղ թագաւորի դէմ։ Սմբատ նորան պատժելու համար՝ մտաւ նորա երկիրը և Ճատիկ բերդը գրաւեց. բայց Մուշեղ Տայոց Դաւիթ կիւրապաղատի օգնութեամբ յետ քշեց իւր եղբօրորդուն, և երկու թագաւորները ստիպուեցան հաշտութիւն անել։ Սմբատ իւր թագաւորութեան վերջին օրերը մի անարժան գործ արաւ՝ եկեղեցական կանոնների հակառակ իւր քրոջ աղջկայ հետ ամուսնանալով։

Գագիկ Ա Սմբատ Բ-ի եղբայրն ու յաջորդը իւր իմաստութեամբ և մեծագործութեամբ Բագրատունեաց տան փառքն ու պարծանքն եղաւ (990—1020)։ Նորա երեսնամեայ թագաւորութիւնը մշտնջենական խաղաղութեան և ազգային յառաջադիմութեան ժամանակ եղաւ. արտաքին թշնամիները նորա զօրութիւնից պատկառելով՝ չհամարձակեցան անհանգիստ անել նորան, իսկ սահմա-

նակից Հայ իշխանները օգնութիւն գտնելով նորանից՝ սէր ու յարգանք կապեցին նորա վրայ։ Այսպիսով Գագիկ միջոց ունեցաւ իւր գործունէութիւնը ամբողջապէս ժողովրդի բարոյական և նիւթական զարգացման նուիրելու։ Բարեգործական հաստատութիւնները, որոնք Աշոտ Գ-ի և Սմբատ Բ-ի ժամանակ հիմնուել էին, Գագիկ Ա-ի օրով աւելի ևս բազմացան ու ճոխացան. Հարիւրաւոր վանքեր ու դպրոցներ նպաստեցին ժողովրդի ամեն դասերի մէջ քրիստոնէական լոյսն և ուսումը տարածելու։ Երկրագործութիւնը և վաճառականութիւնը Գագիկի շնորհով նոյնպէս բարգաւաճեցան. Հայաստանի բազմամարդ ու վաճառաշահ քաղաքները՝ Անի, Արծն, Բաղէշ, Նախիջևան, Հեղկաց, Պարսից և Արաբացոց հարուստ ապրանքների շտեմարաններն եղան։ Գագիկ, որ եկեղեցիներին ու եկեղեցականներին մեծամեծ եկամուտներ կապեց, սիրում էր եկեղեցի յաճախել և շատ անգամ անձամբ ժամերգութեանը մասնակից էր լինում։ Իւր մահը, որ պատահեցաւ 1020-ին, ընդհանուր ցաւ պատճառեց։

## 51.

### *Անի քաղաքի ծագումը և շինութիւնը։*

Բագրատունեաց մեծագործութեան ամենագեղեցիկ արդիւնքն եղաւ Անին, «Հազար և մէկ եկեղեցիների» քաղաքը, իւր զարմանալի պարսպներով ու աշտարակներով, իւր հրաշակերտ պալատներով ու տաճարներով։ Այս փառաւոր մայրաքաղաքը, որի բնակիչների թիւը իւր ծաղկած ժամանակը, եւրոպացի ճանապարհորդների կարծիքով, մէկ միլիոնի պիտի հասած լինի, Հայաստա-

նի ուրիշ քաղաքների համեմատութեամբ նոր ծաղկում ունի։ Ութերորդ դարու վերջերը Աշոտ Մսակեր, Բագրատունեաց թագաւորութեան հիմնադրի պապը, Շիրակայ գաւառը Կամսարականներից գնելով, իւր ընտանիքով բնակեցաւ Անիում, որ այն ժամանակ մի փոքրիկ աւան էր։ Կամաց կամաց Անին շէնացաւ ու ընդարձակուեցաւ և Սմբատ Բ-ի ու Գագիկ Ա-ի օրով, այսինքն երկու հարիւր տարուայ ընթացքում, ամենամեծ փառաւորութեան հասաւ։

Աշոտ Գ Ողորմած առաջին անգամ աթոռը հաստատեց Անիում, և նոր մայրաքաղաքի պաշտպանութեան համար մի ամուր բերդ շինեց։ Նորա կինը, Խոսրովանոյշ թագուհին, որ Հաղբատայ ու Սանահնի հոյակապ վանքերն է կառուցել, անշուշտ իւր մեծագործութեան յիշատակը թողած պիտի լինի և իւր ամուսնու օծած քաղաքում։ Սակայն Անիի սքանչելի շինութիւնների մեծ մասը վերաբերում են Սմբատ Բ-ի թագաւորութեանը։ Իւր աթոռանիստը արևելեան և հարաւային կողմերից Ախուրեան գետով պաշտպանուած լինելով և արևմտեան կողմից ծաղկոցաձորով, Սմբատ հիւսիսային կողմից ամրացրեց նորան կրկին պարիսպներով ու բոլորակ աշտարակներով և լայն ու խոր քարաշէն փոսով, որոնց շինութեան վրայ ութ տարի գործ դրեց։ Պարիսպների բազմաթիւ մուտքերից այսօր 11-ը նշմարում են։ Երկու պատերի գլխաւոր մուտքերը մէկ ուղղութեամբ շինած չեն այլ ներքինը արտաքինի ձախ կողմը՝ բաւական հեռու ընկած է. և այս անշուշտ այն նպատակով՝ որ եթէ թշնամին առաջին պարսպին տիրէր, նոր արգելքի հանդիպէր քաղաքը մտնելու. հաւանական է որ մնացած

մուտքերն էլ նոյն կերպով շինած էին։ Արտաքին պարսպի գլխաւոր մուտքի առաջ բարձրացող պատը ծածկուած է արձանագրութիւններով, և այս արձանագրութիւնների մէջ խաչքարի վրայ մի առիւծ է փորագրուած, որ յիշեցնում էր հայ զինուորներին, թէ իւր յոյսը խաչի և իւր բազկի զօրութեան վրայ դնելու է։

Քաղաքի մէջ Թագաւորը հռչակաւոր Տրդատ ճարտարապետին մեծամեծ եկեղեցիներ ու պալատներ շինել տուեց, որոնց աւերակները մինչև այսօր ապշեցնում են ճանապարհորդներին։ Արքունի պալատը իւր հարիւրաւոր սենեակներով բարձրանում էր Ծաղկոցաձորին նայող արևմտեան մասի վրայ. Նորա ճակատը հարուստ միւսիոններով զարդարուած էր, մեծ դուռը արաբական ամենագեղեցիկ ոճով էր շինուած։ Տրդատի հանճարի գործն է իմէջ այլոց և Հրաշալի մայր եկեղեցին, որի վրայ արուեստագէտների կարծիքով արաբական և բիւզանդական ոճի խառնուրդ է երևում։ Տաճարը, որի սրածայր յարկը քառակուսի խոշոր քարերով ծածկուած է, ներսից բարձրաբերձ կամարների վրայ հաստատուած է և բացի կաթուղիկէից՝ համարեա անարատ մնացած է։ Շէնքի դրսի կողմը ապշեցնում է իւր զարդերի գեղեցկութեամբ և քանդակների նրբութեամբ, իսկ ներսի կողմը՝ իւր պարզութեամբ։ Ամբողջ տաճարը երեք մասից է բաղկացած. միջին գլխաւոր մասը և երկու կողմնական թևերը. միջին մասը 107 ոտնաչափ երկայնութիւն ունի և 66 ոտնաչափ լայնութիւն։ Սմբատ Բ սկսաւ շինել այս եկեղեցին և աւարտեց Գագիկ Ա-ի ամուսինը Կատրամիդէ թագուհին. իսկ Գագիկ շինեց ուրիշ մեծ ու փառաւոր եկեղեցի Գրիգոր Լուսաւորչի անունով։

## Ն. ՅՈՎՀԱՆՆԷՍ-ՍՄԲԱՏ ԵՒ ԳԱԳԻԿ Բ.—ՍԵԼՋՈՒԿԵԱՆՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ

### 52.

*Յովհաննէս-Սմբատ* (1020). *կռիւ գահակալութեան համար.—Սելջուկեանց արշաւանքը Հայաստան։—Վասպուրականի թագաւորութեան վախճանը* (1021).—*Անիի վաճառման կտակը.—Յովհաննէս-Սմբատի մահը* (1040)։

*Գագիկ Ա երկու որդի թողեց. Յովհաննէս-Սմբատ և Աշոտ։ Անդրանիկը դանդաղ, երկչոտ և պատերազմական գործերի անհմուտ էր, իսկ կրտսերը ընդհակառակն ամեն ընդունակութիւններն ունէր իւր երկիրը երջանիկ անելու և նորա քաղաքական գոյութիւնը ապահովելու. Նա առոյգ, քաջ ու ճարտար երիտասարդ էր։ Բայց անդրանկութեան իրաւունքը յաղթեց և Յովհաննէս-Սմբատ ժառանգեց իւր հօր աթոռը* (1020)։ *Այն ժամանակ Աշոտ ժողովեց իւր շուրջը մի քանի կուսակիցներ և ամիջապէս թշնամական յարաբերութիւններ սկսեց իւր եղբօր հետ։ Վասպուրականի Սենեքերիմ թագաւորին էլ իւր կողմը ձգելով, նորանից ստացած օգնութեամբ իւր զօրքը ստուարացրեց և ուղղակի Անիի վրայ գնաց։ Թագաւորը թէև* 60,000 *զօրք ունէր ձեռքի տակ և մայրաքաղաքի ամրութիւնները իւր ետև, բայց և այնպէս չկարողացաւ դիմանալ Աշոտի յանդուգն յարձակմանը, որ ցրուեց ու փախցրեց նորա ահագին բանակը։ Նախարարները երկու եղբայրների միմեանց հետ հաշտեցնելու համար՝ դիմեցին Պետրոս Գետադարձ կաթողիկոսի և Վրաց Գիորգի թագաւորի միջնորդութեանը։ Խաղա-*

ղութիւնը կայացաւ այն պայմանով՝ որ Ցոլհաննէս-Սմբատ թագաւորէ Անիի և նորա շրջականների վրայ, իսկ Աշոտ Պարսկաստանի և Վրաստանի սահմանակից երկրների վրայ, և առաջինի մահից յետոյ երկրորդը միայնակ իշխէ բոլոր տէրութեան վրայ։

Սակայն Աշոտի փառասիրութիւնը չէր կարող գոհ մնալ այս որոշմամբ, և նա սկսաւ ձեռքի տակից աշխատել իւր բաղձանքին հասնելու։ Իւր կողմնակիցներից մէկի բանսարկութեամբ Գէորգի թագաւորին զրգռեց իւր եղբօր դէմ, և մի անգամ մինչ Ցոհաննէս-Սմբատ մայրաքաղաքից դուրս մի տեղ մնացել էր գիշերն անցկացնելու, Վրացիք յանկարծ վրայ թափուեցան, բռնեցին նորան և իրանց թագաւորին տարան։ Գէորգին կալանաւորեց Ցոհաննէս թագաւորին և միայն երեք բերդ առնելով նորանից՝ բանտից ազատեց։ Այս անյաջողութիւնը տեսնելով, Աշոտ մի ուրիշ թակարդ լարեց իւր եղբօր համար․ ծանր հիւանդ ձևանալով, մարդ ուղարկեց նորա մօտ և խնդրեց որ գայ վերջին անգամ նորա հետ տեսնուելու։ Միամիտ թագաւորը գնաց, և մինչ Աշոտի անկողնին մօտենում էր, ընկաւ առաջուց պատրաստած թակարդի մէջ և սկսաւ խնդրել եղբօրը, որ խնայէ իրան։ Ապիրատ իշխանը թագաւորին դարանից հանեց, որ իբրև թէ Աշոտի պատուէրի համեմատ մի անծանօթ տեղ տանի նորան և սպանէ, բայց տարաւ Անի և իւր աթոռը նստեցրեց․ իսկ ինքը Աշոտի վրէժխնդրութիւնից ազատուելու համար՝ ապաւինեցաւ Դուինի Աբուլսվար ամիրայի մօտ, ուր ոմանց չարախօսութեամբ կասկածի տակ ընկնելով՝ սպանուեցաւ։

Մինչ այսպէս երկու եղբայր գահի համար վիճում

էին միմեանց հետ, մի նոր փոթորիկ էր պատրաստւում Հայաստանի համար։ Տուղրիլ-Բէգ, Սելճուկեան Թուրքերի իշխանը, որի նախորդը Հասան Տիգրիս գետն անցել Միջագետքը տակնուվրայ էր արել, իւր խառնիճաղանճ բազմութիւնը արձակեց Հայաստանի վրայ։ Այս բարբարոսների կատաղութեան առաջին զոհն եղաւ Վասպուրականը։ Զուր Սենեքերիմ թագաւորը իւր բոլոր զօրութիւնը Շապուհ զօրավարի և Դաւիթ արքայորդու առաջնորդութեամբ ուղարկեց թշնամիների առաջ. Նորա զօրքը յաղթուեցաւ և Տուղրիլ իւր արշաւանքը շարունակելով՝ Յովհաննէս-Սմբատի երկիրը մտաւ։ Վասակ Պահլաւունի սպարապետը, որ նոյն ժամանակ Նիգ գաւառի Բջնի բերդումն էր և հազիւ 500 հոգի ունէր իւր ձեռքի տակ, քաջութեամբ ճեղքեց թշնամիների բազմութիւնը և Սերկևլոյ լերան վրայ բարձրացաւ որ փոքր ինչ հանգստանայ։ Այդտեղ դաւաճանութեամբ սպանուեցաւ նա, ըստ ոմանց քնած ժամանակը սարից ներքև գլորուելով, իսկ ըստ այլոց աղօթք անելիս՝ մի քար եկաւ և գլուխը ջախջախեց։

Այս առաջին արշաւանքից յետոյ Տուղրիլ յետ քաշուեցաւ, անցաւ Պարսկաստան, և բոլոր երկիրը նուաճելով՝ վերականգնեց Պարսից թագաւորութիւնը—Նոր սպառնալիք բաժանուած ու տկարացած Հայաստանի համար։ Արդէն Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը զգալով որ անկարող պիտի լինի իւր տէրութիւնը այսպիսի ահարկու հարևանի դէմ պաշտպանելու, առաջարկեց իւր թագաւորութիւնը տալ Յունաց Վասիլ Բ կայսեր և նորա փոխարէն ստանալ Սեբաստիայ քաղաքը իւր շրջականերով։ Կայսրը բնականաբար սիրով ընդունեց այս առա-

ջարկութիւնը, և Սենեքերիմ իւր բոլոր տնով, իշխաններով ու զօրքով տեղափոխուեցաւ Սեբաստիա (1021)։ Եթէ այդ ժամանակ Անիի գահի վրայ մի ուրիշ աւելի արժանաւոր մարդ նստած լինէր, հաւանական է որ Սենեքերիմ չէր յուսահատուիլ, այլ պաշտպանողական դաշն կը կապէր նորա հետ, և Հայաստանի միւս իշխանները երկու թագաւորների օրինակին հետեւելով՝ գուցէ կը միանային նոցա հետ հասարակաց թշնամու դէմ դնելու համար։ Բայց Յովհաննէս-Սմբատի վրայ յոյս դնել չէր կարելի, քանի որ նա թոյլ ու անհոգ մարդ էր և աւելի իւր հանգիստ կեանքի քան տէրութեան շահերի վրայ էր մտածում։

Շուտով դէպքերը կատարելապէս արդարացրին այս ճշմարտութիւնը։ Վասիլ կայսրը Վրաց Գիորգի թագաւորի ապստամբութիւնը զսպելու համար՝ 1023 թուին բազմաթիւ զօրքով եկաւ նուաճեց նորան և սկսաւ Հայաստանի սահմաններին մօտենալ։ Յովհաննէս-Սմբատ, որ ձեռքի տակից մեծ օգնութիւններ էր արել Գիորգիին, վախեցաւ կայսեր վրէժխնդրութիւնից և առանց իւր եղբօր հետ խորհուրդ անելու, որ հաստատուն դաշնադրութեամբ թագաւորութեան ժառանգն էր, Պետրոս Գետադարձ կաթողիկոսի ձեռքով երդման յետկար ուղարկեց կայսեր, որով խոստանում էր Անին իւր մահից յետոյ նորան տալ։ Կայսրը այս անակնունելի յաջողութեան վրայ ուրախացած՝ վերադարձաւ իւր երկիրը առանց Յովհաննէս թագաւորին անհանգիստ անելու։ Մի քանի տարի յետոյ Վասիլի յաջորդը Կոստանդին՝ մահուան անկողնի մէջ խղճահարուելով իւր եղբօր անիրաւութիւնից, կանչել տուեց Կիրակոս անունով հայ քահանային,

տր կաթողիկոսարանին ծանօթ մարդ էր, և Յովհաննէս-Սմբատի նամակը յանձնեց նորան ասելով. «Տար այս թուղթը տուր քո թագաւորին և ասա նորան իմ կողմից, թէ ինչպէս ամեն մահկանացու՝ ես էլ յաւիտենականութեան շէմքի վրայ եմ կանգնած և չեմ կամենում ուրիշի սեպհականութիւնը յափշտակել. թող ուրեմն յետ առնէ իւր թագաւորութիւնը և իւր որդոցը տայ» (1029)։ Աներժան քահանան այս թուղթը իւր մօտ պահեց, և երբ Կոստանդին մեռաւ և նորա տեղ նստաւ Միքայել Ե, տարաւ մեծ գնով նոր կայսեր ծախեց (1034)։ Այս գործը՝ որ հայ մարդու և մանաւանդ Աստուծոյ պաշտօնէի ձեռքով կատարուելու համար մեծ ամօթ ու նախատինք է բերում, դառն հետևանքներ ունեցաւ Հայաստանի ապագայի համար։

Այս հանգամանքների մէջ մեռաւ Յովհաննէս-Սմբատ թագաւորը. նորանից փոքր ինչ առաջ մեռել էր և նորա եղբայրը Աշոտ, թողնելով մի որդի Գագիկ անունով, որ թէև դեռ 14 տարեկան պատանի էր, բայց իւր բարեմասնութիւններով մեծ յոյս էր տալիս (1040)։

## 53.

*Միքայէլ կայսեր Անիին պահանջելը. Վեստ Սարգիս և Վահրամ Պահլաւունի.—Հայոց յաղթութիւնները Յունաց վրայ.—Գագիկ Բ-ի թագաւորելը (1042). Վեստ Սարգսի դաւաճանութիւնը.—Յունաց կրած նոր պարտութիւնը.—Գագիկի Կոստանդնուպոլիս գնալը և այնտեղ արգելուիլը (1045).—Պետրոս Գետադարձ կաթողիկոսի արարմունքը.—Յունաց մուտքը Անի։*

Յովհաննէս-Սմբատի մահով անկարգութիւնների դուռը բացուեցաւ. Նախարարների մէջ տարաձայնութիւններ ընկան, և երկիրը անպաշտպան մնալով՝ արտաքին թշնամիների յարձակմունքներին ենթարկուեցաւ։ Այդ միջոցին Միքայէլ կայսեր դեսպաններն էլ հասան, որոնք իրանց տիրոջ կողմից եկել էին Անիին իւր շրջակայ գաւառներով պահանջելու։ Այս վտանգի առաջ հայ իշխանները առ ժամանակ միաբանեցան և միաբերան մերժեցին կայսեր պահանջը կատարելու։ Բայց այս երկար չտևեց. շուտով կրքերը նոր զօրութեամբ արծարծուեցան և չպիտի հանդարտուէին մինչև որ Հայաստանը կորստեան անդունդը չձգէին։ Երկու կուսակցութիւն կեղեքում էին այդ ժամանակ մայրաքաղաքի բնակիչներին. մէկի գլուխն էր Վեստ Սարգիս Սիւնին, տէրութեան խնամակալը, իսկ միւսինը՝ Վասակ Պահլաւունու եղբայր Վահրամ սպարապետը։ Վեստ Սարգիս մի փառամոլ մարդ էր, որ տէրութեան գանձերը ձեռք ձգելով և շատ բերդեր ու քաղաքներ իւր կողմնակից զօրքերով բռնելով՝ կամենում էր Հայաստանի թագը իւր գլխին դնել, կամ եթէ այդ չյաջողի՝ Յունաց կայսեր տալ։ Վահրամ Պահլաւունու կուսակցութիւնը ընդհակառակն կամենում

էր Թագաւորութեան օրինաւոր ժառանգին գահը նստեցնել և մինչև վերջին շունչը նորա իրաւունքները պաշտպանել։

Միքայէլ կայսրը Հայոց բացասական պատասխանի վրայ զայրացած՝ վճռեց զէնքի զօրութեամբ իւր մտադրութիւնը առաջ տանել։ Երեք բանակ հետզհետէ ուղարկուեցան Հայաստան, որոնք Թէև շատ աւեր ու կոտորած գործեցին, բայց չկարողացան իրանց նպատակին հասնել։ Վերջապէս մի չորրորդ բանակ էլ եկաւ 100,000 հոգուց բաղկացած՝ և Անին պաշարեց. միևնոյն ժամանակ Դաւիթ Անհողին Աղուանից Թագաւորը Յունաց դրդմամբ Հայաստանի հիւսիսային արևմտեան գաւառները գրաւեց, ճանապարհի վրայ եղած քաղաքներն ու գիւղերն ոտնակոխ անելով։ Գոռոզ Յոյները վստահ իրանց զօրութեան վրայ՝ ամեն օր նախատինքներ ու հայհոյական խօսքեր էին ուղարկում քաղաքացոց, մինչև որ Վահրամ սպարապետը 30,000 զօրքով դուրս եկաւ և յանդուգն յարձակմամբ զարկաւ կոտրեց Թշնամիների բանակը։ Յաղթութիւնը կատարեալ էր. Յոյները Հայոց կատաղութիւնից սարսափած՝ անկարգութեամբ փախան 20,000 մեռած ու վիրաւոր Թողնելով մայրաքաղաքի պարիսպների տակ։

Այս փառաւոր յաղթութիւնից յետոյ Վահրամեանք շտապեցան բերել տալ Անի Աշոտի Գագիկ որդուն, որ գահի միակ ժառանգն էր, և Պետրոս Գետադարձ կաթողիկոսի ձեռքով Թագաւոր օծել տուին նորան Գագիկ Բ անունով (1042)։ Վեստ Սարգիսը տեսնելով իւր խորհուրդը չյաջողեցաւ, փախաւ ամրացաւ Անիի միջնաբերդում։ Նորապսակ Թագաւորը մէն մենակ առանց Թիկ-

նապահի մտաւ դղեակը և համոզեց նրան որ այնտեղից հեռանայ։ Սարգիս քաշուեցաւ Սուրմառի բերդաքաղաքը, երբ այնտեղից էլ սկսաւ թագաւորութեան հակառակ գործել, Գագիկ մի քանի մարդով գնաց նորա վրայ, արքունի գանձերն ու բերդերը ձեռքիցն առաւ, իրան էլ բռնեց ու Անիի մէջ բանտարկեց։ Այնուհետև երիտասարդ թագաւորը մեծ արիութեամբ ձեռք զարկեց իւր տէրութեան մէջ խաղաղութիւնն ու կարգը վերահաստատելու։ Սպարապետի եղբօրորդուն՝ Գրիգոր Մագիստրոսին հետն առաւ և գնաց Թուրքերի վրայ, որոնք նոյն ժամանակի խառնակութիւններից օգուտ քաղելով՝ զանազան տեղեր ասպատակում էին, և Հայաստանը նոցանից մաքրեց։

Սակայն Գագիկ իւր բոլոր արժանաւորութիւնների հետ երիտասարդութեան յատուկ անփորձութիւնն ունէր. Վեստ Սարգսի քաղցր լեզուից խաբուելով, շուտով ներեց նորան և մեծ պատիւների հասցրեց։ Այս նենգաւոր մարդը թագաւորին բարեկամ ձևանալով, կարճ ժամանակում իշխաններից շատերին նորա հետ թշնամացրեց, ի թիւս որոց և Գրիգոր Մագիստրոսին, շատրն էլ իրան համախոհ չինեց. այս հնարքով բարեմիտ անձանց թագաւորից հեռացրեց և ինքը նորա մտերիմ խորհրդականը դարձաւ։ Այս հանգամանքների մէջ Կոստանդին Մոնոմախոս, Միքայէլի յաջորդը, Սարգսից դրդուած՝ սկսաւ Անիի պահանջողութիւնը նորոգել. և երբ բանակցութիւնները անյաջող եւք ունեցան, Միքայէլ Ասիդ զօրապետը պատուէր ընդունեց որ գնայ բռուն զօրութեամբ Անիին տիրէ։ Գագիկ քաջութեամբ դիմեց Յունաց վրայ, խորտակեց նոցա բանակը և Ասիդին ամօթով յետ դար-

ձրեց։ Կայսրը Նիկողայոս զօրապետին աւելի մեծ պատրաստութեամբ ուղարկեց Գագիկի վրայ. Դուինի Աբուլսվար ամիրային էլ յորդորեց որ արեւելեան կողմից անհանգիստ անէ Հայոց թագաւորին։ Գագիկ ամենեւին չշփոթուեցաւ, այլ իւր խելքով եւ արիութեամբ հնար գտաւ այս դժուար գրութիւնից ազատուելու. իւր զօրութիւնը չբաժանելու համար՝ աճապարեց ընծաներով գլխաթափ անել Աբուլսվարին եւ բոլոր զօրքը կենտրոնացրեց Յունաց դէմ, որոնք այս անգամ յոյս ունէին անշուշտ Անիին տէր լինելու։ Կռիւը երկար չտեւեց Հայերը իրանց երկրի ազատութեամբ ոգեւորուած՝ այնպիսի զօրութեամբ ընկան թշնամիների վրայ, որ Յոյները չկարողանալով նոցա բուռն յարձակմանը դիմանալ, ստիպուեցան թողնել ու փախչել։

Այս հարուածներից յետոյ Մոնոմախոս տեսնելով որ զէնքով ոչինչ չէ կարող անել, հետեւեալ խորամանկութեանը դիմեց, որի մէջ խառն էր եւ Վեստ Սարգսի մատը. Գագիկին բարեկամական թուղթ գրեց եւ հրաւիրեց որ Կոստանդնուպօլիս գայ իւր հետ տեսնուելու, որպէս զի երկու կողմերի մէջ մշտնջենաւոր խաղաղութեան դաշն հաստատուի։ Իւր կեղծաւորութիւնը աւելի լաւ քօղարկելու համար՝ կայսրը Հայոց թագաւորի պատգամաւորների ներկայութեանը Խաչի ու Աւետարանի վրայ երդուեց որ իւր խօսքին հաւատարիմ կը մնայ։ Գագիկ թէեւ դեռ անփորձ՝ բայց յունական նենգութեանը անցեալից ծանօթ լինելով, դժուարանում էր կայսեր հրաւէրն ընդունելու։ Այն ժամանակ Վեստ-Սարգսեանք շրջապատեցին նորան եւ Պետրոս կաթողիկոսի հետ միաբանած՝ սկսան համոզել որ երթայ, խոստանալով որ ամենայն հաւատարմութեամբ կը պաշտպանեն նորա իրա-

ւունքները. և որպէս զի ամեն կասկած փարատեն, երդման թուղթ դրեցին և Քրիստոսի արիւնով ստորագրելով թագաւորին մատուցին։ Զուր Վահրամեանք յորդորեցին նորան զգուշանալ արտաքին և ներքին թշնամիների դարանակալութիւնից. Գագիկ չլսեց նոցա խորհրդին և գնաց Կոստանդնուպօլիս։ Մոնոմախոս արքայավայել ընդունելութիւն արաւ Հայոց թագաւորին, բայց մի քանի օրից յետոյ սկսաւ պահանջել որ Անին իրան տայ. և երբ Գագիկ յանձն չառաւ, ընդդէմ ամենայն մարդկային իրաւունքների՝ Վոսփորի կղզիներից մէկի մէջ արգելեց նորան։

Այս դժբաղդութեան լուրը Հայաստան հասնելով, նախարարները հաւաքուեցան խորհուրդ անելու, և մինչ ոմանք կամենում էին Անին Դաւիթ Անհողինին տալ, իսկ ուրիշները Վրաց և Աբխազաց Բագարատ թագաւորին, Պետրոս կաթողիկոսը, որին Գագիկ հաւատացել էր Անիի բանալիները, Սամոսատի յոյն իշխանի միջնորդութեամբ յայտնեց կայսեր թէ պատրաստ է Անին նորան յանձնելու, եթէ արժանաւոր հատուցում անեն իրան։ Կաթողիկոսը շուտով ստացաւ իւր ցանկացածը, և Անիի քառասուն բանալիները ուղարկուեցան Կոստանդնուպօլիս, հետն էլ մի նամակ, որի մէջ տիրանենգ իշխանները ասում էին կայսեր թէ «Անին և բոլոր արևելեան երկրները (Հայաստանը) նորան են տալիս»։ Դժբաղդ թագաւորը իւր իշխաններից դաւաճանուած՝ թէև այնուհետև էլ շարունակեց իւր իրաւունքները պաշտպանել, բայց ի վերջոյ հարկադրուեցաւ կայսեր կամքը կատարելու. 1045-ին Գագիկ հրաժարուեցաւ իւր թագաւորութիւնից և նորա փոխարէն ստացաւ Կապադովկիայի Բի-

գու քաղաքը, ուր և ամուսնացաւ Սեբաստիայի Դաւիթ Թագաւորի դստեր հետ։

Պարակամանոս Ներքինին անմիջապէս զօրքով ուղարկուեցաւ Յունաց կայսեր նոր ժառանգութիւնն ընդունելու. բայց երբ Անիի առաջ հասաւ, դռները փակ գտաւ և բոլոր զօրքերը պատրաստ իրանց Թագաւորի մայրաքաղաքը պաշտպանելու։ Պաշարումը սկսաւ. Հայոց զօրքը, որոնց հետ ընկերացել էին և քաղաքացիք, մի զօրաւոր յարձակում արին պաշարողների վրայ, խորտակեցին նոցա բանակը և ցիր ու ցան արին։ Հէնց այդ միջոցին գոյժ հասաւ թէ Գագիկ Թագաւորութիւնից հրաժարուել է և այլ ևս իւր երկիրը վերադառնալու չէ։ Բոլոր քաղաքը խորին տրտմութեան մէջ ընկղմեցաւ, և Պարակամանոս յետ կանչուեց Անիին տէր լինելու։

---

## 54.

*Յունաց վարմունքը Հայոց հետ.—Սելջուկեանց նոր արշաւանքը.—Սմբատաբերդի և Արծնի առումը (1049).—Յունաց անյաջող դիմադրութիւնը.—Վանանդի պատերազմը. Թաթուլ.—Մանազկերտի ընդդիմութիւնը և Արծկէի առումը.—Ալփասլան.—Անիի առումն և կործանումը 1064.—Կարսի Թագաւորութեան վախճանը (1065).—Ալփասլանի արշաւանքը Փոքր Ասիա.—Յունաց քաղաքական սխալը.—Գագիկ Բ-ի մահը (1079)։*

Յոյները Հայաստանին տէր լինելուց յետոյ, մեծամեծ անգթութիւններ գործեցին։ Հայոց զօրքը ցրուեցին և նշանաւոր քաղաքների ու բերդերի մէջ իրանց պահապան գնդերը դրին. իշխաններին էլ ամեն տեղից հա-

լածեցին, ոմանց սրով, ուրիշներին թոյնով սպանեցին և ժողովուրդը անպաշտպան մնալով՝ անտանելի տուրքեր վճարելու հարկադրուեցաւ։ Նոյն իսկ կաթողիկոսական իշխանութեանը համարձակեցան ձեռնամերձ լինել. Պետրոս Գետադարձ կաթողիկոսը, որ Անին յանձնել էր նոցա, բռնուեցաւ և Կոստանդնուպօլիս ուղարկուեցաւ։ Այս չարութիւններից երևում է որ Յունաց գլխաւոր նպատակը Հայոց լոկ հպատակութեան մէջ պահել չէր, այլ աւելի նոցա ազգութիւնը ջնջել և Յունաց մէջ ընկղմել։

Տուղրիլ-Բէգ Հայաստանի վիճակը իմանալով՝ ուղարկեց իւր զօրքերը ասպատակելու, որոնք մինչև երկրի արևմտեան սահմանները տարածուելով՝ վեց եօթը տարի շարունակ անխնայ կոտորեցին, քանդեցին ու այրեցին առանց մի արգելքի հանդիպելու իրանց ճանապարհի վրայ. ամեն հասակի ու աստիճանի մարդիկ սրի կամ գերութեան մատնուեցան, շէն քաղաքներն ու աւանները մի մի մոխրակոյտ դարձան։ Սմբատաբերդ ամուր քաղաքը, ուր մեծ բազմութիւն իրանց ստացուածքովն ապաւինել էին, այս կատաղի գազաններից առնուեցաւ ու թալանուեցաւ, բնակիչներն էլ ծերերից սկսած մինչև կաթնակեր մանուկները, անողորմաբար սպանուեցան կամ գերուեցան։ Նոյն բաղդն ունեցաւ և Արծն բազմամարդ, հարուստ ու վաճառաշահ քաղաքը, որ փոքր ինչ ժամանակ ընդդիմութիւն ցոյց տալուց յետոյ՝ անձնատուր եղաւ և կրակի մատնուեցաւ, իսկ բնակիչները, որոնց թիւը 150,000-ի էր հասնում, մասամբ կոտորուեցան կամ այրուեցան, մասամբ էլ գերի տարուեցան (1049)։

Յոյները որ Հայաստանի տէրերն էին, երկար ժամանակ անտարբերութեամբ ականատես եղան այս վայ-

ընութիւններին, մինչև որ վերջապէս Կոմնենոս զօրավարը 60,000 զօրքով մի բանակ կազմեց. Նորա հետ միաբանեցան Լիպարիտ Վրաց թագաւորը, Ահարոն Վանի վերակացուն և Գրիգոր Մագիստրոսը իրանց զօրքերով. Քրիստոնեաների բանակը Սելջուկեանց դէմ ճակատեցաւ Բայբերդի մօտ, բայց զօրավարների մէջ ծագած տարաձայնութիւնների պատճառով յաղթուեցաւ ու ցրուեցաւ, Վրաց թագաւորն էլ գերի բռնուեցաւ։

Այս արիւնհեղութիւններն ու կործանումները բաւական չհամարելով, Տուղրիլ անձամբ եկաւ Հայաստան և բոլոր զօրութիւնը Ապահունեաց գաւառի մէջ կենտրոնացնելով՝ իւր ասպատակները ցրուեց այն գաւառները, որոնք առաջին կոտորածներից ազատ էին մնացել։ Սուլթանի զօրքերը անարգել արշաւեցին ուր որ կամեցան և ինչ անգթութիւններ ասես գործեցին. միայն Վանանդ գաւառում մի փոքրիկ ընդդիմութեան հանդիպեցան։ Այստեղ հայ իշխանները Կարսի Գագիկ թագաւորի հետ միաբանած՝ կամեցան թշնամիների առաջը կտրել, բայց յաղթուելով յետ քաշուեցան։ Թաթուլ կտրիճ երիտասարդը, որ Սուրան իշխանի որդուն պատերազմում վիրաւորել էր, բռնուեցաւ և Տուղրիլի առաջ բերուեցաւ։ Սուլթանն ասաց նորան. «Եթէ այս պատանին ապրի, կ'ազատեմ քեզ, իսկ եթէ մեռնի, քո կեանքն էլ նորա սիրուն կը զոհուի»։ Անվեհեր Թաթուլը պատասխանեց. «Եթէ հարուածը իմն է, չի ապրիլ»։ Մի քանի օրից յետոյ իշխանական երիտասարդը մեռաւ, և Թաթուլ սպանուելով՝ նորա աջ ձեռքը կտրուեցաւ և Սուրանին ուղարկուեցաւ։

Մինչդեռ Տուղրիլ այս ասպատակութիւնների հետ

էր լինում, Մանազկերտցիք իրանց գլխի գալիքը գուշակելով՝ պատրաստուեցան դէմ դնելու նորան, ամեն տեսակ պաշար և պատերազմական մթերք ամբարելով իրանց քաղաքի մէջ։ Չուտով արգարև սուլթանն եկաւ ու Մանազկերտը պաշարեց։ Մի ամիս շարունակ օրը երկու անգամ քաղաքի վրայ անօգուտ յարձակումներ անելուց յետոյ, պաշարման մեքենաներ բերել տուաւ և սկսաւ պարսպներին քարեր խփել և նոցա հիմունքը փորելու աշխատիլ։ Բայց բոլորը զուր եղաւ. քաղաքացիք իրանց յոյն քաղաքապետի առաջնորդութեամբ՝ քաջութեամբ պաշտպանուեցան թշնամիների դէմ, և մի քահանայ իւր հնարած գործիքներով պաշարողների գործիքների հարուածները թուլացնում էր, իսկ մի փրանկ քիմիական միջոցներով այրեց մի ահագին բաբան, որ նոցա վերջին յոյսն էր։ Տուղրիլ ամօթով յետ քաշուեցաւ և իւր բարկութիւնը թափեց Արծկէ քաղաքի վրայ։ Արծկէացիք իրանց քաղաքի ամրութեան վրայ վստահացած՝ որի մի կողմը պարսպով էր պատած, իսկ միւս կողմը Վանայ ծովով, բոլորովին անհոգ մնացել էին. բայց թշնամիները ծովի մէջ ծանծաղ տեղեր գտնելով՝ ներս թափեցան, բնակիչների շատը կոտորեցին, մի մասն էլ հետները Պարսկաստան գերի տարան։

Տուղրիլի մահից յետոյ նորա եղբայրն Ալփասլան եկաւ և իւր բոլոր զօրութիւնը տարաւ Անիի վրայ, որ նախընթաց արշաւանքների ժամանակ անվնաս էր մնացել։ Պաշարումը երկար տևեց և թէպէտ պարսպի մի կողմը կործանուեցաւ, բայց թշնամիները չըկարողացան ներս մտնել։ Ալփասլան յուսահատուած յետ քաշուելու վրայ էր, երբ քաղաքի իշխանները կարծելով թէ սուլթա-

նը նոր յարձակում անելու է պատրաստվում, միջնաբերդը քաշուեցան և ժողովուրդը անպաշտպան մնալով՝ սկսաւ աղաղակներ արձակել։ Թշնամիները յետ դարձան և խուռն բազմութեամբ ներս թափեցան։ Անկարելի է նկարագրել այն ջարդն ու քանդը որ այս վայրենիները գործեցին քաղաքի մէջ. հազարաւոր մարդիկ սպանուեցան և իրանց արիւնով Ախուրեանի ջրերը ներկեցին, հոյակապ շէնքերը կրակի մատնուեցան և իրանց փլատակների տակ անթիւ դիակներ ծածկեցին (1064)։

Անիից Ալփասլան դեսպան ուղարկեց Կարսի Գագիկ թագաւորին, որ գայ իրան հպատակի։ Թագաւորը սուլթանի բարկութիւնից ազատուելու համար՝ սգաւորի զգեստներ հագած ընդունեց նորա դեսպանին, ասելով թէ քանի որ իւր բարեկամը Տուղրիլ մեռել է, ինքը սգի մէջ նստած է։ Այս հնարքով Գագիկ Ալփասլանի գութը շարժեց, որ եկաւ Կարս և բարեկամական տեսութիւն անելով նորա հետ խաղաղութեամբ յետ դարձաւ։ Սակայն Գագիկ հասկանալով թէ երկար ժամանակ հանգստութիւն վայելելու չէ, իւր երկիրը Յունաց կայսեր տուաւ և նորա փոխարէն ստացաւ Փոքր Հայոց Ծմնդաւ բերդը, ուր և տեղափոխեց իւր բնակութիւնը (1065)։

Շուտով Ալփասլան կրկին մտաւ Հայաստան և իւր աշխարհակալութիւնը առաջ տանելով մինչև Փոքր Հայք հասաւ. Կարս, Կարին, Բայբերդ, Սեբաստիա և Կեսարիա նորա իշխանութիւնը ճանաչեցին։ Ռոմանոս Դիոգինէս կայսրը դուրս եկաւ նորա առաջ գոնեա մի քանի քաղաքներ ազատելու համար, բայց չարաչար յաղթուեցաւ և գերի բռնուեցաւ։

Այսպիսով Յոյները, որ կարճ միջոցում Հայոց թա-

պատերութիւնները հետզհետէ կործանեցին ու գրաւեցին, երկար ժամանակ չվայելեցին իրանց յաջողութիւնների պտուղը. Սելջուկեանք ամեն տեղից քշեցին նոցա, այնպէս որ ԺԱ դարու վերջին յունական տիրապետութեան լոկ յիշատակը մնաց Հայաստանում։ Այն ժամանակ միայն Բիւզանդեան կայսրները հասկացան իրանց քաղաքականութեան բոլոր սխալը. նոքա ըմբռնեցին այն ինչ որ կրօնական ու ազգային ատելութիւնը թոյլ չէր տուել նոցա տեսնելու, այսինքն թէ Հայոց քաղաքական կեանքի գոյութիւնը ոչ միայն իրանց Հայոց համար էր հարկաւոր, այլ և կայսրութեան ընդհանուր շահերի համար։ Արդարև պատմութիւնից երևում է, որ Բագրատունեաց և Արծրունեաց թագաւորութիւնները հիմնուելուց առաջ՝ կայսրութեան արևելեան գաւառները անընդհատ յարձակումների էին ենթարկվում նախ Պարսից և ապա Արաբացոց կողմից, իսկ այս երկու թագաւորութիւնները հաստատուելուց յետոյ՝ յիշեալ երկրները Հայոց արեան գնով երկուդարու չափ խաղաղութիւն են վայելում, մինչդեռ հարաւային գաւառները յաճախ ասպակոխ են լինում ու յափշտակվում և Սելջուկեանց տիրապետութիւնն էլ հաստատվում է Իկոնիայում, մի քանի օրուան ճանապարհով հեռու Կոստանդնուպօլսից։ Այդ մահմէտական տարրերից մի օր պիտի դուրս գար մի զօրաւոր ցեղ, արագ արագ յառաջանալով պիտի հասնէր մինչև կայսրութեան մայրաքաղաքը և Կոստանդիանոս Մեծի գահի վրայ պիտի բարձրանար։

Իսկ Գագիկ թագաւորը երկար տարիներ թափառական կեանք վարեց Կապադովկիայում առանց մի հնար գտնելու իւր ազատութիւնը և հայրենի թագաւորութիւնը

նորից ձեռք ձգելու։ Ամեն օր ականատես էր լինում նա այն նախատինքներին, որ իւր հայրենակիցները կրում էին զոռոզ Յոյներից, մինչև այդ բոլոր անարգանքների վրէժը չարաչար կերպով հանեց Կեսարիայի Մարկոս մետրապոլտից։ Գագիկ իմանալով որ այս հայատեաց եկեղեցականը իւր շանը Արմէն անունն է դրել, գնաց նորա մօտ, կանչել տուեց նորան, իւր Արմէնին և երկուսին էլ մի պարկի մէջ կապելով՝ այնքան ծեծել տուեց շանը, որ անասունը կատաղեցաւ և կծոտելով սպանեց իւր տիրոջը։ Շուտով Յոյները իրանց մետրապօլտի անարգական մահուան վրէժը նոյնպիսի մահով լուծեցին. երեք եղբարք Մանտալեանք դաւաճանութեամբ բռնեցին Գագիկին և Կիզիստրայի բերդի վրայ կախեցին (1079)։ Այսպիսի եղերական վախճան ունեցաւ Բագրատունեաց վերջին թագաւորը։ Փոքր ինչ յետոյ Յովհաննէս և Դաւիթ արքայորդիքն էլ, ինչպէս և Յովհաննէսի որդին Աշոտ, մէկը միւսից յետոյ թունաւորուելով մեռան, որով և Բագրատունեաց թագաւորող տոհմը բոլորովին սպառուեցաւ։

---

## Զ. ՀԱՅՈՑ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԱՅՍ ՇՐՋԱՆՈՒՄ

### 55.

*Արաբական ազդեցութիւնը մեր գրականութեան վրայ.—Պատմագրութիւն.—Բանաստեղծութիւն.—Վարդապետական գըրուածներ։*

Յոյն լեզուի և գրականութեան ուսումնասիրութիւնը, որ քաղաքական ձախորդ հանգամանքների և կրօնական խնդիրներից (Քաղկեդոնի ժողով) ծագած ա-

տեւութեան պատճառով առ ժամանակ ընդհատուել էր, Է դարում վերստին սկսաւ արծարծուել, թէև ոչ առաջուան եռանդով։ Բայց նոյն դարու վերջերից և մանաւանդ յաջորդ Ը դարու սկզբից երևան է գալիս մի նոր ազդեցութիւն, արաբականը, որ հետևանք է այդ ազգի տիրապետութեանը Հայոց աշխարհի վրայ։ Այդ ժամանակներից հայ գրականութիւնն ու գեղարուեստը (յատկապէս ճարտարապետութիւնը) սկսում են ենթարկուիլ Արաբացոց ազդեցութեանը. սակայն կրօնական մեծ խտրոցը արգելք է լինում մեր մատենագրներին իշխող ազգի մտաւոր արդիւնքներից օգտուիլ և նոցանով մեր գրականութիւնը ճոխացնել *)։ Ազդեցութիւնը այստեղ գլխաւորապէս հեղինակների լեզուի ու ոճի վրայ է երեւում. բառերի կուտակում. իմաստների յորդութիւն, բացատրութեան խրթնութիւն և երկայնաբանութիւն,—ահա այն յատկութիւնները, որ երևում են այս շրջանի հայ մատենագրների երկասիրութիւնների մէջ։ Այսպիսով ոսկեդարեան ընտիր լեզուն կամաց կամաց կորցնում է իւր պարզութիւնն ու յստակութիւնը և աղաւաղութեան առաջին շրջանի մէջ է մտնում։

Պատմագրութեան նկատմամբ այս և նախորդ շըրջանի պատմիչների էական տարբերութիւնն այն է, որ սոքա ընդհանրապէս զուրկ են Ե դարու հեղինակների հմտութիւնից և իմաստասիրական ուղղութիւնից, որով փոխանակ քաղաքական իրողութիւնների պատճառ-

*) Այսպիսի փոխառութիւններ մեր գրականութեան մէջ լինում են այն ժամանակ՝ երբ Հայաստանը բոլորովին ազատւում է Արաբացոց քաղաքական ազդեցութիւնից։

ներն ու հետեանքները հետազօտելու՝ յաճախ բովանդակում են Սաղմոսի, մարգարէների ու Աւետարանի վկայութիւնները մէջ բերելով, և ամեն բանի մէջ առհասարակ Նախախնամութեան մատն են տեսնում։ Այս կրօնական-բարոյական ուղղութիւնը, որ մեր հին գրականութեան ընդհանուր յատկանիշն է, հետզհետէ աւելի է զօրանում, բայց և այնպէս հայ պատմագրութիւնը շարունակում է մինչև վերջը հաւատարիմ մնալ իւր գլխաւոր սկզբունքներին, այն է՝ ճշմարտասիրութեանը և ժամանակագրական ճշմարտութեանը, և այս կողմից է որ նա արևմտեան գիտութեան մտադրութեանն արժանի համարուած է։

Մովսէս Կաղանկատուացին է այս ժամանակի առաջին պատմիչը, որ գրեց Աղուանից ազգի պատմութիւնը, միակ գրուածքը իւր տեսակի մէջ, ուստի և առանձին ուշադրութեան արժանի։ Աղուանից լեռնական ազգը, որի ծագումը և նախնական պատմութիւնը մթութեան քօղով ծածկուած է, Արշակունեաց ժամանակ նախ Հայաստանի քաղաքական՝ ապա նաև կրօնական և կրթական ազդեցութեանն ենթարկուեցաւ։ Քրիստոնէութիւնը Հայաստանից մտաւ նոցա երկիրը, և Լուսաւորչի թոռը Գրիգորիս եղաւ նոցա առաջին կաթողիկոսը. և թէպէտ Ս. Մեսրոպ, ինչպէս Վրաց, այսպէս և Աղուանից համար գրեր ստեղծեց, բայց սոցա լեզուն չմշակուեցաւ, այլ հայերէնն եղաւ նոցա եկեղեցական և գրական լեզուն։ Այս լեզուով գրեց և Մովսէս իւր Պատմութիւնը, որ երեք գիրք է բաժանվում, բայց առաջին երկուսը միայն այս հեղինակինն են, իսկ երրորդը մի ուրիշ ժամանակի պատմչի։ Աղուանից պատմութեան առաջին դա-

քերի վրայ ոչինչ չէ գտնում ասելու Մովսէս մինչև Առան իշխանը, որ Սիսակ Հայկազն իշխանի ցեղիցն էր, և Վաղարշակի օրով Աղուանից վերակացու կարգուեցաւ։ Բայց և Առանից յետոյ էլ նոյնպէս շատ քիչ բան է հաղորդում մինչև Վաչագան Գ թագաւորը, որ Ե դարու վերջերն էր ապրում։ Այնուհետև պատմութեան մէկ-երկու միջոցների վրայ էլ լռութեամբ անցնելով՝ գալիս հասնում է մինչև Ջուանշէր ժամանակակից թագաւորը (Է դարու վերջերը), որի գործերը և դժբաղդ վախճանը մանրամասնօրէն և կենդանի գոյներով նկարագրում է։ Իսկ Կաղանկատուացու շարունակողը, աւելի համառօտ և հասարակ լեզուով, այս գործը հասցնում է մինչև Ժ դարու վերջերը։—Ը դարը միայն մի պատմագիր է ներկայացնում մեզ, Ղևոնդ Երէցը, որ նկարագրում է Արաբացոց արշաւանքները և տիրապետութիւնը Հայոց երկրի վրայ մինչև 778 թիւը։ Իւր պատմածների մեծ մասին ժամանակակից և ականատես լինելով, Ղևոնդ ամենայն հաւատարմութեան արժանի է, և նորա երկասիրութիւնը շատ յարգի է՝ իբրև միակ աղբիւր իւր ժամանակի պատմութեան։—Թ դարու երկու ականաւոր պատմիչներն են Յովհաննէս կաթողիկոսը և Թովմա Արծրունին։ Յովհաննէս կաթողիկոսի պատմութեան գլխաւոր նիւթն է Բագրատունեաց առաջին երեք թագաւորների՝ այն է Աշոտ Ա-ի Սմբատ Ա-ի և Աշոտ Բ-ի գործերը և նոյն ժամանակ Հայոց երկրում պատահած դէպքերը, որոնց անձամբ ականատես եղած, մասամբ նաև մասնակցութիւն ունեցած է, և այս է նոյնպէս գրքի հետաքրքրական մասը։ Բայց հեղինակը կամենալով մի ամբողջ բան տալ ընթերցողներին, իւր պատմութիւնը

տևում է մեր ազգի սկզբնաւորութիւնից, համառօտապէս ներկայացնելով Հայկազանց, Արշակունեաց, մարզպանների ու ոստիկանների ժամանակները։ Այս համառօտութեան մէջ (17 գլուխ 187-ից) պատմիչը դժբաղդաբար ոչինչ բան չէ հաղորդում, այլ կրկնում է իւր նախորդների և գլխաւորապէս Մ. Խորենացու ասածները, որի բառերն ու զուրցուածներն անգամ յաճախ իւր գրչի տակ գալիս են։ Աւելի հմտութիւն է ցոյց տալիս Թովմա Արծրունին իւր Արծրունեաց տոհմի պատմութեան մէջ։ Զբաւականանալով տոհմային և արտաքին պատմիչների հետազօտութեամբ, Թովմա հարկաւոր համարեց անձամբ շրջել Հայաստանի այլևայլ քաղաքներն ու գաւառները, և հնութեան յիշատակարաններից քաղել այն տեղեկութիւնները որ պատմութիւնը մոռացել է գրի առնել։ Իւր գործը հասցնում է պատմիչը մինչև Արծրունեաց առաջին թագաւորը՝ Գագիկ, որի բարեմասնութիւնները՝ քաջութիւնը, իմաստութիւնը և աշխարհաշինութիւնը նկարագրելով, կարծես ուզում է արդարացնել նորան, թագաւորութիւնը այս ձիրքերի և ոչ փառասիրութեան արդիւնք համարելով։ Ինչպէս Թովմա Արծրունու, այսպէս մանաւանդ Յով. կաթողիկոսի ոճի ու լեզուի մէջ նկատվում են այն թերութիւնները, որ վերը յիշատակեցինք։—Ժ. դարում Ստեփանոս Ասողիկ Տարօնեցին գրեց իւր Պատմութիւնը երեք գրքի բաժանուած, որոնց առաջին երկուսի մէջ խօսում է հին ժամանակների վրայ, սկսելով ստեղծագործութիւնից և հասնելով մինչև Բագրատունեաց թագաւորութիւնը։ Իւր երկասիրութեան այս մասի մէջ Ասողիկ ընդհանուր պատմութեան շատ դէպքեր է առաջ բերում. բայց սորա

հակառակ լռութեամբ անցնում է մեր ազգի սկզբնաւորութեան և ընդհանրապէս Հայկազանց հարստութեանց վրայ, և ոչինչ լոյս չէ տալիս Հայաստանի առաջին երկու հարստութիւնների մթին ժամանակների վրայ, ինչպէս նաև Վահէի ու Վաղարշակի միջև եղած անիշխանութեան ժամանակի վրայ։ Այս մեղադրանքից ազատ է մնում հեղինակը, երբ գալիս է պատմելու իւր ժամանակի անցքերը (Գ Գիրք), ընդարձակօրէն խօսելով և նորանոր դէպքեր հաղորդելով Բագրատունեաց թագաւորութեան ծագման և այս հարստութեան աշխարհաշէն կարգերի ու գործերի վրայ, մինչև Գագիկ Ա (1004), որի հրամանով շարադրած է Ասողիկ իւր պատմութիւնը։ —Վերջապէս ԺԱ դարու կէսին Արիստակէս Լաստիվերացին գրեց իւր ողբերգական պատմութիւնը Բագրատունեաց թագաւորութեան անկման և այս ցաւալի դէպքին հետևող Հայաստանի թշուառութեան վրայ։

Կրօնական բանաստեղծութիւնն էլ ունի իւր մի քանի ներկայացուցիչները, որոնց ընտիր տաղերը մինչև այսօր երգվում են Հայոց եկեղեցում։ Այսպէս, Սահակ Ձորափորեցի կաթողիկոսը (Է դար) յօրինեց Ս. Խաչի շարականները, վսեմ ու սքանչելի իմաստներով, որոնց մէջ Խաչը նկարագրուած է որպէս զէն յաղթութեան և միանգամայն որպէս ապաւէն փրկութեան։ Յովհան Իմաստասէր կաթողիկոսը (Ը դար) երգեց Աւագ Տօնից, այն է Դաւիթ մարգարէի, Յակոբ առաքեալի, Ս. Նախավկայի, Պօղոս և Պետրոս առաքեալների և Որդոց Որոտման շարականները։ Ստեփան Սիւնեցին (Ը դար) նուագեց Աւագ Օրհնութեանց (Յարութեան) հոգեբուղխ և իմաստալից շարականները, որոնք մեր Շարակնոցի գե-

գեցիկ զարդերն են։ Գրիգոր Նարեկացին յօրինեց այլ և այլ գանձեր, տաղեր ու մեղեդիներ, նշանաւոր իրանց բանաստեղծական աշխուժով և ինքնուրոյն կենդանի դարձուածներով։ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին ընծայվում են Մարտիրոսաց և Հանգստեան շարականները, նոյնպէս և մի քանի ուրիշ շարականներ, ընտիր թէ լեզուի և թէ բովանդակութեան կողմից, որոնք ընդհանուր անուամբ Մանկունք են կոչվում։ Առանձին տեղ է բռնում այս ժամանակի հեղինակների մէջ Գրիգոր Մագիստրոսը՝ իւր հմտութեամբը, գրուածների նիւթովն ու լեզուովը։ Բացի Խաչի ստանաւոր ներբողից 'և Հազարտողեան քերթուածից, որ Հին և Նոր Կտակարանների համառօտութիւն է, Մագիստրոս թողած է 80-ի չափ թղթեր, մասամբ արձակ և մասամբ էլ ստանաւոր, այլ և այլ վարդապետական, իմաստասիրական և ընտանեկան նիւթերի վրայ։ Լեզուի կողմից Մագիստրոսի գրուածները ընդհանրապէս շատ խրթին ու մութ են. միայն վարդապետականները քիչ շատ հասկանալի են։

Բուն վարդապետական ճիւղին վերաբերեալ գրուածներով այս շրջանը, ինչպէս ընդհանրապէս մեր բոլոր հին դրականութիւնը, շատ հարուստ է. գրեթէ չկայ մատենագիր որ մի կամ աւելի ճառեր յօրինած և սրբազան գրքերի մէկ կամ միւս մասը մեկնած չլինի։ Մենք միայն այն գրուածները կը յիշենք, որ ժամանակի կրօնական խնդիրների արգասիք են, կամ առանձին դրական արժէք ունին։

Այս երկու նկատմամբ առաջին և ամենապատուաւոր տեղն ունի Յովհան Իմաստասէր Օձնեցին իւր երեք ճառերովը, որոնց մէջ հաւասար փայլում են հեղինակի

*աստուածաբանական խորին հմտութիւնը, զօրաւոր պերճախօսութիւնը և ընտիր հայկաբանութիւնը, և այս յատկութիւնների համար է որ Օձնեցին նշանաւոր հայ եկեղեցական հայրերի կարգը դասուելու արժանի համարուած է։ Առաջին ճառն է Դուինի ժողովի մէջ խօսած Ատենախօսութիւնը* (719), *որով յորդորում է ժողովականներին հոկել Եկեղեցու բարեկարգութեան վրայ և չթոյլ տալ որ եկամուտ աղանդները ճարակ գտնեն ժողովրդի մէջ։ Երկրորդն է Ընդդէմ Երևութականաց ճառը, որով պարսաւում է մի կարգի աղանդաւորների մոլորութիւնը, որոնք Քրիստոսի տնօրէնութիւնները առաչօք էին համարում։ Երրորդ ճառն է Ընդդէմ Պաւլիկեանց խօսածը, որոնք Խաչին և սրբերի պատկերներին յարգանք մատուցանելը կռապաշտութիւն էին համարում։— Սոսկի. Սիւնեցին թողեց երկու նշանաւոր թուղթ, մէկը Դաւիթ Ա կաթողիկոսի հրամանով գրուած Յունաց Գերմանոս պատրիարքին, և միւսը Անտիոքի պատրիարքին, որոնցով պաշտպանում է Հայոց եկեղեցու դաւանութիւնը, ծիսական աւանդութիւններն ու տօնախմբութիւնները, և մերժում է Յունաց պահանջը Քաղկեդոնի որոշումներին հպատակելու։—Խոսրով Անձևացեաց եպիսկոպոսը* (*Ժ դար*) *գրեց Ժամագրքի և Պատարագի խորհրդի մեկնութիւնը, պարզ և ընտիր լեզուով և նպատակն եղած է իւր հօտին լուսաբանել այն վսեմ աղօթքներն ու մաղթանքները՝ որ հաւատացեալները ամեն օր ուղղում են Աստուծոյ։—Անձևացեաց եպիսկոպոսի որդու հռչակաւոր Գրիգոր Նարեկացու բազմաթիւ վարդապետական երկասիրութիւններից ամենանշանաւորներն են Երգ-երգոցի մեկնութիւնը, որ նոյն իսկ օտար բանասէրների վկա-*

*յութեամբ իւր տեսակի մէջ նմանը չունի, և մանաւանդ հանրածանօթ Աղօթագիրքը կամ Նարեկը, 95 գլուխներից կազմուած, որոնց ընդհանուր վերնագիրն է «Ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ»։ Որչափ առաջին երկասիրութեան լեզուն պարզ ու հասկանալի է, այնչափ երկրորդինը մթին ու դժուարիմաց է. սակայն Նարեկը իւր խրթնութեամբն հանդերձ այնպիսի սքանչելի գեղեցկութիւն և ոճի քաղցրութիւն ունի, որ ընթերցողը զմայլում է, և կարծես կարդացածը մի հրեշտակային օրհներգութիւն լինի և ոչ սովորական աղօթքներ։ — Անանիա Սանահնեցու (ԺԱ դար) վարդապետական երկասիրութիւնների մէջ թէ նիւթի և թէ մանաւանդ լեզուի կողմից մտադրութեան արժանի է Բան հակաճառութեան ընդդէմ Երկաբնակաց, Գետադարձ կաթողիկոսի հրամանով գրուած, որի մէջ խօսում է ժամանակի այն խնդիրների վրայ, որ Հայոց և Յունաց մէջ վիճաբանութեան նիւթ եղած են, այն է կրօնական անխտրականութեան դէմ, Փրկչի մարմինը ապականացու համարողների դէմ, Քաղկեդոնի ժողովի դէմ, Վրաց բաժանման վրայ, մեռոնի, բաղարջի, Քրիստոսի ծննդեան տօնի և երեք սրբասացութիւնների վրայ։*

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ
(1080—1375)

## Ա. ՌՈՒԲԻՆԵԱՆ ԻՇԽԱՆԱՊԵՏՆԵՐ

### 56.

*Կիլիկիայի դիրքը, աշխարհագրական բաժանումը և գլխաւոր քաղաքները.—Այս երկրի պատմական բաղդը.—Հայոց հաղորդակցութիւնը Կիլիկիայի հետ.—Ռուբէն Ա. հիմնադիր հայկական իշխանութեան Կիլիկիայում* (1080—1095).—*Կոստանդին Ա.* (1095—1100). *Հայոց յարաբերութեան սկիզբը արևմտեան ազգերի հետ։*

Կիլիկեան Փոքր Ասիայի հարաւային արևելեան մասն է կազմում։ Հնումը նորա սահմանն էր հիւսիսից Կապադովկիան, արևմուտքից Պամփիւլիան, արևելքից Ասորիքը և հարաւից Միջերկրական ծովը։ Կիլիկեան երկու մաս է բաժանվում. 1) Դաշտային Կիլիկիա, մի պտղաբեր, զուարճալի և անտառախիտ երկիր՝ մանաւանդ հիւսիսային մասում. 2) Լեռնային կամ Քարային Կիլիկիա, որ աւելի ցուրտ ու անբեր երկիր է, բայց շքեղ անտառներով ծածկուած էր։ Կիլիկիայի նշանաւոր քաղաքներն էին՝ Տարսոն, որի միջից անցնում էր Կիդնոս գետը, Սիս, որի շրջակայքում գտնւում էին հռչակաւոր Դրազարկ և Արքակաղին վանքերը, և ուր մինչև այսօր

նստում է Կիլիկիայի կաթողիկոսը, Անարզաբա, Ատանա, Մամեստիա կամ Մսիս, Այաս ծովեզերեայ վաճառաշահ քաղաքը, Գերմանիկ կամ Մարաշ, Ուլնիա՝ այսօրուան Զէյթունը և Աշէ՝ այսօրուան Հաճինը. իսկ բերդերից երևելի էին Վահկա, Բարձրբերդ, Կապան, Սիմանակլայ, Լամբրոն և ուրիշ շատ ամրոցներ ու դղեակներ։

Կիլիկիան իւր բնական ամրութիւններով՝ անմատչելի լեռներով ու կրճերով ռազմագիտական յաջող դիրք ունենալով, ամենահին ժամանակներից աշխարհակալ պետութիւնների ուշադրութիւնը դարձրել էր իւր վրայ։ Ասորեստանի ու Բաբելոնի աշխարհակալներից յետոյ, այս երկիրը Պարսկաստանի Աքեմենեաց իշխանութեանց ներքոյ ընկաւ. ապա Աղէքսանդր Մակեդոնացու ձեռքն անցաւ և վերջապէս Սելեկեան թագաւորութեան հետ միացաւ։ Մեր թուականութիւնից մի դար առաջ՝ Կիլիկիայի ափերը ծովային աւազակների որջեր դարձան, որոնք իրանց աւազակութիւններով ահաւոր սարսափ էին ձգում միջերկրականի եզրներում բնակող ժողովրդների վրայ։ Պոմպէոս այդ չարագործ խմբերը բնաջինջ արաւ և այսպիսով Կիլիկիան հռոմէական պետութեան նահանգ դարձաւ։ Երբ կայսրութիւնը բաժանուեցաւ այս նահանգը արևելեան իշխանութեան բաժին ընկաւ, և այնուհետև Յոյները այս երկրի բնիկ տէրերը համարուեցան։

Հայերը շատ վաղ ժամանակներից սկսան երթևեկութիւն անել Կիլիկիա, որ Ս. Գրքի վկայութեան նայելով՝ նոքա գնում էին առուտուր անելու Փիւնիկեցոց ու Եգիպտացոց հետ։ Այդ առևտրական հաղորդակցութիւնները աւելի ընդարձակութիւն առին Արամի ու Տիգրանի յաղթական արշաւանքներից յետոյ, որոնց հե-

տեւանքն եղաւ Հայոց արեւմտեան կողմը ցրուելը և Փոքր Ասիայի գաւառներում հաստատուելը։ Արշակունեաց թագաւորութեան անկումից յետոյ՝ Մարզպանների ու Ոստիկանների օրով, ինչպէս նաև Բագրատունեաց փոթորկալի իշխանութեան ժամանակ և յետոյ, հայերը Պարսից, Յունաց, Արաբացոց և Սելջուկեանց բռնութիւնից նեղուելով՝ հետզհետէ գաղթեցին Կիլիկիա և իրանց բնակութիւնը հաստատեցին Տաւրոսի բարձրութիւնների վրայ, այնպէս որ ԺԱ դարում նոքա իրանց բազմութեամբ կարող էին մրցել նոյն տեղերի Յունաց հետ։ Այդ ժամանակները Տաւրոսի մի ընդարձակ ճիւղի վրայ, որ հին դարերից ծանօթ էր Ամանոս անուամբ, և որին Հայերը քարքբոտ երկրի պատճառով Սեաւ լեառն անուն տուին *), յոյն և ասորի մենաստանների հետ բազմաթիւ հայ վանքեր կային, որոնց մէջ հայ կրօնաւորները իրանց լեզուով ու ծէսով պաշտօն էին մատուցանում և ուսման ու գիտութեան էին զբաղում։ Այս մտաւորական կենտրոնների հետ՝ հայ գաղթականների առաջնորդները մի քանի ամուր տեղեր գրաւեցին Կիլիկիայում և փոքրիկ իշխանութիւններ կազմեցին մասամբ ինքնագլուխ, մասամբ էլ Բիւզանդիայի կայսրների հովանաւորութեան ներքոյ, սրանք մտածում էին այսպիսով մի պատուար բարձրացնել մահմէտական սուլթանների և ամիրաների զօրութեան դէմ։ Այսպէս էին Վասիլ, Քեսունի իշխանը, որ պատմութեան մէջ յայտնի է Գող մականուամբ. Օշին, բնիկ Արցախեցի որ Լամբրոնը խլեց մահմէտականներից և նոյն դղեակը ժառանգութիւն ստացաւ Ալեքս Կոմնենոս կայս-

---

*) Այսօր Գեաւուր դաղ է անուանվում։

րէց, իսկ նորա եղբայրը՝ Բագրատի Տարօնի տէր դարձաւ. վերջապէս Ապիրատ, Ներսէս Շնորհալու հայրը, որ իւր բնակութիւնը հաստատեց վերին Եփրատի կողմերը՝ Ծովք անուն գիւղակի մէջ։

Այս վիճակի մէջ էր Կիլիկիան երբ Ռուբէն քաջ իշխանը, Գագիկ Բ-ի մերձաւոր ազգականը, վճռեց Բագրատունեաց վերջին Թագաւորի անարգական մահուան վրէժն առնել Յոյներից և իւր ազգը նոցա հարստահարութիւններից ազատել։ Իւր մտադրութիւնը դիւրութեամբ գլուխ ածելու համար՝ Ռուբէն ընտրեց Տաւրոսի բարձրութիւնները, ուր թէ Հայոց թագաւորութիւնը և թէ անցքի յարմար դիրքը յաջողութիւն էին խոստանում նորան։ 1080-ին մի քանի կուսակիցներով գնաց նա այնտեղ և իւր բնակութիւնը հաստատեց Գոռամոզոլ գիւղի մէջ՝ Բարձրաբերդի շրջակայքում։ Տեղացի Հայերը շուտով եկան խմբուեցան Ռուբէնի շուրջը և նորա դրօշակների տակ մտան։ Նոցա օգնութեամբ Ռուբէն կարճ միջոցում Տաւրոսի սարերը Յոյներից մաքրեց և իւր տիրապետութիւնը այն կողմի վրայ հաստատեց։

Տասնեհինգ տարի վարեց իւր իշխանութիւնը Ռուբէն. և այդ միջոցում նորա բոլոր ջանքն եղաւ իւր հովանաւորութեան տակ եկած ժողովրդին հայրաբար խնամել և իւր գերիշխանութիւնը ճանաչեցնել մօտակայ հայ իշխաններին, որոնք իւր նորահաստատ տէրութեան աճելուն ու զօրանալուն մեծապէս նպաստեցին։ Նորան յաջորդեց որդին Կոստանդին Ա (1095), որ իւր հօր թողած ժառանգութիւնը ընդարձակեց՝ Յունաց ձեռքից մի քանի ամուր բերդեր առնելով, և իւր իշխանական աթոռը հաստատեց Վահկա ամրոցում։

Կոստանդինի օրով Հայերը սկսան ուղղակի յարաբերութիւն ունենալ արեւմտեան ազգերի հետ, որոնք նոյն ժամանակները բազմութեամբ դիմեցին Արեւելք Սուրբ Երկիրը Եգիպտացոց ձեռքից ազատելու համար։ Այս յարաբերութիւնները որչափ որ սկզբումը նպաստաւոր եղան Ռուբինեան իշխանութեան հաստատութեան և ընդարձակութեան համար, այնչափ վերջերը վնասակար և աղէտաբեր եղան։ Կոստանդինն բարեկամական դաշըն կապեց Խաչակիրների հետ և օգնութիւն հասաւ. նոցա՝ ճանապարհները ցոյց տալով և Անտիոքի պաշարման ժամանակ առատ պաշար ուղարկելով։ Այս օժանդակութեան փոխարէն Խաչակիր իշխանները Մարկիզի տիտղոս տուին Կոստանդինին, որ 1100-ին մեռաւ և թաղուեցաւ իւր հօր մօտ Կաստաղօն վանքում։

## 57.

Թորոս Ա. (1100—1123). Իկոնիայի Սելջուկեանց և Թուրքմէնների ասպատակութիւնները.—Կիզիստրա բերդի նուաճումը.—Լևոն Ա. (1123) և իւր յաջողութիւնները.—Լևոնի գժտութիւնը Անտիոքի իշխանի հետ.—Յովհաննէս Կոմնենոս կայսեր արշաւանքը Կիլիկիա և Լևոնի գերութիւնը (1136)։

Թորոս Ա, Կոստանդինի որդին, կառավարութեան սանձը ձեռքն առնելով՝ իւր երկիրը ընդարձակելու և բարեկարգելու ետևէ եղաւ (1100)։ Յունաց վրայ գնաց, Անարզաբա քաղաքը իւր շրջականերով գրաւեց և կայսերական զօրքերը այն կողմերից հալածեց։ Իւր երկիրը աստուածահաճոյ շէնքերով զարդարելու վրայ էր, երբ Իկոնիայի Սելջուկեանք և Թուրքմէնները հայկական այս նոր իշխանութիւնից խրտնելով, գուցէ և Յոյներից դըր-

դուած՝ արշաւեցին Կիլիկիա և երկու անգամ աւերեցին ու թալանեցին Անարզաբայի գաւառը։ Թորոս Գող Վասիլի օգնութեամբ և իւր Լևոն եղբօր աջակցութեամբ այդ ասպատակութիւնների առաջն առաւ և այլազգիներին երկրից դուրս քշեց։ Այս կրկնակի յաղթութիւններով Թորոսի համբաւը այնքան բարձրացաւ օտարների առաջ, որ նորա իշխանութիւնը ճանաչեցին և Կիլիկեան Թորոսի երկիր անուանեցին։

Այնուհետև Թորոս դարձեալ իւր զէնքերը Յունաց դէմ դարձրեց և մի քանի տեղեր խլեց նոցանից։ Իւր տէրութիւնը հիւսիսային կողմից մինչև Կապադովկիայի սահմանները հասցնելով, նա կամեցաւ երկրի ապահովութեան համար Կիզիստրայի բերդը ձեռք ձգել, ուր դեռ իշխում էին Մանդալեան եղբայրները՝ Գագիկ Թագաւորի սպանողները։ Թորոս իմաստուն նախատեսութեամբ առաջուց նոցանից մէկի հետ խնամացած և նորա բերդը իրան յանձնելու խոստումն առած էր։ Երբ հայ իշխանը զօրքով Կիզիստրային մօտեցաւ, Մանդալեանք ընծաներով դիմաւորեցին նորան, բայց բերդը յանձն չառին տալ։ Թորոս ընծաները բերողների հետ յետ դարձրեց և բերդը յարձակմամբ առնելով հրամայեց որ մէջի գանձերը առաջը բերեն։ Երբ Գագիկ Թագաւորի սուրն ու զգեստները բերուեցան, Հայերը իրանց իշխանապետից սկսած մինչև յետին զինուորը՝ սկսան արտասուք թափել իրանց տարաբաղդ Թագաւորի վրայ։ Յոյն իշխաններից մէկը իրանց գլխին գալիքը գուշակելով՝ զինուորների ձեռքից փախաւ և ինքն իրան բերդից վայր գլորեց ու մեռաւ։ Երկրորդը յուսահատ յանդգնութեամբ սկսաւ Թորոսին սպառնալ ու ասել. «Ի՞նչ պատասխան

պիտի տաս Ցունաց կայսեր, որ մեզ՝ իւր իշխաններին այսպէս չարչարում ես»։ Թորոս զայրացած գոչեց. «Դուք ինչ պատասխան տուիք Հայոց ազգին որ իրանց թագաւորին սպանեցիք». և այս ասելով տեղնուտեղը սպանեց նորան։ Այնուհետև Կիզիստրայի բերդի մէջ պահապան զօրք թողեց և ինքը դարձաւ Վահկա՝ հետը տանելով երրորդ յոյն իշխանին։

1123-ին մեռաւ քաջ և իմաստուն Թորոս իշխանը և թաղուեցաւ իւր կառուցած Դրազարկ վանքում, ուր յետոյ շատ հայ թագաւորների ու թագուհիների մարմինների ամփոփուեցան։ Նորան յաջորդեց եղբայրը Լեոն Ա, որովհետև իւր միակ որդին դեռ իւր կենդանութեան ժամանակ մեռել կամ ըստ ոմանց՝ Լեոնի իշխանութիւնը ցանկացողներից թունաւորուել էր։ Լեոն Ա եղբօր օրինակին հետևելով, Ցոյներից առաւ Մամեստիան և նոյն իսկ Տարսոն մայրաքաղաքը, և այսպիսով գրեթէ ամբողջ Կիլիկիայի տէր դարձաւ. ափսոս միայն որ Թորոսի քաջութեան հետ նորա խոհեմութիւնը չունեցաւ, որով իւր գժբաղդութեան և Ռուբինեան տէրութեան ժամանակաւոր բարձման պատճառ եղաւ։

Լեոն նախ միաբանելով Անտիոքի Ռոժեր իշխանի հետ՝ օգնեց նորան Թուրքերի ձեռքից Ազազ բերդաքաղաքն առնելու. բայց յետոյ իւր նիզակակցի հետ թշնամացաւ, Թուրքերի հետ դաշն կապեց և Անտիոքի վրայ գնալով՝ լատին իշխանին մեծ նեղութեան մէջ ձգեց (1130)։ Մի քանի տարի յետոյ Ռոժերի յաջորդը Բոհեմոնդ, Մարաշի Բալդուին կոմսի հետ խօսքը մէկ անելով, Լեոնին թակարդի մէջ ձգեց և տարաւ Անտիոք բանտարկեց (1135)։ Լեոն իւր ազատութիւնը գնելու

համար՝ հարկադրուեցաւ Ատանա ու Մամեստիա քաղաքները և 60,000 դահեկան տալ, իւր մէկ որդին էլ պատանդ թողնել. բայց շուտով առած քաղաքները պատերազմով յետ խլեց և Անտիոքացոց երկիրն ապատակելով՝ Բոհեմոնդին ստիպեց առած պատանդը յետ դարձնել և իւր հետ հաշտութիւն անել։

Նոյն ժամանակները Յովհաննէս Կոմնենոս կայսրը կամեցել էր Անտիոքի իշխանի Կոստանդիա դստեր իւր մէկ որդուն հարսնացնել, որպէս զի այս կերպով Անտիոքը դառնալ իւր իշխանութեան տակ ձգէ։ Անտիոքացիք նորա դիտաւորութիւնը հասկանալով՝ մերժեցին, և կայսրը ճանապարհ ընկաւ այս անպատուութեան վրէժը զէնքով առնելու։ Անտիոքացիք անճարացած՝ Լևոնի օգնութեանը դիմեցին, և սա հայ ու լատին զօրքերի գլուխն անցած՝ անխոհեմաբար գնաց Սելևկիան պաշարելու։ Խորագէտ կայսրը Սելևկիան թողնելով՝ Կիլիկեան առած գաւառներից Լևոնի երկիրը մտաւ և ոկսաւ գլխաւոր քաղաքների վրայ յարձակուիլ. Մամեստիա, Տարսոն և Ատանա հետզհետէ առնուեցան առանց մեծ ընդդիմութիւն ցոյց տալու, և կայսերական զօրքերն արդէն Անարզաբայի առաջն էին, երբ Լևոն եկաւ անձամբ այդ քաղաքը պաշտպանելու։ Անարզաբացիք քաջութեամբ պատերազմեցան Յունաց դէմ՝ մեծամեծ քարեր տեղալով նոցա վրայ և պաշարման գործիքները ջեռուցած երկաթներով այրելով, որով նոցա բոլոր ջանքերը անպտուղ էին մնում։ Կայսրը յուսահատուած պաշարումը վերջնելու վրայ էր, երբ Իսահակ որդին խորհուրդ տուաւ նորան մի վերջին փորձ փորձել և մեքենաները անվնաս պահելու համար կաւով ծեփել տալ։ Այս հնարը յաջողեցաւ և

Լևոն տեսնելով որ չպիտի կարողանայ քաղաքն ազատել, քաշուեցաւ և իւր զօրութիւնը կենտրոնացրեց Վահկա բերդում։ Կայսրը Անարզաբան նուաճելով՝ շուտով գնաց Վահկան էլ պաշարեց։ Այդ միջոցին Անտիոքացիք մի քանի լատին իշխանների հետ միաբանած՝ եկան Լևոնին օգնելու։ Կայսրը Վահկայի մօտ մի գունդ թողնելով՝ մնացած զօրքով Անտիոքի վրայ գնաց, որով Լատինացոց ստիպեց Լևոնին թողնել և իրանց գլխի ճարը տեսնել։ Այսպիսով դաշնակիցներին միմեանցից բաժանելով՝ կայսրը երկուսին էլ տկարացրեց և նուաճեց։ Անտիոքացիք հարկադրուեցան Բիւզանդիայի գերիշխանութիւնը ճանաչել. իսկ Լևոն երկար ժամանակի պաշար չունենալով՝ անձնատուր եղաւ և շղթայակապ ուղարկուեցաւ Կոստանդնուպօլիս իւր երկու որդոց Ռուբէնի ու Թորոսի հետ (1136)։ Այնտեղ իւր անդրանիկ որդու տառապանքներին ականատես լինելով, որին կասկածոտ Յոյները աչքերի լոյսից և ապա նաև կեանքից զրկեցին, դժբաղդ Լևոնը սրտի ցաւից մեռաւ բանտի կապանքների մէջ (1141)։

---

## 58.

*Կիլիկիայի վերստին նուաճիլը Թորոս Բ-ի ձեռքով (1145).—Անդրոնիկոս Կոմնենոսի արշաւանքը և պարտութիւնը (1152).—Իկոնիայի Մասուտ սուլթանի անյաջող արշաւանքը (1154).—Թորոսի պատերազմը Անտիոքի իշխանի հետ.—Թորոսի նոր յաղթութիւնները.—Մանուել Կոմնենոս կայսեր արշաւանքը Կիլիկիա և Թորոսի հետ հաշտուիլը (1159).—Թորոսի օգնութիւնը Խաչակիր իշխաններին.—Ստեփանէի սպանուիլը և Թորոսի Վրէժխնդրութիւնը Յոյներից (1163).—Անդրոնիկոսի նոր պարտութիւնը.—Թորոսի մահը (1168)։*

Ռուբինեանց իշխանութիւնը Լևոնի գերութեամբ ջնջուել էր և Կիլիկիան դարձեալ կայսեր իշխանութեան տակ էր ընկել։ Յոյները իրանց վրէժխնդրութեան կատարեալ ազատութիւն տալով, կոխեցին բերդերն ու քաղաքները և մինչև եկեղեցին ու վանքերը կողոպտեցին և աւերեցին։ Կայսերական տեղակալները երկրի պաշտպանութեանը հոգ չտանելով, թուրք և լատին իշխաններին միջոց տուին հետզհետէ բռնելու Թորոս Ա-ի և նորա եղբօր Լևոնի նուաճած երկրները։ Ահմէտ-Մալէք անունով թուրք ամիրան մանաւանդ այնքան զօրացաւ, որ Յունաց ձեռքից խլեց Վահկան և Կապանը և ուրիշ ամրոցներ ու քաղաքներ։ Այս հանգամանքը Յովհաննէս Կոմնենոսին հարկադրեց դարձեալ Կիլիկիա գալ. նորա հետ գնաց և Թորոս, որ հօր մահից յետոյ բանտից ազատուել և կայսերական բանակի մէջ ընդունուել էր։ Բայց այս արշաւանքի մէջ կայսրը սպանուեցաւ և զօրքը յետ դարձաւ՝ Թորոս էլ յարմար առիթից օգուտ քաղելով՝ ծածուկ հեռացաւ բանակից և գնաց մի հայ քահանայի յայտնեց իր ով լինելը։ Հայերը՝ որ Յունաց բռն—

նութիւնից զզուած էին, երբ Լեւոնի որդու գալստեան աւետիսն առին, եկան ժողովեցան նորա շուրջը։ Եկան և Թորոսի երկու եղբայրները՝ Ստեփանէ և Մլեհ, որոնք մինչև այն ժամանակ Հալէպի Նուրէդդին սուլթանի պալատումն էին։ Այսպիսով կարճ միջոցում 10,000-ի չափ կտրիճ Հայեր հաւաքուեցան իրանց իշխանի դրօշակի տակ (1145)։ Թորոս իւր զօրութիւնը տարաւ նախ լեռնային ամրոցների վրայ և ամենից առաջ ձեռք ձգեց Վահկա բերդը՝ իւր հայրերի նախկին կալուածը, յետոյ Սիմանակլայ և Առիւծ բերդերը։ Ապա լեռներից կամաց կամաց իջնելով՝ սկսաւ դաշտային քաղաքների վրայ յարձակուել. Ատանա, Անարզաբա, Թիլ և Մամեստիա միմեանց ետեւից առնուեցան, նոցա միջի Յոյները կոտորուեցան կամ քշուեցան և Հայոց անկախութիւնը նորից հաստատուեցաւ Կիլիկիայում։

Մանուէլ Կոմնենոս (Կիռ Մանուէլ) կայսրը Կիլիկիայի անցքերը լսելով, շտապեց Հունգարացոց հետ ունեցած պատերազմը վերջացնել և իւր Անդրոնիկոսի հօրեղբօրորդուն կեսար անուանելով՝ ուղարկեց Կիլիկիա Թորոսին նուաճելու (1152)։ Թորոս տեսնելով թշնամիների բազմութիւնը, որոնց հետ միաբանել էին և մի քանի հայ իշխաններ, խոհեմութիւն համարեց պաշտպանողական դիրք բռնել, և քաշուեցաւ Մամեստիայի մէջ, որ յոյները շուտով եկան պաշարեցին։ Այս քաղաքը, ուր առաջ նստում էին կայսեր կուսակալները, ամուր պարսպով պատած էր, բայց բաւական պաշար և պատրաստութիւն չունենալով՝ Թորոս զգաց որ չպիտի կարողանայ երկար ժամանակ դիմանալ, անձնատուր լինելն էլ անտանելի էր իրան. ուստի բանակցութեան մէջ մտաւ Անդրոնիկոսի

հետ և խոստացաւ ուրիշ հայ իշխանների պէս Յունաց գերիշխանութիւնը ճանաչել, եթէ կայսրն էլ կը ճանաչէ իւր հայրերի իրաւունքը։ Իսկ գոռոզ Անդրոնիկոսը պատգամաւորների ամեն խօսքերին միայն մի պատասխան էր տալիս, թէ Թորոս պիտի անպայման անձնատուր լինի, որպէս զի կապեն նորան այն շղթաներով որով իւր հօրը կապել էին։ Վրդովեցաւ Թորոս այդ վիրաւորիչ խօսքերից, և մի մութ ու անձրևային գիշեր, մինչդեռ Անդրոնիկոս կերուխումի ու զբօսանքի հետ էր լինում, պարսպի մի տեղը քանդեց, զօրքը զգուշութեամբ քաղաքից դուրս բերեց և բանակի ետևի կողմից թշնամիների վրայ ընկնելով՝ այնպիսի կոտորած արաւ նոցա մէջ, որ 12,000 յոյնից շատ քիչը Անդրոնիկոսի հետ փախչելով ազատուեցան։ Թորոս հալածեց նոցա մինչև Անտիոքի սահմանները և յաղթութեամբ ու գերիներով դարձաւ Մամեստիա, ուր հասարակ զինուորներին զինաթափ անելով արձակեց, իսկ պատուաւորներին կապեց և աւելի նուաստացնելու համար՝ առաջարկեց որ իրանք իրանց ազատութեան գինը կտրեն։ Յոյները թեթև գնով ազատուելու յուսով՝ թոյլ տուին որ յաղթողը իրանց ազատութեան արժէքը որոշէ. Նա էլ պատասխանեց. «Եթէ ինձ համար մի բան արժէիք, չէի էլ արձակիլ ձեզ»։ Այս նախատական խօսքը ստիպեց Յոյներին ծանր փրկանքներ նշանակել իրանց համար, որ Թորոս նոցա ներկայութեանը ամբողջապէս իւր զօրքերին բաժանեց. և մինչ նոքա զարմանում էին, պատճառը յայտնեց. «Որպէս զի ուրիշ անգամ էլ զօրքերս ձեզ բռնեն»։ Գերեալների մէջ էր և Լամբրոնի տէր Օշինը, առաջին Օշինի թոռը և Ներսէս Լամբրոնացու հայրը, որ

իւր փրկանքի կէսը 20,000 ոսկի տալով, միւս կէսի տեղ անդրանիկ Հեթում որդուն պատանդ թողեց։ Հեթում մեծանալով այնքան սիրելի եղաւ Թորոսին, որ սա փեսայացրեց նորան իւր աղջկանը, և Օշինի մնացած պարտքը իւր զաւակին օժիտ համարելով երկուսին էլ ուղարկեց Լամբրոն, որի տէրերին յոյս ունէր այսպիսով իւր տոհմի հետ կապել։

Մանուէլ կայսրը իւր զօրքերի պարտութեան լուրն առնելով, Իկոնիայի Մասուտ սուլթանին Թորոսի դէմ գրգռեց։ Մասուտ բիւզանդական ոսկիների փայլմամբ յորդորուած՝ մտաւ Կիլիկիա, բայց Թորոսի պատրաստութիւնը տեսնելով՝ առանց պատերազմի յետ քաշուեցաւ։ Երկրորդ անգամ աւելի մեծ բազմութեամբ եկաւ, բոլոր երկիրը զօրքերով ողողեց և Մամեստիա ու Անարզաբա քաղաքները պաշարելուց ու թողնելուց յետոյ, եկաւ կանգնեցաւ Թիլ ամրոցի առաջ. մի գունդ զօրք էլ իւր Եաղուբ փեսի ձեռքով ուրիշ կողմերը ասպատակելու արձակեց։ Բայց շուտով սուլթանի գլխաւոր բանակի մէջ մի սոսկալի ժանտախտ ընկաւ և մեծ ջարդ արաւ. ասպատակաւորներն էլ Թորոսի եղբօր Ստեփանէի զօրագնդին հանդիպեցան ու գրեթէ բոլորն էլ իրանց գլխաւորի հետ կոտորուեցան։ Ձուարեցաւ Մասուտ և իւր զօրքը պահել չկարողանալով՝ ստիպուեցաւ յետ դառնալ. մինչդեռ Թորոս սուլթանի շփոթութիւնից օգուտ քաղելով՝ ասպատակ էր սփռել նորա երկիրը, և իւր բերած աւարներից աւելի գտաւ Թիլ ամրոցի առաջ (1154)։

Այս ձախորդութիւնից յետոյ, Մանուէլ կայսրը նոր թշնամի որոնեց ու գտաւ Թորոսի դէմ՝ Րընօ-դը-Շատիլեօն Անտիոքի իշխանի խնամակալին, որի անակնկալ

յարձակման առաջ Թորոս ստիպուեցաւ տեղի տալ, մինչև որ զօրքերը ժողովեց և Աղէքսանդրիայի մօտ արիւնահեղ պատերազմ տուաւ նորա դէմ։ Բայց երբ Ռընօ զանազան կարգաւոր ասպետներ օգնութիւն կանչեց, Թորոս խոհեմութիւն համարեց մի քանի բերդեր տալ նոցա Անտիոքի սահմանների վրայ ու հեռացնել. Ռընօն էլ մենակ մնալով և խոստացուած կաշառքը կայսրից չստանալով, հաշտուեցաւ Թորոսի հետ և իւր զէնքերը Յունաց դէմ դարձրեց։ Պատրաստեց մի քանի նաւ և ընկաւ Կիպրոսի վրայ, որ այն ժամանակ դեռ կայսեր իշխանութեան ներքոյ էր, աւերեց, կողոպտեց և մեծ անգթութիւններ գործեց անպաշտպան բնակիչների վրայ։ Իսկ Թորոս համարձակ տիրեց բոլոր Կիլիկիային, և ոչ այնչափ միայն, այլ և Փռիւգիայի և Իսաւրիայի լեռնային մասերը իւր տէրութեան հետ միացրեց։

Սակայն Մանուէլ կայսրը այնուհետև էլ հանգիստ չմնաց, այլ նորանոր զօրավարներ ուղարկեց Թորոսի վրայ, որոնք ոչինչ չշահեցան և միայն հայ իշխանի անունն ու համբաւը բարձրացրին։ Այսպէս, մինչ Անդրոնիկոս Եւփորբեն աշխատում էր Տարսոնն առնել, Թորոս ընկաւ Յունաց վրայ և 3,000 մարդ կոտորեց, մնացածները փախցրեց. Եւփորբեն բռնուեցաւ և միայն Երուսաղէմի թագաւորի միջնորդութեամբ գերութիւնից ազատուեցաւ։ Կայսրը վճռեց վերջապէս այսքան անյաջողութիւնների վրէժն անձամբ առնել Թորոսից։ Սիկիլիացոց հետ հաշտութիւն անելով, ձայն հանեց թէ Թուրքերի վրայ պիտի երթայ և մեծ նաւատորմղով եկաւ իջաւ Պամփիւլիայի ափերը. այնտեղից մի փոքրիկ գնդով շտապով առաջ գնաց, մտաւ Կիլիկիա և ուղիղ Տարսոնի

վրայ դիմեց, ուր անկասկած նստած էր Հայոց իշխանապետը։ Բարեբաղդաբար մի լատին ուխտաւոր յայտնեց Թորոսին Յունաց գալը և նա խոյս քաշուեցաւ լեռները. իւր ընտանիքը և գանձը ապահովեց Տաճկի-Քար սաստ բերդի մէջ իսկ ինքը մի խումբ կտրիճ ձիաւորներով անդադար մէկ տեղից միւսը փոխվում էր, որ չլինի թէ իւր հօր պէս մի թակարդի մէջ ընկնի։ Մանուէլ իւր խաբուիլը իմանալով, բերել տուեց զօրքերը և նուաճեց երկրի նշանաւոր քաղաքները՝ Անարզաբա, Թիլ, Տարսոն և Մամեստիա։ Այստեղ Երուսաղէմի թագաւորը Բալդուին Գ կայսեր տեսութիւն եկաւ, և ուրիշ լատին իշխանների հետ միջնորդ լինելով՝ Թորոսին հաշտեցրեց նորա հետ։ Թորոս կայսերական հրովարտակով հաստատուեցաւ իւր իշխանութեան մէջ և Պանսեպաստոս տիտղոսը ստացաւ. միայն Անարզաբա և Մամեստիա քաղաքները կայսրը իրան պահեց և վերջինի մէջ մի յոյն իշխան պահապան դրեց (1159)։

Թորոս մի քանի անգամ օգնութիւն գնաց խաչակիր իշխաններին Հալէպի սուլթան Նուրէդդինի դէմ, որի նախորդը Զանգին Եդեսիան առել էր նոցանից, այժմ էլ ինքը սպառնում էր Ասորոց երկրի քրիստոնեայ իշխանութիւններին. Թորոս օգնեց սոցա Կեսարիա քաղաքն առնելու սուլթանի ձեռքից։ Այս արշաւանքների հետ եղած ժամանակը, Թորոսի եղբայր Ստեփանէն, Իկոնիայի և Սեբաստիայի սուլթանների հակառակութիւնից օգուտ քաղելով, յարմար միջոց համարեց նոցա քրիստոնեաներից խլած քաղաքները նուաճել, և Սև լերան կողմերը մի առանձին իշխանութիւն հաստատեց։ Ստեփանէի յառաջադիմութեան վրայ նախանձելով, կայ-

սեր տեղակալը Անդրոնիկոս Եւփորբեն նենգութեամբ ճաշի հրաւիրեց նորան և եռացած կաթսայի մէջ ձգեց ու սպանեց (1163)։

Այս բարբարոսական անգթութիւնը Յունաց հետ նոր թշնամութեան և կոտորածների դուռը բաց արեց։ Թորոս և Մլեհ ընկան Կիլիկիայի Յունաց վրայ և իրանց եղբօր վրէժը հանեցին՝ 10,000 հոգի սպանելով նոցա-նից։ Սորա վրայ Անդրոնիկոս Կոմնենոս դարձեալ Կիլի-կիա ուղարկուեցաւ, ուր պատրաստ սպասում էր նորան Թորոս։ Եմբարտաւան Անդրոնիկոսը, փոխանակ այնպիսի փորձառու ռազմագիտի դէմ պէտք եղած զգուշութիւն-ները բանեցնելու, Հայոց նախատելու մտքով՝ բանակը անսովոր ձևով զարդարեց, գլխով, պոչով, ոտներով և այլն։ Իսկ Թորոսը իւր զօրքը զանազան գնդերի բաժա-նեց, մի մասն էլ անտառների մէջ դարանի դրեց, և սոսկալի կերպով ջարդեց ու փախցրեց այն օտարոտի գազանին։ Անդրոնիկոս հազիւ գերութիւնից ազատուե-ցաւ՝ Թորոսին իւր նիզակով սպանելու անյաջող փորձն անելուց յետոյ։ Նորա տեղ եկաւ Կոստանդին Կալամա-նոս, որի հետ Թորոս ճակատեցաւ Տարսոնի մօտ, յաղ-թեց ու գերի բռնեց նորան, և մեծ փրկանք առնելով ազատեց։

Բայց այնուհետև Կիլիկիան կայսեր համար կորած էր և Թորոսի իշխանութեան տակ հաստատուած, որ քշեց Յունաց իրանց ապաստանարանից՝ Մամեստիայից և իւր կեանքի վերջին տարիները այնտեղ անցկացրեց։ Զգալով իւր մահուան մօտենալը, Թորոս կանչեց իւր Թոմաս աներոջ և բոլոր իշխանների ներկայութեամբ Պայլ՝ այսինքն տէրութեան խնամակալ անուանեց նորան, որով-

հետև իւր Ռուբէն որդին դեռ անչափահաս էր։ Իւր մահը, որ պատահեցաւ 1168-ին, մեծ ցաւ պատճառեց ոչ միայն Հայոց, այլև օտարներին, որոնց Թորոս իւր բարեմասնութիւններով սիրելի եղած էր։

---

## 59.

Մլեհ (1170—1175), *նորա բնաւորութիւնը և գահակալութեան համար մղած կռիւը։—Մլեհի ընթացքը արտաքին յարաբերութիւնների և ներքին կառավարութեան մէջ.—Ռուբէն Բ* (1175). *—Նորա պատերազմը Լամբրոնի Հէթում իշխանի դէմ ու գերութիւնը.—Ռուբէնի մահը* (1185)։

Թորոս Բ-ի մահով Կիլիկիան ներքին պատերազմների մատնուեցաւ նորա եղբօր Մլեհի պատճառով։ Հօր գերութիւնից յետոյ ինքնագլուխ մնալով՝ անկիրթ ու անսանձ մեծացել էր Մլեհ, և երբեմն մէկ՝ երբեմն ուրիշ իշխանի յարում ու օգնում էր, առանց խտրութիւն անելու քրիստոնեաների ու հեթանոսների մէջ։ Թորոսի իշխանութեան առաջին տարիներում գործակից ու օգնական եղաւ նորան իւր թշնամիների դէմ. յետոյ Տաճարական ասպետների կարգը մտաւ՝ նոցա զգեստի հետ կրօնական դաւանանք էլ ընդունելով. շուտով Փրանկներից էլ հեռացաւ և քրիստոնէութիւնը թողնելով՝ Թաւրիզական Թուրքմէնների գլուխն անցաւ։ Վերջերը անխիղճ Մլեհը յանդգնեցաւ մինչև իսկ իւր հարազատ եղբօր դէմ դաւաճանութիւն կազմել, բայց բարեբաղդաբար իւր չար խորհուրդը չկատարուած բռնուեցաւ։ Թորոս մեծահոգութեամբ ներեց նորան և շատ գանձեր տա-

քով երկրից դուրս արաւ։ Մլեհ գնաց իւր վաղեմի բարեկամ Նուրէդդինի մօտ և նորա ծառայութեան մէջ մնաց։

Թորոսի մահը լսելուն պէս՝ Մլեհ Նուրէդդինի հետ դաշն կապեց նորա համար նպաստաւոր պայմաններով, և օգնական զօրք առնելով սուլթանից շտապով եկաւ Կիլիկիա իւր եղբօր տէրութիւնը ձեռք ձգելու համար։ Հայերը՝ որ արդէն զզուած էին նորանից, զէն առին և Անտիոքի իշխանի ու Երուսաղէմի թագաւորի օգնութեամբ դուրս քշեցին նորան։ Մլեհ Նուրէդդինին դիմեց, և սա Հայոց դաշնակիցների սահմանները կոխեց ու ստիպեց նոցա յետ քաշուելու։ Այսպիսով Մլեհ նորից մտաւ Կիլիկիա, և Թուրք զօրքից աւելի անգթութիւններ գործեց. իւր հակառակորդներին բանտարկեց և ստացուածները յափշտակեց, եկեղեցական անձանց անպատուութեամբ ծեծեց ու տանջեց, և առհասարակ ամենի վրայ ահուսարսափ ձգեց. ապա Նուրէդդինի զօրքը առատ պարգևներով յետ ուղարկեց, և բռնութեամբ նստաւ իշխանական աթոռը (1170)։ Թոմաս պայլը նորա վրէժխնդրութիւնից փախաւ Անտիոք՝ հետը տանելով Ռուբէնին. այնտեղից էլ աւելի ապահովութեան համար ուղարկեց նորան Հռոմկլայ Ն. Շնորհալու մօտ, ուր և քիչ ժամանակից յետոյ մեռաւ։

Մլեհ Թուրքերի հետ միաբանեցաւ ընդդէմ արևմըտեան քրիստոնեաների, Տաճարական ասպետների Կիլիկիայում ունեցած կալուածները խլեց ու երկրից դուրս արաւ նոցա, և ընդհանրապէս ամեն առիթներում իւր թշնամութիւնն ու ատելութիւնը ցոյց էր տալիս Խաչակիր իշխաններին։ Մի անգամ որ Երուսաղէմի թագա-

ւորը պարտաւոր դեսպանութիւն էր ուղարկում Մանուէլ կայսեր, Մլեհ Մամեստիայի մօտ դեսպաններին բռնեց ու կողոպտեց, և համարեա մերկ արձակեց որ ճանապարհները չարքաշանկեն։ Մի ուրիշ անգամ էլ Պաղեստինի կողմերը ապստամբեց, և միայն ասպետների զօրութեան առաջ ստիպուեցաւ յետ քաշուիլ։ Ընդհակառակն Նուրէդդինի հետ այնքան սերտ բարեկամ էր, որ եղբայր էին անուանում միմեանց. Իկոնիայի սուլթանի հետ էլ բարեկամութեան դաշն կապեց Մանուէլ կայսեր դէմ, որ մտադիր էր Կիլիկիա արշաւելու, և առանց յայտնի պատերազմ հրատարակելու Յունաց՝ սուլթանին դրդեց Փոքր Ասիայի յունական գաւառները ասպատակելու, որով կայսեր ուշադրութիւնը ուրիշ կողմը դարձրեց։ Իսկ իւր տէրութեան մէջ Մլեհ իւր անգութ ու անարժան գործերով այնքան ատելի եղաւ, որ հայ իշխանները միաբանեցան և սպանեցին նորան Սիս քաղաքում (1175)։

Մլեհի տեղ իշխանները նստեցրին Ստեփանէի անդրանիկ որդուն Ռուբէն Բ-ին, որ իւր իմաստուն կառավարութեամբը ժողովրդի սէրը գրաւեց, երկիրն էլ արտաքին թշնամիների յարձակումներից ազատ պահեց. միայն մի անգամ ստիպուեցաւ զէնքի դիմել Լամբրոնի տէր Հեթում իշխանի պատճառով, որ ներքին խաղաղութիւնը վրդովել էր։ Կիլիկիայի մէջ իսկզբանէ անտի կային մի քանի հայ իշխանութիւններ, որոնք Յունաց հպատակութիւնը ընդունած էին և չէին կամենում Ռուբինեանց տիրապետութիւնը ճանաչել։ Սոքա իրանց ծածուկ մեքենայութիւններով աւելի վտանգաւոր էին նորահաստատ տէրութեան համար, քան թէ օտարազգիների յայտնի թշնա-

մութիւնը. ուստի և բնականաբար. Ռուբէն Ա-ի յաջորդները պիտի աշխատէին զսպել նոցա և իրանց ազդեցութիւնը տարածել նոցա վրայ։ Թորոս Բ-ի յաղթական պատերազմներից յետոյ, այդ իշխանները մեծ մասամբ ընկճուեցան և ստիպուեցան նորա գերիշխանութիւնը ընդունել։ Սոցանից ամենազօրաւորն էր Օշին՝ Լամբրոնի տէրը, որի հետ զգուշութեան համար խնամութիւն էր արել Թորոս. բայց մի քանի տարի յետոյ երկու իշխանների մէջ դարձեալ գժտութիւն ընկաւ, և միայն Ներսէս Շնորհալու միջնորդութիւնը կարողացաւ հաշտեցնել նոցա։ Թորոսի մահից յետոյ, Օշինի որդին Հեթում իւր ցեղական ատելութիւնը ցոյց տուեց՝ կնոջը իրանից հեռացնելով, որին միայն աներոջ վախից պահում էր։ Մլեհ իբրև վրէժխնդիր եղբօր պատուին՝ ասպատակեց Հեթումի երկիրը և նորա բերդը պաշարեց, բայց չկարողացաւ առնել։ Այժմ Ռուբէն Բ էլ չէ իմացվում թէ արդեօք նոյն առիթով կամ թէ ուրիշ պատճառով թշնամացաւ Հեթումի հետ, և գնաց Լամբրոնը սաստիկ պաշարեց։ Հեթում անճարացած՝ Անտիոքի Բոհեմոնդ իշխանի օգնութեանը դիմեց, որ նենգութեամբ Ռուբէնին Անտիոք հրաւիրեց և ընդդէմ ամենայն մարդկային իրաւունքների բռնեց նորան ու բանտարկեց։ Ռուբէնի եղբայրը Լևոն զայրացած՝ հայ զօրքի գլուխն անցաւ և քաջութեամբ երկիրը պաշտպանեց Բոհեմոնդի դէմ, որ իւր դաւաճանութեան յաջողութիւնից խրախուսուած՝ մտածում էր Կիլիկիայի իշխանութիւնն էլ ձեռք ձգել. Հեթումին էլ հարկադրեց հաշտութիւն խնդրել, և նորա միջնորդութեամբ Ռուբէնին գերութիւնից ազատեց։

Ռուբէն Կիլիկիա վերադառնալով՝ շարունակեց ա-

ռաջուան պէս իւր ժողովուրդը հայրաբար խնամել։ Քիչ ժամանակից յետոյ աշխարհային գործերից ձանձրանալով՝ կառավարութիւնը իւր եղբօր Լեւոնին յանձնեց, և ինքը վանք քաշուեցաւ, ուր և մեռաւ 1185-ին։

---

## Բ. ԼԵՒՈՆ Բ ԹԱԳԱՒՈՐ ԿԻԼԻԿԻԱՅԻ

## 60.

*Կիլիկիան մինչև Լեւոն Բ.—Լեւոն Բ (1185).—Լեւոն Բ. Նորա յաղթութիւնները շրջակայ մահմէտական իշխանների վրայ (1186—1187).—Լեւոնի բարեկարգութիւնները.—Լեւոնի յարաբերութիւնը Ֆրիդրիկոս Բարբարոսա կայսեր հետ.—Լեւոն Բ-ի թագաւորութիւնը (1198).—Նորա մերձաւորութիւնը Լատինացոց հետ և այդ մերձաւորութեան հետևանքը։*

Մի ամբողջ դար անցել էր այն ժամանակից որ Ռուբէն Ա Հայոց անկախութեան հիմը դրել էր Տաւրոսի բարձրութիւնների վրայ, և այդ հարիւր տարուայ միջոցում նորա յաջորդները մեծ աշխատանք ու ճարտարութիւն գործ դրին, շատ հայ արիւն թափեցին, մինչև որ բովանդակ Կիլիկիայի տէր եղան և Յունաց կայսեր ստիպեցին այդ երկրից բոլորովին հրաժարուել։ Այնուհետև հարկ էր հաստատուն և կանոնաւոր կարգեր սահմանել երկրի մէջ և քաղաքակիրթ տէրութեան կերպարանք տալ նորան։ Այս մեծ գործը վիճակուեցաւ կատարել Լեւոն Բ-ին, որ որքան քաջ ու յաջողակ զօրապետ էր պատերազմի դաշտում, նոյնքան իմաստուն կառավարիչ և աշխարհաշէն իշխան հանդիսացաւ խաղաղութեան ժամանակ. որով և նորա երկարատև իշխանութեան յիշատակը անջնջելի մնաց Հայոց պատմութեան մէջ։

Իշխանութիւնը ձեռք առնելուն պէս՝ (1185) Լեոն Բ-ի առաջին գործն եղաւ իւր երկիրն ապահովել դրացի իշխաններից, որոնք նոյն ժամանակ խլրտում էին Կիլիկիայի չուրջը և սպառնում էին նորա անդորրութիւնը վրդովել։ Իւր զօրութեան առաջին փորձն առաւ Իկոնիայի յանդուգն սուլթանը Ռուստէմ, որ Հայոց իշխանի յաջողութիւնները տեսնելով՝ յանկարծ մեծ զօրքով մտաւ Կիլիկիա, յուսալով որ անպատրաստ կը գտնէ նորան և իւր իշխանութեանը կը հնազանդեցնէ։ Բայց Լեոն քաջութեամբ գնաց նորա առաջ, զարկաւ ցրուեց նորա բանակը մի կատաղի կռուի մէջ, ուր և սուլթանն իւր մահը գտաւ։ Հազիւ թէ այս պատերազմը վերջացել էր, որ Հալէպի ու Դամասկոսի սուլթանները միաբան զօրութեամբ եկան Կիլիկիայի արևելեան սահմանները ասպատակելու։ Լեոն շուտով վրայ հասաւ և երկուսին էլ մեծ կոտորածով յետ քշեց (1187)։

Այս յաղթութիւններից յետոյ Լեոն Բ իւր բոլոր մտադրութիւնը երկրի բարեկարգութեան ու պաշտպանութեան վրայ դարձրեց։ Սահմանագլուխների վրայ բազմաթիւ ամրոցներ շինել տուեց և նոցա մէջ պահապան զօրքեր դրեց։ Իսաւրիան, որ իւր նախորդների օրով Իկոնիայի սուլթանների իշխանութեան տակ էր ընկել, նորից նուաճեց և իւր տէրութեան հետ միացրեց։ Երկրի մէջ էլ վանքերի շինութեան հետ, որոնք այն ժամանակը կրթութեան միակ տեղերն էին, կանգնեց հիւրանոցներ, հիւանդանոցներ ու որբանոցներ հաստատեց, երկրագործութիւնը, վաճառականութիւնը և նաւարկութիւնը ծաղկեցրեց, որով իւր հպատակներին սիրելի ու օտարներին պատկառելի եղաւ։ Կիլիկիայի սահմանները հասնում էին այդ ժամա-

նաև արևմուտքից մինչև Լիկայոնիա, արևելքից մինչև Եփրատ գետը, հարաւից Միջերկրական ծովը, իսկ հիւսիսից Տաւրոսի միւս կողմը, ուր Լեոն Ռուստէմից մի քանի քաղաքներ էր առել։

Մինչ այսպէս Կիլիկիան իւր իմաստուն իշխանի խնամակալութեան տակ խաղաղութեան բարիքները վայելում էր, Սուրիքն ու Պաղեստինը ներքին երկպառակութիւնների տեսարան էին ներկայացնում։ Սալահէդդին *), Եգիպտոսի սուլթանը, լատին իշխանների գըժտութիւններից օգուտ քաղելով, Երուսաղէմը նուաճեց և քրիստոնեաների արիւնով ազատուած Սուրբ երկիրը դարձեալ մահմէտականների ձեռքն ընկաւ (1187)։ Արևմտեան ազգերը նոր խաչակրութիւն կազմեցին Գերմանացոց Փրիդրիկոս Ա Բարբարոսա կայսեր առաջնորդութեամբ, որ և չուտով արշաւեց Ասիա։ Իկոնիա հասնելով, կայսրը դեսպան ուղարկեց Լեոնին և նորա ձեռնտուութիւնը խնդրեց քրիստոնէական մեծ գործի մէջ, խոստանալով որ այդ օգնութեան փոխարէն թագաւորը կը պսակէ նորան։ Լեոն անմիջապէս յայտնեց կայսեր իւր պատրաստականութիւնը. միանգամայն լսելով որ Խաչակիրները պաշարեղէնի մեծ պակասութիւն ունին, ամեն բան առատութեամբ պատրաստեց և ուղարկեց նոցա։ Երբ կայսերական բանակը Իսաւրիա մտաւ, Լեոն իշխանը և Գրիգոր Դ կաթողիկոսը Ներսէս Լամբրոնացու ուղեկցութեամբ գնացին կայսեր դիմաւորելու. բայց դժբաղդաբար չհասան կայսեր տեսութեան, որովհետև Փրեդրիկոս Կալիկատնոս գետի մէջ լողանալիս խեղդուել էր։

*) Սալահէդդին ազգով քուրդ էր և հարաւային Հայաստանումն էր ծնուել։

Կայսեր անակնկալ մահուան պատճառով Լևոնի թագաւորութիւնը մի քանի տարի յետաձգուեցաւ, մինչև որ Հենրիկոս Զ. Ֆրիդրիկոսի որդին ու յաջորդը, Կեղեստինոս Գ պապի հետ համաձայնելով՝ արքայական թագ ուղարկեցին Լևոնին և առիւծանշան դրօշ՝ իւր անուան համեմատ։ 1198 թուին Ծննդեան օրը Լևոն Բ մեծ հանդիսով թագաւոր օծուեցաւ Տարսոնի մայր եկեղեցում Գրիգոր Զ կաթողիկոսի ձեռքով. հանդիսին ներկայ էին բոլոր եկեղեցական և աշխարհական մեծամեծները, ինչպէս նաև Կոնրադ կարդինալը՝ պապի և կայսեր ներկայացուցիչը։ Ամեն կողմից ուրախակցութեան դեսպաններ եկան՝ ծանրագին ընծաներ բերելով Հայոց թագաւորին. Ալեքս Անգելոս կայսրն անգամ թագ ուղարկեց Լևոնին, որով վաւերացրեց Հայոց իշխանութիւնը Կիլիկիայի վրայ (1199)։

Այնուհետև նորապսակ թագաւորը մեծ եռանդով սկսաւ իւր տէրութիւնը բարեկարգել։ Իւր աթոռը Տարսոնից Սիս փոխադրելով, ամենից առաջ որոշեց իշխանների յարաբերութիւնները թագաւորական տան հետ, այլևայլ պալատական և զինուորական պաշտօններ սահմանեց, դատարաններ հիմնեց, հարկերի և տուրքերի քանակութիւնը որոշեց, և այս բոլոր կարգերը մեծ մասամբ Ասորոց երկրի լատին իշխանութիւններից փոխ առաւ, որով և իւր տէրութեանը եւրոպական պետութեան կերպարանք տուաւ։ Իւր ազգի կրթութեան վրայ հոգ տանելով, Լևոն դպրոցներ հիմնեց, որոնց մէջ շատ ուսումնական մարդկանց աշխատեցնում էր առանց նոցա կրօնի և ազգութեան մէջ խտրութիւն անելու, ինչպէս որ շատ ֆրանսիացի, իտալացի, գերմանացի ու անգլիա-

ցի զօրավարներ էլ ընդունեց իւր պալատում, որոնք հայկական դրօշակի տակ ծառայում էին։ Բացի սորանից, ասպետական կարգերին կալուածներ պարգեւեց իւր երկրի մէջ, Ջենովացոց ու Վենետկեցոց էլ առեւտրական արտօնութիւններ շնորհեց, որով Կիլիկիայի վաճառականութիւնը ընդարձակեց Եւրոպայում։ Այսպիսով Լեւոն Բ սերտ յարաբերութիւնների մէջ մտաւ եւրոպական ազգերի հետ և բոլորովին բաժանուեցաւ Յոյներից, որոնց դէմ հարկը ստիպած ժամանակը կարող էր յաջողութեամբ մաքառել իւր նոր դաշնակիցների օգնութեամբ։ Բայց այս մերձաւորութիւնից ամենից աւելի օգուտ պիտի քաղէին Հռոմի պապերը իրանց կրօնական նպատակների համար։ Արդէն Լեւոն Բ-ի օրերից սկսած՝ մի մեծ թղթակցութիւն բացուեցաւ պապերի և Հայոց կաթողիկոսների ու թագաւորների մէջ, որի նպատակն էր հռոմէական և հայկական եկեղեցիները միացնել։ Եղան թագաւորներ, որոնք իրանց շրջապատող թշնամիների դէմ Արեւմուտքից օգնութիւն գտնելու յուսով՝ կամեցան մի քանի զիջումներ անել. բայց հայ ազգը քաջութեամբ պաշտպանեց իւր եկեղեցու անկախութիւնը Վատիկանի դէմ, ինչպէս որ նախընթաց դարերում պաշտպանել էր Բիւզանդիայի բռնութեան դէմ, և Հռոմի բոլոր ջանքերը ուրիշ արդիւնք չունեցան՝ բայց եթէ երկպառակութիւն սերմանել ազգի մէջ և Հայոց թշնամիների զայրոյթը դրգռել, որոնք պիտի շտապէին օր առաջ կործանել Կիլիկեան թագաւորութիւնը, որպէս զի Եւրոպան առիթ չունենայ միջամտելու արեւելեան գործերի մէջ։

---

## 61.

*Անտիոքի ժառանգութեան վէճը և Լևոնի գերը այս խնդրում (1199—1211).—Լևոնի թշնամիների գարանակալութիւնը և Լամբրոնի Հեթում իշխանի ապստամբութիւնը.—Յաղթութիւն Հալէպի սուլթանի վրայ (1212).—Պատերազմ և հաշտութիւն Իկոնիայի սուլթանի հետ (1217).—Լևոնի մահը (1219)։*

Լևոն Բ-ի թագաւորութեան առաջին տարիներում Անտիոքի իշխանութեան ժառանգութեան առթով մի մեծ վէճ ծագեցաւ, որ 12 տարի տևեց և շատ արիւնհեղութիւնների պատճառ եղաւ։ Անտիոքի Բոհեմոնդ իշխանի որդին Ռայմոնդ մեռնելիս՝ երդմամբ խօսք առաւ հօրից երկրի իշխանութիւնը իւր Ռուբէն որդուն տալու, որ Լևոնի Ռուբէն եղբօր Ալիզա աղջկանից էր ունեցել։ Այսպիսով Բոհեմոնդի մահից յետոյ՝ իշխանական գահի վրայ բարձրացաւ Ռուբէն-Ռայմոնդ, որին Անտիոքացիք դեռ իւր պապի կենդանութեան ժամանակ հպատակութեան երդում էին տուել։ Սակայն Բոհեմոնդի երկրորդ որդին՝ համանուն Բոհեմոնդ Միականին, Տրիպօլսի կոմսը, Տաճարական և Հիւրընկալ ասպետների հետ միաբանելով, Ռուբէնին Անտիոքից քշեց և նոյն երկրի իշխանութիւնը իւր ձեռքը ձգեց։ Այն ժամանակ Լևոն Բ դուրս եկաւ պաշտպանելու իւր ազգականի իրաւունքները, մի քանի անգամ հակառակորդին ջարդեց և Անտիոքն առնելով՝ Ռուբէնին գահի վրայ հաստատեց (1203)։ Բայց երբ Կիլիկիա դարձաւ, Տրիպօլսի կոմսը նորից մտաւ Անտիոք և եղբօրորդուն այնտեղից հալածեց. Լևոնի զօրութիւնն էլ բաժանելու համար՝ Իկոնիայի Ռուգնատին սուլթանին ընծաներով յորդորեց Կիլիկիա

արշաւելու։ Թագաւորը թշնամիներից շրջապատած՝ 20,000 բիւզանդական ոսկի տալով Տաճարականներին օգնութիւն կանչեց նոցա այլազգիների դէմ. բայց պատերազմից առաջ ասպետները դաւաճանութեամբ յետ քաշուեցան և Լեւոն մենակ մնաց Ռուգնատինի առաջ, որի բանակը չկարողացաւ դիմանալ հայկական գնդի յանդուգն յարձակմանը և մեծ կորուստով յետ քաշուեցաւ։

Այնուհետև Լեւոն իւր զէնքերը նորից Տրիպօլսի կոմսի դէմ դարձրեց և տեսնելով որ խնդիրը իւր կարծածից ծանր կերպարանք առացաւ, միանգամայն իւր պաշտպանած գործի արդարութեան վրայ վստահացած՝ Իննոկենտիոս Գ պապին դեսպան ուղարկեց և դատի որոշումը նորան յանձնեց։ Եկան Սոփրետ և Պետրոս կարդինալները մինչ Լեւոն Անտիոքը պաշարելու վրայ էր, և գուցէ բանը խաղաղութեամբ վերջանար, եթէ պապի երկրորդ նուիրակը հակառակ կողմից կաշառուելով՝ ընդդէմ ամենայն իրաւունքի Լեւոնի և նորա թագաւորութեան դէմ նզովք արձակած չլինէր, որով թշնամութիւնը աւելի ևս սաստկացաւ։ Յովհաննէս Մեծաբարոյ կաթողիկոսը հրապարակաւ մերժեց այդ նզովքը՝ իբրև ապօրինի գործ, Լեւոն էլ զայրացած պաշարումը սաստկացրեց և առանց սպասելու Երուսաղէմի թագաւորի և նոյն քաղաքի ու Անտիոքի պատրիարքների վճռին, որոնց պապը յանձնել էր գործի քննութիւնը, քաղաքն առաւ և յաղթանակով ներս մտաւ։ Անտիոքի մեծամեծները ցնծութեամբ դիմաւորեցին Լեւոնին ու Ռուբէնին և մեծ հանդիսով երկրի իշխանութիւնը յանձնեցին իրանց օրինաւոր տիրոջը (1211)։ Լեւոն դարձաւ Կիլիկիա և Տա-

Հարականների կալուածները գրաւելով՝ բոլորին էլ երկրից դուրս քշեց։

Այսպէս վերջացաւ այս երկարատեւ պատերազմը, որ այնքան տարիներ զրկեց Կիլիկիային իւր Թագաւորի խնամատարութիւնից։ Բայց Լեւոնի թշնամիները այնուհետեւ էլ հանգիստ չմնացին։ Լեւոն երկրորդ ամուսնութեամբ խնամացել էր Կիպրոսի Լուսինեանց հետ, որոնք երրորդ Խաչակրաց արշաւանքի ժամանակ Երուսաղէմը թողնելով նոյն կղզին գաղթել և առանձին թագաւորութիւն էին հիմնել այնտեղ։ Մի անգամ որ Հայոց թագաւորը թագուհու ազգականներին տեսութիւն գնաց, թշնամիները պատերազմական նաւերով դարան մտան, և մինչ անկասկած յետ էր դառնում, յանկարծ թափեցան նորա վրայ։ Լեւոն ճարտարութեամբ ազատուեցաւ նոցա ձեռքից, դարձաւ Կիպրոս և մի նաւախումբ առնելով՝ ընկաւ թշնամիների վրայ, նոցա նաւերի մեծ մասը ընկղմեց, մնացածը ցիր ու ցան արաւ։ Կիլիկիա հանելով, իմացաւ որ Լամբրոնի տէրը Հեթում իւր բացակայութեան ժամանակ ապստամբել է և երկիրը ոտնակոխ է անում։ Թագաւորը շուտով հասաւ, ապստամբին իւր երկու որդոց հետ բռնեց և Սսի մէջ բանտարկեց։

Փոքր ինչ յետոյ Լեւոնի հակառակորդները մի ուրիշ թշնամի յարուցին նորա դէմ, բայց փոխանակ մնասելու նորան՝ աւելի եւս մեծացրին նորա փառքը։ Հալէպի սուլթանը Ղայասէդդին Ղազի առանց մի թշնամութեան առիթ ունենալու՝ դեսպան ուղարկեց Հայոց թագաւորին, պահանջելով որ կամ իրան հպատակի և կամ պատերազմ դուրս գայ. միևնոյն ժամանակ իւր բանակը Կիլիկիայի վրայ տարաւ։ Լեւոն ժամանակ վաստակելու

համար՝ իւր մարդկանց պատուիրեց որ դեսպաններին մի քանի օր այս ու այն կողմը ման ածեն, մինչև որ ինքը զօրք ժողովեց, արագութեամբ հասաւ սուլթանի վրայ, որ անհոգ սպասում էր դեսպանների դարձին, և իւր անակնկալ յարձակմամբը այնպիսի սարսափ ձգեց թշնամիների վրայ, որ ամեն կողմը ցրուեցան ու փախան՝ ամբողջ բանակը Հայոց ձեռքը թողնելով. և սուլթանը պարտաւորուեցաւ իւր պահանջած հարկից աւելի հատուցանել Հայոց թագաւորին (1212)։

Այսքան յաջողութիւններից յետոյ, Լևոն իւր թագաւորութեան վերջին տարիներում մի դժբաղդ պատերազմ էլ ունեցաւ Իկոնիայի Ազէդդին-Քէյքաուս սուլթանի դէմ, որի չար հետևանքներից հնար գտաւ իւր երկիրը ազատելու։ Ինքը հիւանդ լինելով և բաւական պատրաստութիւն չունենալով, մի փոքրիկ գունդ յանձնեց Կոստանդին աւագ պարոնին և Ադամ պայլին և ուղարկեց Ազէդդինի դէմ, որ Կապան բերդը պաշարել էր, պատուիրելով նոցա որ պաշտպանողական դիրք բռնեն։ Սուլթանը չկարողանալով բերդն առնել և վախենալով որ ճանապարհը չկտրեն, պաշարումը վերցրեց և սկսաւ խորամանկութեամբ յետ քաշուիլ։ Այս հնարքով հայ գունդը իւր ամրացած տեղից առաջ քաշելով, յանկարծ իւր բանակը Հայոց վրայ դարձրեց և մեծ ջարդ տուաւ նոցա։ Կռուի ժամանակ երկու հայ զօրապետների մէջ գժտութիւն էր ընկել և Ադամ իւր զօրքով յետ էր քաշուել առանց պատերազմին մասնակից լինելու. իսկ Կոստանդին թշնամու ձեռքն ընկաւ։ Մինչ Ազէդդին իւր յաղթութեամբ ուրախացած եկել էր Կապանը նորից պաշարելու, յանկարծ գոյժ հասաւ նորան թէ Լևոնը

*Իկոնիան ասպատակում է, ամբողջ գիւղեր ու քաղաքներ աւարի ու կրակի է մատնում, բնակիչներին կոտորում ու գերում է։ Սուլթանը շտապեց գնալ իւր երկիրը պաշտպանելու, բայց առանց պատերազմի հաշտութիւն արաւ Լեւոնի հետ և երկու կողմն էլ իրանց գերիները արձակեցին* (1217)։

*Լեւոն մեռաւ* 1219-*ին* 34 *տարի փառաւոր թագաւորութիւն անելուց յետոյ։ Նորա մահը խորին տրտմութեան մէջ ընկղմեց բոլոր երկիրը, ժողովուրդը ցաւեցաւ իւր հայրախնամ թագաւորի վրայ, Եկեղեցին իւր պաշտպանի վրայ և զօրքը իւր քաջ զօրապետի վրայ։ Մարմինը մեծ յուղարկաւորութեամբ թաղուեցաւ Սիս մայրաքաղաքի մէջ, իսկ սիրտը ամփոփուեցաւ իւր շինած ու սիրած Ակներ վանքում։*

---

## Գ. ԶԱՊԷԼ ԵՒ ՓԻԼԻՊՊՈՍ, ՀԵԹՈՒՄ Ա, ԼԵՒՈՆ Գ

## 62.

*Ռուբէն-Ռայմոնդի փորձը Կիլիկիայի գահը ժառանգելու. Զապէլ թագուհու ամուսնութիւնը Անտիոքի Փիլիպոս իշխանի հետ* (1222).—*Փիլիպպոսի գահընկեցութիւնը* (1225).—*Զապէլի երկրորդ ամուսնութիւնը Հեթումի հետ* (1226).—*Հեթում Ա-ի բարեկարգութիւնները.—Հեթումի բարեկամութիւնը Թաթարաց հետ. Լամբրոնի իշխանի ապստամբութիւնը.—Հեթումի ուղևորութիւնը Թաթարստան* (1253).— *պատերազմ Իկոնիայի սուլթանի դէմ.—Հեթումի Թաթարաց օգնութիւն գնալը.—Եգիպտացոց Կիլիկիա արշաւելը. Հեթումի գահից հրաժարուիլը և մահը* (1270)։

Լևոն Բ արու զաւակ չունենալով՝ Անտիոքի պատերազմի վերջին տարին իւր եղբօր թոռանը Ռուբէն-Ռայմոնդին որդեգրել և թագաւորութեան ժառանգ էր հրատարակել։ Բայց տեսնելով որ նա իւր սեպհական իշխանութիւնը չէ կարող պահել առանց արտաքին օգնութեան, հետևապէս և նորա թագաւորութիւնը աղէտաբեր պիտի լինի Կիլիկիայի համար, վերջին անգամ ոչ միայն չօգնեց նորան Բոհեմոնդի դէմ, որ նորից տիրացել էր Անտիոքին, այլ և իւր աժռուի յաջորդութիւնից էլ զրկեց, և եւրոպական թագաւորների սովորութեամբ իւր թագին ժառանգ անուանեց դեռահասակ Զապէլ դստերը՝ Ադամ պայլի և Կոստանդին պարոնի խնամակալութեան ներքոյ։ Ռուբէն Խաչակիրներից օգնութիւն առնելով՝ եկաւ Կիլիկիա և առանց ընդդիմութիւն գտնելու մտաւ Տարսոն, ուր մի քանի կուսակիցների ձեռնտուութեամբ թագաժառանգ անուանեց իրան։ Կոստանդին, որ Ադամի

դաւաճանութեամբ սպանուելուց յետոյ, տէրութեան միակ հոգաբարձուն էր մնացել, թագաւորական գունդն առած՝ յանկարծ վրայ հասաւ, Մամեստիայի մօտ Ռուբէնի կուսակիցներին ջարդեց ու ցրուեց, իրան էլ բռնեց ու Տարսոնի մէջ բանտարկեց, ուր և մեռաւ։ Ապա հայ իշխանների ու եկեղեցականների հետ խորհուրդ անելով՝ Զապէլին ամուսնացրեց Անտիոքի Բոհեմոնդի Միականի իշխանի որդու Փիլիպպոսի հետ, այն պայմանով որ նա հայ ծէսով ու սովորութեամբ վարուի և իւր նոր հայրենիքի օրէնքները ճշտութեամբ պահպանէ (1222)։

Փիլիպպոս Լեւոն Բ-ի թագը գլխին դնելով՝ առաջի բերան իւր խօսքին հաւատարիմ մնաց. բայց յետոյ հօրից յորդորուած՝ սկսաւ հայկական սովորութիւնները արհամարհել և լատին իշխաններին առաջ քաշել։ Հայ իշխանները խրատեցին նորան, բայց նա ոչ միայն չզգաստացաւ, այլև արքունի զարդերը ծածուկ իւր հօրը ուղարկեց. և մինչ Զապէլին հետն առած գաղտուկ փախչում էր Անտիոք, Կոստանդին մի խումբ զինուորներով հասաւ ետևից, բռնեց նորան և Սիս բերելով բանտարկեց։ Պատգամաւոր ուղարկուեցաւ Անտիոքի իշխանին, որ Հայոց գանձերը յետ ուղարկէ և որդուն ազատէ. բայց ագահ ու անմիտ հայրը յանձն չառաւ տալ, և Փիլիպպոս մեռաւ բանտի կապանքների մէջ (1225)։

Այն ժամանակ Կոստանդին կամեցաւ կաթողիկոսի և իշխանների հաւանութեամբ Զապէլին ամուսնացնել իւր Հեթում որդու հետ. բայց թագուհին չհամաձայնեցաւ և քաշուեցաւ Սելևկիա իւր մօր մօտ, միտքը դնելով որ աշխարհային կեանքից հրաժարուի և վանք առանձնանայ։ Զուր աշխատեցաւ Կոստանդին համոզելու

նորան որ մայրաքաղաք դառնայ. երբ տեսաւ որ քաղցրութեամբ ոչինչ չէ կարող անել, գնաց Սելևկիան պաշարեց։ Այսպիսով Զապէլ ստիպուեցաւ իւր հաւանութիւնը տալ, և Սիս գալով ամուսնացաւ Հեթումի հետ, որ և մեծ հանդիսով թագաւոր օծուեցաւ (1226)։

Հեթումի թագաւորելովը Կիլիկիայի իշխանութիւնը Ռուբինեան տոհմից անցաւ Պապեռօնի Հեթումեանց *) ձեռքը, և Հեթում Ա իւր 44 տարուայ խոհեմ և իմաստուն կառավարութեամբը ցոյց տուեց որ արժանի էր այդ բարձր աստիճանին։ Տէրութեան կարգադրութիւնը յանձնեց իւր փորձառու ու գործունեայ հօրը, որ անդրանիկ Սմբատ որդուն զօրքի վրայ սպարապետ նշանակեց, Լևոն որդուն էլ մարաջախտ կամ թագաւորութեան իշխան կարգեց, իսկ ինքը, իբրև թագաւորահայր, գործերի ընդհանուր ղեկավարութիւնը իւր վրայ առաւ։ Կոստանդին՝ Լամբրոնացոց շահելու յուսով, համանուն Կոստանդին իշխանին իւր հայրական ժառանգութեան մէջ հաստատեց. իսկ դուրսը Իկոնիայի Ալաէդդին սուլթանի հետ խաղաղութեան դաշն կապեց, չնայելով որ սա Լևոն Բ-ի մահից յետոյ Իսաւրիայի մի մասը յափշտակել էր։ Հեթում այս գիջողութիւնը պարտաւորուեցաւ անել սուլթանին՝ ժամանակի ծանր հանգամանքների պատճառով. այդ ժամանակ Ասորոց երկրի քրիստոնեայ իշխանութիւնները մասամբ կործանուել, մասամբ էլ մահմէտական տէրութիւններին հարկատու էին դարձել. Կիլիկիան էլ թշնամիներից շրջապատած էր և ոչ մէկ կողմից օգնութեան յոյս չկար։

---

*) Պապեռօնի Հեթումեանք Լամբրոնի Հեթումեանց ազգական էին, բայց նոցա պէս թշնամի չէին Ռուբինեանց տոհմի հետ։

Սակայն հանգամանքները շուտով փոխուեցան։ Արդէն թաթարները դուրս էին եկել իրանց երկրից և հուր ու սուր սփռելով շատ ազգեր իրանց լծին ծառայեցրել էին։ Պարսկաստանը և Հայաստանը ոտնակոխ անելուց յետոյ, նոքա անցան Փոքր Ասիա, ուր Ղայասէդդին Քէյ-Խոսրէվ Իկոնիայի սուլթանը դուրս եկաւ նոցա առաջ իւր տէրութիւնը պաշտպանելու՝ նախապէս իւր ընտանիքը ապահովութեան համար Կիլիկիա ուղարկելով. բայց սուլթանը յաղթուեցաւ և իւր երկրի մեծ մասը կորցրեց Կապադովկիայում և Ասորիքում։ Հեթում Իկոնիայի Սելջուկեանց անկման վրայ ուրախացած՝ Թաթարաց Բաչու զօրապետին առաջարկեց պաշտպանողական և յարձակողական դաշն կապել մահմէտականների դէմ։ Բաչու Հեթումի առաջարկութիւնն ընդունեց, այն պայմանով որ Ղայասէդդինի ընտանիքը իրան յանձնէ։ Թագաւորը իւր երկիրը պատերազմի չարիքներից ազատելու համար՝ ստիպուեցաւ Թաթարաց առաջնորդի կամքը կատարելու և դաշը կնքուեցաւ։ Ղայասէդդին Հեթումից վրէժ առնելու համար՝ Լամբրոնի Կոստանդին իշխանին դրդեց նորանից ապստամբելու և թագաւորական երկրներն ասպատակելու։ Հեթում զայրացած՝ ապստամբի կալուածները կոխեց և գնաց Լամբրոնը պաշարեց։ Կոստանդին նեղն ընկնելով ապաւինեցաւ Իկոնիա և Ղայասէդդինին հետն առած՝ մեծ պատրաստութեամբ մտան Կիլիկիա։ Հեթում իւր քաջ զօրքով և հօր աջակցութեամբ երկու թշնամիներին էլ խորտակեց. սուլթանը պատերազմի մէջ սպանուեցաւ, իսկ Կոստանդին եօթն անգամ զարնուելուց յետոյ ընկճուեցաւ և հպատակեցաւ իւր թագաւորին (1237)։

Հեթում Լեւոն Բ-ի քաղաքականութեան հաւատարիմ

մնալով՝ բարեկամական յարաբերութիւններ պահպանեց արեւմտեան քրիստոնեաների հետ։ Երբ Լուդովիկոս Թ Ֆրանսիայի թագաւորը Կիպրոս կղզին հասաւ, Հեթում դեսպան ուղարկեց նորա գալուստը շնորհաւորելու և առաջարկեց նորան իւր գործակցութիւնը մահմէտականների դէմ յանձն առած արշաւանքի մէջ։ Սակայն հականալով որ Եւրոպայի օգնութեան վրայ հեռաւորութեան պատճառով մեծ յոյս չէ կարելի դնել, միւս կողմից Թաթարաց մեծ յառաջադիմութիւնը տեսնելով, Հեթում մտածեց մի հաստատուն և տեւողական դաշն կապել սոցա ինքնակալի հետ։ Այն նպատակով նախ իւր Սմբատ եղբօրը դեսպանութեամբ ուղարկեց Թաթարաց մեծ խանի մօտ և նորա հաւանութիւնն առնելուց յետոյ՝ անձամբ գնաց Մանգոյ խանին իւր յարգանքը մատուցանելու (1253)։ Խանը մեծ պատուով ընդունեց Հայոց թագաւորին և մշտնջենաւոր դաշն կապեց նորա հետ։ Դաշնադրութեան զօրութեամբ Մանգոյ խանը յանձն էր առնում օգնելու Հեթումին իւր թշնամիների դէմ և Սելջուկեանց յափշտակած երկրները յետ դարձնելու նորան. Հեթում էլ իւր կողմից պարտաւորվում էր օգնական զօրք տալ նորան Երուսաղէմը Մամլուքների ձեռքից առնելու և ընդհանրապէս Թաթարաց թշնամիների դէմ պատերազմելու համար։ Հեթում երեք ու կէս տարի օտարութեան մէջ մնալուց յետոյ՝ դարձաւ իւր երկիրը Մանգոյ խանի եղբօր Հուլաղու զօրապետի հետ։ Հուլաղուն անցաւ Ասորոց կողմերը, իսկ ինքը գնաց Աղէդդին սուլթանի վրայ, որ Հայոց ու Թաթարաց դաշնակցութիւնից կասկածելով՝ Հեթումի բացակայութեան ժամանակ արշաւել էր Կիլի-

կիտ և մի քանի տեղեր բռնել էր։ Թագաւորը ընկաւ սուլթանի զօրքերի վրայ, ցրուեց նոցա և հետզհետէ տիրեց Գերմանիկուպօլիս, Բեհեսնի, Մունդաս և Մարաս բերդաքաղաքներին, ինչպէս նաև բոլոր Իսաւրիային։

Մի քանի ժամանակից յետոյ Հուլաղուից հրաւէր եկաւ Հեթումին որ Ասորիք գայ և միասին գնան Երուսաղէմը Մամլուքների ձեռքից ազատելու։ Հեթում 40,000 հետևակ և 12,000 ձիաւոր զօրքով հասաւ Եդեսիա, որտեղից դաշնակիցները գնացին նախ Հալէպի Մելիք-Նազար սուլթանի դէմ։ Քաղաքը յարձակմամբ առնուեցաւ, սուլթանը գերի ընկաւ և իւր ընտանիքով ուղարկուեցաւ Պարսկաստան, իսկ նորա երկրները դաշնակիցների մէջ բաժանուեցան։ Մինչ Հուլաղու և Հեթում պատրաստվում էին Ս. Երկիրը երթալու, յանկարծ Մանգոյ խանի մահուան լուրն եկաւ և այս ձեռնարկութիւնը խափանեց. Հուլաղու շտապով դարձաւ Թաթարստան՝ միայն 20,000 զօրք թողնելով իւր Աբաղա որդու իշխանութեան տակ (1259)։

Բիբարս կամ Փնդխտար, Եգիպտոսի սուլթանը, Հուլաղուի յետ քաշուելուց սիրտ առած՝ մտաւ Ասորոց երկիրը, Թաթարներին յաղթեց և շատ տեղերի տիրեց, մինչև իսկ Անտիոքը քրիստոնեաների ձեռքից խլեց։ Ապա Հեթումին դեսպան ուղարկեց՝ պահանջելով որ Ասորոց դռները ազատ թողնէ իւր մարդկանց անցնելու, չարգիլէ Կիլիկիայից ցորեն հանելու, և նաև հարկ տայ իրան։ Հեթում իւր դաշնակիցներին կասկած չտալու համար՝ մերժեց սուլթանի հետ բանագնացութեան մէջ մտնելու. իւր ունեցած զօրքը յանձնեց երկու որդոցը՝ Լևոնին ու Թորոսին, պատուիրելով որ ծովեզերքի ու լեռների մի-

Ջոցը պահեն, իսկ ինքը գնաց Թաթարներից օգնութիւն ուզելու։ Մամլուքները բազմութեամբ մտան Կիլիկիա, արքայորդոց բոլոր ջանքերը զուր եղան նոցա առաջը կտրելու. Թորոս քաջութեամբ ընկաւ պատերազմի դաշտում, իսկ Լևոն գերի բռնուեցաւ։ Թշնամիները Կիլիկիայի մի մասը աւերեցին, մինչև թագաւորների ոսկորները գերեզմաններից հանեցին ու այրեցին, և մեծ աւարով ու գերիներով յետ դարձան։ Ուշ հասաւ Հեթում Թաթար զօրքով, երկրի աւերումը և որդոց կորուստը մեծ կսկիծ պատճառեցին նորան, բայց բերած օգնութիւնն այնքան քիչ էր՝ որ չէր կարող թշնամիների վրայ երթալ։ Նորից դիմեց Աբաղա խանին և նորա նիզակակցութիւնը խնդրեց, բայց նա Պարսկաստանի կողմերը պատերազմ ունենալով՝ չկարողացաւ թագաւորի խնդիրը կատարել։ Հեթում ուրիշ հնար չգտաւ իւր որդուն գերութիւնից ազատելու, բայց եթէ Հալէպը տալով Բիբարսին և Սօզօր եգիպտացի զօրավարին Թաթարաց ձեռքից ազատելով։ Այսպիսով Լևոն դարձաւ Կիլիկիա՝ 22 ամիս գերութեան մէջ մնալուց յետոյ։ Նորա ազատութիւնը անչափ ուրախութիւն պատճառեց ծերացած հօր սրտին, որ այնուհետև աշխարհային գործերից քաշուելով՝ կառավարութեան բեռը Լևոնին յանձնեց, իսկ ինքը վանք մտաւ և կրօնաւորական կեանք վարեց՝ Մակար անունով, ուր քիչ յետոյ մեռաւ 44 տարի թագաւորելուց յետոյ (1270)։

## 63.

*Լևոն Գ (1270).—Դաւադրութիւն Լևոնի դէմ.—Բիբարսի արշաւանքը Կիլիկիա (1274).—Լևոնի նոր ձախորդութիւնները.—Բիբարսի երկրորդ արշաւանքը և պարտութիւնը (1276).—Ցաղթութիւն Իկոնիայի սուլթանի վրայ (1278).—Արշաւանք եգիպտացոց դէմ Թաթարաց դաշնակցութեամբ (1282).—Լևոնի թագաւորութեան վերջին տարիները. նորա մահը (1289)։*

Հօր մահը այնպիսի խորին տպաւորութեան մէջ ընկղմեց Լևոնին, որ նա ծանր կերպով հիւանդացաւ։ Ամեն կողմից պատուաւոր պատգամաւորութիւններ եկան նորան մխիթարելու. Կիլիկիայի այլևայլ քաղաքները, Թաթարաց խանը և նոյն իսկ Եգիպտոսի սուլթանը ցաւակցութիւն էին յայտնում արքայորդուն իւր կրած մեծ կորստի համար։ Լևոն երեք ամսից յետոյ առողջանալով՝ կառավարութեան սանձը ձեռքն առաւ և 1270-ին թագաւոր օծուեցաւ Տարսոնում, ուր և հաստատեց իւր աթոռը։

Լևոն Գ իւր թագաւորութեան օրը նշանաւոր արաւ քաղաքական յանցաւորներին ընդհանուր ներում շնորհելով և աղքատներին առատ ողորմութիւն բաշխելով։ Սակայն չնայելով թագաւորի արդարասէր ու քաղցրաբարոյ բնաւորութեանը, շատ չանցաւ և հայ իշխանները մի դաւաճանութիւն կազմեցին նորա դէմ, որի մէջ խառն էին և նորա ազգականները։ Լևոն յաջողեցաւ դաւաճանութեան պարագլուխներին բռնել, բայց իւր սովորական վեհանձնութեամբ ներեց նոցա և միայն նոցա բերդերը տիրութիւնը գրաւեց, որպէս զի անկարող լինին կրանից ապստամբութեան խորհուրդն առաջ տանել։

Այս ներքին տարաձայնութիւնները Եգիպտոսի սուլթանին առիթ տուին իւր թշնամական յարաբերութիւնները նորոգելու Հայոց թագաւորութեան դէմ. Բիբարս իւր բանակը թուրք զօրքերով ստուարացնելով՝ գնաց Կիլիկիայի վրայ։ Լեւոն իշխաններից անօգնական մնալով անճարացած լեռները քաշուեցաւ և երկիրը անպաշտպան թողեց թշնամիների առաջ, որոնք արձակ համարձակ ընկան այլեւայլ քաղաքների ու աւանների վրայ, թալանեցին ու կործանեցին և բնակիչներին կոտորեցին։ Միայն Սիս քաջութեամբ պաշտպանուեցաւ և մեծ կոտորածով յետ մղեց Մամլուքներին. իսկ Տարսոն հարուստ ու բազմամարդ մայրաքաղաքը թոյլ ընդդիմութիւնից յետոյ անձնատուր եղաւ և աւարի մատնուեցաւ, հոյակապ շէնքերն այրուեցան, բնակիչներից 20,000 հոգի կատաղի թշնամիների սրին զոհ գնացին և 10,000 հոգի գերի տարուեցան (1274)։ Ասպատակների յետ դառնալուց յետոյ, Լեւոն երեւեցաւ իւր ազգի մէջ և անմիջապէս ձեռք զարկեց կործանուած տեղերը նորոգելու և թշնամիների հարուածներից վնասուածներին առատապէս վարձատրելու։

Մինչ այսպէս իւր ժողովրդի վէրքերը բուժելու ետեւ էր լինում, նորանոր դժբաղդութիւններ եկան առաքինի թագաւորի սիրտը փորձելու. Նախ մահը յափշտակեց իւր երկու զաւակներին, ինքն էլ ծանր կերպով հիւանդացաւ. յետոյ մի սոսկալի ժանտախտ էլ եկաւ, որին յաջորդեց սովը իւր զարհուրելի հետեւանքներով։ Լեւոն այս բոլոր ձախորդութիւնների մէջ իւր հոգեկան արիութիւնը չկորցրեց և ամենայն համբերութեամբ հպատակեցաւ Նախախնամութեան կամքին։

Եգիպտոսի սուլթանը իւր առաջին արշաւանքի յաջողութիւնից քաջալերուած՝ փորձեց նորից Կիլիկիան ասպատակելու. բայց այս անգամ իշխանները միաբանեցան Թագաւորի հետ և պատրաստուեցան դէմ դնել Եգիպտացոց։ Լևոն իւր զօրքը մի քանի մաս բաժանեց և այլևայլ տեղեր դարանի դրեց. մի գունդ էլ իւր ծերունի հօրեղբօր՝ Սմբատ սպարապետին յանձնեց և Թըշնամիների առաջ ուղարկեց, իսկ ինքը մի գումարտակ հետն առած՝ ծածուկ տեղերով գնաց եգիպտական բանակի ճանապարհը ետևի կողմից կտրելու։ Այսպիսով Մամլուքները լեռների կրճերում իբրև ծուղակի մէջ բռնուեցան և այնպիսի ջարդ կերան, որ սպանուածների դիակները թոյլ չէին տալիս կենդանի մնացողներին փախչելու։ Բիբարս աճապարեց իւր բանակին օգնութիւն հասնելու, և մինչ պատրաստվում էր պատերազմը նորից սկսելու, մի նետ եկաւ և ծանր կերպով վիրաւորեց նորան։ Սուլթանը իւր բանակի մնացորդով քաշուեցաւ Դամասկոս, ուր և մեռաւ։ Բայց Հայերն էլ մի մեծ կորուստ ունեցան այդ ժամանակ. քաջ Սմբատ սպարապետը պատերազմից վերադարձած՝ իւր ձիուց վիրաւորուելով մեռաւ (1276)։ Աբաղա խանը ուրախակցութեան դեսպաններ ուղարկեց Լևոնին այս մեծ յաղթութիւնը շնորհաւորելու, միանգամայն առաջարկեց նորան Միջագետքում բռնած երկրները Կիլիկիայի հետ միացնել. բայց Լևոն խոհեմութեամբ մերժեց, լաւ հասկանալով որ դժուար պիտի լինի իրան այդպիսի մի ընդարձակ տէրութիւն կառավարել այդքան թշնամիների մէջ։

Եգիպտական արշաւանքի ժամանակ Իկոնիայի սուլթանը Լևոնի կողմը ասպատակել և մի քանի տեղեր

գրաւել էր։ Լեւոն իւր զէնքերը նորա դէմ դարձրեց և մի փառաւոր յաղթութեամբ ստիպեց նորան խաղաղութիւն խնդրել (1278)։

Հազիւ թէ երկիրը սկսել էր փոքր ինչ հանգստանալ երբ պատերազմը նորից արծարծուեցաւ Ասորոց երկրում Թաթարաց ու Եգիպտացոց մէջ, և Լեւոն պարտաւորուեցաւ իւր դաշնակիցներին օգնութիւն գնալու։ Միաբանելով Մանգո-Թամուր զօրապետի հետ, որին Աբաղա խանը 30,000 զօրք էր յանձնել այդ պատերազմի համար, դաշնակիցները անարգել հասան մինչև Համա քաղաքը (Անտիոքի մօտերքը), ուր Սայֆ-էդդին-ալ-Ալֆի իւր բանակը կարգի դրած սպասում էր նոցա։ Պատրաստուեցան և սոքա. գլխաւոր հրամանատարութիւնն իւր վրայ առաւ Մանգո-Թամուր և կանգնեցաւ բանակի մէջտեղը, աջ կողմը բռնեց Հայոց թագաւորը իւր գնդով, իսկ ձախ կողմը Ալմախ թաթար զօրավարը։ Պատերազմի նշանը տրուելուն պէս՝ Լեւոն և Ալմախ բուռն զօրութեամբ ընկան Մամլուքների աջ ու ձախ թևերի վրայ, բուն բանակից բաժանեցին և մի քանի մղոն տեղ հալածելով կոտորեցին. իսկ Մանգո-Թամուր, ըստ ոմանց վախենալով, իսկ ըստ այլոց Ալֆիից կաշառուած լինելով, առանց պատերազմելու Եփրատի կողմերը քաշուեցաւ։ Սուլթանը՝ որ արդէն յուսահատուած փախչելու վրայ էր, սիրտ առաւ և իւր մնացած զօրութիւնը մի բլրի վրայ կենտրոնացրեց։ Երբ Լեւոն և Ալմախ յաղթութեամբ յետ դարձան, տեսան որ զօրապետը պատերազմի դաշտից հեռացել է, ուստի իրանք էլ ստիպուեցան նորա ետևից գնալ։ Հայոց գունդը պաշարի պակասութիւնից նեղացած և Եգիպտացոց յարձակումներին

ենթարկուելով՝ մեծ դժուարութեամբ հասաւ Կիլիկիա բաւական զգալի կորուստներ անելուց յետոյ (1282)։ Աբաղա խանը այս արշաւանքից յետ դարձող Թաթարներին խստութեամբ պատժեց. հասարակ զինուորներին նախատելով՝ հրամայեց կանացի զգեստ հագցնել, իսկ զօրավարներին և նոյն իսկ իւր եղբօրը՝ Մանգու-Թամուրին գլխատել տուեց։

Այս անյաջող պատերազմից յետոյ Լևոն 7 տարի էլ ապրեցաւ և հանգիստ կերպով մեռաւ իւր երկրում՝ մեծ ցաւ պատճառելով ազգին (1289)։ Լևոն իւր թագաւորութեան վերջին տարիները իւր ազգի բարոյական և նիւթական վիճակի վրայ հոգալով անցկացրեց, առանձին խնամք տանելով իւր հիմնած դպրոցների ու հիւանդանոցների վրայ, ինչպէս նաև երկրագործութեան ու վաճառականութեան բարգաւաճման վրայ։ Ուշադրութեան արժանի է որ Լևոն Գ օրինակել տուեց հայկական գրականութեան նշանաւոր արդիւնքները և զանազան տեղեր ցրուեց ուսումնականների գործածութեան համար. Նորան ենք պարտական որ շատ հայ ձեռագրեր անկորուստ հասել են մինչև մեր օրերը։

## Դ. ՀԵԹՈՒՄ Բ. ԵՒ ԻՒՐ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ, ԼԵՒՈՆ Գ, ՕՇԻՆ, ԼԵՒՈՆ Ե

## 64.

*Կիլիկիայի քաղաքական հանգամանքները ԺԴ դարու սկզբին.—Հեթում Բ (1289). Եգիպտացոց արշաւանքը և Հռոմկլայի առումը (1291—92).—Թորոս Գ (1293).—Հեթում 2-րդ անգամ.—Սմբատ իշխանի արարմունքը. Հեթում 3-րդ անգամ (1299).—Պատերազմ Դամասկոսի սուլթանի հետ և արշաւանք Եգիպտացոց դէմ Թաթարաց դաշնակցութեամբ (1302).—Այլազգիների ասպատակութիւնները Կիլիկիայում.—Սսի կրօնական ժողովը և Հեթումի ու Լեւոն Դ-ի մահը (1307)։*

*ԺԳ-րդ դարու վերջերից և մանաւանդ ԺԴ-ի սկզբից Կիլիկիայի քաղաքական հանգամանքները զգալի կերպով փոխվում են։ Թաթարաց մեծ պետութիւնը ներքին պատերազմներից թուլացած՝ կամաց կամաց սկսում է քայքայուել և խաները ոչ միայն իրանց օգնութիւնը զլանում են Հայոց թագաւորներին, այլ և մահմէտականութիւնն ընդունելով՝ թշնամանում են իրանց հին դաշնակիցների հետ և մեծամեծ վնասներ են հասցնում նոցա։ Միւս կողմից Եգիպտոսի սուլթանները, Պաղեստինին և Ասորոց երկրին տէր լինելուց յետոյ, իրանց բոլոր զօրութիւնը դարձնում են Կիլիկիայի վրայ և աշխատում են նուաճել Հայոց, որ միակ քրիստոնեայ տէրութիւնն էին մնացել այն կողմերը։ Հայերը անկարող լինելով մենակ պաշտպանուել զօրաւոր թշնամիների դէմ, իրանց փրկութեան յոյսը դնում են Հռոմի արքունիքի վրայ, որի միջնորդութեամբ անդադար դիմում են արևմտեան քրիստոնեաների օգնութեանը. և պապերը օգուտ քաղելով*

այդ դրութիւնից լատինաց ազդեցութիւնը զօրացնում են Կիլիկիայում և աշխատում են Հայոց եկեղեցին Հռոմի իշխանութեանը ենթարկել։ Այս քաղաքականութեան հետեւանքն այն եղաւ, որ ազգի բարոյական զօրութիւնը անպտուղ վէճերի մէջ սպառուեցաւ և փոխադարձ թշնամութեան ու ատելութեան սերմերը բուն դրին համարիւն եղբայրների մէջ։

Ահա այս հանգամանքների մէջ Կիլիկիայի գահի վրայ բարձրացաւ Լեւոն Գ-ի որդին Հեթում Բ (1289), որ կարծես աւելի կրօնաւոր քան թագաւոր լինելու համար էր ծնուած։ Եւ յիրաւի Հեթում այնքան թոյլ ու անհաստատ կամքի տէր մարդ էր, որ 16 տարուան միջոցում երեք անգամ գահից հրաժարուեցաւ կրօնաւորական խարազ հագնելու համար և երեք անգամ երկիրը տակնուվրայ անելով՝ թագաւորական գահը նստաւ։ Հազիւ մէկ-երկու տարի Կիլիկիան խաղաղութիւն էր վայելել Հեթում Բ-ի իշխանութեան տակ, որ Մէլիք-էլ Աշրաֆ, Աֆիի յաջորդը, իւր հրոսակների գլուխն անցած՝ սկսաւ մօտենալ նորա սահմաններին։ Հեթում շտապեց մէկ կողմից իւր սակաւաւոր զօրքն ուղարկել սահմանագլուխները պահպանելու, իսկ միւս կողմից Թաթարաց Արղու խանի և Նիկողայոս Դ պապի օգնութեանը դիմեց։ Բայց խանը այդ ժամանակ պատերազմների մէջ լինելով՝ չկարողացաւ օգնութիւն հասցնել Հայոց. իսկ պապը դիմեց Ֆրանսիայի Փիլիպպոս Գեղեցիկ թագաւորին, որ ունայն խոստումներով յետ դարձրեց դեսպաններին։ Այդ միջոցին Մէլիք Աշրաֆ մտել էր Կիլիկիայ և պաշարել էր Հռոմկլան՝ Հայոց կաթողիկոսների աթոռանիստը։ Այս ամուր բերդաքաղաքը երկար դիմադրե-

լուց յետոյ առնուեցաւ. բնակիչները անգթաբար կոտորուեցան, Աստուծոյ տաճարները այրուեցան և սրբազան անօթները կողոպտուեցան, ժողովրդի մի մասն էլ Ստեփանոս կաթողիկոսի հետ գերի տարուեցաւ Եգիպտոս, ուր սուլթանը շտապով վերադարձաւ իւր մայրաքաղաքը քրիստոնեաների ձեռքից ազատելու համար, որոնք պապից յորդորուած գնացել էին Աղէքսանդրիան պաշարելու։ Հեթում հարկադրուեցաւ հաշտութիւն անել սուլթանի հետ՝ մի քանի ամուր բերդեր տալով նորան. կաթողիկոսը գերութիւնից ազատուեցաւ, բայց օտարութեան մէջ մեռաւ, իսկ Լուսաւորչի Աջը յետ բերուեցաւ Կիլիկիա (1291—1292)։

Եգիպտական արշաւանքից յետոյ Հեթում իշխանութիւնը յանձնեց իւր Թորոս եղբօրը և ինքը վանք քաշուեցաւ։ Բայց երկու տարուց յետոյ Թորոս էլ եղբօր օրինակին հետևեցաւ, և Հեթում վերստին երկրի կառավարութիւնը ձեռք առնելով՝ գնաց Թաթարաց Ղազան խանի հետ հին դաշնակցութիւնը նորոգելու։ Այնտեղից վերադառնալով, իւր Մարիամ քրոջը Անդրոնիկոս Յունաց կայսեր Միքայէլ որդուն կնութեան տուաւ, ինչպէս քիչ առաջ Զապէլ քրոջը տուել էր Կիպրոսի թագաւորի եղբօր Ամորիին։ Փոքր ինչ յետոյ Հեթում Կիլիկիայի իշխանութիւնը իւր երրորդ եղբօր Սմբատին յանձնեց և ինքը Թորոսի հետ քրոջը տեսութիւն գնաց Կոստանդնուպօլիս (1295)։

Այս Սմբատը Հեթումի բացակայութեան միջոցին՝ իշխաններին և կաթողիկոսին իւր կողմը գրաւեց և թագաւոր օծուեցաւ Սսում. միևնոյն ժամանակ Ղազան խանի հաւանութիւնն էլ առաւ և որպէս զի Թաթարաց հետ

ոերտ կերպով միանալ, Թաթար տիկնոջ հետ ամուսնացաւ։ Երբ Հեթում ու Թորոս վերադարձան իրանց երկիրը, Սմբատ դուրս եկաւ նոցա առաջ և Կիլիկիայից արտաքսեց։ Նոքա ապաւինեցան իրանց խնամիներին՝ Կիպրոս և Կոստանդնուպօլիս, բայց ոչինչ օգնութիւն չգտան. և մինչ Ղազան խանի պաշտպանութեանն էին դիմում, Սմբատ Թաթար զօրքի ձեռնտուութեամբ բռնեց նոցա և Բարձրբերդում բանտարկեց, ուր Թորոս սպանուեցաւ և Հեթում աչքերի լոյսից զրկուեցաւ (1298)։ Կոստանդին, Հեթումի չորրորդ եղբայրը, այս անօրէնութեանն ականատես լինելով՝ զօրքը իւր կողմը ձգեց, Սմբատին գահից զրկեց ու բանտարկեց և իշխանութիւնն ինքն առաւ, Հեթումին էլ բանտի կապանքներից արձակեց։ Շատ չանցաւ՝ Հեթումի աչքերը բացուեցան, և Հայերը այս անակնկալ դէպքից ուրախացած՝ կամեցան դարձեալ թագաւորեցնել նորան։ Այս տեսնելով, Կոստանդին փորձեց Սմբատին բանտից ազատել և նորա հետ միաբանելով Հեթումին դէմ դնել. բայց սա Տաճարական և Հիւրընկալ ասպետների օգնութեամբ երկուսին էլ բռնեց Կոստանդնուպօլիս ուղարկեց, և ինքը երկրորդ անգամ գահը նստեցաւ (1299)։

Այս ներքին անկարգութիւնների ժամանակ, Դամասկոսի սուլթանը Մուսամիչ, եգիպտական զօրքի գլուխն անցած՝ պատրաստւում էր Կիլիկիայի վրայ արշաւելու։ Արդէն Հայոց սահմաններին մօտեցել էր՝ երբ Հեթում ընկաւ նորա վրայ, զօրքը ջարդեց ու ցրուեց, իրան էլ բռնեց և Ղազան խանին ուղարկեց։ Ղազան խանը երկու անգամ փորձեց Հեթումի դաշնակցութեամբ Ասորիքն

ու Պաղեստինը Եգիպտացոց ձեռքից խլել, բայց երկու անգամ էլ հարկադրուեցաւ գործը անկատար թողնել և Թաթարստան դառնալ իւր Բայդուն ազգականի ապստամբութիւնը զսպելու համար, թողնելով իւր տեղը Գոթլուղ զօրապետին սակաւաւոր զօրքով։ Սա և Հեթում սկզբում մի քանի յաջող կռիւներ տուին թշնամու հետ, բայց յետոյ ստիպուեցան յետ քաշուել՝ շատ մարդ կորցնելով Եփրատի ջրերի մէջ։ Հեթումի դժբաղդութիւնից նոյն ժամանակները Ղազան խանն էլ մեռաւ (1302), և նորա յաջորդ Ղարբաղանդ մահմէտականութիւնն ընդունելով՝ Հայոց հետ թշնամացաւ։ Թաթարները իրանց զէնքը դարձրին իրանց առաջուան դաշնակիցների դէմ և Կիլիկիայի ճանապարհներին լաւ ծանօթ լինելով՝ մի տարի շարունակ քարուքանդ արին երկիրը։ Նոցա օրինակից սիրտ առած՝ Մամլուքներն ու Թուրքերը երեք անգամ յարձակեցան Կիլիկիայի վրայ և մեծ աւերածներ գործեցին։ Վերջապէս Հեթում սթափեցաւ իւր թըմբութիւնից և զօրքի գլուխն անցնելով՝ ընկաւ թշնամիների վրայ մինչդեռ նոքա հարուստ աւարներով յետ դառնալու վրայ էին, և այնպիսի ջարդ տուեց նոցա, որ մօտ 7,000 հոգի սպանուեցան կամ գերի բռնուեցան։ Այս յաղթութիւնից յետոյ Եգիպտոսի սուլթանը ստիպուեցաւ հաշտութիւն խօսել Հեթումի հետ, որով այլազգիների ոտքը առժամանակ կտրուեցաւ Կիլիկիայից։

Սակայն շուտով արծարծուեցաւ մի եկեղեցական խնդիր, որ երկրի ներքին խաղաղութիւնը վրդովեց և մեծամեծ չարիքների պատճառ եղաւ։ Թաթարաց և Հայոց դաշնակցութիւնը լուծուելուց յետոյ, Հեթում մտածեց թէ ժամանակը եկել է Հռոմի արքունիքին մի քանի

*զիջումներ անել, յուսալով թէ այդպիսով արևմտեան ազգերից օգնութիւն կը գտնէ մահմէտական տէրութիւնների դէմ, որոնք ամեն կողմից շրջապատում էին Կիլիկիան։ Այս միտքը, որ Լևոն Բ-ի ժամանակից ծագեցաւ, Հայոց թագաւորների և իշխանների Եւրոպացոց հետ հետզհետէ արած խնամութիւնների շնորհով, ինչպէս նաև Կիլիկիայում հաստատուող զինուորական գաղթականութիւնների ազդեցութեամբ, հարիւր տարուան ընթացքում այնքան յառաջադիմութիւն արաւ, որ Հեթում Բ-ի և Լևոն Դ-ի օրով պապականութիւնը բաւական կուսակիցներ ունէր ոչ միայն աշխարհական՝ այլ և եկեղեցական անձանց մէջ։ Նոյն իսկ ժամանակի կաթողիկոսը Գրիգոր Է Անաւարզեցին այս գործի պարագլուխ էր հանդիսացել և վաղուց արդէն մի դաւանութեան թուղթ էր պատրաստել իւր առանձին գլխով, որով դիտաւորութիւն ունէր Հայոց Եկեղեցու մէջ այլևայլ ծիսական փոփոխութիւններ մտցնել հռոմէական Եկեղեցու համաձայն. բայց մահը վրայ գալով՝ չկարողացաւ իւր մտադրութիւնը գլուխ տանել։ Այդ ժամանակ Կիլիկիայի գահի վրայ բազմած էր Հեթումի եղբօր Թորոսի որդին՝ Լևոն Դ, որին Հեթում 1305-ին իւր տեղը նստեցրել էր, թագաւորահայր անունը իրան վերապահելով։ Լևոն Հեթումի խորհրդակցութեամբ հրովարտակ ուղարկեց ազգի եկեղեցականներին և իշխաններին, որ գան հաւաքուին Սիս մայրաքաղաքը հանգուցեալ կաթողիկոսի առաջարկութիւնը քննելու համար։ Ժողովը գումարուեցաւ և դաւանաթուղթը կարդացուելով՝ թագաւորի ճնշմամբ ընդունուեցաւ։ Բայց երբ եկեղեցականները իրանց տեղերը ցրուեցան և նոցանից ոմանք սկսան յայտնի գործ դնել*

ժողովի որոշումները, ժողովրդի մէջ մեծ աղմուկ ու խռովութիւն ծագեցաւ, հաստատուած կանոնները խափանուեցան և միայն Սիս քաղաքումն էին կատարվում, որի բնակիչները թագաւորի և թագաւորահօր դէմ թշնամանալով՝ գրգռեցին նոցա դէմ Թաթարաց Բիլարղու զօրապետին, որ այն ժամանակ մի գունդ զօրքով Կիլիկիայումն էր գտնվում։ Բիլարղու խաբէութեամբ հրաւիրեց Լևոնին ու Հեթումին Անարզաբա քաղաքը, և երկուսին էլ սպանեց իրանց կուսակից իշխանների հետ (1307)։

---

## 65.

Օշին (1308—1320). *Իւր շինութիւնները.—Ատանայի ժողովի արդիւնքը* (1316). *Լևոն Ե* (1320). *Կիլիկիայի վիճակը այս թագաւորի օրով.—Եգիպտացոց արշաւանքը Թաթարների և Թուրքմէնների դաշնակցութեամբ* (1323).—*Լևոնի անօրէնութիւնները. այլազգիների ապստամբութիւնները.—Եգիպտացոց կրկին արշաւանքները* (1335 – 37).—*Լևոն Ե-ի մահը* (1341)։

Լևոն Դ-ի եղբայրը Օշին իւր եղբօր ու հօրեղբօր եղերական մահը լսելով՝ արքունի զօրքով դիմեց Բիլարղուի վրայ, Կիլիկիայից դուրս քշեց նորան և կառավարութեան սանձը ձեռքն առաւ (1308)։ Օշինի թագաւորութեան ամենանշանաւոր գործն եղաւ բազմաթիւ բերդերի և եկեղեցիների շինութիւնը, որոնց մէջ երևելի են մանաւանդ Տարսոնի շուրջը քաշուած հաստահիմն պարսպները։ Այս քաղաքի մէջ Օշին մի փառաւոր եկեղեցի էլ շինել տուեց, որ յետոյ մզկիթի փոխուեցաւ և դեռ այսօր Քիլիսէ-Ջամի (եկեղեցի-մզկիթ) է կոչվում։

Օշին իւր նախորդների օրինակից չխրատուելով՝ կամեցաւ նոցա սկսած կրօնական գործը գլուխ տանել։ Այս դիտաւորութեամբ 1316-ին Ատանայում ժողով գումարեց, ուր վերստին քննուեցան և ժողովականների ստորագրութեամբ ընդունուեցան Սսի սահմանադրութիւնները. բայց նոքա ամենևին չը գործադրուեցան, որովհետև ազգի մէջ մեծ խռովութիւն ընկաւ, և թագաւորը տեսնելով որ անհնարին է որևէ փոփոխութիւն մտցնել ազգային Եկեղեցու մէջ՝ իւր մտադրութիւնից հրաժարուեցաւ։ Եկեղեցական խնդրով զբաղուած ժամանակը՝ Օշին մէկ կողմից Կիպրոսի հետ թշնամութեան մէջ լինելով, միւս կողմից Մամլուքների ահեղ պատրաստութիւնները տեսնելով հետզհետէ երկու դեսպանութիւն ուղարկեց Եւրոպա՝ Յովհաննէս ԻԲ պապին և Ֆրանսիայի Փիլիպպոս Վալուա թագաւորին արևելեան քրիստոնեաների վիճակը ներկայացնելու և նոցա ձեռնտուութիւնը խնդրելու համար։ Բայց Ֆրանսիան Ֆլանդրիայի հետ պատերազմ ունենալով՝ չկարողացաւ օգնութիւն հասցնել Հայոց, և Օշին մենակ մնալով՝ իւր յատուկ զօրութեամբ պաշտպանեց իւր երկիրը, ինչպէս որ կարողացաւ, մինչև 1320 թիւը, որ մահուան տարին էր։

Նորան յաջորդեց տասնամեայ Լևոն որդին, Օշին պայլի խնամակալութեան ներքոյ (1320)։ Այս Օշինը լատինականութեան դէմ մառաքելու համար, որի ազդեցութիւնը օրէցօր աճում էր Հայոց արքունիքում, ամուսնացաւ թագաւորի մօր հետ և քիչ յետոյ դեռահասակ թագաւորին պսակեց իւր դստեր հետ։ Չնայելով այս նախազգուշութեանը, ներքին երկպառակութիւնները, որ նախորդ թագաւորների ժամանակ այնքան աղէտաբեր

ժողովի որոշումները, ժողովրդի մէջ մեծ աղմուկ ու խռովութիւն ծագեցաւ, հաստատուած կանոնները խափանուեցան և միայն Սիս քաղաքումն էին կատարվում, որի բնակիչները թագաւորի և թագաւորահօր դէմ թշնամանալով՝ գրգռեցին նոցա դէմ Թաթարաց Բիլարղու զօրապետին, որ այն ժամանակ մի գունդ զօրքով Կիլիկիայումն էր գտնվում։ Բիլարղու խաբէութեամբ հրաւիրեց Լևոնին ու Հեթումին Անարզաբա քաղաքը, և երկուսին էլ սպանեց իրանց կուսակից իշխանների հետ (1307)։

---

## 65.

Օշին (1308—1320). իւր շինութիւնները.—Ատանայի ժողովի արդիւնքը (1316). Լևոն Ե (1320). Կիլիկիայի վիճակը այս թագաւորի օրով.—Եգիպտացոց արշաւանքը Թաթարների և Թուրքմէնների դաշնակցութեամբ (1323).—Լևոնի անօրէնութիւնները. այլազգիների ասպատակութիւնները.—Եգիպտացոց կրկին արշաւանքները (1335 – 37).—Լևոն Ե-ի մահը (1341).

Լևոն Դ-ի եղբայրը Օշին իւր եղբօր ու հօրեղբօր եղերական մահը լսելով՝ արքունի զօրքով դիմեց Բիլարղուի վրայ, Կիլիկիայից դուրս քշեց նորան և կառավարութեան սանձը ձեռքն առաւ (1308)։ Օշինի թագաւորութեան ամենանշանաւոր գործն եղաւ բազմաթիւ բերդերի և եկեղեցիների շինութիւնը, որոնց մէջ երևելի են մանաւանդ Տարսոնի շուրջը քաշուած հաստահիմն պարսպները։ Այս քաղաքի մէջ Օշին մի փառաւոր եկեղեցի էլ շինել տուեց, որ յետոյ մզկիթի փոխուեցաւ և դեռ այսօր Քիլիսէ-Ջամի (եկեղեցի-մզկիթ) է կոչվում։

Օշին իւր նախորդների օրինակից չխրատուելով՝ կամեցաւ նոցա սկսած կրօնական գործը գլուխ տանել։ Այս դիտաւորութեամբ 1316-ին Ատանայում ժողով գումարեց, ուր վերստին քննուեցան և ժողովականների ստորագրութեամբ ընդունուեցան Սսի սահմանադրութիւնները. բայց նոքա ամենևին չը գործադրուեցան, որովհետև ազգի մէջ մեծ խռովութիւն ընկաւ, և թագաւորը տեսնելով որ անհնարին է որևէ փոփոխութիւն մտցնել ազգային Եկեղեցու մէջ՝ իւր մտադրութիւնից հրաժարուեցաւ։ Եկեղեցական խնդրով զբաղուած ժամանակը՝ Օշին մէկ կողմից Կիպրոսի հետ թշնամութեան մէջ լինելով, միւս կողմից Մամլուքների ահեղ պատրաստութիւնները տեսնելով հետզհետէ երկու դեսպանութիւն ուղարկեց Եւրոպա՝ Յովհաննէս ԻԲ պապին և Ֆրանսիայի Փիլիպպոս Վալուա թագաւորին արևելեան քրիստոնեաների վիճակը ներկայացնելու և նոցա ձեռնտուութիւնը խնդրելու համար։ Բայց Ֆրանսիան Ֆլանդրիայի հետ պատերազմ ունենալով՝ չկարողացաւ օգնութիւն հասցնել Հայոց, և Օշին մենակ մնալով՝ իւր յատուկ զօրութեամբ պաշտպանեց իւր երկիրը, ինչպէս որ կարողացաւ, մինչև 1320 թիւը, որ մահուան տարին էր։

Նորան յաջորդեց տասնամեայ Լևոն որդին, Օշին պայլի խնամակալութեան ներքոյ (1320)։ Այս Օշինը լատինականութեան դէմ մաքառելու համար, որի ազդեցութիւնը օրէցօր աճում էր Հայոց արքունիքում, ամուսնացաւ թագաւորի մօր հետ և քիչ յետոյ դեռահասակ թագաւորին պսակեց իւր դստեր հետ։ Չնայելով այս նախազգուշութեանը, ներքին երկպառակութիւնները, որ նախորդ թագաւորների ժամանակ այնքան աղէտաբեր

էին եղել Կիլիկիայի համար, շուտով նոր զօրութեամբ արծարծուեցան և այնուհետև չպիտի դադարէին մինչև որ այդ երկիրը կորստեան անդունդը չձգէին։ Կիլիկիան Լևոն Ե-ի օրով իւր նախնական սահմանների մէջ ամփոփուած էր. սահմանագլուխների բերդերը նախընթաց արշաւանքների ժամանակ մեծ մասամբ կործանուած կամ վնասուած էին. իսկ ներսը կրօնական-քաղաքական գժտութիւնները թոյլ չէին տալիս իշխաններին միաբանելու երկրի պաշտպանութեան համար։ Ընդհակառակն, Մամլուքների տէրութիւնը այդ ժամանակ իւր զօրութեան ծայրն էր հասել և Նեղոսի ափերից մինչև Գարսից ծովն էր տարածվում. Միջագետքի, Ասորիքի ու Պաղեստինի քրիստոնեայ ժողովուրդները հեծում էին Մէլիք-Նազար սուլթանի ծանր լծի տակ, և սա մտածում էր այժմ քրիստոնէութեան վերջին պատսպարանը՝ Կիլիկիայի Հայոց թագաւորութիւնը կործանել, որպէս զի այդպիսով արևմտեան ազգերի Երուսաղէմին տիրելու յոյսը կտրէ։

Լուր առնելով թէ Եւրոպայում նոր Խաչակրութիւն է պատրաստվում Ֆրանսիայի թագաւորի առաջնորդութեամբ, Մէլիք-Նազար շտապեց դաշնակցութիւն կապել Թաթարաց Թիմուրթաշ զօրապետի և Թուրքմէնների Արաման իշխանի հետ, որպէս զի Եւրոպացիք չհասած՝ իւր մտադրութիւնը գլուխ տանի։ Արշաւանքը սկսաւ Թիմուրթաշ Իկոնիայի կողմից, որ այդ ժամանակ Թաթարաց իշխանութեան տակ էր գտնվում. 30,000 հեծելազօր սփռուեցան երկրի ամեն կողմերը և 25 օր անխնայ կոտորեցին, այրեցին ու թալանեցին. մինչև անգամ մեռելների դիակները գերեզմաններից հանեցին ու

պղծեցին, և մեծ աւարով ու գերիներով յետ դարձան։ Թիմուրթաշից յետոյ եկաւ Արաման իւր Թուրքմէններովը, և նախընթաց արշաւանքից անվնաս մնացած տեղերը ասպատակեց։ Երբ սա էլ յետ քաշուեցաւ, Մէլիք-Նազար իւր բանակն ուղարկեց վերջին հարուածը տալու։ Մամլուքները դաշտային Կիլիկիան քարուքանդ անելուց յետոյ, մեծ բազմութեամբ գնացին Այաս հարուստ ու վաճառաշահ քաղաքը ծովի ու ցամաքի կողմից պաշարեցին։ Պաշարեալները յամառութեամբ պաշտպանուեցան, բայց վերջապէս քաղաքն առնուեցաւ ու կրակի մատնուեցաւ, բնակիչները անխնայ կոտորուեցան, միայն մի մասը Կիպրոսի թագաւորի ուղարկած նաւերն ապաւինելով նոյն կղզին փախան։ Հայոց կտրիճ երիտասարդները տեսնելով որ իրանց թագաւորը այսպիսի ճգնաժամին կրօնական խնդիրներով է զբաղուած, հայրենիքի պաշտպանութեան գործը իրանց վրայ առին։ Կազմուեցան մի քանի ազատ գնդեր, որոնցից մէկը 200 քաջերից բաղկացած՝ դարան մտաւ մի կրճի մօտ, որտեղից եգիպտական հեծելազօրը պիտի անցնէր, և 18,000 հոգուց 6,000-ից աւելի կոտորեցին, մի մասն էլ գերի բռնեցին։ Մի ուրիշ գումարտակ՝ 600 հոգուց կազմուած, ընկաւ Մամլուքների վրայ, մինչդեռ նոքա Այասի աւարով յղփացած՝ Պիրամոս (Ջիհուն) գետի ափերի վրայ անհոգ հանգստանում էին, և այնպիսի ջարդ տուաւ նոցա, որ փախչող փախչողի եղան՝ 5,000 դիակ թողնելով կռուի դաշտի վրայ։ Այս հարուածները գոռոզ սուլթանին ստիպեցին Կիլիկիան նուաճելու մտադրութիւնը յետաձգել և 15 տարով զինադադար անել Հայոց հետ, մանաւանդ որ Լևոն վերոյիշեալ արշաւանքներից նեղն ընկած՝ փոփոխակի Ե-

*բողոքող ու Թաթարաց ձեռնտուութեանը դիմել և այս վերջիններից օգնութեան հաստատուն խոստումն առել էր։ Դաշինքը կնքուեցաւ Հայոց կաթողիկոսի միջնորդութեամբ Քահիրէում՝ հետևեալ գլխաւոր պայմաններով. 1. Հայոց թագաւորը պարտաւորվում էր տարէցտարի 50,000 ֆլորինի տուրք վճարել Եգիպտացոց. 2. Այասի մաքսային եկամուտի և ծովային վաճառականութիւնից գոյացած արդիւնքի կէսը, ինչպէս նաև ծովից հանուած աղի կէսը Եգիպտացոց պիտի երթար։ Սուլթանն էլ յանձն էր առնում՝ 1. Կիլիկիայի ոչ մի բերդ կամ ամրոց իւր զօրքով չգրաւել. 2. Այասը և ուրիշ կործանուած բերդերը իւր ծախքով նորոգել* (1323)։

*Սակայն շուտով ներքին գժտութիւնները առիթ տուին Եգիպտացոց այս դաշինքը լուծելու։ Մէկ կողմից Ունիթորները կրօնական աղմուկներ հանելով սկսան տակն ու վրայ անել Կիլիկիան, իսկ միւս կողմից թագաւորը իւր հակազգային ընթացքով հասարակաց ատելութիւնը գրգռեց իւր դէմ։ Լևոն իւր լատին ազգականների խորհրդին յսելով՝ հայ իշխաններին պաշտօնից զրկեց և նոցա կալուածները խլելով լատին իշխաններին յանձնեց։ Տէրութեան խնամակալը Օշին ազգային կուսակցութեան պաշտպան կանգնելուն համար՝ ոչ միայն զօրքի հրամանատարութիւնից զրկուեցաւ, այլև թագաւորի հրամանով սպանուեցաւ։ Նոյն իսկ թագուհու վրայ զրպարտութիւններ բարդելով, Լևոն գլխատել տուաւ նորան և երկրորդ անգամ ամուսնացաւ Սիկիլիայի թագաւորի դստեր հետ* (1330)։ *Այս անօրէնութիւնների պատճառով ամենքը հեռացան արքունիքից, և երկիրը բոլորովին անպաշտպան մնաց թշնամիների առաջ, որոնք*

անարգել ջարդեցին, քանդեցին ու կողոպտեցին որքան կամեցան, և շատ աւար ու գերի տարան։ Լևոն դարձեալ դիմեց Եւրոպացոց, որոնք այս անգամ յօժարութիւն յայտնեցին ոչ միայն Հայոց օգնելու, այլև Պաղեստինը մահմէտականների ձեռքից ազատելու։ Սփռուեցան ամեն տեղ քարոզիչներ, որոնք յորդորում էին քրիստոնեաներին զինւորուիլ այս աստուածահաճոյ գործի համար։ Շարժման գլուխը կանգնեցաւ Փիլիպպոս Զ Ֆրանսիայի թագաւորը, որի սպառնալիքների համբաւը մինչև Արևելք հասաւ և Հայոց թշնամիների զարոյթը աւելի ևս գրգռեց։ Բայց դժբաղդաբար այս անգամ էլ խօսքերը առանց հետևանքի մնացին, և Լևոնի ստացած բոլոր օգնութիւնն եղաւ 10,000 ֆիորին Փիլիպպոս Զ-ի կողմից և մի քանի պարկ ցորեն Բենեդիկտոս ԺԲ պապի կողմից։

Եգիպտացոց սուլթանը, Մէլէք-էլ-Նազար Մահմուտ, Եւրոպացոց յոխորտանքը լսելով՝ իւր բոլոր կատաղութիւնը թափեց Հայոց վրայ։ Մամլուքները երկու անգամ հետզհետէ արշաւեցին Կիլիկիայ և երկիրը աւերակ դարձրին (1335—1337)։ Լևոն տարտափած թողեց իւր մայրաքաղաքը և ապաւինեցաւ լեռները. Թշնամին միայն այն ժամանակ յետ քաշուեցաւ, երբ Հայոց թագաւորը սուլթանի դեսպանի ներկայութեամբ Խաչի ու Աւետարանի վրայ երդում կերաւ ոչինչ հաղորդակցութիւն չունենալ Եւրոպացոց հետ։

Այնուհետև Լևոն Ե. մի քանի տարի էլ ապրեցաւ և մեռաւ առանց ժառանգ թողնելու (1341). Նորանով վերջացաւ Ռուբինեան հայկական ցեղի թագաւորութիւնը։

---

## Ե. ԼՈՒՍԻՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ

### 66.

*Կիլիկիայ Լուսինեանց ծագումը.—Կոստանդին Գ և իւր յարաբերութիւնը Հռոմի հետ (1342).—Գուիդոն, իւր հակազգային ընթացքը և մահը (1343—1345).—Կոստանդին Դ (1345). իւր երկու յաղթութիւնները Եգիպտացոց վրայ.—Կոստանդնի մահը (1362)։*

Լուսինեան Ֆրանսիական ցեղը Ռուբինեան տոհմի հետ խնամացել էր Հեթում Բ-ի օրով, որ իւր Զապէլ քրոջը կնութեան էր տուել Տիւրոսի Ամօրի կոմսին (1295)։ Այս ամուսնութիւնից մի քանի տարի յետոյ, Ամօրին Օշին Հայոց թագաւորից զրգռուած՝ իւր եղբօրը Հենրիկոս Բ-ին Կիպրոսի գահից զրկեց և նոյն երկրի իշխանութիւնը իւր ձեռքը ձգեց։ Սակայն Ամօրին այսպիսի անիրաւութեամբ ստացած թագը երկար ժամանակ չվայելեց. Կիպրոսի մեծամեծները դաւաճանութեամբ սպանեցին նորան և որոշեցին իշխանութիւնը նորից Հենրիկոսին տալ, որ Լամբրոնի բերդում բանտարկուած էր։ Բայց Օշին կամենում էր Կիպրոսի գահի վրայ նստեցնել իւր Զապել հօրաքրոջը, որպէս զի այդպիսով նորա որդիքը թագաւորութեան ժառանգ լինին. ուստի մերժեց Հենրիկոսին բանտից արձակել։ Այն ժամանակ Կիպրոսի իշխանները վճռեցին Զապէլին իւր երեք որդոց հետ պատանդ պահել մինչև որ Հենրիկոս թագաւորին ազատութիւն չտրուի։ Օշին տեսնելով որ խնդիրը ծանր կերպարանք է առնում և կարող է պատերազմի հասցնել, ստիպուեցաւ Հենրիկոսին արձակել, և այսպիսով բանը խաղաղութեամբ վերջացաւ։

Բայց այնուհետև Զապէլ այլևս չէր կարող Կիպրոսում մնալ։ Նա առաւ իւր որդոց և բազմաթիւ լատին քիշխաններով շրջապատուած եկաւ Կիլիկիա։ Լևոն Ե նոր էր գահը բարձրացել, և այս լատինասէր թագաւորը սիրալիր ընդունելութիւն արաւ նոցա։ Օշին պայլը տեսնելով որ լատին կուսակցութիւնը օրէցօր զօրանում է Հայոց արքունիքում, սկսաւ յայտնի մաքառել այդ օտարական ազդեցութեան դէմ, որի գլուխը կանգնած էր թագաւորի մեծ հօրաքոյրը։ Թշնամութիւնը այն աստիճան սաստկացաւ, որ երկու կուսակցութիւնները զէնքի դիմեցին և արիւնահեղ կռիւ տուին Սսի դաշտում։ Զապէլ յաղթուեցաւ և իւր Հենրիկոս որդու հետ բանտարկուեցաւ Սսի բերդում. իսկ միւս երկու որդիքը, Յովհաննէս և Գուիդոն, ապաւինեցան Կիպրոս և իրանց հօրեղբօր օգնութեանը դիմեցին։ Կիպրոսի թագաւորը, որ վաղուց մի առիթ էր սպասում Հայերից վրէժ առնելու, պատերազմ հրատարակեց Օշինին, և պատրաստվում էր նաւել Կիլիկիա, երբ Յովհաննէս ԻԲ պապը միջնորդ մտաւ և հաշտեցրեց նորան Հայոց հետ (1322)։

Զապէլի երկու որդիքը իրանց ակնկալութիւնների մէջ խաբուելով, անցան Յունաստան և կայսեր ծառայութեան մէջ մտան։ Մի քանի տարուց յետոյ Յովհաննէս կանչուեցաւ Կիլիկիա և տէրութեան պայլ կարգուեցաւ Օշինի տեղ։ Այս պաշտօնով կառավարեց նա Կիլիկիան Լևոն Ե-ի մահից յետոյ, մինչև որ Գուիդոն էլ եկաւ Կիլիկիա և նոր թագաւորի ընտրութիւնն եղաւ։ Ընտրութիւնն ընկաւ Յովհաննէսի վրայ, որ և թագաւոր հրատարակուեցաւ Կոստանդին Գ անունով (1342)։

Կոստանդին փոխանակ աշխատելու մի դարման ա-

նել այն չարիքներին՝ որ իւր նախորդի անհոգութիւնն ու անկարողութիւնք կուտել էին Կիլիկիայի վրայ, իւր բռնած ընթացքով նորանոր չարիքների պատճառ եղաւ։ Բենեդիկտոս ԺԲ ընդդէմ ամենայն խղճի՝ Լևոն Ե-ին սուլթանին տուած երդումից արձակել էր, պատճառելով թէ այդ երդումը բռնի է եղած և ոչ կամաւոր, ուստի և ոչինչ զօրութիւն չունի։ Այս հիման վրայ նորընտիր թագաւորը սկսաւ շարունակել առաջուան յարաբերութիւնները Հռոմի արքունիքի հետ, և հայ իշխանները տեսնելով որ նա զիջումներ է անում պապին, յորդորեց նորան որ իւր ընթացքը փոխէ. բայց թագաւորը ոչ միայն բանի տեղ չդրեց նոցա խօսքերը, այլև ամեն տեսակ օժանդակութիւն ցոյց տուեց Ունիթոռներին, որոնց յանդգնութիւնը օր աւուր վրայ աւելանում էր։ Վերջապէս իշխանները և զօրքը չկարողանալով այլևս համբերել այն նախատինքներին՝ որոնց ամեն օր ենթարկւում էր Հայոց Եկեղեցին, ապստամբեցան և սպանեցին Կոստանդինին իւր թագաւորութեան առաջին տարում (1343)։

Անմիջապէս ժողով գումարուեցաւ Սսում նոր թագաւորի ընտրութեան համար, և Գուիդոն Յունաստանից հրաւիրուեցաւ եղբօր տեղ նստելու։ Կիլիկիայի այս աղմըկալի վիճակը դարձեալ առիթ տուեց Եգիպտացւոց Հայոց սահմանները կոխելու։ Գուիդոն անպատրաստ լինելով՝ փակուեցաւ մի բերդի մէջ և դեսպան ուղարկեց Կղմէս Զ պապից օգնութիւն խնդրելու։ Սա էլ դիմեց Ֆրանսիայի և Անգլիայի թագաւորներին, որոնք այն ժամանակ պատերազմ ունենալով միմեանց դէմ՝ մերժեցին պապի առաջարկութիւնը։ Եգիպտացիք Կիլիկիան ոտնակոխ անելուց յետոյ՝ յետ քաշուեցան. բայց յաջորդ տա-

րին կրկին եկան աւերումն ու աւարառութիւնը շարունակելու։ Թագաւորը, փոխանակ երկրի մնացած զօրութիւնը միացնելու և գահի պաշտպանութեան համար գործ դնելու, շրջապատել էր իրան լատին իշխաններով, որոնց յանձնել էր քաղաքների ու բերդերի պահպանութիւնը. և հայ իշխանները տժգոհ նորանից՝ մի կողմ քաշուեցան, ոմանք մինչև անգամ Կիլիկիայից հեռացան։ Գուիդոն վերստին պապի օգնութեանը դիմեց, խոստանալով որ ամեն ջանք կ'անէ երկու եկեղեցիների միութիւնը գլուխ հանելու, և պապը ուղարկեց նորան 1000 ձիաւոր և 1000 բիւզանդեան դահեկան։ Հայերը տեսնելով թագաւորի հակազգային ընթացքը, յիշեցրին նորան իւր եղբօր մահը և հասկացրին թէ ինքն էլ նոյնպիսի վախճան կ'ունենայ, եթէ շարունակէ այդ ճանապարհով գնալ։ Սակայն Գուիդոն արհամարհեց հայ իշխանների յորդորանքները և մինչև անգամ նոցա կալուածները խլեց ու լատինացոց պարգևեց։ Այս անխոհեմ վարմունքը այնքան զայրացրեց իշխաններին, որ սպանեցին նորան թագաւորութեան երկրորդ տարում (1345)։

Գուիդոնի տեղ ընտրուեցաւ Կոստանդին Դ (1345), Լևոն Ե-ի մերձաւոր ազգականը և Բալդին Հայոց սպարապետի որդին, որ 18 տարի թագաւորեց։ Կոստանդին իւր խելքով և ընդունակութիւններով արժանի էր աւելի բաղդաւոր ժամանակներում թագաւորելու։ Հասկանալով որ Կիլիկիայի դժբաղդութեան գլխաւոր պատճառը կրօնական երկպառակութիւններն են, նա աշխատեցաւ ներքին խռովութիւնները դադարեցնել, և բոլոր մտադրութիւնը երկրի պաշտպանութեան վրայ դարձրեց։ Եգիպտոսի սուլթանը Հայոց թագաւորի պատրաստութիւն-

նիրը տեսնելով, իւր բանակը ստուարացրեց Բաբելոնի և Ասորոց զօրքերով, ընկաւ Կիլիկիայի վրայ և առաջին յարձակմամբ Այաս քաղաքն առաւ։ Կոստանդին առանց Եւրոպացոց օգնութեանը սպասելու՝ գնաց սուլթանի դէմ և մինչ ինքը Հռոդոսի Պէտրոսի իշխանի աջակցութեամբ պատերազմը սկսեց, Կիպրոսի Հիւգ թագաւորը ետևից յարձակեցաւ թշնամիների վրայ. Եգիպտացիք մեծ կոտորածով յետ մղուեցան, միայն Այասը նոցա ձեռքը մնաց։

Անմիջապէս դեսպան ուղարկուեցաւ Եւրոպա այս յաղթութիւնը աւետելու և միանգամայն Եգիպտացոց դէմ օգնութիւն խնդրելու։ Հայ դեսպանը Հռոմից հետզհետէ անցաւ Վենետիկ, Փարիզ և Լոնդոն, բայց ոչ մի տեղ օգնութիւն չգտնելով՝ դարձաւ Կղեմէսին դիմեց։ Այս անգամ պապը բացէիբաց յայտնեց դեսպանին, թէ Հայոց թագաւորը միայն այն ժամանակ կարող է օգնութեան վրայ յուսալ, երբ Հռոմի բոլոր պահանջումները կը կատարէ։ Այսպիսով Կոստանդին մենակ մնաց թշնամիների առաջ, որոնք վերստին արշաւեցին Կիլիկիա։ Արի թագաւորը առանց դաշնակցի և միայն Հռոդոսի ասպետների թեթև օգնութեամբ Եգիպտացոց վրայ գնաց և արիւնահեղ պատերազմ տալով յաղթեց նոցա և երկրից դուրս քշեց։ Յետոյ իւր ընթացքը շարունակելով դէպի արևելք, յարձակմամբ առաւ Մամլուքներից Աղէքսանդրէտա բերդաքաղաքը՝ Իսոսի ծոցում (1357)։

Այս յաղթութիւններից յետոյ Կիլիկիան մի քանի տարի հանգստութիւն վայելեց. բայց Կոստանդնի մահով այս խաղաղութիւնը վրդովեցաւ և երկիրը դարձեալ եգիպտական արշաւանքներին ենթարկուեցաւ (1362)։

## 67,

*Լեւոն Զ. (1365).—Եգիպտացոց կրկին արշաւանքները Կիլիկիայի վրայ (1366, 1371).—Մամլուքների վերջին արշաւանքը և Լեւոնի գերութիւնը (1374—1375).—Լեւոնի ազատութիւնը (1382).—Նորա ջանքը Հայոց թագաւորութիւնը վերականգնելու։—Լեւոնի վերջին տարիները և մահը (1393).—Հայոց թագաւորի տիտղոսը կրողները։*

Կոստանդին Դ-ից յետոյ Կիլիկիայի գահը երկու տարի դատարկ մնաց, և այդ միջոցում շատ անձինք հետամուտ եղան երկրի թագը ձեռք ձգելու։ Վերջապէս հայ և լատին իշխանները միաբանեցան թագաւոր նշանակելու Լեւոն Լուսինեան իշխանին, որ Կիպրոսի Պետրոս թագաւորի ազգականն էր (1365)։ Լեւոն քաջ ու առաքինի մարդ էր, բայց այնպիսի ժամանակ Կիլիկիայի գահը բարձրացաւ, երբ երկրի նիւթական ու բարոյական զօրութիւնները սպառուած էին, և նորա բոլոր ջանքերը անզօր պիտի լինէին Հայոց տէրութեան կործանման առաջն առնելու։

Լեւոնի թագաւորութեան երկրորդ տարին Եգիպտացիք յարձակեցան Կիլիկիայի վրայ։ Լեւոն իւր ձեռքի տակ ունեցած զօրքով նոցա դէմ գնաց, բայց թշնամիների բազմութիւնից յաղթուելով՝ ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել (1366)։ Եգիպտացիք յետ քաշուեցան՝ հինգ տարի յետոյ նոր արշաւանք գործելու համար (1371)։ Լեւոն այս անգամ էլ դուրս եկաւ իւր թագը պաշտպանելու, բայց կռուի մէջ վիրաւորուելով լեռներն ապաւինեցաւ, և երկիրը անպաշտպան մնաց կատաղի թշնամիների առաջ, որոնք ըստ սովորութեան ամէն բան

կրակի ու սրի մատնեցին։ Մարիամ թագուհին կարծելով թէ իւր ամուսինը պատերազմում մեռած է, շտապեց այս դժբաղդութիւնը դեսպանի ձեռքով յայտնելու իւր ազգական Փիլիպպոս Տարենտացի իշխանին, խնդրելով որ Կիլիկիայի ցաւալի վիճակին մի դարման տարուի։ Որոշուեցաւ Հայոց թագուհուն ամուսնացնել Բրաունշվէյգի Օթոն իշխանի հետ, որ Գերմանացոց կայսեր և Կիպրոսի թագաւորի հետ ազգականութիւն ունենալով՝ կարող էր պէտք եղած օգնութիւնը գտնել նոցանից։ Բայց այս խորհուրդը խափանուեցաւ Լևոնի անակնկալ երևելովը, որ իւր գահը վերադառնալով՝ մեծ ուրախութիւն պատճառեց թէ գերդաստանին և թէ ազգին։

Սակայն այս ուրախութիւնը երկար չտևեց։ Մէլիք-Աշրաֆ Շաբան Եգիպտոսի սուլթանը, Կիլիկիայի անկեալ վիճակը տեսնելով, վճռեց Հայոց տէրութեանը մի վերջին հարուած տալ և այդ երկիրը իւր իշխանութեան տակ առնել։ Մամլուքները սուլթանի եղբօր Ահմէդի առաջնորդութեամբ մտան Կիլիկիա 1374-ին և հուր ու սուր սփռելով երկրի դաշտային մասը գրաւեցին։ Զուր Լևոն Զ արևմտեան քրիստոնեաների գթութեանը դիմեց, նորա աղաչանքները անլսելի եղան։ Հայերը իրանց երկրի աւերումը տեսնելով, մասամբ բերդերն ու լեռներն ապաւինեցան, մասամբ էլ թողին հեռացան Կիլիկիայից։ Լևոն յուսահատուած՝ իւր գերդաստանի և մի քանի իշխանների հետ փախաւ ամրացաւ Կապանի բերդի մէջ։ Այլազգիներն ընկան նոցա ետևից և եկան Կապանը պաշարեցին, մինչդեռ բանակի միւս մասը տիրում էր Սիս, Ադանա, Մամեստիա, Անարզաբա և ուրիշ քաղաքների, որ նոքա կործանեցին ու թալանեցին՝ առանց

*վանքերին ու եկեղեցիներին անգամ խնայելու։ Այս աւերումներով չբաւականանալով, Ահմեդի զինուորները թագաւորների ու իշխանների գերեզմանները փորեցին և նոցա ոսկորները այրեցին։ Բռնուած գերիները խումբ խումբ բաժանուեցան և դառն տանջանքների ենթարկուեցան, որպէս զի ստիպուէին քրիստոնէական հաւատն ուրանալ. անմեղ գիւղացիք ողջ ողջ մորթեզերծ եղան, քահանաների ու կրօնաւորների աչքերը ջեռուցած երկաթներով հանուեցան, ազնուականների լեզուն ու մատները կտրուեցան, երեխաները գերի տարուեցան ու վաճառուեցան։*

*Մինչ այս անցքերը կատարվում էին, Լեւոն փակուած էր Կապանի բերդում, ուր սովը շուտով զգալի եղաւ։ Բերդականները բոլոր պաշարը սպառելուց յետոյ, սկսան ամեն տեսակ անսուրբ կենդանիներ ուտել։ Վերջապէս պաշարման իններորդ ամիսը Լեւոն անձնատուր եղաւ, նախապէս խօսք առնելով Եգիպտացոց զօրապետից որ խնայէ իրան և իւր գերդաստանին. Թագաւորի հետ էին Մարիամ թագուհին, Բիննա դուստրը և Ջահան փեսան* (1375)։ *Սակայն Ահմէդ իւր երդման հակառակ Լեւոնին չղթայեց և բերդի մէջ եղած թագաւորական գանձերը յափշտակեց։ Լեւոն և իւր գերդաստանը տարուեցան նախ Երուսաղէմ և այնտեղից Քահիրէ, ուր ներկայացան սուլթանին։ Երբ տեսաւ նոցա, Մէլիք Աշրաֆ գոչեց զայրացած. «Ինչու չհնազանդեցաք ինձ և գթութեան չապաւինեցաք». և անմիջապէս հրամայեց բանտարկել նոցա։ Պալատականներից ոմանք թագաւորական գերդաստանի դժբաղդութեան վրայ խղճալով, միջնորդեցին որ իրաւունք տրուի նոցա մի պարսպապատ քաղաքում*

ապրելու։ Սուլթանն ասաց. «Թող հրաժարուին իրանց հաւատից և ձեր խնդիրքը կը կատարեմ»։ Թագաւորը և թագուհին մերժեցին, լաւ համարելով բանտի կապանքների մէջ մնալ քան քրիստոնէական հաւատն ուրանալ։ Նոքա այս վիճակի մէջ մի քանի տարի անցկացրին Գահիրէի բանտում, երբ սուլթանը իւր մերձաւորների աղաչանքներին զիջանելով՝ պատուիրեց որ Մարիամ թագուհուն և արքայադստերը ազատութիւն տրուի երթալու ուր որ կամենան. բայց նոքա չուզեցին Լեւոնից բաժանուիլ, սուլթանն էլ անդրդուելի մնաց իւր առաջին որոշման վրայ։

Այնուհետև Լեւոնին մի յոյս էր մնում գերութիւնից ազատուելու, այն է արևմտեան քրիստոնեաների միջամտութիւնը։ Նամակներ գրեց պապին և Ֆրանսիայի ու Սպանիայի թագաւորներին և ուղարկեց Եւրոպա իւր փեսայի ձեռքով, որ յաջողել էր բանտից ազատուիլ։ Ջահան իշխանը պապից և Ֆրանսիայի թագաւորից օգնութիւն չգտնելով՝ անցաւ Սպանիա, ուր Կաստիլիայի Յովհաննէս թագաւորը մեծ համակրութեամբ ընդունեց նորան։ Այդ միջոցում Մէլիք Աշրաֆը մեռած և նորա տեղ անցած էր եղբայրը Ահմէդ։ Յովհաննէս թագաւորը մի պատուաւոր դեսպանութիւն ուղարկեց նոր սուլթանին, խնդրելով որ բանտից ազատէ Հայոց թագաւորին և նորա գերդաստանին։ Նորա օրինակին հետևեցաւ և Արագոնի Պետրոս Դ թագաւորը, և Ահմէդ հաւանեցաւ ազատութիւն շնորհել Լեւոնին (1382)։

Լեւոն գնաց նախ Երուսաղէմ, ուր թագուհին և իւր աղջիկը Ս. Յակոբայ Հայոց վանքը մտան, իսկ ինքը Կիպրոսի վրայով նաւեց նախ Հռոմ, որպէս զի Ուրբա-

նոս Զ պապին յորդորէ մի Խաչակրութիւն հանել Եւրոպայից, որով յոյս ունէր իւր կորցրած թագը վերստին ձեռք բերելու. Հռոմից Լեւոն գնաց Սպանիա շնորհակալ լինելու իւր բարերարներին և մասնաւորապէս Յովհաննէս թագաւորին, որ տարեկան թոշակի հետ շնորհեց նորան ցմահ Մադրիդ, Վիլլարէալ և Անդուջար քաղաքների իշխանութիւնը (1383)։ Երեք տարու չափ Սպանիա մնալուց յետոյ, Լեւոն անցաւ Ֆրանսիա, որ Կարլոս Զ արքայավայել ընդունելութիւն արաւ նորան, 5,000 ֆրանկ տարեկան թոշակ կապեց և Սէն-Դնիի Ս. Անտոնի պալատը ամեն կահ կարասիքով նորան պարգեւեց։ Այդ ժամանակները Ֆրանսիան և Անգլիան անդադար պատերազմների մէջ էին։ Լեւոն մտածեց այս երկու տէրութիւնները միմեանց հետ հաշտեցնել, յուսալով որ նոցա օգնութեամբ կը յաջողի Եգիպտացոց քշել Կիլիկիայից և Հայոց թագաւորութիւնը վերականգնել։ Այս նպատակով և նախապէս Կարլոս Զ-ի հաճութիւնն առնելով՝ Լեւոն մի քանի անգամ ճանապարհորդեց Անգլիա (1383—1386), և իւր աստիճանին արժանաւոր պատուով ընդունուեցաւ անգլիական ազգից և Րիչարդ Բ թագաւորից։ Խորհրդարանը Հայոց թագաւորի միջնորդութիւնը յարգելով, դեսպաններ ուղարկեց Բուլօնի քաղաքը Ֆրանսիայի ներկայացուցիչների հետ հաշտութեան պայմանների վրայ խօսելու համար. բայց բանակցութիւնները յաջող ելք չունեցան և երկու կողմերը, կարճատեւ զինադադարից յետոյ, պատերազմը դարձեալ նորոգեցին։

Լեւոն այնուհետեւ իւր թագաւորութիւնը ձեռք բերելու յոյսը կտրելով, քաշուեցաւ Փարիզի Կեղեստինեաց

վանքը և իւր կեանքի մնացած տարիները կրօնաւորական կերպով անցկացրեց. Նա մեռաւ վաթսուն տարեկան հասակում և փառաւոր յուղարկաւորութեամբ թաղուեցաւ նոյն վանքի աւագ խորանի աջակողմեան պատում շինուած մարմարեայ գերեզմանի մէջ։ Առաջին յեղափոխութեան ժամանակ նորա ոսկորները տեղափոխուեցան Սէն-Դնիի թագաւորական դերեզմանոցը, ուր մինչև այսօր կարելի է տեսնել Հայոց վերջին թագաւորի տապանաքարը, որի վրայ Լևոն ներկայացրած է պառկած՝ իւր բոլոր արքայական նշաններով, վրան ծիրանի հագած, գլխին թագ, ձեռքին գայիսոն, իսկ ոտքերի տակ երկու առիւծ. շուրջն էլ այսպիսի արձանագրութիւն կայ ֆրանսերէն լեզուով. «Այստեղ հանգստանում է գերազնիւ և փառաւոր Լևոն Լուսինեան իշխանը, Հայոց թագաւորութեան հինգերորդ լատին թագաւորը, որ հոգին աւանդեց Աստուծոյ Փարիզում նոյեմբերի 29-ին փրկչական 1393 թուականին։ Աղօթեցէք նորա համար»։ Մեռնելուց առաջ Լևոն Անգլիայի Րիչարդ թագաւորին կտակակատար էր նշանակել և իւր հարստութիւնը տնօրինել էր չորս մաս բաժանել ու յանձնել՝ մէկը իւր անհարազատ որդուն *), միւսը աղքատներին և կրօնական հաստատութիւններին, երրորդը իւր տան վերակացուին և չորրորդ մասը իւր ծառաներին։ Իսկ Մարիամ թագուհին և իւր աղջիկը սրբակեաց կեանքով ապրեցան Երուսաղէմում և թաղուեցան Ս. Յակոբայ վանքի գաւթում։ Մարիամ մեռաւ 1405-ին։

---

*) Լևոնի այս որդին, որի անունն էր Գիւեօ (Guyot), կրօնաւոր դարձաւ և եղաւ նախ Բրի քաղաքի աւագ սարկաւագ, և ապա Սօասոնի կանոնիկոս։

Լևոնի մահից յետոյ Կիպրոսի թագաւորները մի դարու չափ Հայաստանի թագաւորի անունը կրեցին (1393—1489), բայց այս տիտղոսը լոկ անուանական էր։ ԺԵ դարում այս տոհմի վերջին շառաւիղը Հայաստանի թագաւորութեան պատուանունը Վենետիկի հասարակութեան թողեց։ Ապա Լուսինեան տոհմից մի իշխանուհի Սավօյեան տան մի դքսի հետ ամուսնանալով, Պիեմոնտի թագաւորները իրանց տիտղոսների վրայ աւելացրին նաև Հայաստանի թագաւորի անունը։ Իսկ Կիլիկիան ԺԵ դարու վերջերում նուաճուեցաւ նախ Կարամանլը Իբրահիմ-Բէյի ձեռքով, ապա անցաւ Օսմանցոց ձեռքը և նոցա ընդարձակ տէրութեան նահանգներից մէկը դարձաւ։

---

## Գ. ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԻ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ԵՒ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ՕՐՈՎ

### 68.

*Ռուբինեան թագաւորութեան աւատական կազմակերպութիւնը.—Պալատական և պետական պաշտօններ.—Դատարաններ.—Հարկեր.—Ժառանգութեան և նուաբեկութեան վերաբերեալ օրէնսդրութիւն.—Վաճառականութիւն.—Մաքսատներ և մաքսեր։*

Ռուբինեանց ժամանակ եւրոպական ազդեցութիւնը սկսում է զօրանալ Հայոց քաղաքական և մտաւոր կեանքի վրայ։ Այս ազդեցութիւնը գրականութեան վրայ ծանրանալուց առաջ՝ Հայոց արքունիքը քաղաքականապէս ենթարկուեցաւ նորա զօրութեանը, սեպհականելով այն

կարգերն ու սովորութիւնները, որ տիրապետում էին Ասորւոց երկրի լատին իշխանութիւնների մէջ։ Սակայն Լևոն Բ, որ այս կարգերը իւր տէրութեան մէջ մտցնող ու հաստատողն եղաւ, փոյթ տարաւ միանգամայն Արշակունեաց թագաւորութեան մի քանի սովորութիւնները նորոգելու, որոնց յիշատակը ազգի մէջ տակաւին կենդանի էր մնացել։

Լևոն Բ-ի օրէնսդրութեամբ Կիլիկիայի Հայոց տէրութեան գլուխը կանգնած էր թագաւորը, որ ոչ ոքից կախում չունէր՝ բայց միայն Աստծուց. որովհետև՝ ինչպէս որ՝ դրամների արձանագրութիւնները և հրովարտակների վերտառութիւնները վկայում են, Հայոց թագաւորը «Աստուծոյ կարողութեամբ» ճանաչվում էր այն երկրի տէրը, որ իւր նախնիքը զէնքով նուաճել էին։ Թագաւորից կախում ունէին երկրի բոլոր բնակիչները՝ ազնուականներից սկսած մինչև հասարակ ժողովուրդը. և նախ իշխանական տոհմերը, որոնք Ռուբինեանի իշխանապետների հետ միաժամանակ, ոմանք նաև նոցանից առաջ, զանազան կալուածների ու բերդերի տէր էին դարձել Կիլիկիայում։ Լևոն Բ ճանաչելով հանդէպ սոցա իրաւունքները, արքայական բարձր իշխանութեանը ենթարկեց նոցա անշարժ կալուածները, ճիշտ այն յարաբերութիւնները սահմանելով որ կային Եւրոպայում թագաւորութեան և կալուածատիրական (féodal) ազնուականութեան մէջ։ Իւրաքանչիւր իշխան, որ այլևս ոչ թէ նախարար՝ այլ արևմտեան սովորութեամբ «պարոն» էր կոչվում, պարտաւոր էր ճանաչել թագաւորի գերիշխանութիւնը (suzeraineté) և իբրև աւատառու feudataire) իրաւունք ունէր միայն ժառանգութեան կարգով փո-

խանցել իւր անշարժ կալքը, որ իսկապէս արքունի կալուած (fief) էր համարվում։ Եթէ պարոնը անժառանգ մեռնէր կամ մերժէր թագաւորին ծառայելու, նորա երկիրը արքունիք էր գրաւվում, և թագաւորը տալիս էր նորան մի ուրիշ պարոնի, կամ մի վանքի, և կամ արևմտեան զինուորական կարգերից մէկին, այն է՝ Հիւրընկալներին, Տաճարականներին և Տևտոնեանց, որոնք Խաչակրաց արշաւանքների ժամանակ հաստատուել էին Կիլիկիայում։ Լևոն Բ-ի թագաւորութեան հանդիսին ներկայ եղող քառասուն երեք աւատատու և բերդատէր պարոնների թվում Հայոց հետ կային շատ Ֆրանսիայի և սակաւաւոր գերմանացի և յոյն պարոններ։

Այս առաջին կարգի ազնուականներից յետոյ գալիս էին ստորին աստիճանի պարոններն ու ասպետները (ձիաւոր, chevalier), որոնք առաջինների միջնորդութեամբ թագաւորից կախումն ունէին. և վերջապէս ժողովուրդը, այն է՝ քաղաքացիք (բուրճէս, (bourgeois) և գիւղացիք, որոնց մի մասը բաղկանում էր երկրի բնակիչներից՝ յոյներից, ասորիներից և մահմէտականներից։ Գիւղացիքը թագաւորի կամ պարոնների հպատակներն էին. նոքա հողի հետ կապուած էին և նորա հետ միասին մէկի ձեռքից միւսի ձեռքն էին անցնում։

Ազնուականների դասին յատկացած էին բոլոր արքունի և պետական պաշտօնները, որոնց անունները ընդհանրապէս արևմտեան տէրութիւններից, մասամբ էլ Բիւզանդիայի կուսակցութիւնից փոխ առած էին. քիչ պաշտօններ և մանաւանդ տիտղոսներ կան Արշակունեաց թագաւորութիւնից մնացած, որ Ռուբինեանց օրով նորոգուած լինէին։ Այսպէս է նաև թագադրութեան

պաշտօնը, որ Հեթում Ա-ի ժամանակ վերահաստատուեցաւ. Լամբրոնի Կոստանդին իշխանը առաջին եղաւ որ «Թագադիր Հայոց» անունը կրեց։ Դարձեալ Արշակունեաց ժամանակ Հայոց նախարարների մէջ մէկը կար նախապատիւ միւսներից, որի ազդեցութիւնը հաւանականաբար մեծ էր տէրութեան կառավարութեան վրայ, և որ «երկրորդ արքայի» էր կոչվում. Ռուբինեանց օրով նոյն ազդեցութիւնն ունեցող իշխանը «աւագ պարոն» էր կոչվում։ Գլխաւոր պաշտօններից մէկն էլ զօրքի ընդհանուր հրամանատարութիւնն էր, և այս պաշտօնի տէր անձը եւրոպական բառով կոչվում էր «գունդստաբլ» )connétable), որ յիշեցնում է հին «շահախոռապետ» բառը։ Գունդստաբլի իշխանութեան տակ և իբրև նորա երկրորդը համարվում էր «մարաջախտը» (maréchal)։ Դարձեալ արքունի սենեկապետը կոչվում էր ֆրանսական անուամբ «ջամպլայն» (chambellan) և արքունի ատենադպիրը—«ջանցլեր» (chancelier). սորա իրաւասութեան տակ գտնվում էին մասնաւոր քարտուղարները, թարգմանները և գրագիրները, որոնք արքունի հրովարտակները և ատենական գրուածները լատիներէն և ֆրանսերէն թարգմանում ու գրում էին։ Նոյնպէս արքունի գանձերի հոգաբարձուն յունական կոչմամբ ասվում էր «պրոկսիմոս», և արդարութեան գլխաւոր պաշտօնեան—«սինիջալ» (sénéchal)։

Լևոն Բ-ի հիմնած հաստատութիւնների մէջ նշանաւոր տեղ են բռնում արդարութեան ատեանները կամ դատարանները, որոնք մի քանի կարգերի էին բաժանվում։ Ամենաբարձր դատարանը արքունի ատեանն էր, որին նախագահում էր ինքը թագաւորը, կամ նորա բա-

ցակայության ժամանակ բարձրաստիճան պարոններից մեկը։ Այստեղ դատվում էին քրեական գործերը, պարոնների վէճերը աւատական իրաւունքների վերաբերութեամբ, և ընդհանրապէս բոլոր ծանր խնդիրները, որոնց վճիռը ստորին դատարանների իրաւասութիւնից բարձր էր։ Արքունի ատեանից յետոյ գալիս էր Սսի արքեպիսկոպոսի ատեանը, որ դատում էր աւելի թեթև յանցանքները, մանր գողութիւնները, ազգայինների մէջ ծագած տարաձայնութիւնները, և վերջապէս հայ և օտարազգի բնակիչների մէջ եղած քաղաքային գործերը։ Այս վերջին տեսակ դատերը տեսնվում էին նոյնպէս աւելի փոքր դատարաններում, եթէ Սսի ատեանը տարուելու չափ կարևորութիւն չունէին։ Բացի սորանից աւատատու պարոնները և ասպետական կարգերը իրաւունք ունէին իրանց կալուածներում բնակող ժողովրդների դատաստանը տեսնելու։ Օտարազգի հիւպատոսները ունէին նոյնպէս դատարաններ իրանց ազգայինների մասնաւոր գործերը կարգի դնելու և նոցա վէճերը հաշտեցնելու համար. բայց սոքա աւատատու պարոնների և ասպետական կարգերի չափ ընդարձակ արտօնութիւններ չունէին։

Կիլիկիայում, ինչպէս և ընդհանրապէս միջնադարեան Եւրոպայում, հասարակաց հարկեր չկային, այլ միայն մասնաւոր տուրքեր, որ այլևայլ դասի անձինք տեղական պայմանների համեմատ վճարում էին թագաւորին և աւատական իշխաններին։ Բացի տասանորդից, որ ծանրանում էր գիւղացոց վրայ և վճարվում էր երկրի բերքերով ու կենդանիներով, և գլխահարկից, որ մահմէտական հպատակները հատուցանում էին արքունի գան-

ձորանին, մնացած տուրքերը մեծ մասամբ առևտրական դասին էին վերաբերում։ Այսպէս, խանութպանները մի որոշեալ տուրք էին տալիս վաճառանոցներում և տօնավաճառներում կրպակ պահելու համար։ Նոյնպէս ամենայն առևտրական նաւ, որ գետաբերաններում և նաւահանգստներում խարիսխ էր ձգում, հարկ էր վճարում։ Սորանից տարբեր էր այն հարկը որ հատուցանում էր թագաւորին կամ կալուածատէր իշխաններին իրանց երկրներով անցկացրած ապրանքների համար. կրճերով ու գետերով տարուած ապրանքների համար աւելի էր վճարվում։ Առանձին տեսակ հարկ էր գողացուած իրեղէնների խուզարկութեան համար նշանակուած տուրքը, որոնք եթէ գտնուէին՝ նոցա արժէքի երրորդ մասը արքունի գանձարանին էր գնում։

Ռուբինեանց օրէնսդրութեամբ՝ թագաւորը ժառանգում էր այն բոլոր օտարականների ստացուածքը, որոնք իւր տէրութեան սահմաններումն էին մեռնում։ Սակայն Լևոն Բ հրաժարուեցաւ այս իրաւունքից Վենետիկեցոց և Ջենովացոց վերաբերմամբ, որոնց կտակով կամ անկտակ (անտիաթիկ) թողած ստացուածքը իրանց օրինաւոր ժառանգներին էր անցնում. իսկ եթէ ժառանգները չէրևէին, Սսի արքեպիսկոպոսը, որ արդարութեան երկրորդ ատեանի նախագահն էր, մեռնողի կայքը պահում էր մինչև որ երկու հասարակապետութիւններից մէկը կամ միւսը պահանջէր իւր հպատակի ժառանգութիւնը։ Մի ուրիշ իրաւունք, որից Հայոց թագաւորները հրաժարուեցան միայն յօգուտ վերոյիշեալ հասարակապետութիւնների, Կիլիկիայի ծովեզերքում խորտակուող նաւերի համար սահմանուած օրէնքն էր։ Այս օրէնքէ

զօրութեամբ ամենայն նաւ որ ալէկոծութիւնից խորտակվում էր, նորա բեկորները միջի ապրանքներովը այն անձանց սեփականութիւնն էին դառնում, որոնց կալուածների վրայ ծովի ալիքները դուրս էին բերում նոցա. Նոյնպէս նաւաբեկութիւնից ազատուած մարդիկ տեղական պարոնի իշխանութեանն էին ենթարկվում։

Ռուբինեանց օրով՝ Կիլիկիայի վաճառականութիւնը սերտ կապուած էր արեւմտեան ազգերի վաճառականութեան հետ։ Հայոց թագաւորները մեծամեծ դիւրութիւններ և արտօնութիւններ շնորհեցին Եւրոպայի վաճառաշահ ազգերին և գլխաւորապէս իտալական երկու հասարակապետութիւններին՝ Ջենովայոց և Վենետիկեցոց։ Սոքա ոչ միայն ժամանակաւոր յարաբերութիւնների մէջ էին Կիլիկիայի հետ, այլ հաստատուն բնակութիւն ունէին երկրի գլխաւոր քաղաքներում՝ Սիս, Մամեստիա, Տարսոն և Այաս, և համարեա իբրև անկախ գաղթականութիւններ էին նկատվում, որոնք յիշեալ քաղաքներում ունէին իրանց սեպհական թաղերը, եկեղեցիքը, բաղանիքները, խանութները, հրապարակները, վաճառանոցները և դատարանները։ Իբրև հաստատուն բնակիչներ նոքա իրաւունք ունէին պարապելու այլևայլ բերքերի արտադրութեամբ,—այգեգործութեամբ, բամբակի, ձիթենու ու թթենու մշակութեամբ և այդ մշակութիւնից արտադրած բերքերը վաճառելու երկրի մէջ։ Ջենովացիք առաւելապէս նուիրուած էին այս տեսակ պարապմունքների, որ մեծ օգուտներ էին բերում նոցա. իսկ Վենետիկեցիք պահում էին հիւրանոցներ, փռնատներ, կաշու, կտաւի և երկաթի գործարաններ։ Ջենովացիներից ու Վենետիկեցիներից յետոյ գալիս էին Պիզացիք, Սիկի-

լիացիք, Պրովանսացիք, Կատալոնիացիք, Մարսիլիացիք, Կրետացիք, Կիպրացիք և այլն, որոնք առաւել կամ նուազ առևտրական հաղորդակցութիւններ ունէին Կիլիկիայի հետ։ Արևմտեան վաճառականները բերում էին Կիլիկիա ցորեն, գարի, գինի, ձէթ, մետաքս, կտաւեղէններ, մահուդներ, գոյնզգոյն մետաքսեայ հագուստներ, համեմներ, լեղակ, դեղօրայք, բամբակ, շաքարաւազ, սնդիկ, բուստ, անագ, պղինձ, Թանկագին մետաղներ, սապոն, զէնքեր, հայելիներ, կերոններ, և այլն։ Իսկ Հայոց վաճառականութեան գլխաւոր աղբիւրներն էին եզները, ոչխարները, ջորիները, կաշեղէն, ընդեղէն, իւղային հատիկներ, բամբակ, աղ և այլն, որ Եւրոպացիք արտահանում էին Կիլիկիայից։ Հայերը փայտի առուտուր էլ ունէին, որ կտրում էին Տաւրոսի անտառներից, և մետաղների առուտուր՝ որ հանում էին նոյն լեռան հանքերից։ Բացի սորանից նոքա ծառայում էին իբրև միջնորդ եւրոպական ապրանքները Արևելքի խորերը տարածելու, որ կարաւաններով տանում հասցնում էին մինչև Պարսկաստան և Թաթարստանի ու Հնդկաստանի սահմանները։

Այսպիսի ընդարձակ վաճառականութեան վրայ հըսկելու համար՝ Կիլիկիայի ծովեզրեայ տեղերում և կրճերի ու գետերի անցքերում վաղ ժամանակներից սահմանուած կային մաքսատներ (բաժտուն), որոնց գլխաւոր սենեակները գտնվում էին Տարսոն և Այաս քաղաքներում, և նոցա կառավարութիւնը յանձնուած էր մի պարոնի՝ պռոքսիմոսի հսկողութեան ներքոյ։ Այս մաքսատները մի ապահովութեան միջոց էին տէրութեան համար, որոնցով արգելվում էր արտահանել այն բերքերը, որ միայն

երկրի բնակիչների պիտոյքները կարող էին լցուցանել, և միևնոյն ժամանակ եկամուտի աղբիւր էին թագաւորական գանձարանի համար, ուր գնում էին այն օտար ապրանքներից առնուած մաքսերը՝ որոնք անհրաժեշտ չէին երկրի համար։ Օտարականները ներս բերած և դուրս տարած ապրանքների համար ընդհանրապէս հարիւրին չորս էին վճարում. միայն Ջենովացիք, Վենետիկեցիք և վերջերը նաև Սիկիլիացիք հարիւրին մէկ էին վճարում. կային էլ որ հարիւրին երկու էին հատուցանում։ Բայց այս ընդհանուր մաքսից, եւրոպացի վաճառականները պարտաւոր էին առանձին մաքս վճարել մի կարգի ներս բերած ապրանքների համար, որպիսի էին գինին, ձէթը, կենդանիները, փայտը, երկաթը, մուշտակները, կաշիները, բուրդն ու մահուդը։ Առանձին հարկ էր առնվում նոյնպէս ձողաձև ոսկու ու արծաթի համար, սնդուկներ, հակեր և ճանապարհորդների իրեղէնները զննելու համար, հակերով բերուած մահուդեղէնները չափելու համար, առևտրական միջնորդութեան համար (սամորչէք), և այլն։

---

## 69.

Ակնարկ ԺԲ–ԺԴ դարերի մատենագրութեան վրայ.—Վարդապետական գրուածներ. — Բանաստեղծութիւն. — Պատմագրութիւն։

Քաղաքական կեանքի վերականգնումը Ռուբինեանց ձեռքով և Արևմուտքի հետ յաճախող յարաբերութիւնները բարեգուշակ նշաններ էին մեր գրականութեան համար։ Կարծես հայ հանճարի համար ժամանակն եկել

էր իւր բազմադարեան կապանքներից արձակուելու և աւելի լայն ասպարէզի մէջ մտնելու։ Սակայն կրօնական խնդիրները, որ հայ միտքը շարունակ զբաղեցրել էին անցեալում, շուտով նոր զօրութեամբ արծարծուեցան, և մեր մատենագիրները ստիպուեցան աւելի քան երբէք առաջուան նեղ շրջանի մէջ ամփոփուել։ Վտանգն այս անգամ մեծ էր, որովհետև երկու հզօր կողմերից էր գալիս. Բիւզանդիոնի կայսրները և Հռոմի պապերը քրիստոնէական միութեան պատրուակով՝ սկսան ամեն ջանք ու ճիգ թափել Հայոց Եկեղեցու անկախութիւնը բառնալ և իւրաքանչիւրը իւր իշխանութեանը ենթարկել։ Մեր հայրապետները, նկատելով կրօնական թշնամութիւնից առաջ եկած չարիքները, ազգի ողջամիտ մասի հաւանութեամբ փորձեցին սէր և միութիւն հաստատել Աւետարանի հոգու համաձայն. բայց երբ հակառակորդների գաղտնի դիտաւորութիւնները պարզուեցան, ամենայն նախանձաւորութեամբ պաշտպանեցին Հայոց Եկեղեցու ինքնուրոյնութիւնը, որ նոցա աչքում ազգային ինքնուրոյնութեան համահաւասար նշանակութիւն ունէր։ Սակայն պապականութիւնը յաջողեցաւ վերջապէս երկպառակութեան որոմը սերմանել ազգի մէջ. կրօնական վէճերն ու կռիւները բանն այնտեղ հասցրին, որ համարուն եղբայրներ թշնամութեամբ և ատելութեամբ գինուեցան միմեանց դէմ։ Գրականութիւնն էլ, որքան սկզբում իւր դրօշակը բարձր պահեց, այնքան յետոյ ստորնացաւ և մինչև հայհոյախօսութեան հասաւ պապականութեան մոլեռանդ կուսակիցների կամ Ունիթոռների կողմից։ Նոյնպէս և լեզուն, ԺԲ դարու գեղեցիկ արդիւնքների մէջ վերջին անգամ փայլելուց յետոյ, սկսաւ

տարազ տարազ ընկնիլ։ Ունիթոռները՝ իրանց ոխերիմ ատելութիւնը ազգային կրօնից և ազգից մինչև իսկ լեզուի վրայ տարածելով, հայկական մաքուր բարբառը խանգարեցին ու աղաւաղեցին, և կազմեցին մի անկենդան ու անճաշակ լեզու, որ թէպէտև արտաքին կերպարանքով հայերէն էր, բայց իրօք լատիններէնի վրայ կաղապարուած էր։ Այս ծանր վէրքերին դարման տանելու ձեռնարկութեան միայն այն ժամանակ՝ երբ արդէն հին հայերէնի կողքին սկսում էր ծլիլ նոր հայերէնը, որին շուտով պիտի վիճակուէր հայ մտքի թարգմանը լինել ինչպէս կեանքի՝ այնպէս և գրականութեան մէջ։

Վերոյիշեալ հանգամանքներից պարզ է որ այս շըրջանի մէջ գրականութեան վարդապետական ճիւղը մանաւանդ պիտի ծաղկէր, և այս մասում առաջին տեղը գրաւում է Ներսէս Շնորհալին, Հայ Եկեղեցու և գրականութեան ամենամեծ պարծանքներից մէկը (1102—1172)։ Հայրապետական աթոռը նստելով (1165), Ներսէս մի Ընդհանրական Թուղթ կամ շրջաբերական ուղղեց իւր ցրուեալ հօտին, որի մէջ հաւատի դաւանութիւնը դնելուց յետոյ, հայրական գեղեցիկ խրատներ է աւանդում ամեն աստիճանի ու պայմանի անձանց, եկեղեցականներից ու իշխաններից սկսած մինչև երկրագործներն ու զինուորները։ Ընդհանրականը իւր ընտիր լեզուի և մանաւանդ չքնաղ բովանդակութեանը համար այնպիսի ընդունելութիւն գտած է մեր մէջ, որ Շնորհալու յաջորդներից ոմանք իրանց գահակալութեան առթիւ այս Թուղթը ընդօրինակած և ժողովրդի մէջ ցրուած են։ Ընդհանրականից յետոյ գալիս են այն Թղթերը, որ Շնորհալին Յունաց յուզած միութեան խնդրի պատճա-

ռով գրած է Կիւ. Մանուէլ կայսեր, նորա Ալեքս փեսին և Միքայէլ պատրիարքին (Թուով 5), որոնց մէջ Հայոց Եկեղեցու ուղիղ դաւանութիւնը բացատրում և ծէսերն ու արարողութիւնները պաշտպանում է. և երբ յունական մոլեռանդութիւնը դորանով չէ բաւականանում մի 6-րդ Թուղթ էլ գրում է Առ համօրէն եպիսկոպոսունս և վարդապետս Հայոց աշխարհին, որով հրաւիրում է նոցա գումարուիլ և ժողովով պատասխանել Յունաց առաջարկութիւններին։ Բայց այս շրջաբերականի պատասխանը դեռ չստացած՝ Շնորհալին վախճանեցաւ և գործը առժամանակ կախ մնաց։ Թէ այս միութեան և թէ ուրիշ խնդիրների առթիւ մի քանի ուրիշ Թղթեր էլ ունի գրած Շնորհալին, որք են՝ Առ ժպիրհ ոմն երեք Թուղթ, որոնցով յանդիմանում է մի անծանօթ անձի յանդգնութիւնը, որ նախատալից Թղթեր է գրել Շնորհալուն Յունաց հետ ունեցած յարաբերութիւնների համար։ Գիր շրջաբերական 'ի կողմանս արեելից 'ի Կարս, որով նոյն քաղաքի վախճանեալ եպիսկոպոսի տեղ նոր առաջնորդ է կարգում, և իմաստուն խրատներ է տալիս քաղաքացոց իրանց կենցաղավարութեան համար։ Բան մխիթարութեան առ վտանգեալսն մարմնով, որով մխիթարում է Եդեսիայի այն բնակիչներին, որոնք ուրկութեան ախտով բռնուած՝ անարգվում ու նախատվում էին իրանց համաքաղաքացիներից։ Յաղագս Արևորդեացն դարձի, Սամոսատի եպիսկոպոսին գրած, որով ուսուցանում է թէ ինչպէս պէտք է աշակերտել նորադարձներին, որոնք ազգով հայ էին և հին ժամանակներից հեթանոսութեան մէջ մնալով՝ արևին և բարդի ծառին պաշտօն էին մատուցանում. Շնորհալին իւր բեզմնաւոր գրիչը գործ է

գրել նոյնպէս մի քանի մեկնողական երկասիրութիւններ յօրինելու. այսպէս են՝ Մեկնութիւն Դաւիթ Անյաղթի «Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր» սկզբնաւորութեամբ ճառի, որ իւր խրթին ոճովը շատերին անհասկանալի եղած էր. Մեկնութիւն Կաթուղիկեայց, համառօտ բայց ընտիր գրուած, և Մեկնութիւն Մատթէի, որ հեղինակի մահուան պատճառով անկատար մնաց և յետոյ Յովհ. Երզնկացին աւարտած է։ Առանձին յիշատակութեան արժանի է դարձեալ Հաւատով խոստովանիմ հանրածանօթ աղօթքը, որ 24 տուն ունի՝ օրուան 24 ժամերի համար, և համարեա բոլոր ծանօթ նոր լեզուներով թարգմանուած է։—Շնորհալու ժամանակակիցների մէջ նշանաւոր են իւր երկու ընկերակիցները՝ Իգնատիոս վարդապետ և Սարգիս Շնորհալի։ Իգնատիոս գրեց Ղուկասու Աւետարանի մեկնութիւնը, որ իւր չքնաղ իմաստներով, ամփոփ ոճովն ու ընտիր լեզուովը հայ գրականութեան գեղեցիկ արդիւնքներից մէկն է. իսկ Սարգիս յօրինեց Կաթուղիկեայց եօթն առաքելական թղթերի ընդարձակ մեկնութիւնը, յոյն եկեղեցական հայրերի հետևողութեամբ, որի մէջ պերճախօս և ազդու լեզուով խօսում է մոլութիւնների դէմ, և քաղցր ու մեղմ լեզուով ջատագովում է առաքինութիւնը։

Միութեան խնդիրը դարձեալ շարժեցաւ Շնորհալու եղբօրորդի և յաջորդ Գրիգոր Դ Տղայի օրով, նոյն Մանուէլ կայսեր և Յունաց Միքայէլ պատրիարքի կողմից, որոնց երեք թուղթ հետզհետէ գրեց Գրիգոր Դ, պաշտպանելով Հայոց Եկեղեցու ծէսերն ու արարողութիւնները. և թէպէտ կայսեր ստիպմամբ Հռոմկլայում ժողով գումարուեցաւ (1179), բայց այս ժողովը ոչինչ արդիւնք

չունեցաւ, և զանազան կողմերից ամբաստանութեան թղթեր թափուեցաւ կաթողիկոսի վրայ։ Գրիգոր Տղան այս ամբաստանութիւններին պատասխանելու համար՝ երկու թուղթ գրեց Առ Հաղբատացիս և մասնաւորապէս առ Գր. Տուտէորդի և Առ վարդապետս Հիւսիսոյ, որոնց մէջ իւր դէմ եղած զրպարտութիւնները հերքում է և ազգային Եկեղեցու անկախութեան ախոյեան է կանգնում։ Ընդհանրապէս Շնորհալու ոճին է հետևում Գր. Տղան իւր թղթերի մէջ, բայց ոչ իւր հօրեղբօր ոճի վսեմութիւնն ունի և ոչ նորա ընդհանրացած հեղինակութիւնը։—Նոյն ժամանակի կրօնական խնդիրների մէջ գործունեայ մասնակցութիւն ունեցած է հայկական գրականութեան փայլուն հանճարներից մէկը, Ներսէս Լամբրոնացին (ծն. 1153-ին), որ իւր սքանչելի պերճախօսութեան համար Տարսոնեան փոքր և երկրորդ Պօղոս առաքեալ կոչուեցաւ։ Իւր գրական արդիւնքների մէջ մտադրութեան արժանի է նախ Հռոմկլայի ժողովում խօսած ատենաբանութիւնը, որի մէջ քրիստոնէական եղբայրսիրութեան և միաբանութեան ջատագով է հանդիսանում այնպիսի գերազանց պերճախօսութեամբ, որ օտար բանասէրներից ոմանք հայ հռետորին Դեմոսթենէսի ու Կիկերոնի հետ են համեմատում։ Յունական միութեան խնդիրը դեռ շարունակում էր մտքերը յուզել, և ահա երևան եկան պապական հետամտութիւնները, առաջարկելով նախ մի քանի ծիսական փոփոխութիւններ, որոնց շուտով հետևելու էին դաւանաբանական փոփոխութիւնների պահանջումները (Հոգւոյն Սրբոյ բղխման խնդիր)։ Արևելեան վարդապետները (Ձորագետացիք՝ և Շիրակացիք) կասկածելով որ Կիլիկիայի եպիս-

կոպոսներից ոմանք լատինական առաջարկութիւններն ընդունելու համամիտ են, և Ն. Լամբրոնացուն այս կուսակցութեան պարագլուխ համարելով, ամբաստանեցին նորան Լևոն Բ-ի առաջ։ Լամբրոնացին իւր պաշտպանութեան համար գրեց իւր հռչակաւոր Թուղթն առ Լևոն, որի մէջ ցոյց է տալիս թէ, ինքը իբրև Աւետարանի աշակերտ հաղորդութիւն ունի բոլոր քրիստոնեայ ազգերի հետ, բայց միանգամայն իբրև հայ անդրդուելի մնում է իւր հայրերի դաւանութեան մէջ։ Բացի այս գրուածներից, որոնք սերտ կապակցութիւն ունին ժամանակակից խնդիրների հետ, Լամբրոնացին թողած է նոյնպէս շատ մեկնողական գրուածներ և ճառեր։ Մեկնողականների մէջ նշանաւոր է մանաւանդ Պատարագի իմաստալից մեկնութիւնը, որի մէջ հեղինակի մեծ հմտութեան հետ երևում է և նորա լայն հայեացքը կրօնի վրայ. Թող ուրիշ մեկնութիւնները, որպիսին են Սաղմոսի, Սողոմոնի Առակաց, Ժողովողի և Իմաստութեան գրքերի և 12 փոքր մարգարէների մեկնութիւնները, որոնք Լամբրոնացու երիտասարդութեան տարիների գործեր են։ Իսկ ճառերից ընտիր են մանաւանդ Համբարձման և Հոգեգալստեան վրայ խօսածները, թէև 'ի Փոխումն Կուսին, յԱնառակ որդին և 'ի Տնտեսն ճառերն էլ հեղինակի սրտին ու գրչին անարժան գործեր չեն։

Պապական ազդեցութիւնը ժամանակի ընթացքում զօրանալով, ԺԴ դարում առաջ բերեց Ունիթոռների կամ Միաբանների ընկերութիւնը, որ ազգային եկեղեցու դէմ կոյր ատելութեամբ լցուած՝ սկսաւ ամեն տեսակ աններելի միջոցներ գործ դնել նորա հիմունքը խորտակելու։ Սոցա դէմ խօսքով և գրչով զինուեցան

Յովհաննէս Որոտնեցին և մանաւանդ Որոտնեցու հռչակաւոր աշակերտը՝ Գրիգոր Տաթևացին (1340—1411)։ Տաթևացու գլխաւոր աշխատութիւնները, որոնցով նա հզօր ախոյեան է հանդիսանում Հայոց Եկեղեցու թշնամիների դէմ, են նորա երկհատոր Քարոզգիրքը, որ բովանդակում է 200-ի չափ քարոզներ այլևայլ բարոյական և վարդապետական նիւթերի վրայ, և Գիրք Հարցմանց, նոյնպէս երկու հատորով, որի մէջ հարց ու պատասխանի ձևով խօսում է նախ Հրէից, Մանիքեցոց և ուրիշ աղանդաւորների դէմ, ապա ճառում է արարածների, մարդու կազմութեան, Քրիստոսի մարդեղութեան, աշխարհի վախճանի և հանդերձեալ կեանքի հատուցման վրայ։ Զօրաւոր և խիստ լեզու է բանեցնում Տաթևացին ազգային կրօնի թշնամիների դէմ, և այս խստութիւնը կատարելապէս արդարանում է Ունիթոռների անվայել ընթացքովը, որոնց մոլեռանդութիւնը մինչև այնտեղ էր հասնում՝ որ իրանց կողմը ուսացողներին վերստին մկրտում և ձեռնադրում էին։

Ինչպէս վարդապետական գրականութեան, այնպէս և բանաստեղծականի մէջ այս շրջանի գլուխը կանգնած է Ն. Շնորհալին, վանկական և յանգաւոր տաղաչափութեան հաստատողն ու ծաղկեցնողը, որ նախորդ դարում Գր. Մագիստրոս սեպհականել էր Արաբացիներից։ Եւ թէպէտ Շնորհալու քերթողական երկասիրութիւնները միշտ անկեղծ ոգևորութեան և կենդանի երևակայութեան արդիւնք չեն, յանգերի միակերպ վերջաւորութիւնն էլ երբեմն ձանձրոյթ է պատճառում, բայց այս թերութիւնները փոխարինվում են լեզուի ողորկութեամբ, իմաստների գեղեցկութեամբ և տաղաչափական արուես-

տի կատարելութեամբ։ Երեք ընդարձակ քերթուած թողեց Շնորհալին. 1. Եդեսիոյ ողբը, որի յօրինելու շարժառիթն եղած է յիշեալ քաղաքի կործանումը Զանգի ամիրայի ձեռքով (1144)։ Այս սրտաշարժ քերթուածը դիմառնաբար է շարադրուած. Եդեսիան լեզու է առնում և մի առ մի թվում է իւր անցեալ փառքը և ներկայ թշուառութիւնը։ 2. Յիսուս Որդի, որ Հին և Նոր Կտակարանի համառօտութիւնն է աղօթական ձևով գրուած։ 3. Վիպասանութիւն, որ Հայոց պատմութեան համառօտ բովանդակութիւնն է ութոտնեան չափով և նոյնայանգ ե ա լ վերջաւորութեամբ։ Իսկ Շնորհալու մանր ոտանաւոր գրուածները այնքան շատ են, որ երկար կը լինէր մի առ մի թուել։ Բաւական է յիշել նորա մի քանի շարականները և նուագները, որ մինչև այսօր երգվում են Հայոց Եկեղեցում. այսպէս են՝ Աղուհացից կիրակի օրերի շարականները, Ծաղկազարդի հարցը, Հոգեգալստեան չորս պատկերը, Վարդավառի երկու պատկերը, Հրեշտակապետաց, Վարդանանց և Ղևոնդեանց շարականները, Այսօր անճառը, Նորոգողը, Աստուած անեղը, Նայեաց սիրովը, Առաւօտ լուսոն, Աշխարհ ամենայնը և այլն։ Այս վերջիններից ոմանք այբուբենական կարգով են յօրինուած, ոմանց էլ սկզբնատառերը կազմում են հեղինակի անունը։

Ներսիսեան դարու ուրիշ բանաստեղծներն են՝ Յովհաննէս Սարկաւագ, որ երկասիրած է Պ ա յ ծ ա ռ ա ց ի ր շարականը 'ի պատիւ Ղևոնդեանց և մի ընտիր քերթուած Սարեակ թռչունի վրայ։ Շնորհալու անդրանիկ եղբայրը՝ Գրիգոր Պահլաւունին յօրինեց Աւետեաց (Խորհուրդն անճառ) և Ծաղկազարդի երկրորդման (Մեծահրաշ այս խոր-

հուրդ) շարականները, և մի ընտիր մեղեդի ի պատիւ Լուսաւորչի (Ի յելս արեւու արև)։ Գրիգոր Տղան գրեց մի Ողբ Երուսաղէմի առման վրայ, նոյն չափով որով գրուած է Եդեսիոյ ողբը. բայց Տղայի հետեողութիւնը Շնորհալու քերթուածի աշխոյժն ու խանդը չունի։ Խաչատուր Տարօնացին թողեց բազմաթիւ երգեր ու գանձեր, որոնց մեծ մասի սկզբնատառերը իւր անունն են կազմում. ամենանշանաւորն է Խորհուրդ խորին երգը, որ երգւում է պատարագի ժամանակ.—ԺԳ դարը միայն մի ընտիր բանաստեղծ ունի, Յովհան Երզնկացին, յայտնի իւր եռանդուն տաղերով ու շարականներով, որոնց մէջ նշանաւոր են Ջրօրհնեաց տաղերը (Ցամենայն ժամ օրհնեմք և Այսօր ձայնն հայրական) և Լուսաւորչի երկու շարականները (Լերինք ամենայն և Այսօր զուարճացեալ), Ս. Ներսէսի շարականը (Որ զլոյսն անճառ), և Խոտաճարակաց շարականը (Ցաւուրս վերջին ժամանակի)։ Երզնկացին մեր հին գրականութեան վերջին ընտիր մատենագիրն է համարւում։ Նորա բազմաթիւ երկասիրութիւնների մէջ ամենանշանաւոր և միանգամայն խորհրդաւորն է Քերականութեան մեկնութիւնը. խորհրդաւոր, որովհետև այս գործի մէջ հեղինակը մանրամասն հետազօտութիւններ է անում հին հայերէն լեզուի վրայ, որ արդէն գործածութիւնից ընկած էր և միայն գրքերի միջնորդութեամբ կարելի էր ուսումնասիրել։

Լեզուի անկումը նշմարելի է մանաւանդ Ներկայ շրջանի պատմական գրուածների մէջ, որոնք երբեմն մինչև ռամկաբանութեան են հասնում։ Սոքա ոչ այնքան պատմութիւն են՝ որքան սովորական ժամանակագրութիւններ, հրաշալի դէպքերի և անհաւատալի աւանդու-

թիւնների յիշատակութեամբ համեմուած։ Այս թերութիւններով հանդերձ հայ պատմագրութիւնը մեծ արժէք ունի արեւմտեան Ասիայի ազգերի պատմութեան նկատմամբ. և այս է պատճառը որ եւրոպական գիտնականները այս կարգի գրուածները այլեայլ թարգմանութիւնների ու հետազօտութիւնների նիւթ արած են։

Գանք այժմ յիշատակելու այս պատմիչներին։ Մատթէոս Ուռհայեցին գրեց մի հետաքրքրական ժամանակագրութիւն, որ բովանդակում է գլխաւորապէս իւր ժամանակի անցքերը մինչև 1136 թիւը։ Թէև մայր Հայրենիքից հեռու՝ օտարազգիների մէջ էր ապրում Մատթէոս, բայց և այնպէս նորա սիրտը ջերմ հայրենասիրութեամբ վառուած է. այս զգացումն է որ հաւասար ատելութեամբ զինում է նորան յունական մոլեռանդութեան դէմ, մահմէտական բռնակալների դէմ, որոնք Հայաստանը արիւնով ողողում էին, և նոյն իսկ Փրանկաց դէմ, որոնք Հայոց մի քանի գաւառների վրայ իշխում էին։ Սորա հակառակ մեծ ոգևորութեամբ խօսում է հայրենի յիշատակների վրայ. նա փառաւորում է Տաւրոսի Հայոց քաջութիւնն ու անձնուիրութիւնը, որոնք ամեն տեսակ օգնութիւններ ցոյց տուին Խաչակրաց մահմէտականների դէմ. սրտաշարժ լեզուով խօսում է Բագրատունեաց վերջին թագաւորի վրայ, որ իւր ազգակիցներից մատնուած՝ թագաւորութիւնից զրկուեցաւ և իւր կեանքը օտարութեան ու թշուառութեան մէջ աւարտեց։ Իւր հետաքրքրական տեղեկութիւնների հետ՝ երկու թանկագին յիշատակարաններ էլ է աւանդում մեզ Մատթէոս, այն է Զմշկիկ կայսեր Աշոտ Գ թագաւորին գրած թուղթը և Գագիկ Բ-ի Բիւզանդիոնի մայր եկեղեցու մէջ Կոստան-

դին կայսեր և յոյն կղերի առաջ խօսած ճառը Հայոց Եկեղեցու պաշտպանութեան համար։ Ուռհայեցու շարունակողն եղաւ Գրիգոր երէց, որ գրի առաւ Յովհաննէս Կոմնենոս կայսեր ասպատակութիւնները Ասորիք և Կիլիկիա, Եդեսիայի առումը Զանգիի ձեռքով, Իկոնիայի սուլթանների յարաբերութիւնները Ռուբինեանց հետ, Խաչակրաց պատերազմները Նուրէդդինի դէմ, Վրաց թագաւորների գործերը վերին Հայաստանում, և այլն։ Ինչպէս Մատթէոսի, այնպէս և Գրիգորի ոճը անարուեստ է. երկուսն էլ համարեա իրանց ժամանակի խօսած լեզուովն են գրում։—Մատթէոսի գրեթէ ժամանակակից էր Սամուէլ երէց Անեցին, հեղինակ մի համառօտախօս ժամանակագրութեան, որ սկսվում է առաջին մարդուց և հասնում է մինչև Քրիստոսի 1179 թուականը. բայց իրանից յետոյ զանազան անձինք շարունակած են մինչև ԺԷ դարու վերջը (1696)։ Սամուէլի գլխաւոր աղբիւրներն են հին ժամանակների համար՝ Եւսեբիոս Կեսարացին և Մովսէս Խորենացին։—ԺԳ դարու նշանաւոր մատենագիրներից է Վարդան վարդապետ, Յովհ. Վանական վարդապետի աշակերտը, որ բացի բազմաթիւ կրօնական գրուածներից և շարականներից, թողեց մի Պատմութիւն՝ աշխարհի սկզբնաւորութիւնից մինչև իւր օրերը (1265)։ Այսպիսի ընդարձակ ժամանակի պատմութիւնը մի գրքի մէջ ամփոփելու համար՝ հարկ էր յաճախ լոկ անունների յիշատակութեամբ բաւականանալ, ինչպէս որ արաւ պատմիչը. միայն Արշակունեաց պատմութեան դէպքերը նորանոր պարագաներով լուսաւորում է. իսկ իւր ժամանակի անցքերի նկարագրութիւնը այնպիսի հետաքրքրութիւն են տալիս գրքին, որ թէ հայ և թէ

օտար բանաստեղծների ժողովրդութեանն արժանի եղած է։ Հայաստանի համառօտ Աշխարհագրութիւնն էլ թողած է Վարդան, որ Սէն-Մարտէն հայերէնագէտը թարգմանեց ֆրանսերէն։ — Կիրակոս Գանձակեցին, Վարդանի ընկերակիցը, գրեց մի համառօտ պատմութիւն Ս. Գրիգոր Լուսաւորչից մինչև իւր ժամանակները, ազգային և արտաքին քաղաքական անցքերը միայն երկրորդաբար յիշատակելով։ Բայց երբ մօտենում է իւր ժամանակին, բաւական ընդարձակ կերպով նկարագրում է Թաթարաց ծագումը, բարքն ու սովորութիւնները, նոցա պատերազմները, Հայոց աշխարհում գործած անգթութիւններն ու աւերումները, ժողովրդին ծանր հարկատուութեան տակ դնելը, և այլն։ Գրքի այս հետաքրքրական մասերը թարգմանուած են ֆրանսերէն Բրոսէ և Դիւլորիէ արեւելագէտների ձեռքով։ — Սմբատ Գունդստապլ, Հեթում Ա-ի եղբայրը, թողեց մի համառօտ ժամանակագրութիւն, որի մէջ արձանագրուած է Յունաց և Հայոց երկրներում հանդիպած նշանաւոր դէպքերը։ Մօտ չորս հարիւր տարուան անցքեր է բովանդակում այս գիրքը (951—1331), բայց վերջին վաթսուն տարիների դէպքերը ուրիշի ձեռքով գրուած են։—ԺԳ դարու վերջին և ԺԴ-ի սկզբին ծաղկեցաւ Ստեփանոս Օրբէլեան Սիւնեաց եպիսկոպոսը, որ գրեց Սիւնեաց ցեղի պատմութիւնը իւր ծագումից մինչև նոյն տոհմի իշխանութեան բարձումը, նշանակելով միանգամայն Սիւնեաց աշխարհում հանդիպած քաղաքական և կրօնական դէպքերը։ Օրբելեանի երկասիրութեան Թաթարաց վերաբերեալ հատուածները թարգմանուած են լատիներէն, իսկ ամբողջ պատմութիւնը հրատարակուած է ֆրանսերէն թարգմանութեամբ։—

*ԺԴ դարու պատմիչներն են նոյնպէս Մաղաքիա աբեղայ և Մխիթար Այրիվանեցի։ Մաղաքիան նկարագրում է. Թաթարաց արշաւանքը, Հեթում Ա-ի դաշնակցութիւնը Հուլաղուի հետ, Փնտխտարի Կիլիկիա արշաւելը, Լեւոն արքայորդու գերութիւնը և ազատութիւնը։ Իսկ Մխ. Այրիվանեցին թողեց մի համառօտ ժամանակագրութիւն աշխարհի ստեղծագործութիւնից մինչև իւր օրերը* (1328)։ *Այս աշխատութիւնը պարզապէս անունների և դիպուածների մի շարք է ներկայացնում, որի մէջ ժամանակագրական կարգով դասուած են ազգային և օտար իշխանների ու հայրապետների յաջորդութիւնը։ Գրքի վերջը դրած է հայ պատմագիրների ցուցակը, որի մէջ մի քանի անծանօթ պատմիչների անուններ էլ են յիշատակվում։*

---

# ՎԵՑԵՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԻՑ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ
## (1080—1885)

## Ա. ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱԹԱՐԱՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԻՑ ԱՌԱՋ

## 70.

*Հայաստանի վիճակը քաղաքական կեանքի անկումից յետոյ. Մելիքշահ* (1086—1092). *Հայկական իշխանութեան միացորդները ԺԲ դարում.—Այլազգի իշխանութիւններ.—Անի քաղաքը և Վրաց պատերազմները Թուրքաց և Պարսից հետ Հայաստանի հիւսիսային և արևելեան մասերի համար։*

*Հայաստանը Յունաց ձեռքն ընկնելուց յետոյ ենթարկուեցաւ Պարսկաստանի Սելջուկեանց արշաւանքներին։ Տուղրիլ և Ալփասլան իրանց վայրենի հրոսակների գլուխն անցած՝ տարիներով երկիրը տակնուվրայ արին, բազմամարդ ու շէն քաղաքները կործանեցին և բիւրաւոր մարդիկ սրի ու գերութեան մատնեցին։ Յոյները այս բուռն արշաւանքների դէմ դնելու անկարող լինելով՝ յետ քաշուեցան և հազիւ արևմտեան մի քանի քաղաքները կարողացան իրանց ձեռքը պահել. մինչև որ Մելիքշահ՝ Ալփասլանի որդին ու յաջորդը եկաւ և առանց դժուարութեան բովանդակ երկիրը իւր իշխանութեան տակ առաւ* (1086—1092)։

*Մելիքշահը, իւր նախորդների հակառակ, բարեմիտ ու արդարասէր մարդ լինելով՝ քաղցրութեամբ վարուե-*

ցաւ Հայոց հետ։ Նորա մահից յետոյ նուաճուած այլազգի իշխանները դարձեալ գլուխները բարձրացրին և բոլոր երկիրը, մանաւանդ միջնաշխարհը, իրանց մէջ բաժանելով՝ ժողովրդին կեղեքում էին։ Բայց միևնոյն ժամանակ Հայաստանի սահմանածայրերում մի քանի հայկական իշխանութեան մնացորդներ էլ կային, որոնք իրանց գոյութիւնը շարունակեցին ամբողջ ԺԲ դարում, ոմանք նաև մինչև Թաթարաց ժամանակ, ամեն մեծ ու փոքր իշխանութիւններին վերջ տրուեցաւ։ Այսպիսիք էին՝ 1. Տաւուշի և Մածնաբերդի իշխանութիւնները, որոնք գտնվում էին Գուգարաց և Ուտէացոց սահմանների վրայ, և որոնց պայազատները Զորագետի Բագրատունիներից էին սերվում։ 2. Աղուանից փոքրիկ թագաւորութիւնը՝ յիշեալ Ուտի նահանգի և Արցախի կողմերը, որի թագաւորները ազգով հայ էին. սոցանից ծագեցան Խաչէնի իշխանները, որոնց սերունդները երկար ժամանակ պահեցին իրանց հայրական երկրները։ 3. Սիւնեաց իշխանութիւնը, որ թէև տկարացած ու նուազած էր, բայց նորա պայազատները թագաւոր անուամբ շարունակեցին իշխել Կապանի և մի քանի ուրիշ բերդաւանների վրայ. մինչև որ Թուրքերից նեղուելով՝ ստիպուեցան իրանց երկիրը թողնել և քաշուիլ Խաչէն (1169)։ 4. Վասպուրականի իշխանութեան մնացորդը՝ Վանայ ծովի արևելեան կողմը, որի պայազատները Ամիկ բերդաքաղաքում նստելով՝ Արծրունեաց ցեղը շարունակեցին թագաւոր անուամբ մինչև ԺԵ դարու սկիզբը, երբ Կիլիկիայի թագաւորութիւնն անգամ կործանուած էր։ 5. Վերջապէս Տարօն և Սասուն գաւառների իշխանութիւնը՝ Տուրուբերանի և Աղձնեաց սահմաններում, ուր Մամիկոնեան

նախարարութեան շառաւիղները ապրեցին մինչև ԺԲ դարու վերջերը, երբեմն Յունաց կայսրների խնամակալութեան տակ, երբեմն էլ նոցանից անկախ։

Այսքան հայ իշխանութիւններ կային Հայոց երկրի մէջ ԺԲ դարում. բայց նոցա մէջ կապ ու միութիւն չկար, և չէր էլ կարող լինել, քանի որ միմեանցից հեռու ընկած և այլազգիների իշխանութիւններով անջրպետուած էին։ Այս վերջիններից իւր ընդարձակութեամբ ու զօրութեամբը նշանաւոր էր Վանայ ծովի արևմտեան հիւսիսային կողմը կազմուած տէրութիւնը, որ բովանդակում էր տասներկու քաղաք իրանց շրջականերով, և որի արաբ կամ պարսիկ ամիրան Շահի-Արմէն անունով նստում էր նախ Խլաթ և ապա Մանազկերտ քաղաքում։ Շահի-Արմէնի տէրութիւնից յետոյ գալիս էին Դուինի, Անիի, Կարսի կուսակալութիւնները, ուր մի մի այլազգի ամիրա էր նստում։

Հայաստանի քաղաքների մէջ ամենից աւելի փոփոխական բաղդ ունեցաւ Բագրատունեաց մայրաքաղաքը Անին, որ իւր փարթամութեան ու պայծառութեան շնորհով ամեն մեծ ու փոքր իշխանի ագահութիւնը գրգռում էր։ Յունաց ձեռքն անցնելուց և ապա Ալփասլանի կատաղութեանը մատնուելուց յետոյ, Անին Մանուչէ անունով մի Թուրք ամիրայի կուսակալութիւն եղաւ։ Մելիքշահը ուրիշ այլազգի իշխանների հետ Մանուչէին էլ նուաճեց և վերստին իւր իշխանութեան մէջ հաստատեց։ Նորան յաջորդեց որդին Աբուլ Սուար, որ թոյլ մարդ լինելով չկարողացաւ օտարական ասպատակութիւնների առաջն առնել և միտքը դրեց Անին ծախել Կարսի ամիրային։ Այս որ իմացան Անեցիք, Վրաց Դաւիթ թագա-

ւորի պաշտպանութեանը դիմեցին, որ այդ ժամանակները զօրանալով՝ Վրաստանի սահմանակից Հայաստանը այլազգիներից մաքրել և իրան դիմող Հայոց բնակութեան տեղեր էր տալիս։ Դաւիթ զօրքով եկաւ Անին գրաւեց, մայր եկեղեցին, որ Պարսիկները մզկիթի էին փոխել, Հայոց յանձնեց և Աբուլ-Սուարին հետը առնելով տարաւ իւր երկիրը և բանտարկեց (1124)։

Քիչ յետոյ Դաւիթ մեռաւ և Աբուլ-Սուարի երէց որդին Փատլուն, շրջակայ ամիրաներից օգնութիւն առնելով, եկաւ Անին պաշարեց։ Անեցիք իրանց վրացի քաղաքապետի առաջնորդութեամբ քաջութեամբ պաշտպանուեցան. մինչև իսկ կանայք իրանց ներկայութեամբ խրախուսում էին իրանց ամուսիններին։ Մի քաջասիրտ կին, Այծեամն անունով, պարսպի վրայ կանգնած՝ քարերով հալածում էր թշնամիներին, և նոցա արձակած նետերը վէրքերից հանելով կրկին նոցա գլխին էր թափում։ Պաշարումը երկար տևելով, Փատլուն բանակցութեան մէջ մտաւ Անիի մեծամեծների հետ, խոստանալով որ եթէ անձնատուր լինին՝ քաղաքը խաղաղութեան մէջ կը պահէ. և որովհետև պաշարի պակասութիւն կար, Վրացիք էլ անփոյթ եղան օգնութիւն հասնելու, Անեցիք ընդունեցին իրանց առաջուան իշխողին (1126)։ Այնուհետև Փատլուն ամբողջ Շիրակը իւր իշխանութեան տակ առաւ և քաղաքն ու գաւառը հանգիստ պահեց մինչև իւր մահը (1132)։

Սակայն Վրացիք դարձեալ զօրացան Գէորգի թագաւորի օրով, որ Շիրակի երկիրը արշաւելով՝ Անին առաւ Փատլունի եղբօրորդու Հասանուն Փատլունի ձեռքից։ Մանազկերտի ամիրան, որ բազմաթիւ զօրքով օգ-

նութիւն էր հասել իւր հաւատակցին, չարաչար յաղթուեցաւ և յետ քաշուեցաւ (1161)։ Դուինի առմամբ, ուր Գէորգին շատ մարդ կոտորեց, շատին էլ գերեց, մի մեծ պատերազմ գրգռուեցաւ։ Պարսից թագաւորը անձամբ եկաւ Վրացոց վրայ, չորս տարի շարունակ Շիրակը և վրաց սահմանները ասպատակեց, և Գէորգին ստիպուեցաւ Անին Պարսից թողնել. մինչև որ նոր զօրութիւն հաւաքելով դարձեալ նոցա ձեռքից խլեց և Օրբէլեան իշխանների տեսչութեանը յանձնեց (1174)։ Վրացոց ազդեցութիւնը Հայաստանի վրայ զօրացաւ մանաւանդ Գէորգի դստեր՝ Թամար թագուհու ժամանակ, որի թագաւորութեան սիւներն եղան երկու հայազգի իշխաններ՝ Զաքարիա սպասալար և Իւանէ Աթաբէկ։ Սոցա առաջնորդութեամբ Վրացիք նախ հիւսիսային Հայաստանը այլազգիներից մաքրեցին, և ապա Պարսից դէմ երկար պատերազմներ մղելով՝ արևելեան Հայաստանին էլ տիրեցին, և հայ ժողովրդին անդորրութեան մէջ պահեցին մինչև Թաթարաց արշաւանքների ժամանակ։

---

## Բ. ԹԱԹԱՐԱՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ ԵՒ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

### 71.

*Թաթարաց ծագումը և Չինգիզխանի աշխարհակալութիւնները.—Ջէլալէդդին.—Թաթարաց արշաւանքը Հայաստան Չարմաղանի առաջնորդութեամբ* (1236).—*Անիի և Կարսի առումը* (1239).—*Բաչու և Կարինի առումը.—Հուլաղու, Հայոց կանոնաւոր հարկատուութեան տակ մտնելը* (1254).—*Մողոլների պետութեան քայքայումը* (1340)։

Ասիական լեռնադաշտի վրայ, Սիբիրիայի և Չինաստանի միջև, վաղ ժամանակներից բնակում էին զանազան Թափառական ցեղեր, որոնք ընդհանուր անուամբ Թաթար էին կոչվում։ ԺԳ դարու սկզբում զօրացաւ Մողոլ Թաթարների առաջնորդը, քաջ ու պատերազմասէր Չինգիզխանը, որ բոլոր Թաթար ցեղերը իւր իշխանութեան տակ միացնելով՝ դուրս եկաւ երկրներ նուաճելու։ Անցաւ չինական պարիսպը, նուաճեց լայնատարած «երկնային պետութիւնը» և գահընկէց արաւ իշխող տոհմը։ Շուտով Հնդկաստանն էլ ճանաչեց հզօր աշխարհակալի իշխանութիւնը. Նորա յաղթական ընթացքի առաջն առնել չկարողացաւ մինչև անգամ Խուարէզմի մեծ պետութիւնը, որ տարածվում էր Կասպից ծովից Պարսկաստանի վրայով մինչև Հնդկաստան։ Մահամմէտ շահը իւր Ջէլալէդդին որդով փախաւ. միւս որդիքը սպանուեցան, աղջիկները յաղթողների մէջ բաժանուեցան։ Բուխարան, Սըմըրղանդ, Բահլը և ուրիշ ճոխ ու մարդաշատ քաղաքներ կրակի զոհ դարձան և մողոլական բարբարոսութիւնը ոտնակոխ արաւ բոլոր ազգերն ու Թագաւորութիւնները Ինդոս գետից մինչև Կասպից ծովը։ Աշխարհակալը պատրաստվում էր արդէն Եւրոպա ար-

շաւեղ, երբ մահը յափշտակեց նորան և այս մտադրու-
թիւնը թողեց նորա որդոց ու թոռներին կատարելու։

Չինգիզխանի մահից յետոյ Ջէլալէդդին փորձեց իւր հօր ժառանգութիւնը ձեռք բերելու. բայց չարաչար յաղթուեցաւ և իւր զօրքով Հայաստան փախաւ (1226)։ Ջէլալէդդին իւր պարտութեան վրէժը Հայերից հանեց սոսկալի անգթութիւններ գործելով իւր անցած ճանապարհի վրայ։ Սիւնիքը և Այրարատը ոտնակոխ անելուց յետոյ, Գառնի աւանի մօտ ճակատեցաւ Իւանէ Աթաբէկի դէմ, որ վրացի ու հայ զօրքով գալիս էր նորա ասպատակութիւնների առաջը կտրելու։ Ապա անցաւ Բզնունեաց երկիրը, պաշարեց ու առաւ Խլաթը և այնտեղից դիմեց արեւմտեան կողմը՝ Իկոնիայի սուլթանի երկրները ասպատակելու։ Փոքր-Ասիայի և Ասորոց այլազգի ու լատին իշխանները Կիլիկիայի Հեթում թագաւորի հետ միաբանելով՝ հազիւ կարողացան այս յանդուգն ասպատակաւորի զօրութիւնը խորտակել. Ջէլալէդդին փախաւ ապաւինեցաւ Կորդուաց լեռները, ուր և սպանուեցաւ։

Հազիւ թէ Հայաստանը ազատուեցաւ այս ասպատակութիւնից, որ շուտով մի ուրիշ աւելի մեծ թշուառութեան մատնուեցաւ։ Ուխաթա խանը, Չինգիզխանի յաջորդը, իւր խառնաղանճ զօրքին հրաման ուղարկեց Աղուանից, Վրաց և Հայոց երկրները արշաւելու։ Թաթարները առաջին անգամ ոտք կոխեցին Հայոց երկիրը 1236-ին Չարմաղան զօրավարի առաջնորդութեամբ։ Սարսափելի տեսարան էր ներկայացնում այս մեծագլուխ, անմօրուս, նեղաչուի, տափաքիթ, կարճոտն, սրաձայն բարբարոսների բազմութիւնը, որոնք վազուկ ձիաների վրայ հեծած՝ սրով ճանապարհ էին բաց անում ետև-

ներից սայլերով եկող կանանց ու որդոց համար։ Մարախի բազմութեամբ ծածկեցին նոքա բոլոր երկիրը և անխնայ կոտորեցին ամեն հասակի ու պայմանի մարդիկ. կաթնակեր մանուկները քարերին էին խփում, մատաղահաս աղջիկները յափշտակվում էին, հոգևոր հովիւների արիւնը խառն հոսում էր անմեղ հոտի արեան հետ. ոչ մայրերի արտասուքներին էին ողորմում, և ոչ ծերերի սպիտակ ալիքին խղճում։ Հայոց աշխարհը ծածկուեցաւ դիակներով, ասում է Կիրակոս Գանձակեցի ժամանակակից պատմիչը, ոչ ոք չկար որ թաղէր նոցա. որովհետև կենդանի մնացողները անծանօթ տեղեր թաքչում էին անօրէնների սրից ազատելու համար։

Այս ընդհանուր կոտորածի ու աւարառութեան հետ, որոնց գլխաւոր ասպարէզը հիւսիսային Հայաստանն եղաւ, մի առ մի առնուեցան նոյն կողմերը գտնուած բերդաքաղաքները, ուր հայ իշխանները ամրացել էին իրանց ժողովրդի հետ։ Թաթարները այստեղ էլ նոյն անգթութիւնները գործեցին, և միայն այն քաղաքներին խնայեցին՝ որոնց տէրերը ինքնայօժար հպատակեցան նոցա և տարեկան հարկի հետ խոստացան նոցա թշնամիների դէմ պատերազմել։ Այնուհետև Չարմաղան, որ իւր գլխաւոր զօրութեամբ Գեղամայ ծովի ափը բանակ էր դրել, դիմեց Անիի վրայ, ուր շրջակայ ժողովուրդը իւր անասուններով ու ստացուածքով ապաւինած էր, յուսալով թէ անվնաս կը մնայ նորա պարսպների ետև։ Դեռ չհասած՝ Թաթար զօրապետը դեսպան ուղարկեց Անեցոց և պահանջեց որ անմիջապէս անձնատուր լինեն. բայց ամբոխը ընկաւ դեսպանների վրայ և բոլորին կոտորեց։ Չարմաղան զայրացած՝ եկաւ քաղաքը պաշարեց,

որ գուցէ անվնաս մնար, եթէ մի քանի մեծամեծներ աւելի իրանց անձանց փրկութեան քան ընդհանրութեան օգտի վրայ մտածելով՝ թշնամիների կողմն անցած և քաղաքը նոցա ձեռքը մատնած չլինէին։ Թաթարները մտան Անի, տներն ու եկեղեցիները կողոպտեցին և բնակիչներին իրանց մէջ բաժանելով՝ անողորմաբար կոտորեցին, բացի սակաւաւոր կանանցից ու մանուկներից՝ որոնց գերի տարան։ Կարսի բնակիչները Անեցոց ողորմելի վիճակը տեսնելով, իրանց քաղաքի բանալիները ուղարկեցին Չարմաղանին, կարծելով թէ այսպիսով նորա սիրտը կը շահեն։ Բայց Թաթարները նոյն անգթութիւնները գործեցին և այստեղ. քաղաքը կողոպտեցին ու աւերեցին, բնակիչներին էլ մասամբ կոտորեցին, մասամբ էլ գերի վարեցին (1239)։

Շուտով Չարմաղանը հիւանդացաւ և զօրքին առաջնորդելու անկարող լինելով՝ տեղը եկաւ Բաչու զօրավարը, որի առաջնորդութեամբ Թաթարները իրանց արշաւանքը շարունակելով՝ մտան Կարնոյ գաւառը, քաղաքը յարձակմամբ առին և ամեն բան սրի ու կրակի մատնեցին։ Ղիասէդդին Իկոնիայի սուլթանը եկաւ Բաչուի ձեռքից Կարինն ազատելու, որ նոյն ժամանակ իւր իշխանութեան տակն էր, բայց յաղթուեցաւ ու փախաւ՝ իւր բանակն ու գանձերը թշնամիներին թողնելով։ Թաթարները Հայաստանի այդ կողմերը իրանց իշխանութեան տակ առնելով և ժողովրդի վրայ հարկ դնելով՝ անցան Ծոփաց աշխարհը, ամբողջ Վասպուրականն ու Տուրուբերանը ասպատակեցին ու աւերեցին և ապա մտան Միջագետք, ուր ճոխ ու բազմամարդ քաղաքները նոցա ագահութեան ու անգթութեան զոհ եղան (1242)։

Երբ այս կերպով բովանդակ Հայաստանը նուաճուեցաւ, արիւնհեղութիւնները դադարեցան, կործանուած տեղերը նորոգուեցան և հաստատուն կառավարութեան սկիզբը դրուեցաւ։ Մանգոյ խանի հրամանով նորա եղբայրը Հուլաղու եկաւ և ընդհանուր աշխարհագիր արաւ (1254)։ Այս աշխարհագիրը ամենամեծ խստութեամբ կատարուեցաւ, բոլոր Հայերը տասը տարեկանից վեր՝ հարկի տակ դրուեցան, բացի կանանցից ու հոգևորականներից։ Ով որ հարկերի ծանրութիւնից փախչում էր, բռնվում ու սպանվում էր. իսկ ով որ այնքան չունէր որ նշանակած հարկը վճարէր, պարտքի տեղ նորա որդոյն էին առնում։ Հարկն առնվում էր փողով և մանաւանդ բերքերով. իւրաքանչիւր հայ մարդ պարտաւոր էր հատուցանել մէկ սպիտած (դրամ), 100 լիտր ցորեն, 50 լիտր գինի, 2 լիտր բրինձ, երեք տոպրակ, երկու պարան, մի նետ, մի պայտ, նոյնպէս և քսան անասունից մի անասուն և 20 սպիտակ. Թող ուրիշ կաշառներ և անիրաւութեամբ խլուած կենդանիները, մանաւանդ ձիաները, որ Թաթարաց մէջ շատ յարգի էին։ Բացի սորանից, երկրի ծովակներն ու լճերը, երկաթահանքերն ու աղահանքերը իշխողների ձեռքին էին և ինչպէս պատմագիրն ասում է՝ ապրուստի բոլոր դռները ժողովրդի առաջ փակուած էին։

Թաթարաց այս միահեծան իշխանութիւնը Հայոց աշխարհի վրայ տևեց մինչև ԺԴ դարու կէսերը, երբ Մողոլների պետութիւնը, որի կենտրոնն էր կազմում Կարակորում կոչուած մեծ քաղաքը Բայկալեան լճի վրայ, քայքայուեցաւ և այլևայլ անկախ տէրութիւններ կազմուեցան (1340)։ Այդ միջոցում Հայաստանը համարվում

էր Հուլաղուի յաջորդների իշխանութեան տակ, որոնք Բաղդադումն էին նստում. բայց միևնոյն ժամանակ երկրի զանազան գաւառներում այլևայլ մեծ ու փոքր իշխանութիւններ կազմուեցան՝ մասամբ Բաղդադի խանին հարկատու, մասամբ էլ նորանից անկախ. արևմտեան կողմը բռնեցին Թուրքմէնները, արևելեան կողմը Պարսիկները, իսկ հարաւային կողմը գրաւեցին Քուրդ բէկերը՝ Սասունի գլխաւոր ամիրայի իշխանութեան տակ։ Այս վիճակի մէջ մնաց Հայոց աշխարհը մինչև Լանկթամուր, որի արշաւանքները նոր տառապանքների մէջ ձգեցին հայ ժողովրդին։

---

## 72.

*Լանկթամուր և նորա արշաւանքը Հայաստան* (1387).—*Այլազգի իշխանների ընդդիմութեան հետևանքը. Ղարա-Իւսուֆ.*—*Վանի առումը. սով* (1393).—*Լանկթամուր Բարձր-Հայքում. Սեբաստիայի կոտորածը.*—*Շահրուխի և Իսկէնտէրի պատերազմները* (1421—1437). *Նոր սով* (1431).—*Ջհանշահ և Ջհանգիր. Ուզուն Հասան միահեծան տէր Հայաստանի* (1468)։

Լանկթամուր կամ Թիմուրլէնկ (կաղ Թամուր), Ջօղբէկ Թաթարների ահեղ առաջնորդը, Ջինգիզխանի շառաւիղներից մէկն էր, որի քայքայուած պետութիւնը վերականգնելու միտքը յղացած էր։ Հովուական ամբոխների գլուխն անցնելով՝ այս սոսկալի մարդը դուրս եկաւ Սըմըրղանդ մայրաքաղաքից, որ երթայ նուաճէ այն բոլոր ազգերը որ բնակվում էին Չինաստանից սկսած մինչև Միջերկրական ծովը և Եգիպտոսի սահմաններից մինչև Ռուսաց միջնաշխարհը։ Պարսկաստանը արիւնով ողողե-

ցաւ, Հնդկաստանում մարդիկ անասունների պէս մորթուեցան և նոցա կառափներից բուրգեր կազմուեցան։ Բաղդադը կործանելուց, Դամասկոսը այրելուց և Ասորիքը Մամլուքների ձեռքից խլելուց յետոյ, Լանկթամուր մտաւ Հայաստան (1387)։ Արդէն իւր անգթութիւնների բօթը իրանից առաջ հասած լինելով, երբ իւր արշաւանքի լուրն էլ տարածուեցաւ երկրի մէջ, շատերն իրանց տունուտեղը թողին և ապահովութեան համար սարերն ու ձորերը քաշուեցան։

Սիւնիքն եղաւ առաջին երկիրը որ Լանկթամուրի զօրքերը ողողեցին, և ուր որ կենդանի արարած գտան, անխնայ կոտորեցին, քաղաքներն ու աւանները թալանեցին ու կործանեցին, և այս կերպով առաջ գնալով՝ Այրարատի, Տուրուբերանի ու Վասպուրականի գաւառները ամայի անապատ դարձրին։ Անթիւ անմեղների արիւնը թափուեցաւ, շատերը գերի քշուեցան Սամարղանդ, ուրիշ շատերն էլ իրանց հաւատի մէջ հաստատ մնալուն համար սոսկալի տանջանքներով սպանուեցան։ Հայաստանի այլազգի իշխանները մի առ մի ստիպուեցան խոնարհիլ այս աշխարհասասան բռնաւորի առաջ, ոմանք էլ ընդդիմութիւն ցոյց տալով՝ մեծամեծ արիւնհեղութիւնների պատճառ եղան։ Ամենից աւելի դիմացաւ Սասունի տէր Ղարա-Իւսուֆ քուրդը, որի իշխանութեան տակ էր գտնվում երկրի հարաւային մասը. բայց ի վերջոյ նա էլ ընկճուեցաւ և ստիպուեցաւ Հայաստանից փախչել։ Անտանելի էր ժողովրդի վիճակը այս տագնապալից կռիւների ժամանակ. ով որ Թաթարների սրից ազատվում էր, ստիպուած էր իւր քուրդ իշխողի կամքը կատարելու համար՝ անդադար մէկ տեղից միւսը փո-

խաղըռւփլ։ Ցուսահատութիւնը ոմանց մինչև հերոսութեան էր հասցնում. մի մչեցի կին ասպատակաւորների ձեռքը չընկնելու համար, նոցա աչքերի առաջ սուրը ցցեց իւր եօթնամեայ որդու սիրտը, և ինքը մի ժայռի վրայ բարձրանալով՝ ներքև գլորուեցաւ ու մեռաւ՝ իւր պատիւը, կրօնն ու ազգութիւնը անարատ պահելով։

Մեծ եղան և Վանեցոց կրած աղէտները, որոնց այլազգի իշխանը իւր հպատակութիւնը ուշացնելով՝ Լանկթամուր գնաց և քաղաքը պաշարեց։ Քաղաքացիք նախ քաջութեամբ պաշտպանուեցան, բայց պաշարի պակասութիւն զգալով ստիպուեցան անձնատուր լինել։ Լանկթամուր հրամայեց երիտասարդներին ծերերից բաժանել և գերի վարել, իսկ մնացած բազմութիւնը անխտիր բերդից ցած գլորել տուեց. մեռելների կոյտերը այնքան բարձրացան մինչև որ պարսպներին հաւասարուեցան, այնպէս որ վերջին ընկածները էլ չէին մեռնում։ Նոյն անգթութիւնները գործեց Լանկթամուր Արճէշում և ուրիշ շատ քաղաքներում։ Մօտ հինգ տարի տևեցին այս կոտորածներն ու աւերածները, և երկիրը անմշակ մնալով՝ սարսափելի սով առաջ եկաւ. մարդիկ անսուրբ կենդանիներ ուտելուց յետոյ սկսան միմեանց վրայ ձեռք բարձրացնել, և այրը իւր կնոջ, ծնողն իւր որդուն մորթեց ու կերաւ (1393)։

Սորանից յետոյ Լանկթամուր կրկին անցաւ Ասորեստան, ամբողջ Միջագետքը տակնուվրայ արաւ և ուղիղ դէպի հիւսիս դիմելով՝ մտաւ Բարձր-Հայք, որ մինչև այն ժամանակ նորա ասպատակութիւններից ազատ էր մնացել. բերդաքաղաքներն առաւ ու կործանեց, անպաշտպան քաղաքներն ու աւանները աւերեց, եկեղեցի-

ները հիմնայատակ արաւ, բնակիչներին էլ սրը կոտորեց, որն էլ գերի վարեց։ Այս կերպով բովանդակ Հայաստանը նուաճելուց և իւր իշխանութեան տակ առնելուց յետոյ, աշխարհակալը անցաւ Փոքր-Ասիա, իւր ոյժը Օսմանցոց հետ չափելու համար։ Ճանապարհին մահ ու սարսափ սփռելով՝ գնաց Սեբաստիա բազմահայ քաղաքը պաշարեց, խաբէութեամբ առաւ և անասելի գազանութիւններ գործեց. մեծատուններին կողոպտեց և սաստիկ տանջանքներով սպանեց. կանանց ձիաների պոչերից կապեց և բաց դաշտում արձակեց, անմեղ մանուկներին մի տեղ հաւաքելով իւր ձիաւորներին կոխոտել տուեց. նոյնպէս և 4,000-ի չափ հայ զինուորներ ողջ ողջ թաղեց։ Այնտեղից անցնելով, Անկիւրիայի մօտ ճակատեցաւ սուլթան Բայազիտի դէմ, յաղթեց նորան և մեծ աւարով ու գերիներով դարձաւ Սըմըրղանդ։

Այնուհետև շուտով մեռաւ Լանկթամուր (1405), և նորա լայնածաւալ պետութիւնը կործանուեցաւ նոյն արագութեամբ որով հաստատուել էր։ Բոլոր նուաճած իշխանները գլուխները բարձրացրին և կորցրած երկրները զէնքով ձեռք ձգելու ետևէ եղան։ Ղարա-Իւսուֆ, որ Լանկթամուրի ահից թափառական պտտում էր Ասորոց կողմերը, զօրքով եկաւ Հայաստան և երկրի հարաւային մասին նորից տիրեց (1408)։ Իւսուֆ այնքան զօրացաւ որ Ատրպատականն էլ գրաւեց և իւր երկրներին հետ միացրեց։ Ջահրուխ, Լանկթամուրի որդին, Իւսուֆի յառաջադիմութիւնը տեսնելով՝ մեծ պատրաստութեամբ եկաւ նորա վրայ. բայց նոյն տարին Իւսուֆ մեռաւ և տեղը անցաւ որդին Իսկէնտէր, որ կոչուեցաւ Ջահի-Արմէն։ Սա իւր հօրից քաջ ու պատերազմասէր

շինելով՝ տասն և եօթն տարի յամառութեամբ կռուեցաւ Շահրուխի դէմ, և թէև մի քանի անգամ յաղթուեցաւ, բայց մինչև վերջը անընկճելի մնաց (1421—1437)։ Հայաստանը այս պատերազմների ասպարէզը լինելով՝ երկու կողմի զօրքերից ոտնակոխ եղաւ, բազմաթիւ քաղաքներ ու գիւղեր կողոպտուեցան, շատ մարդիկ սրի կամ գերութեան մատնուեցան, լեռներում ու ձորերում ապաւինողներն էլ սովից կամ ցրտից մեռան։ Այս բոլոր աղէտների վրայ սովն էլ եկաւ և մեծ կոտորած գործեց. մարդիկ ամեն բան ուտելուց յետոյ՝ սկսան միմեանց սպանել և ուտել առանց օտարն ու մերձաւորը որոշելու։ Ճանապարհների վրայ թափթփած դիակների հոտն առնելով, գազանները համարձակեցան գիւղերն ու քաղաքները մտնել և մայրերի գրկից երեխաները յափշտակել (1431)։ Վերջապէս Իսկէնտէրի զօրքը երկարատև պատերազմներից ձանձրացած՝ թողին ու հեռացան իրանց անհանգիստ առաջնորդից. բաժանուեցան նորանից և իւր մերձաւոր ազգականները ու Շահրուխի կողմն անցան, և հարազատ որդին մօր հետ միաբանած՝ սպանեց նորան Երնջակի բերդում քնած ժամանակը։

Իսկէնտէրի տեղ Շահրուխ կարգեց նորա Ջհանշահ եղբօրը, որ Ատրպատականում նստելով իշխում էր Հայաստանի արևելեան և հիւսիսային մեծագոյն մասի վրայ, իւր ձեռքի տակ ունենալով այլևայլ գաւառներում նստող քուրդ բէկերը։ Բայց միևնոյն ժամանակները Միջագետքում զօրացել էր Ջհանգիր Թուրքմէն իշխանը, որ Տիգրանակերտում նստելով՝ գրաւել էր Հայաստանի հարաւային մասը՝ Աղձնիքն ու Տուրուբերանը և կառավարում էր առանձին իշխանների ձեռքով (1400)։ Ջհան-

շահի մահից յետոյ, Ուզուն-Հասան, Ջհանգիրի որդին, զօրանալով՝ Պարսից գահը բարձրացաւ և Հայաստանի միահեծան տէրը դարձաւ (1468)։

---

## Գ. ՕՍՄԱՆՑՈՑ ԵՒ ՊԱՐՍԻՑ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

## 73.

*Օսմանցոց ծագումը և յառաջադիմութիւնը.—Օսմանցոց և Պարսից պատերազմների սկիզբը. սուլթան Մէհէմմէտ Բ և Ուզուն-Հասան (†473).—Շահ-Իսմայէլի և Սէլիմ Ա-ի պատերազմը և Օսմանցոց արևմտեան Հայաստանի տիրելը (1514).—Թահմասպի և Սիւլէյման Ա-ի պատերազմները (1533—1555).—Լալա Մուստաֆա փաշայի արշաւանքը և բովանդակ Հայաստանի Օսմանցոց իշխանութեան տակ մտնելը (1575—1585)։*

Օսմանցոց նախնական հայրենիքն էր Թուրքաստանը՝ Վերին Ասիայում, որի արևմտեան մասում բնակում էին նոքա ուրիշ Թուրք ցեղերի հետ։ Նոցա ցեղապետը համարվում է Գէօք-խան, որի սերունդներից մէկը, Սիւլէյման, Թաթարաց արշաւանքներից ստիպուած թողեց իւր երկիրը և իւր ընտանիքով ու 50,000 զօրքով եկաւ իւր բնակութիւնը հաստատեց Հայաստանի արևմտեան կողմերը, Երզնկայից մինչև Խլաթ։ Ջինգիզխանից յետոյ Սիւլէյման ուզեց վերադառնալ իւր հայրենի երկիրը. բայց Եփրատից անցնելու ժամանակ խեղդուեցաւ և նորա երեք որդին Էրթօղրուլ մի խումբ հաւատարիմ մարդկանց ուղեկցութեամբ դարձաւ եկաւ Բարձր-Հայք, այնտեղից էլ անցաւ արևմտեան կողմը Սելջուկեանց տէրութեան սահ-

մաններըւ Ալայէդդին Իկոնիայի սուլթանը սիրով ընդունեց նորան և բնակութեան տեղեր շնորհեց Բիւթանիայի սահմանների վրայ։ Էրթօղրուլ Սելջուկեան սուլթանին հաւատարմութեամբ ծառայելով՝ քաջութեամբ պատերազմեցաւ նորա թշնամիների դէմ, բայց միևնոյն ժամանակ անփոյթ չեղաւ իւր սեպհական կալուածները ընդարձակելու, և կարճ միջոցում հասաւ մինչև Կուտինա (Քեօթահեա)։ Որդին Օսման աւելի էլ առաջ գնաց և Յունաց հետ պատերազմելով մի քանի ամուր քաղաքներ առաւ նոցանից. և երբ Ալայէդդինի մահուամբ Սելջուկեանց տէրութիւնը մաս մաս եղաւ, Օսման ինքնագլուխ թագաւորեց իւր երկրում։ Իւր աթոռը հաստատեց Եսկիշէհիր քաղաքում, առանձին դինպետ (դատաւոր) կարգեց և սահմանեց որ ուրբաթ օրերի մաղթանքը իւր անունով կատարուի (1300)։ Ահա այսպիսի համեստ ծագում ունեցաւ այն թագաւորութիւնը, որ իւր հիմնադրի անունով Օսմանեան պետութիւն կոչուեցաւ և որին վիճակուած էր շուտով Բիւզանդիայի կայսրութեան տեղը բռնել։ Իւր կեանքի վերջին օրերում Օսմանը տիրեց Բրուսային, որ իւր անմիջական յաջորդների մայրաքաղաքն եղաւ։ Որդին Օրխան հօր աշխարհակալութիւնները շարունակելով՝ առաւ Նիկիան, ապա անցաւ Եւրոպա և գրաւեց Գելլիպօլուն. Մուրատ Ա տիրեց Ադրիանուպօլսին, իսկ Բայազիտ Ա արդէն Կոստանդնուպօլիսը առնելու վրայ էր, երբ յանկարծ ստիպուեցաւ պաշարումը վերցնել ու Լանկթամուրի դէմ գնալ։ Վերջապէս սուլթան Մէհէմմէտ Բ յաջողեցաւ կայսրների մայրաքաղաքն առնել, և իւր աթոռը այնտեղ հաստատեց (1453)։

Օսմանցիք Կոստանդնուպօլսում հաստատուելուց յետոյ սկսան աւելի մեծ վստահութեամբ առաջ տանել իրանց աշխարհակալութիւնները արևելք և արևմուտք։ Ահա այդ ժամանակներից մի մեծ պատերազմ բացուեցաւ Տաճկաց սուլթանների և Պարսից շահերի մէջ, պատերազմ որ երկու ու կէս դարուց աւելի տևեց և աղէտալի հետևանքներ ունեցաւ հայ ազգի համար։ Այս պատերազմների սկզբնապատճառն եղաւ խրոխտ ու անհանգիստ Ուզուն-Հասանը, որ իւր բաղդով հպարտացած՝ միտքը դրեց իւր տէրութեան արևմտեան սահմանները ընդարձակել։ Այս նպատակով նա արշաւեց Փոքր-Ասիա, որ Օսմանցոց ձեռքին էր, Եւդոկիա քաղաքն առաւ ու այրեց, բնակիչներին անգթաբար կոտորեց և իւր ասպատակութիւնները շարունակելով հասաւ մինչև Կիլիկիայի սահմանները։ Սուլթան Մէհէմէտ Բ անձամբ գնաց նորա վրայ և Դերջանի մօտ նորա բանակը խորտակելով՝ փախցրեց նորան և արևմտեան Հայաստանի մի քանի քաղաքները ձեռքիցն առաւ (1473)։

Ուզան-Հասանից յետոյ նորա որդոց ու թոռների մէջ մեծ խռովութիւններ ծագեցան գահակալութեան համար։ Այս շփոթութիւնից օգուտ քաղելով՝ Իսմայէլ Սէֆեան իշխանը Պարսից տէրութեան նահանգները գրաւեց և իւր հակառակորդներին ընկճելով գահը Թաւրիզում (Դավրէժ) հաստատեց (1500)։ Իւր իշխանութեան մէջ հաստատուելուց յետոյ, Շահ Իսմայէլ արշաւեց Օսմանցոց երկիրը, որոնք Պարսից ներքին գժտութիւնների ժամանակ ասպատակել էին նոցա գաւառները՝ Երզնկա և Բաբերդ։ Սուլթան Սէլիմ Ա 140,000 զօրքով եկաւ իւր հակառակորդի վրայ և Չալդըրանի դաշտում (Խոյի

մոտերը) ճակատեցաւ նորա դէմ. Պարսիկները չարաչար յաղթուեցան, Շահ Իսմայէլ վիրաւորուելով հազիւ կարողացաւ փախչել, և Սէլիմ յաղթանակով մտաւ Թաւրիզ։ Այս յաղթութեամբ Հայաստանի արևմտեան և հարաւային մասը Կարինից մինչև Ուրմիայ ծովակը Օսմանցոց իշխանութեան ներքոյ մտաւ (1514)։

Շատ չանցաւ և պատերազմը դարձեալ արծարծուեցաւ երկու կողմի կուսակալների պատճառով, որոնք իրանց օրինաւոր թագաւորներից ապստամբելով թշնամիների կողմն էին անցել։ Սուլթան Սիւլէյման Ա, Սէլիմի յաջորդը, Իբրահիմ փաշա եպարքոսին (մեծ վէզիր) ուղարկեց Պարսից դէմ, որոնց վրայ թագաւորում էր Թահմասպ՝ Իսմայէլի որդին։ Օսմանցիք հետզհետէ առին Հայաստանի հարաւային բերդաքաղաքները՝ Արծկէն, Արճէշն ու Խլաթը, որոնք նախորդ արշաւանքից յետոյ Պարսից ձեռքն էին մնացել (1533)։

Մինչդեռ Թահմասպ յարմար առիթ էր սպասում իւր կորցրած երկրները կրկին ձեռք ձգելու, եղբայրը Էլխաս ապստամբեցաւ նորանից և Օսմանցոց կողմն անցնելով յորդորեց նոցա Պարսից վրայ արշաւելու։ Սուլթան Սիւլէյման Էլխասին բազմաթիւ զօրք տուեց և իրանից առաջ ուղարկեց Պարսից սահմանները. յետոյ ինքն էլ եկաւ Հայաստան և առանց արգելքի հասաւ մինչև Թաւրիզ. այնտեղից գնաց Վանի վրայ, որ կարճատև պաշարումից յետոյ անձնատուր եղաւ։ Այդ միջոցում Թահմասպ ոտնակոխ էր անում Արծկէն, Մուշն ու Խլաթը։ Օսմանցիք հասան շահի ետևից և մեծ կոտորածով յետ մղեցին նորան այնտեղից։ Սակայն երբ Սիւլէյման յետ քաշուեցաւ, Թահմասպ դարձեալ մտաւ Հա-

յաստան և շատ քաղաքներ խլեց նորանից. մի զօրաբաժին էլ ուղարկեց Կարինի կողմերը իւր որդու ձեռքով, որ գարան գործելով՝ Օսմանցոց միացեալ զօրութիւնը խորտակեց և շատ մեծամեծներ գերի բռնեց։ Սիւլէյման ստիպուեցաւ նոր արշաւանք յանձն առնել և Կարինի ու Կարսի վրայով անցնելով մտաւ արևելեան Հայաստանը, որ դեռ Պարսից ձեռքն էր. Երևանի ու Նախիջևանի գաւառները ասպատակեց, և այս երկու քաղաքների նշանաւոր շինութիւնները կործանեց։ Ապա անցաւ Սիւնեաց երկիրը և ուր որ հասաւ՝ այրեց ու քանդեց, այնպէս որ հինգ օրուայ ճանապարհ չորս բոլորը ոչ արտ էր երևում և ոչ անկործան բնակութիւն։ Այս վրէժխնդրութիւնից յետոյ Սիւլէյման յետ դարձաւ, և Ամասիայում հաշտութեան դաշն կնքեց Պարսից հետ, որով Հայաստանից դուրս մի քանի քաղաքներ Օսմանցոց ձեռքը մնացին (1555)։

Շահ Թահմասպ յիսուն տարի թագաւորելուց յետոյ մեռաւ իւր մեծամեծներից թունաւորուելով. նոյնպէս և նորա որդիքն ու թոռները հետզհետէ թոյնով կամ սրով սպանուեցան։ Այս շփոթութիւնների լուրն առնելով, սուլթան Մուրատ Գ յարմար ժամանակ համարեց Պարսից վրայ արշաւելու (1575)։ Օսմանցիք Լալա Մուստաֆա փաշայի զօրավարութեամբ դիմեցին նախ Վրաստանի վրայ, Պարսից կուսակալներին քշեցին և բոլոր երկիրը իրանց իշխանութեան տակ առնելով չորս կուսակալութիւն բաժանեցին։ Ապա Մուստաֆա իւր զօրքը կենտրոնացնելով Կարինում, իւր օգնականներին զանազան կողմեր ուղարկեց Պարսից հետ պատերազմելու, որոնց առաջնորդում էր Համզա արքայորդին իւր քաջա-

սիրտ մօր հետ, որ կառավարութեան սանձը ձեռքն էր առել իւր հիւանդոտ ամուսնու փոխանակ։ Երկու հակառակորդ կողմերը մի քանի տարի փոփոխակի բաղդով կռուեցան միմեանց հետ, մինչև որ վերջապէս Օսմանցիք զօրանալով՝ մէկ կողմից հասան ու առին Բաղդադը, իսկ միւս կողմից Թաւրիզը։ Այս պատերազմների ժամանակ Համզա արքայորդին սպանուեցաւ և նորա տեղ անցաւ եղբայրը Շահաբաս, որ թագաւորեց իւր հօր Խուտաբանդի կենդանութեան ժամանակ։ Նոր թագաւորը ներքին և արտաքին թշնամիներից շրջապատած լինելով՝ ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել Օսմանցիներից։ Այս հաշտութեամբ ամբողջ Հայաստանը, Վրաստանը և Ատրպատականի մի մասը Թաւրիզ մայրաքաղաքով Օսմանցոց իշխանութեան ներքոյ մտան (1585)։

## 74.

**Շահաբասի արշաւանքը Հայաստան (1603).—Ջղալեզադէ Սինան փաշայի Պարսից վրայ գալը և Շահաբասի պատրաստութիւնը արևելեան Հայաստանի բնակիչներին Պարսկաստան գաղթեցնելու.—Հայոց քաշած նեղութիւնները Երասխից անցնելու ժամանակ.—Ջուղայեցոց գաղթականութիւնը (1605).—Հայ գաղթականների բնակութեան տեղերը. Նոր Ջուղա.—Շահաբասի շնորհած արտօնութիւնները գաղթական Հայոց.—Աւերածութիւններ Հայոց երկրում (1606—1608).—Շահաբասի կռիւները Օսմանցոց հետ և արևելեան Հայաստանի Պարսից մնալը (1639).—Խաղաղութեան արդիւնքը.—Հայոց կաթողիկոսութեան վիճակը անիշխանութեան առաջին դարում.—Փիլիպպոս Աղբակեցի և նորա գործերը (1633—1655)։**

Հայաստանը ամբողջապէս Օսմանցոց ձեռքն ընկնելուց յետոյ, նոցա կուսակալները սկսան սաստիկ նեղել ժողովրդին։ Այս հարստահարութիւնից ազատուելու համար՝ շատերը ստիպուեցան իրանց տեղերը թողնել և օտար երկրներ գաղթել։ Հայ մէլիքներից ոմանք տնով տեղով անցան Պարսկաստան և շահի օգնութեանը ապաւինեցան։ Նոյնպէս և ժամանակի կաթողիկոսը Մելքիսեդէկ ընչաքաղց կուսակալների ծանր հարկապահանջութիւնից ձանձրացած՝ Պարսից արքունիքը դիմեց, յուսալով որ այնտեղ իւր նեղութիւններին մի դարման կը գտնէ։ Շահաբաս՝ որ վաղուց արդէն պատրաստւում էր Օսմանցոց վրայ յարձակուելու, սոցա բոլորին սիրով ընդունեց և խաբուսիկ յոյսեր տալով՝ ամեն հարկաւոր տեղեկութիւններն առաւ նոցանից Հայոց երկրի հանգամանքների վրայ։ Վերջապէս երբ մի քանի քուրդ բէկեր էլ Օսմանցոց իշխանութիւնից տժգոհ՝ դիմեցին

Պարսից Թագաւորին և խոստացան օգնել նորան, Շահաբաս յարմար ժամանակ համարեց իւր մտադրութիւնը գործ դնելու։ Նա յարձակեցաւ Ատրպատականի վրայ և Թաւրիզին տիրելուց յետոյ՝ մտաւ Հայաստան, Նախիջևան քաղաքն առաւ և գնաց Երևանի բերդի առաջ բանակ դրեց։ Միևնոյն ժամանակ առանձին գնդեր սփռեց Հայաստանի զանազան կողմերը, որոնք ուր որ հասան՝ թալանեցին ու քանդեցին, և շատ մարդիկ գերեցին, որոնց Շահաբաս ուղարկեց Պարսկաստան (1603—1604)։

Երևանն առնելուց և Ամիրգունա խանին Արարատեան նահանգի վրայ կուսակալ կարգելուց յետոյ, Պարսից Թագաւորը իւր գլխաւոր բանակով առաջ գնաց։ Արդէն Կարսի մօտ էր հասել, որ լուր առաւ թէ Ջղալէզադէ Սինան փաշան մեծ պատրաստութեամբ իւր վրայ է գալիս։ Շահաբաս Օսմանցոց պատերազմով յաղթելու յոյս չունենալով, միտքը դրեց իւր վաղուց յղացած խորհուրդը գլուխ տանել, այն է արևելեան Հայաստանի բնակիչներին իւր երկիրը գաղթեցնել, և այս՝ կրկին նպատակով. Նախ որպէս զի Պարսից սահմանակից երկրները անշէն ու ամայի դարձնելով, Ատրպատականը՝ Պարսկաստանի այս հարուստ ու բարեբեր նահանգը Օսմանցոց ձեռքից ազատէ, և երկրորդ՝ որպէս զի իւր երկրի վաճառականութիւնն ու արուեստները Հայոց ձեռքով ծաղկեցնէ։ Ուստի իւր զօրքը Ազջակալէում (հին Երուանդակերտ) կենտրոնացնելով, Հայոց գլխաւորներին կանչեց և երեսանց ժողովրդի վիճակին ցաւակից ձևանալով՝ միառմի շարեց նոցա առաջ պատերազմի աղէտալի հետևանքները և յորդորեց որ ամենքն էլ իրանց բնա-

նիքն ու ստացուածքը առնեն և մի հեռաւոր տեղ քաշուին մինչև որ պատերազմը վերջանայ, և ապա ամեն մարդ իւր տեղը կը վերադառնայ։ Հայերը Թագաւորի խորամանկութիւնը հասկանալով, Պարսից խաների միջնորդութեանը դիմեցին և այս տեղափոխութեան բոլոր դժուարութիւնները ցոյց տուին։ Բայց Շահաբաս ամենևին խօսք լսել չուզեց, այլ իւր զօրավարներին հրամայեց որ տուած պատուէրները ամենայն ճշտութեամբ ու խստութեամբ կատարուին։ Այս գործի գլուխ կանգնեցաւ Ամիրգունա կուսակալը, որ Հայաստանի այլևայլ գաւառները գնդեր ցրուեց ժողովրդին տեղահան անելու, պատուիրելով որ հակառակողներին անխնայ սպանեն։ Պարսիկները ընկան քաղաքներն ու գիւղերը, բռնութեամբ յափշտակեցին բնակիչներին իրանց տներից և ոչխարների հօտերի պէս քշեցին տարան Արարատեան դաշտը։ Խեղճ ժողովուրդը, որ այս տագնապի ժամանակ հազիւ իւր ստացուածքի մի մասը կարողացել էր հետը առնել, աչքով տեսաւ իւր ետև մնացած բնակութիւնների այրուիլը իրանց կահ կարասիքով ու հացի շտեմարաններով։ Նոյն իսկ ժողովրդի այն մասը՝ որ համանման դժբաղդութիւնների ժամանակ ունեցած սովորութեամբ լեռների վրայ փախած և ամուր այրերի մէջ ապաւինած էին, ազատ չմնացին վայրենի հրոսակների կատաղութիւնից. Պարսիկները տեղ տեղ հասան նոցա ետևից, շատերին սրով կամ ժայռերից ցած գլորելով սպանեցին և մնացածներին տարան ժողովրդի բանակի հետ խառնեցին։

Սինան փաշայի Կարս հասնելու լուրը որ առաւ, Շահաբաս Ագջակալէից հրաման ուղարկեց որ ժողովրդի

բազմութիւնը առաջ քշեն. ինքն էլ աճապարեց յետ քաշուիլ։ Այսպիսով երեք բանակ շատ տագնապով գնում էին միմեանց ետեից. նախ ժողովուրդը, որին անգութ վանիչները սրերով ու բրերով ստիպում էին անդադար առաջ երթալ. յետոյ Պարսից զօրքը իրանց թնդանօթի հետ, և ապա Օսմանցիք, որոնք շտապում էին Պարսից ետեից հասնել և տարագրուող ժողովրդին նոցա ձեռքից խլել։ Օսմանցոց զօրքը արդէն Նախիջևանի մօտերքումն էր գտնվում, որ ժողովուրդը և պարսկական բանակը եկան հասան Երասխի ափը։ Բերուեցան առաջուց պատրաստուած նաւակներ, կազմուեցան լաստեր, բայց այս միջոցները շատ չնչին էին և ժամանակը շատ կարճ այնչափ ահագին բազմութիւն միւս ափը հանելու։ Պարսիկները Օսմանցոց երկիւղից յուսահատութիւնը կատաղութեան փոխեցին, և սկսան ամեն տեսակ սպառնալիքներ թափել ժողովրդի գլխին, որ շտապի միւս կողմն անցնիլ. և որպէս զի ամենի սիրտը ահ ձգեն, ոմանց քիթն ու ականջներն էին կտրում, ոմանց էլ սպանում և գլուխները ձողի վրայ ցցում։ Ժողովուրդը սարսափած թափուեցաւ նաւակների մէջ և զօրքի հետ խառնիխուռն սկսաւ գետն անցնիլ։ Շահաբաս տեսնելով որ գործը այսպիսով երկարանում է և Օսմանցիք կարող են վրայ հասնել, հրամայեց որ բոլոր բազմութիւնը միանգամից գետի բերանը բերուի, որպէս զի լողալով միւս ափն անցնին։ Այն ժամանակ բացուեցաւ մի ողիողորմ տեսարան, որ անկարելի է լեզուով նկարագրել. բարձրացաւ մի ընդհանուր աղաղակ, մի յուսահատական ողբուլաց, որից քարերը կարող էին շարժուել, բայց դաժան վարիչների սրտերը անշարժ մնացին։ Ողորմելի ժողո-

վուրդը անել վիճակի մէջ էր գանվում. ոչ փախչելու հնար կար և ոչ ապաստանելու յոյս, որովհետև ետևից անգութ սուրը, իսկ առաջից սրընթաց ջուրը սպառնում էր խեղճերի կեանքը յափշտակել։ Թօխմաղեցան ընկան գետի յորձանքների մէջ այր և կին մարդիկ, ծերեր ու երեխաներ, որոնք միմեանց մահը աչքով տեսնում էին, և ոչինչ օգնութիւն չէին կարող անել։ Անհամար տղայք ու աղջկունք, տկար ու լողալ չգիտացող մարդիկ գետի ալիքներին զոհ եղան և իրանց դիակներովը Երասխի երեսը ծածկեցին։ Այսպիսով ժողովրդի մեծ մասը կորաւ, մնացածները միւս ափը դուրս եկան, և Օսմանցոց երկիւղից ձորերով ու անանցանելի ճանապարհներով տարուեցան մի ապահով տեղ ձմեռն անցկացնելու։

Նոյն ժամանակ և գրեթէ նոյն եղանակով քշուեցան Պարսկաստան Ջուղայի հարուստ բնակիչները։ Սոքա վերստին իրանց տեղերը դառնալու յոյս ունենալով, ստացուածքների մի մասը գետնի տակ թաղեցին, ապա եկեղեցու և տների բանալիներն առին և արտասուքը աչքերին դուրս եկան քաղաքից, ուր Աստուածածնի եկեղեցու առաջ կանգ առնելով՝ բոլորը միաբերան գոչեցին. «Քեզ ենք յանձնում, ով սուրբ Կոյս, մեր տաճարի ու տների բանալիները, դու դարձնես մեզ օտարութիւնից մեր հայրենի երկիրը»։ Այս ասելով բանալիները գետը ձգեցին և ճանապարհները շարունակեցին։ Նոցա հեռանալուց յետոյ Պարսիկները Ջուղան կրակի տուին ու այրեցին (1605)։

Այս տարագրութեան ժամանակ և Նորանից առաջ ու յետոյ Շահաբասի Պարսկաստան տարած Հայոց թիւը 25,000 տուն են հաշվում. թող ճանապարհին կոտորած-

ները, որոնց թիւը անյայտ է։ Այս բոլոր բազմութիւնը տարուեցաւ Սպահան, ուր քաղաքացիք մայրաքաղաքի մէջ՝ իսկ գիւղացիք շրջակայ գիւղերում տեղաւորուեցան. 500 տուն էլ Շիրազի գաւառում բնակեցան։ Իսկ Ջուղայեցոց ամենքին բնակութեան տեղ տրուեցաւ Սպահանի հարաւային կողմը, ուր նոքա շինեցին Նոր-Ջուղան և կարճ միջոցում արտաքոյ կարգի հարստութեան ու պայծառութեան հասան։

Այսչափ նեղութիւններով բերուած ժողովրդին Պարսկից երկրի հետ կապելու և իւր նպատակներին ծառայեցնելու համար՝ Շահաբաս ամեն տեսակ արտօնութիւններ տուեց Հայոց, մանաւանդ Ջուղայեցոց, որոնց առանձին քաղաքագլուխ և վարչութիւն ունենալու իրաւունքը շնորհեց, կրօնի կատարեալ ազատութիւն տուեց, և շատ անգամ եկեղեցական հանդէսներին անձամբ ներկայ էր լինում։ Նոյնպէս յաճախ Հայոց մեծամեծների տները երթևեկում էր, և հայի ու պարսկի մէջ դատ բացուած ժամանակը միշտ հայի կողմն էր բռնում, մինչև այն աստիճան՝ որ երբեմն Պարսից իշխաններին դայթակղեցնում էր։ Չնայելով այս խորամանկ վարմունքին, Հայերը չէին կարող մոռանալ իրանց հայրենիքը, այլ միշտ կարօտակէզ սրտով յիշում էին իրանց թողած տունուտեղը, իրանց վանքերն ու եկեղեցիները, մանաւանդ Էջմիածնի տաճարը՝ որ ամեն հայ մարդու սրտին մօտիկ է։ Ուստի Շահաբաս միտքը դրեց Էջմիածինը քանդել և քարերը Պարսկաստան բերելով նոյն ձևով մի եկեղեցի շինել ու կաթողիկոսութիւնը այնտեղ փոխադրել. սակայն Ջուղայեցոց խնդիրքին զիջանելով՝ նա գոհ եղաւ միայն Լուսաւորչի Աջը և տաճարի մի քանի քա-

րերը բերել տալով, որոնք երկար ժամանակ պահուե-
ցան Նոր-Ջուղայի մէջ։

Սինան փաշայի անյաջող արշաւանքը և Օսմանցոց զանազան նահանգներում ծագած ապստամբութիւնները ժամանակ տուին Շահաբասին իւր գրաւած երկրներում հաստատուելու։ Այս ապստամբները մեծ մասամբ Թուրք կուսակալներ էին, որոնք իրանց ձեռքի տակ ունեցած զօրքով այլևայլ տեղեր և մանաւանդ Հայաստանի գաւառները ասպատակելով՝ արձակ համարձակ թալանում, աւերում ու կոտորում էին։ Երկու տարի տևեցին այս ասպատակութիւնները, որոնց պատճառով մեծ սով ընկաւ երկրի մէջ, և շատ Հայեր իրանց կեանքը ազատելու համար ստիպուեցան հեռաւոր երկրներ գաղթել (1606—1608)։

Երբ ապստամբները նուաճուեցան և Հայաստանը փոքր ինչ խաղաղացաւ պատերազմը դարձեալ սկսաւ։ Շահաբաս երկու անգամ հաշտութեան դաշն կապեց Օսմանցոց հետ, և երկու անգամ խաղաղութիւնը վրդովելով զէնք առաւ նոցա դէմ, մինչև որ Օսմանցիք զիջան արևելեան Հայաստանը նորան թողնել (1620)։ Սակայն Շահաբաս այնուհետև էլ հանգիստ չմնաց։ Օգուտ քաղելով Ենիչէրիների հանած շարունակ խռովութիւններից, յարձակեցաւ Օսմանցոց երկրների վրայ և մի քանի տեղեր խլեց նոցանից. որով և առիթ տուաւ սուլթան Մուրադ Դ-ին անձամբ Հայաստան արշաւելու։ Կարինից ճանապարհ ընկնելով՝ Մուրադ մտաւ Պարսից Հայաստանը, Երևանն առաւ և հասաւ մինչև Թաւրիզ. բայց որովհետև ձմեռը վրայ էր հասել և Հայոց երկիրը բաւականին պաշար չէր կարող մատակարարել իւր բանակին,

սուլթանը ստիպուեցաւ յետ քաշուել։ Այս բանից քաջալերուած՝ Պարսիկները նորից եկան Երեւանն առին։ Վերջապէս երկու կողմն էլ երկարատեւ պատերազմներից ձանձրացած՝ յօժարեցան միմեանց հետ հաշտուել եւ հաստատուն դաշն կնքել, որով Երասխ եւ Կուր գետերի մէջ եղած երկիրը դարձեալ Պարսից ձեռքը մնաց (1639)։

Այնուհետեւ Հայաստանը ուժսուն եւ աւելի տարի խաղաղութիւն վայելեց եւ ժողովուրդը այս խաղաղութեան տարիներում փորձիշատէ ազատ շունչ քաշելով եւ եղաւ իր վէրքերը բուժելու։ Նոյնպէս բարեկարգուեցաւ եւ Ս. Էջմիածինը, որի արժանաւոր գահակալները սկսան փոյթ տանել քանդուած սրբավայրերը նորոգելու եւ իրանց հօտը հայրաբար խնամելու։

Ռուբինեան թագաւորութեան անկումից յետոյ Հայոց կաթողիկոսները շարունակեցին նստել Սսում մինչեւ ԺԵ դարու կէսը։ Այդ միջոցին Կիլիկիան հեռզհետէ հայ ժողովրդից դատարկանալով եւ կաթողիկոսները անտանելի հարստահարութիւններից նեղուելով՝ Սսի աթոռը յետին աստիճանի անշքութեան էր հասել. կաթողիկոսները շատ անգամ աստանդական թափառում էին եւ միայն ձեռնագրութեան ու մեռոնի օրհնութեան համար էին երեւում կիսաւեր կաթողիկոսարանում. հայրապետների ընտրութիւնը հեռաւորութեան եւ յարաբերութիւնների ընդհատման պատճառով՝ առանց ազգի հաւանութեանն էր լինում, եւ Կիլիկիայի մէջ տեղ տեղ ծիսական փոփոխութիւններ էին մտել։ Այս ցաւալի վիճակը տեսնելով, ազգային եկեղեցու պատուին ու անարատութեանը նախանձախնդիր անձինք մտածեցին հայրապետական գահը վերստին իր բնավայրը՝ Ս. Էջմիածին փոխադրել։

Այս մարով 1441-ին մի մեծ ժողով գումարուեցաւ Վաղարշապատում, որին չկամեցաւ մասնակից լինել Սսի ժամանակի կաթողիկոսը Գրիգոր Մուսաբէգեան. ուստի ժողովականները ընդհանուր հաւանութեամբ կաթողիկոս ընտրեցին Կիրակոս Վիրապեցուն։ Այսպիսով հայ ազգը երեք կաթողիկոսական աթոռ ունեցաւ՝ Էջմիածին, Սիս և Աղթամար, որոնք մինչև այսօր իրանց գոյութիւնը պահպանում են։ Բայց այս բաժանմամբ Եկեղեցու միութիւնը չխախտուեցաւ, այլ ազգը հաւատարիմ մնաց իւր մայրենի Եկեղեցուն, Էջմիածինը ընդհանուր հայրապետական գահ համարելով, իսկ Սիսն ու Աղթամարը մասնաւոր աթոռներ, որոնցից վերջին երկուսը լոկ Հայոց ցրուեալ ու տարբեր քաղաքական վիճակին են պարտական իրանց յարատեւութիւնը։

Սակայն ընդհանուր հայրապետութիւնը Էջմիածին փոխադրելուց յետոյ էլ անկարող եղաւ իւր վայելուչ դիրքը պահել։ Մէկ կողմից այլազգի իշխանների հարստահարութիւնները և միւսից երկարատև պատերազմների աղէտները այն աստիճանի թշուառութեան մէջ են ձգում Ս. Աթոռը, որ նորա գահակալներից ոմանք պարտատէրերի ահից փախչում ու թաքչում են, և ոմանք անգութ իշխողների տառապանքներից տանջվում ու մաշվում են։ Եկեղեցիներն ու վանքերը կողոպտվում, ամայանում ու քայքայվում են. եկեղեցական սպասները ծախվում կամ գրաւ են դրվում Աթոռը պարտքից ազատելու համար։ Կաթողիկոսները մի թեթևութիւն գտնելու յուսով՝ աթոռակիցներ էին ընտրում իրանց, որով միևնոյն ժամանակ երկու և երբեմն երեք կաթողիկոս էին նստում (Դաւիթ, Մելքիսեդէկ և Սրապիոն)։ Այս թշուառ

վիճակը տևեց մինչև Մովսէս Գ կաթողիկոսը (1629—1633), որ մեծ աշխատութեամբ Ս. Աթոռը պարտքից ու տարեկան հարկից ազատեց, և այսպիսով միջոց տուեց իրան յաջորդող Փիլիպպոս Աղբակեցուն (1633—1655) հայրապետական պարտաւորութիւնները կատարելու։ Էջմիածինը և ուրիշ վանքեր նորոգելուց ու բարեկարգելուց յետոյ, Փիլիպպոս Մայր Աթոռում մի ուսումնարան հիմնեց բարեկիրթ եկեղեցականներ պատրաստելու համար։ Այնուհետև ուղևորուեցաւ Երուսաղէմ ուր Սսի կաթողիկոսի և Երուսաղէմի պատրիարքի խորհրդակցութեամբ ժողով կազմեց և Էջմիածնի ու Սսի կաթողիկոսների յարաբերութիւնները որոշեց։ Այնտեղից գնաց Կոստանդնուպոլիս, ուր պատրիարքական իշխանութեան պատճառով ժողովուրդը գժտութեան մէջ էր. այս խռովութիւնները իւր բարձր հեղինակութեամբ հանդարտեցրեց և նոր պատրիարք կարգելով՝ վերադարձաւ իւր աթոռը։ Այսպիսով երկար դարերից յետոյ՝ Փիլիպպոս կաթողիկոսն եղաւ որ առաջին անգամ Էջմիածնի և ցրուեալ հայ ազգի մէջ բարոյական կապ նորոգեց։

---

## 75.

*Պարսկաստանի ներքին խռովութիւնը. Միր-Մահմուդ.—Լեռնականների արշաւանքը Սիւնեաց երկրի վրայ (1721).—Արցախու և Սիւնեաց մելիքները և նոցա անկախութեան ձրգտումները.—Դաւիթ Բէկ Սիւնեցի և նորա առաջին յաղթութիւնները (1722—1724).—Թորոս իշխանի հերոսական մահը.—Մեղրիի կոտորածը (1725).—Օսմանցոց արշաւանքը Պարսից վրայ.—Հալիձորի պաշարումը և Օսմանցոց պարտութիւնը (1726).—Դաւթի մահը (1728).—Սիւնեաց երկրի շարժման վախճանը։*

ԺԸ դարու սկզբներում Պարսկաստանը մեծ խռովութիւնների մէջ ընկաւ։ Աֆղանիստանի էմիրը Միր-Մահմուդ դուրս եկաւ Կանդահարից Հիւսէյին շահի թագաւորութիւնը նուաճելու, և անարգել հասաւ մինչև Սպահան։ Նոր-Ջուղան, իբրև մայրաքաղաքի արուարձան, այս արշաւանքի առաջին զոհը պիտի լինէր։ Պատմութիւնը յուսալով թէ Աֆղանները Ջուղայի անբաւ հարստութիւնները կողոպտելով գոհ կը լինին ու յետ կը քաշուին, ոչ միայն փոյթ չտարաւ պաշտպանելու Հայոց, այլ զինաթափ արաւ նոցա. և Ջուղայեցիք ասպատակների անգթութիւններից ազատուելու համար՝ ստիպուեցան 70,000 թուման տուգանք վճարել նոցա իշխողին և 60 հայ աղջիկ ուղարկել նորա կանանոցը. թող ուրիշ տնային իրեղէնները և եկեղեցական թանկագին անօթները, որ Աֆղանները յափշտակեցին նոցանից։ Շուտով Սպահանն էլ պաշարմամբ առնուեցաւ, Հիւսէյին շահը գահընկեց եղաւ և նորա տեղը նստաւ Մահմուդ. իսկ Հիւսէյինի որդին Թահմազ փախաւ Մազանդարան և այնտեղ իրան Պարսից թագաւոր հրատարակեց։

Մինչդեռ այս անցքերը կատարվում էին Պարսից երկրում, Հայաստանի հիւսիսային արևելեան կողմերը Կովկասեան լեռնականների ասպատակութեանը ենթարկուեցան։ Լեզգիները խառն ուրիշ լեռնաբնակ ցեղերի հետ՝ հեղեղի նման թափուեցան պարսկական գաւառների վրայ և ճանապարհին թալանելով, աւերելով ու սպանելով հասան մինչև Սևանայ լիճը։ Հայերը միաբանեցան և Ուտէացոց Յովհաննէս իշխանի առաջնորդութեամբ քշեցին նոցա իրանց երկրից (1721)։

Սակայն այս արշաւանքը, որին հետևեցան զանազան թափառական ցեղերի ասպատակութիւնները, մեծ շփոթութիւն ձգեց Սիւնեաց և Արցախու պարսիկ խաների մէջ, որոնք սկսան միմեանց դէմ կռուիլ և երկիրը տակնուվրայ անել։ Այս տեսնելով, Հայերը մտածեցին իրանց գլխին մի ճար անել։ Այդ ժամանակները Արցախը, Սիւնիքն և Ուտին (Ղարաբաղ) պարսկական ուրիշ նահանգների նման՝ Պարսիկ խաների աւատական իշխանութեան տակն էին գտնվում. բայց միևնոյն ժամանակ յիշեալ նահանգների հայ բնակիչները իրանց լեռնոտ երկրի շնորհով՝ շատ վաղ ժամանակներից մի տեսակ ինքնավարութիւն էին վայելում բնիկ իշխանների կամ մէլիքների իշխանութեան ներքոյ։ Մէլիքների իշխանութիւնը ժառանգական էր. հօր մահից յետոյ տիրում էր անդրանիկ որդին, որ կոչվում էր մէլիք, իսկ միւս եղբայրները կոչվում էին բէկեր։ Իւրաքանչիւր մէլիք, իւր գաւառի տէրն էր, և ունէր իւր առանձին բերդն ու ամրոցները, ուր հարկ եղած ժամանակը պաշտպանվում էր զինեալ մարդկանց օգնութեամբ. Նա կառավարում էր իւր հպատակներին վաղեմի սովորութիւնների համեմատ, և ծա-

ապրում էր իբրև միջնորդ խանի և ժողովրդի մէջ, որից հարկերը ժողովում էր և տալիս էր պարսիկ իշխողին։ Զննելով այս կացութեանը, որ ուրիշ տեղերի հետ համեմատելով տանելի էր, պարսկական լուծը ծանր էր թվում այս կողմերի ազատասէր ժողովրդներին. և արդէն ԺԸ դարու առաջին տարիներից Արցախու մէլիքները սկսել էին բանակցութեան մէջ մտնել Ռուսաց արքունիքի հետ. ձգտելով ազատուել մահմէտականների իշխանութիւնից և մի հայկական անկախ իշխանութիւն հիմնել քրիստոնեայ տէրութեան հովանաւորութեան ներքոյ։ Նոյն ձգտումները սկսան երևիլ այժմ և Սիւնեաց ընդարձակ նահանգում, ուր մի քանի հայրենասէր անձինք Պարսկաստանի քայքայեալ վիճակը տեսնելով յարմար ժամանակ համարեցին իրանց երկիրը այլազգիներից մաքրել։ Այս նպատակով դիմեցին իրանց հայրենակից Դաւիթ Բէկին, որ Վրաստանում մեծ անուն էր հանել իբրև քաջ և փորձառու զօրապետ, և հրաւիրեցին նորան որ այս շարժման գլուխը կանգնի։

Դաւիթ բէկ եկաւ Վրաստանից մի խումբ կտրիճ հայերով և անմիջապէս սկսաւ գործել։ Նա յարձակեցաւ նախ Ղարա-Չօռլու ասած կիսավայրենի թուրք ցեղի խաշնարածների վրայ, որոնք իրանց աւազակութիւններով սարսափ էին ձգել Սիսական գաւառի բնակիչների վրայ, ջարդեց ու ցրուեց նոցա։ Այս առաջին յաջողութիւնից յետոյ 400 քաջասիրտ հայեր խմբուեցան նորա դրօշակի տակ, որոնց վրայ Դաւիթ Մխիթար անունով մէկին սպարապետ կարգեց։ Այս փոքրիկ գումարտակով Դաւիթ դիմեց Ջիւանշիրների ցեղի վրայ, որոնք 16,000 հոգւով գալիս էին իր վրայ. կռիւը երկու օր տևեց և

վերջացաւ Դաւթի թշնամիների կատարեալ պարտութեամբ, որոնք փախան պատերազմի դաշտից իրանց զէնքերն ու ձիաները Հայոց ձեռքը թողնելով (1722)։ Այս յաղթութիւնների համբաւը արագ արագ տարածուեցաւ Սիւնեաց երկրում, և Հայերը ամեն կողմից դիմեցին Դաւիթ բէկի մօտ, որով նորա զօրքի թիւը 2000-ից անցաւ։ Միևնոյն ժամանակ զանազան գաւառներում առանձին գնդեր կազմուեցան իւրաքանչիւր իշխանի զօրավարութեան տակ. սոցանից նշանաւոր էին Ղափանի մէլիք Փարսադանի փեսան՝ Տէր Աւետիք քահանան, որին Դաւիթ բէկ Մխիթար սպարապետին օգնական կարգեց, Զավնդուրի Թորոս իշխանը և Գենուազի Ստեփանոս Շահումեան իշխանը՝ Դաւթի մտերիմն ու ջերմ գործակիցը։ Այսպիսով Հայոց բովանդակ զօրութիւնը 7000 զօրքի հասաւ՝ բոլորն էլ Դաւիթ բէկի ընդհանուր հրամանատարութեան ներքոյ։

Պարսից խաները տեսնելով որ շարժումը քանի գնում տարածվում է, շտապեցան ամեն կողմից Հայոց վրայ գնալու, որպէս զի ժամանակ չտան նոցա աւելի ևս զօրանալու։ Դաւիթ անձամբ կամ իւր զօրավարների ձեռքով նոցա բոլորին յաղթեց և մի քանի ամուր բերդերի էլ տիրեց։ Միայն Նախիջևանի խանի դէմ տուած պատերազմը անյաջող ելք ունեցաւ. այստեղ Հայերը ըստ սովորութեան քաջութեամբ կռուեցան և սկզբում յետ մղեցին Պարսից, բայց յետոյ նոցա ահագին բազմութիւնից ընկճուելով՝ յաղթուեցան և մի մասը սպանուեցաւ կամ գետի մէջ խեղդուեցաւ, իսկ մնացածները քաշուեցան Հալիձոր աւանը, ուր Դաւիթ մի ամուր բերդ շինեց և իւր բնակութիւնը այնտեղ հաստատեց (1724)։

Նոյն ժամանակները Հայերը մի քանի արիւնահեղ պատերազմներ էլ ունեցան շրջակայ Պարսից խաների հետ։ Այսպէս Բարգուշատի Փաթալի խանը 12,000 զօրքով յարձակեցաւ Զանգեզուրի վրայ. Թորոս իշխանը մեծ կոտորածով յետ մղեց թշնամիներին և նոցա երկիրը մտաւ, ուր թէև Պարսիկները երեք անգամ աւելի էին Հայերից, բայց սոցա յանդուգն յարձակմանը չկարողացան դէմ դնել և սկսան փախչել։ Այս միջոցին Երիցվանիկի մէլիք Փրանգուլը դաւաճանութեամբ Պարսից կողմն անցաւ և Հայերը յանկարծ շրջապատած տեսան իրանց թշնամիներով. 3000 կտրիճ զինուորներ ընկան պատերազմի դաշտում իրանց քաջ առաջնորդի հետ։ Այս պարտութեան վրէժը Հայերը լուծեցին Մեղրի քաղաքում։ Շրջակայ Պարսիկները ահագին բազմութեամբ դիմեցին Զանգեզուր գաւառի վրայ և ճանապարհին պատահած գիւղերը ասպատակելով՝ եկան պաշարեցին Մեղրին։ Քաղաքն արդէն առնելու վրայ էր, երբ վրայ հասաւ Ստեփանոս Շահումեան իշխանը և ձեռքի տակ ունեցած 2,000 զօրքով ու Մեղրեցոց օգնութեամբ այնպիսի ջարդ տուեց թշնամիներին, որ 11,000 հոգի ընկան, մնացածները ցիր ու ցան եղան։ Փոքր ինչ յետոյ լեռնաբնակ Թուրքմէնները փորձեցին Դաւթի երկիրը ասպատակելու. բայց Մխիթար ու Տէր Աւետիք զօրավարները նոցա առաջը կտրեցին և յաղթութեամբ ու աւարով յետ դարձան (1725)։

Այսպիսով Դաւիթ բէկը կարճ միջոցում յաջողեցաւ Սիւնեաց երկիրը ասպատակութիւններից մաքրել և գոռոզ խաների զօրութիւնը խորտակել, որով և իւր իշխանութիւնը հաստատուեցաւ նոյն երկրում։ Դժուարու-

թիւնները այն ժամանակ սկսան՝ երբ հարկ եղաւ Օսմանցոց հետ գործ ունենալ։ Թահմազ աքքայորդին հօր գահը արտաքին օգնութեամբ ձեռք ձգելու յուսով՝ բանակցութեան մէջ էր մտել Պետրոս Մեծի հետ, խոստանալով կայսեր թողնել Կասպից ծովեզրեայ մի քանի քաղաքներն ու գաւառները, որ Ռուսները առաջուց արդէն գրաւել էին։ Նոյն նպատակով դիմել էր նաև Օսմանցոց. բայց սոքա Ռուսաց միջամտութիւնը Պարսից գործերի մէջ իրանց շահերին աննպաստ համարելով, անմիջապէս իրանց զօրքերն ուղարկեցին Պարսից սահմանները։

Օսմանցիք Քէօփրիւլիւ Աբդուլլահ փաշայի զօրավարութեամբ անդադար առաջ գնալով, հետզհետէ առին Պարսից ամուր քաղաքները՝ Երևանը, Նախիջևանը, Թաւրիզն ու Համադանը։ Մի զօրաբաժին էլ Հաջի Մուստաֆա փաշայի առաջնորդութեամբ ուղարկուեցաւ Սիւնիք Դաւիթ բէկի վրայ։ Հայերը Օսմանցոց ահից վհատած՝ թողին հեռացան Դաւթից, ոմանք նաև այլազգիների հետ միաբանեցան իրանց իշխանի դէմ. Դաւթին հաւատարիմ մնացին միայն մի քանի ընկերներ և մի բուռն քաջեր, որոնց թիւը 450-ի էր հասնում։ Այս չնչին ոյժերով անվեհեր զօրապետը վճռեց մինչև վերջին շունչը պաշտպանուիլ Օսմանցոց դէմ, որոնք շուտով եկան Հալիձորը պաշարեցին և սկսան ամեն կողմից ռմբակոծել։ Պաշարումը մի քանի օր տևեց ամենայն սաստկութեամբ, բայց Օսմանցոց բոլոր ջանքերը զուր եղան բերդն առնելու։ Նոքա փորձեցին մի քանի անգամ վերելակներով պարսպների վրայ բարձրանալ, բայց ամեն անգամ էլ մեծ կոտորածով յետ մղուեցան բերդականներից. կոտորածը այնպէս սաստիկ էր,

որ ամրոցի շուրջը դիակների կոյտեր կազմուեցան։ Յաղթութիւնը կատարեալ եղաւ, երբ կռուի տաքացած ժամանակը Մխիթար և Տէր Աւետիքը մի գումարտակով բերդի ծածուկ դռնից դուրս եկան և այնպիսի շփոթութիւն ձգեցին թշնամիների մէջ, որ նոքա թողին ու փախան 148 դրօշակ և անհագին աւար թողնելով Հայոց ձեռքը։ Մուստաֆան իւր բանակի մնացորդը թարմ գընդերով ստուարացնելով, նորից դիմեց Հալիձորի վրայ. բայց հանճարեղ զօրապետը այս անգամ էլ հնար գտաւ Օսմանցիներից ազատուելու։ Գիշերով թշնամիների բանակի մէջ մատակ ձիաների մի երամակ արձակեց, որոնց խրխնջոցից բանակի ձիաները կատաղելով սկսան այս ու այն կողմը վազվզել։ Այս շփոթութեան ժամանակ վրայ հասաւ Դաւիթ իւր մարդիկներով ու շուարած թշնամուն հարուածելով փախցրեց (1726)։

Թահմազ շահը լսելով Դաւթի տարած յաղթութիւնները Պարսկաստանի թշնամիների վրայ, զանազան արտօնութիւններ շնորհեց նորան. Նա ուղարկեց Դաւթին ընծաների հետ մի հրովարտակ, որով հաստատում էր նորան Սիւնեաց իշխանութեան մէջ՝ իշխանաց իշխան անուանելով և իւր անունով դրամ կտրելու իրաւունք տալով։ Բայց մահը ժամանակ չտուեց Դաւթին իւր յաղթութիւնների պտուղը վայելելու. Նա մեռաւ իշխանութեան վեցերորդ տարում՝ իւր քաջութեան ու հայրենասիրութեան յիշատակը անջինջ թողնելով իւր հայրենակիցների սրտում (1728)։

Դաւթի տեղ իշխանների ու զօրքի հաւանութեամբ կարգուեցաւ նորա գլխաւոր աջակիցը Մխիթար. բայց սորա իշխանութիւնը հազիւ մի տարի տեւեց։ Որովհետեւ

Օսմանցիք նոր զօրութեամբ Հալիձորի վրայ գալով՝ բերդականների մէջ գժտութիւն ընկաւ և վճռեցին անձնատուր լինել։ Թուրքերը Հալիձորն առնելուց և իրանց խոստման հակառակ բնակիչներին սուրը քաշելուց յետոյ՝ ընկան Մխիթարի ետևից, որ յաջողել էր բերդից փախչել և նոր զօրք ժողովելով՝ մի քանի քաղաքներ գրաւել էր։ Խնձորէսք բերդում գտնուած ժամանակը մի քանի հայեր դաւով սպանեցին նորան և գլուխը Թաւրիզի փաշային տարան, որ այսպիսի քաջ մարդու մահուան վրայ ցաւելով՝ անարգ դաւաճաններին գլխատել տուեց (1729)։ Իսկ Տէր Աւետիքը յուսահատուելով՝ իւր ընտանիքն առաւ ու գնաց Երուսաղէմ, ուր երկար ժամանակ ապաշխարելուց յետոյ՝ Աբրահամ Բ կաթողիկոսից ներումն առաւ քահանայ տեղովը այնքան պատերազմներ մղելուն համար։

---

## 76.

Էշրէֆ, իւր յաղթութիւնը Օսմանցոց վրայ (1727).—Նադըր Ալի կամ Թահմազ-Գուլի խան. Կուրիջանի ճակատամարտը (1732).— Թահմազ շահի գահընկեցութիւնը և Նադըր Ալիի յաղթութիւնները (1733—34).—Նադըր շահ (1736).—Նոր պատերազմ Օսմանցոց հետ և արևելեան Հայաստանի դարձեալ Պարսից իշխանութեան տակ մնալը (1746).—Եզրակացութիւն։

Սիւնեաց երկրի նուաճմամբ Պարսկաստանի արևմըտեան և հարաւային գաւառների գրաւումը կատարեալ եղաւ, և Օսմանցոց զօրքերը առժամանակ դադար առին։ Թուրքերի այս յաջողութիւններին ոչ սակաւ նպաստեցին Պարսից ներքին խռովութիւնները, ուր զանազան

*խշխաններ աշխատում էին երկրի թագը միմեանց ձեռքից յափշտակել։ Էշրեֆ, Միր-Մահմուդի հօրեղբօրորդին, յաջողեցաւ ապստամբներին նուաճել, և Մահմուդին սպանելով՝ ինքը գահը բարձրացաւ։ Ապա Համադանի մօտ Օսմանցոց դէմ ճակատեցաւ, յաղթեց նոցա և ստիպեց հաշտութեան զիջանիլ։ Հաշտութիւնը կայացաւ այն պայմանով որ Օսմանցիք իրանց գրաւած երկրների փոխարէն՝ Էշրեֆին Պարսից թագաւոր ճանաչեն. որով և Հայաստանը Ատրպատականի հետ դարձեալ Օսմանցոց ձեռքն անցաւ* (1727)։

*Էշրէֆ այս նուաստացուցիչ պայմանները յանձն առաւ, որպէս զի կարողանայ բոլոր զօրութիւնը իւր ներքին հակառակորդի դէմ դարձնել. որովհետև Թահմազ իւր կուսակիցների թիւը հետզհետէ ստուարացնելով՝ զօրացել և ապառնական դիրք էր բռնել։ Սոցա մէջ նշանաւոր էր իւր արիութեամբ Նադըր Ալի Խորասանցին, որ Սէֆեան տոհմին ունեցած հաւատարմութիւնը ցոյց տալու համար՝ Թահմազ-Գուլի անունն էր առել։ Նադըր մի քանի անգամ ճակատեցաւ Էշրէֆի դէմ, նորա զօրութիւնը խորտակեց և Կանդահարի կողմերը բռնեց ու սպանեց։ Իսկ Թահմազ շահը մեծ հանդէսով մտաւ Սպահան և հօր գահը բազմելով՝ անմիջապէս դեսպան ուղարկեց Կոստանդնուպօլիս ու պահանջեց որ Պարսիկներից առնուած երկրները յետ տրուին. միանգամայն իւր զօրավարներին Օսմանցոց կուսակալների վրայ արձակեց, որոնք բաւական պատրաստութիւն չունենալով՝ ստիպուեցան իրանց բռնած տեղերից յետ քաշուիլ, իսկ Աբդուլլահ փաշան Թաւրիզից քշուեցաւ մինչև Երևան* (1730)։ *Այս ձախորդութիւնների ժամանակ Օսմանցոց*

մայրաքաղաքը Ենիչերիների հանած ապստամբութեան պատճառով ալէկոծութեան մէջ էր. սուլթան Ահմէդ Գ. ստիպուեցաւ գահից հրաժարուել, և նորա յաջորդը Մահմուդ Ա Հէքիմզադէ Ալի փաշային ուղարկեց Պարսից վրայ, որոնց առաջնորդում էր ինքը, Թահմազ շահը, որովհետև Նադըր Ալին այդ միջոցում Հէրաթի պաշարմամբն էր զբաղուած։ Համադանի մօտ՝ Կուրիջանի դաշտում մի արիւնահեղ պատերազմ եղաւ, որի մէջ Պարսից բանակը լիսպառ ջնջուեցաւ, և Թահմազ պարտաւորուեցաւ հաշտութիւն խնդրել Օսմանցիներից, որով Երասխ գետը իբրև սահման ընդունուեցաւ երկու տէրութիւնների երկրների մէջ (1732)։

Երբ Նադըր Ալին յաղթութեամբ դարձաւ Հէրաթից և Օսմանցոց հետ կապուած դաշինքի պայմաններն իմացաւ, սաստիկ զայրացաւ և Պարսից իշխաններին իւր կողմը գրաւելով՝ Թահմազին իշխանութիւնից ձգեց և նորա նորածին որդուն լոկ անուամբ թագաւորեցրեց։ Ապա Կոստանդնուպօլիս դեսպան ուղարկեց, պահանջելով որ Թուրքերը կամ Պարսից տէրութիւնից առած գաւառները յետ դարձնեն, կամ պատերազմ դուրս գան. և առանց ժամանակ կորցնելու կոխեց թշնամիների երկիրը և Տիգրիսի մօտերը մեծ յաղթութիւն տարաւ նոցա վրայ։ Նոյն ժամանակները Ղարաբաղի մէլիքները գաղտնի դաւադրութիւն սարքելով գիշերով կոտորեցին իրանց երկրում եղած Օսմանցոց (1733)։ Սակայն Բէլուջիստանի ապստամբութիւնը թոյլ չտուեց Նադըրին այս յաջողութիւններից օգուտ քաղելու. Նա ստիպուեցաւ առժամանակ հանգիստ թողնել Օսմանցոց և իւր զէնքը արևմտեան կողմը դարձնել։ Յաջորդ տարին նոր զօրութեամբ մտաւ

Ճայաստան և սկսաւ պատերազմն առաջ տանել։ Արդէն Երևանն ու Գանձակը առնելու վրայ էր, որ լուր եկաւ օր Քէօփրիւլիւ Աբդուլլահ փաշան և Տիգրանակերտի կուսակալ Սարը Մուստաֆա փաշան 80,000 զօրքով իւր վրայ են գալիս։ Նադըր իւր զօրքը Էջմիածնի մօտ կենտրոնացրեց և այնտեղից առաջ գնալով՝ Ախուրեանի (Արփաչայ) մօտ այնպիսի ջարդ տուեց Օսմանցոց, որ նոցա բանակը ցրուեցաւ անհամար դիակներ թողնելով պատերազմի դաշտում. ընկածների թւումն էին և Աբդուլլահ ու Մուստաֆա փաշաները։

Այս փառաւոր յաղթութեամբ Հայաստանի մեծ մասը Վրաստանի հետ Նադըրի իշխանութիւնը ճանաչեց. բայց առժամեան նա դիտաւորութիւն ունէր Պարսից թագաւոր դառնալ, հաշտութիւն արաւ Օսմանցոց հետ նոցա համար նպաստաւոր պայմաններով։ 1736-ին ձմեռը Նադըր բանակ դրեց Երասխ գետի մօտ՝ Մուղանի լայնատարած դաշտում, ուր հրաւիրուած էին Պարսից բոլոր մեծամեծները. այնտեղ էին և Հայոց մէլիքներն ու քալանթարները (ազգապետները) Աբրահամ Կրետացի կաթողիկոսի հետ, որ նորապսակ թագաւորի սուրն օրհնեց և իւր ձեռքով նորա մէջքին կապեց։ Այս արժանաւոր հայրապետը իւր խոհեմ վարմունքով այնչափ սիրելի եղաւ Պարսից իշխողին, որ յաջողեցաւ Էջմիածնի յափշտակուած կալուածները յետ դարձնել և շատերին պատերազմի նեղութիւններից ազատել։ Իւր թագադրութեան օրը Նադըր շահը պատիւներ ու պարգևներ շնորհեց բոլոր մեծամեծներին. նա վարձատրեց նոյնպէս Հայոց մէլիքներին, հաստատելով նոցա իրանց հայկական իշխանութեան մէջ և իւրաքանչիւրին իրաւունք տալով որս-

շեալ տուրքի փոխարէն անկախ կերպով կառավարելու իւր երկիրը։

Մի քանի տարի յետոյ պատերազմը դարձեալ զօրգօռւեցաւ երկու տէրութիւնների մէջ (1743)։ Նադըր շահը զանազան պատրուակներով մտաւ Օսմանեան Հայաստանը և Կարսի առաջ նոյա զօրքին յաղթելով՝ քաղաքը պաշարեց. բայց դրսից հասած օգնութիւնից ստիպուեցաւ արագութեամբ յետ քաշուիլ՝ շատ աւար թողնելով թշնամիների ձեռքը։ Օսմանցիք խրախուսուած մեծ բազմութեամբ դիմեցին Պարսից վրայ և Երևանի մօտերը ճակատեցան նոցա դէմ։ Պատերազմը չորս օր տևեց և վերջացաւ Օսմանցոց կատարեալ պարտութեամբ. 20,000 հոգի սպանուեցան, իսկ մնացածները ցրուեցան եղան։ Բայց այս վերջինն եղաւ, այն պայմանով որ երկու տէրութիւնների սահմանները նոյնը մնան, ինչպէս որ էին Մուրադ Դ-ի ժամանակ. որով Հայաստանի արևելեան մասը մինչև Երևան ու Նախիջևան Պարսից ձեռքը մնաց (1746)։

Ահա այս կերպով վերջացան այս երկարատև պատերազմները, որ Թաթարաց արշաւանքների հետ՝ Հայոց անիշխանութեան ժամանակի մեծագոյն միանգամայն և ամենադժբաղդ ժամանակն են կազմում։ Այս երկայն ժամանակամիջոցում Հայաստանը շարունակ օտարներից ոտնակոխ լինելով՝ իւր վայելչութիւնը կորցրեց, բազմամարդ ու շէն քաղաքները կործանուեցան, ամբողջ գիւղեր ու աւաններ ամայացան ու անհետ եղան և ժողովուրդը՝ որը բռնի, որն էլ ինքնակամ զանազան հեռաւոր տեղեր գաղթեցին ու սկսան իրանց առանձին կեանքով ապրել։ Այս գաղթականութիւնները այնպիսի մեծ

տեղ են բռնում Հայոց պատմութեան մէջ, որ հարկ է գիտենալ թէ երբ և ինչ պայմանների մէջ են կատարուել, սկսելով հին դարերից և հասնելով մինչև նոր ժամանակները։

---

## Դ. ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

### 77.

*Քրիստոնէութիւնը իբրև սկիզբն Հայոց գաղթականութեան.— Սասանեանց Հայաստանից հանած գաղթականութիւնները.— Արաբացոց հանած գաղթականները.— Յունաց տուած հարուածները հայ ազգութեան.— Կամաւոր գաղթականութիւններ Բիւզանդական երկրներում.— Կայսրների հանած գաղթականները.— Իտալիայի հայ գաղթականութիւնը։*

Նորագոյն հետազօտութիւնները ցոյց են տալիս թէ հայ ազգը տակաւին նախապատմական շրջաններում իւր երկրից գաղթականութիւններ հանած է Փոքր-Ասիա և Փռիւգիա, որոնք այն կողմի ժողովրդների հետ ազգախառնութեամբ ընտելացած էին արդէն, երբ յոյն պատմիչները սկսան նոյն ժողովրդների վրայ խօսել։ Այս գաղթականութիւնները, իբրև հետևանք հայ ազգի վաճառաշահ և տարաշխարհիկ լինելու բնաւորութեանը, զանազան ուղղութեամբ շարունակվում և հետզհետէ աճում են Հայկազանց թագաւորների և հեթանոս Արշակունեաց օրով։ Սակայն ընդարձակ ու բազմամարդ գաղթականութիւնը, որ հայ ազգաբնակութեան նուազելուն ու սպառելուն գլխաւոր պատճառն եղաւ, քրիստոնէութիւնից յետոյ սկսաւ և տևեց մինչև նոր ժամանակները։

յօգուտ օտար ազգերի և ի մեծ վնաս հայութեան։ Այս բանը բացատրվում է այն քաղաքական ու պատմական հանգամանքներով, որոնց մէջ գտնուեցաւ յանկարծ նոր քրիստոնեայ դարձած Հայաստանը։ Քանի որ Հայերը հեթանոս էին և Արշակունեաց տոհմի երկու ճիւղերը թագաւորում էին Հայոց և Պարսից վրայ, հայ ազգը սերտ կապուած էր Պարսից հետ քաղաքականապէս և կրօնականապէս. իսկ երբ Գ դարում Արշակունեաց տեղ Սասանեանց հարստութիւնը բռնեց Պարսկաստանում և Դ-ի սկզբում քրիստոնէութիւնը տարածուեցաւ Հայոց աշխարհում, այդ բազմադարեան յարաբերութիւնները խզուեցան և քաղաքական ու կրօնական անհաշտ ատելութիւն ընկաւ երկու ազգերի մէջ։ Հայերը, որոնք մինչև այն ժամանակ արիական ազգերի հետ միացած հռոմէական աշխարհակալութեան դէմ մաքառում էին, այնուհետև բաժանուեցան հեթանոս Արևելքից և իրանց աչքերը դարձրին քրիստոնեայ Արևմուտքի վրայ, յոյս ունենալով օգնութիւն գտնել այն մեծ պատերազմի մէջ, որ Պարսկաստանի կրակապաշտութիւնը բաց արեց քրիստոնեայ Հայաստանի դէմ։ Սակայն Բիւզանդիան ոչ միայն մի իրական օգնութիւն չը հասցրեց Հայոց, այլ իւր կրօնական վէճերի պատճառով մեր երկիրը Վրաց և Աղուանից դաշնակցութիւնից զրկելով՝ մենակ թողեց Հայոց իրանց հզօր թշնամիների առաջ, որոնց անտանելի նեղութիւններից ստիպուեցան հետզհետէ թողնել իրանց հայրենիքը և աշխարհի ամեն կողմերը ցրուիլ։

Արդէն Սասանեան առաջին թագաւորը Արտաշիր, Խոսրով Մեծին դաւով սպանել տալուց և Հայաստանը նուաճելուց յետոյ, շատ նախարարների հետ բազմաթիւ

ժողովուրդ գերութեամբ տարաւ Պարսկաստան՝ իւր երկրի ամայի տեղերը շէնացնելու ու մշակել տալու համար։ Արտաշրի օրինակին հետեւեցան նորա յաջորդները։ Շապուհ Բ, Դ դարում, մի քանի անգամ արշաւեց Հայաստան, շատ բազմամարդ քաղաքներ կործանեց և 700,000 հայ տարաւ ու բնակեցրեց Բագտրիացոց, Պարթևաց և Արեաց նահանգներում։ Յաջորդ դարում բացվում է կրօնական պատերազմների շրջանը (450—550), որի ընթացքում Հայաստանը ոչ միայն իւր որդոց արիւնով ոռոգուեցաւ, այլև իւր բնակիչներից դատարկուեցաւ. Յազկերտ Բ-ի և նորա յաջորդների հրամանով Հայերը խուռն բազմութեամբ տարուեցան Պարսկաստանի հեռաւոր նահանգները՝ Մազանդարան, Խորասան ու Խուժաստան։

Պարսիկներին Է դարում յաջորդեցին մահմէտական Արաբացիք, որոնք ամեն տեսակ բռնութիւններ ու անգթութիւններ գործելով Հայոց աշխարհում, մեծ բազմութիւն էլ գերութեամբ տարան Եգիպտոս, Արաբիա, Պաղեստին և Ասորիք։ Այս կողմերի Հայոց թիւը հետզհետէ այնչափ բազմացաւ, որ Գրիգոր Բ Վկայասէր կաթողիկոսը հարկաւոր համարեց ԺԱ դարում առանձին եպիսկոպոսութիւններ հաստատել յիշեալ երկրների Հայոց հոգևոր և բարոյական պիտոյքների մատակարարութեան համար։ Միայն Եգիպտոսում, ուր այսօր հազիւ 4,000 հայ են հաշվում, այն ժամանակները 30,000-ից աւելի գաղթական հայեր կային, որ Պաղեստինի և Ասորւց երկրի բազմամարդ գաղթականութիւնների հետ՝ միջին դարերում մեծ ծառայութիւններ արին արեմտեան ազգերին, մէկ կողմից Խաչակիրներին իրանց ձեռքից եկած

օգնութիւնը հասցնելով, և միւս կողմից Արևմուտքի վաճառականութեան բարգաւաճմանը նպաստելով Արևելքի հեթանոս ազգաբնակութիւնների ասպարէզի մէջ։

Յոյները Պարսիկներից ու Արաբներից նուազ հարուածներ չտուին հայ ազգութեան։ Հայաստանը Դ դարու վերջերում Պարսից և Յունաց մէջ բաժանուելուց յետոյ, կայսրները ամեն տեսակ նենգաւոր հնարներ գործ դրին Հայոց ազգային միութիւնը խզելու և իրանց իշխանութեան տակ եղած ժողովրդին Յունաց հետ միացնելու։ Այս նպատակով նոքա արգելեցին մայրենի լեզուի ուսումը դպրոցներում և ստիպեցին յունարէն լեզուն գործածել կրթութեան մէջ, Հայոց կաթողիկոսին էլ թոյլ չտուին իւր հոգևոր իշխանութիւնը վարելու արևմտեան Հայոց վրայ, որով շատ Հայեր, մանաւանդ Քաղկեդոնի ժողովից յետոյ, հարկադրուեցան ազգային եկեղեցուց բաժանուիլ և Յունաց դաւանանքն ընդունել։ Այս Հայերը որոնք պատմութեան մէջ յայտնի են Հայ-հոռոմ անունով, ժամանակի ընթացքում դրեթէ բոլորն էլ կորան. Նոցա սակաւաթիւ մնացորդները տակաւին երևում են Փոքր-Ասիայի մի քանի քաղաքներում և Կոստանդնուպօլսում և պահպանած են հայ լեզուն ու սովորութիւնները, միայն Յունաց կրօնն են դաւանում և նոցա պատրիարքից կախում ունին։

Զնայելով Յունաց գործ դրած բարոյական ճնշմանը, Հայերը նախ Պարսից և ապա Արաբացոց հարստահարութիւններից նեղուած Դ դարուց մինչև ԺԱ դարը անընդհատ գաղթում են Բիւզանդական կայսրութեան նահանգները, յուսալով որ կեանքի ու ստացուածքի ապահովութեան հետ՝ օտարութեան մէջ աւելի լայն ասպա-

րէզ կը գտնեն իրանց ընդունակութիւնները գործ դնելու։ Եւ յիրաւի, այս գաղթականները բազմաթիւ արուեստագէտներ՝ ճարտարապետներ, նկարիչներ ու քանդակագործներ տուին Բիւզանդիոնին, ինչպէս նաև շատ հանճարեղ զօրավարներ ու կառավարիչներ, որոնք քաջութեամբ պաշտպանեցին կայսրութիւնը արտաքին թշնամիների դէմ և իմաստութեամբ կառավարեցին նորա նահանգները։ Սոցանից ոմանց ազդեցութիւնը մինչև այն աստիճան զօրացաւ, որ յաջողեցան երկրի բարձրագոյն իշխանութեանը հասնել։ Յուստինիանոսից յետոյ տասնեչորս հայ իշխաններ միմեանց ետևից բազմեցան Բիւզանդիայի գահի վրայ և երկու հարիւր տարուց աւելի փառքով կառավարեցին նորա ժողովրդներին։ Հայաստանի այս զաւակները սրտանց կապուելով իրանց նոր հայրենիքի հետ և նորա շահերը ամեն բանից բարձր համարելով, մեծ մնաս հասցրին մայր հայրենիքին. Նորա հետզհետէ դատարկեցին Հայոց աշխարհը իւր բնակիչներից, որոնց բռնի փոխադրեցին կայսրութեան անմարդի ու անմշակ նահանգները։

Այս աշխարհաւեր գործին առաջին օրինակը տուողն եղաւ Յուստինիանոս կայսրը Զ դարում, որ Մելիտինէի բնակիչներին մասամբ Կոստանդնուպօլիս և մասամբ էլ Թրակիա փոխադրեց։ Նոյն դարու վերջերում՝ Մօրիկ հայկազն կայսրը բազմաթիւ հայ գաղթականներ բերեց Թրակիա, և նոցանից գնդեր կազմելով՝ Դանուբի վրայ պատերազմ մղեց Աւարացոց դէմ։ Ը դարում Կոստանդին Կոպրոնիմոս Կարինն առնելով՝ քաղաքը քանդեց ու կողոպտեց, բնակիչներին էլ տարաւ իւր կայսրութեան զանազան տեղերը բնակեցրեց։ Մի ուրիշ մեծ գաղթա-

կանութիւն էլ Վասիլ Բ Արշակունին բերեց Թրակիա Ժ դարում, երկիրը մշակելու միանգամայն և կայսրութեան վրայ յարձակուող Բուլղարաց, Ռուսաց և Հունգարաց հետ պատերազմելու համար։ Այս գաղթականները տարածուելով Խրվաթիայում, Թեսաղիայում, Մակեդոնիայում և Բուլղարիայում, իրանց խելքով և գործունէութեամբ այնչափ յառաջադիմեցին, որ նոցա ազդեցութիւնը երեւեցաւ նոյն երկրների քաղաքական գործերի մէջ։ Ստեփանոս Ասողկի վկայութեամբ՝ Սամուէլ Դերջանեցի հայ իշխանը Բուլղարիայի թագաւոր ընտրուեցաւ և նոյն երկիրը քաջութեամբ պաշտպանեց Վասիլ Բ-ի դէմ։

Ռուբինեանց թագաւորութեան անկումից յետոյ, այս ուղղութիւնը բռնող հայ գաղթականները նոր ոյժ ստացան Կիլիկիայից դուրս եկած 30,000 հայ ընտանիքներով, որոնք բռնեցին նախ Միջերկրականի Կիպրոս, Հռոդոս և Կրետէ կղզիները. այնտեղից էլ հետզհետէ տարածուեցան Եւրոպայի զանազան երկրները և գլխաւորապէս Իտալիայի վաճառաշահ քաղաքները՝ Վենետիկ, Ջենովա, Պիզա, Հռոմ, Նապօլի, Միլան և այլն։ Այս գաղթականներից նշանաւոր եղան մանաւանդ Վենետկի Հայերը, որոնց թիւն ու ազդեցութիւնը զօրացաւ ԺԶ դարում Ջուղայից եկած նոր հատուածովը։ Սոքա հասարակապետութիւնից արտօնութիւն էին ստացել իրանց խանութները ունենալու Ս. Մարկոսի հրապարակի վրայ, ուր ազատ ամեն տեսակ հարկերից՝ վաճառում էին առհասարակ թանկագին գոհարեղէններ և հնդկական ազնիւ գործուածներ։ Սակայն Իտալիայի հայ գաղթականները, որոնք իրանց գործունէութեամբ և մեծամեծ ձեռնարկութիւններով հարստացան ու հարստացրին ի-

րանց Նոր հայրենիքը, մեծ բռնութիւններ կրեցին խոա-լացի կղերի կողմից, և ստիպուեցան հետզհետէ մայրենի եկեղեցուց անջատուիլ ու կաթոլիկութեան գիրկն ընկ-նել։ Այնպէս որ ԺԸ դարու վերջերում ամբողջ Թերա-կղզում ոչ մի հայ ընտանիք չէր մնացել, ամենքն էլ կրօնափոխութեամբ և ազգախառնութեամբ ընկղմել էին տեղական տարրերի մէջ։ Նոցա յիշատակը մնացել է միայն զանազան քաղաքների թաղերի ու փողոցների վրայ և քսանհինգից աւելի եկեղեցիների վրայ, որոնք իրանց եկամուտներով կաթոլիկ կղերի ձեռքն անցած են։

---

## 78.

*Հայոց յարաբերութիւնը Կասպից ծովեզրեայ ժողովրդների հետ. Թաթարստանի գաղթական Հայք.—Ղրիմի հայ գաղթականները. սոցա կրած նեղութիւնները Օսմանցիներից և ցրուիլը.—Ռումանիայի գաղթականները և նոցա այժմեան վիճակը.—Տրանսիլվանիայի Հայք.—Հունգարիայի Հայք.—Բուկովինայի Հայք։*

Ցայտնի է որ Հայերը արդէն քրիստոնէութիւնից առաջ առևտրական հաղորդակցութիւններ են ունեցել Կասպից ծովի և Սև ծովի եզերքների վրայ բնակող ժողովրդների հետ, որոնց վաճառում էին Հնդկաստանի և Բաբելաստանի թանկագին ապրանքները։ Այս յարաբերութիւնները աւելի ևս զարգացան, երբ քրիստոնէութիւնը Հայոց քարոզութեամբ մուտ գործեց Աղուանից երկիրը և այնտեղից էլ Հոնաց աշխարհը տարածուեցաւ. Ե դարում մի բարեկամական դաշն կապուեցաւ Հայոց ու Հոնաց մէջ կրակապաշտ Պարսից դէմ. իսկ յաջորդ դա-

րում Հայք Պարսիկներից նեղուելով՝ բազմութեամբ անց-
ցան Կովկասն և գնացին միացան Հոնաց Թագաւորի բա-
նակի հետ։ Այդ ժամանակներում արդէն Հայերը իրանց
բազմաթիւ վաճառատեղիներն ունէին Կասպիականի
արեւմտեան և հիւսիսային եզերքների և նոյն ծովը թա-
փուող գետերի վրայ։ Ղազանից 90 վերստ հեռու՝ Բուլ-
ղարների հին մայրաքաղաքի աւերակների մէջ գտնուած
և հայ արձանագրութիւններով ծածկուած տապանաքա-
րերը, որոնք Զ, Թ և ԺԱ դարերի թուականներն են
կրում, վկայում են որ Հայերը շատ հին ժամանակնե-
րում հաստատուած են եղել այս կողմերում։ ԺԳ դա-
րում, երբ Թաթարները տիրեցին Հայաստանին, բազմա-
թիւ հայ գաղթականներ տարան իրանց երկիրը և բնա-
կեցրին Սարայ, Աժտէրխան և Ղազան քաղաքներում՝
Վոլգայի ափերի վրայ։ Սոքա իրանց բազմապատիկ ձիր-
քերով ոչ միայն երկրի վաճառականութիւնն ու արուեստ-
ները ծաղկեցրին, այլև պատերազմների մէջ անուն հա-
նեցին. Թաթար խաների զօրքի մէջ հայ գնդեր էլ կա-
յին, որոնք քաջութեամբ պատերազմում էին նոցա թշ-
նամիների դէմ։

Սակայն Թաթարստանի Հայք իրանց հաւատարմու-
թեան ու ծառայութիւնների փոխարէն միայն բռնու-
թիւն ու հալածանք տեսան բարբարոս իշխողներից։ Այս
նեղութիւններից ազատուելու համար՝ նոքա դիմեցին
Ջենովացոց, որոնք նոյն ժամանակները իշխում էին Խրի-
մի Քէֆէ կամ Թէոդոսիա քաղաքի և մի քանի ամուր
տեղերի վրայ։ Ջենովացոց իշխանի հետ դաշն կապելուց
յետոյ՝ զէնքը ձեռքերին ճանապարհ բաց արին իրանց
համար, և եկան բնակեցան Խրիմի զանազան քաղաքնե-

քում, ուր տակաւին Ջենովացոց տիրապետութիւնից առաջ շատ Հայեր Հայաստանից և Բուլղարիայից եկել և բնակութիւններ հաստատել էին։ Քիչ յետոյ, երբ Լանկթամուր Մողոլների զօրութիւնը խորտակեց, մի նոր հատուած էլ Վոլգայի ափերից եկաւ նոյն Թերակղզին ապաւինեցաւ իւր հայրենակիցների մօտ։ Այսպիսով Խրիմի Հայոց թիւը հետզհետէ բազմացաւ և նոցա հոգևոր պիտոյքների մատակարարութեան համար երկու առաջնորդութիւն հաստատուեցաւ. միայն Թէոդոսիայում 100,000 հայ կար որոնց ազդեցութիւնը մեծ էր տեղական կառավարութեան առաջ։ Իւր յաջող դիրքի և հայ գաղթականների առևտրական գործունէութեան շնորհով Խրիմը, որ առաջ մի աղքատ երկիր էր, կարճ միջոցում հարստացաւ և արտաքոյ կարգի պայծառութեան հասաւ։ Թերակղզու ամայի ու անբնակ տեղերը գիւղերով լցուեցան, լեռներն ու դաշտերը վանքերով ծածկուեցան, որոնց մի քանիսի աւերակները մինչև այսօր վկայում են Հայոց անցեալ մեծագործութիւնը։

ԺԵ դարու սկզբներում Թաթարները, որոնց բռնութիւնից Հայերը փախել էին, Խրիմի մի մասին տիրեցին, բայց Թէոդոսիան չկարողանալով առնել, Օսմանցոց օգնութեանը դիմեցին։ Հայերը, որոնց պաշտպանութեանը յանձնուած էր քաղաքը յանձնեցին նորան (1475)։ Բայց փաշան իւր տուած երդումը դրժեց, Հայոց գլխաւորներին գիշերով իւր մօտ ժողովեց անզէն և խնջոյքից յետոյ մէկ մէկ սպանել տուեց. ապա ընկաւ անպաշտպան ժողովրդի վրայ և շատերին անգթաբար կոտորեց։ Մնացած Հայոց մեծ մասը ստիպուեցաւ թողնել իրանց դարաւոր բնակութիւնները և արդիւնաւէտ

կալուածները և իրանց ազգակիցների մօտ գաղթել Մոլդաւիա և Լեհաստան։ Այսօր Խրիմում հազիւ 5,000 Հայ կայ, որոնք ցրուած են Թերակղզու զանազան քաղաքները և մանր աւաններում են պարապում։ Այս թւից դուրս են սակաւաւոր հռոմէադաւան հայեր, որոնց հոգևոր վարչութեան կենտրոնն է Խարասու-Բազար քաղաքը։

Մոլդո-Վալաքիայի (Ռումանիայի) Հայք մասամբ բուն Հայաստանից և մասամբ էլ Խրիմից գաղթած են։ Մոլդաւիացիք, որ սկզբում ստուար մեծամասնութիւն էին կազմում, այն աստիճանի մեծ ազդեցութեան հասան, որ ոմանք մինչև տեղական գերիշխանութիւնը ձեռք բերին. Թէև երբեմն նոցա կրօնական ազդեցութիւնը բռնաբարվում էր, և տեղացի ժողովրդների հետ հաւասար իրաւունքներ չէին վայելում։ Ռումանիայի այժմեան Հայոց թիւը 16,000 է համարվում, բոլորն էլ ազգային եկեղեցուն հաւատարիմ մնացած։ Նոքա ունին հոյակապ եկեղեցիներ և ուսումնարաններ հաստատուն եկամուտներով, որոնց մատակարարութիւնը տեղական հոգաբարձութիւններին է յանձնուած։ Կոստանդնուպօլսի Հայոց պատրիարքը, որի հոգևոր իշխանութեան տակն են գտնվում, երբեմն նուիրակներ է ուղարկում քահանաներ ձեռնադրելու և գաղթականների հոգևոր պէտքերը հոգալու համար։ Ռումանիայի Հայոց գլխաւոր պարապմունքը գիւղատնտեսութիւնն է իւր բոլոր ճիւղերով։ Փարիզի դաշնադրութիւնից յետոյ (1856), երբ այս աշխատասէր ժողովուրդը կալուածական և ուրիշ իրաւունքներ ստացաւ, շատ Հայեր մեծամեծ կալուածներ ձեռք բերին, և այսօր ոմանք իրանց հարստութեամբ կարող են տեղացի առաջնակարգ կալուածատէրերի հետ մրցել։ Գժբաղդաբար ազգու-

30

թեան ոգին քանի գնում թուլանում է նոցա մէջ, և հայերէն լեզուն համարեա միայն ծերերի բերանում է լսվում։ Նոցա ուսումնարանները, որ երբեմն պայծառ վիճակի մէջ էին, հազիւ ազգային լեզուի ու կրօնի տարբերն են մատակարարում փոքրահասակ երեխաներին, որոնք իրանց բարձրագոյն կրթութիւնը ստանում են տէրութեան ուսումնարաններում և գերմանական համալսարաններում, և վերադառնում են հմուտ փաստաբաններ, ճարտար բժիշկներ և բանիբուն գիտնականներ, բայց հայութեան համար ընդհանրապէս կորած են։ Այս ցաւալի վիճակին դարման տանելու միակ միջոցն է մի առանձին առաջնորդութիւն հիմնել Ռումանիայի և մօտակայ երկրներում բնակող Հայոց համար, որի գլխաւոր պարտականութիւնը լինէր այս գաղթականների ազգային կրթութեան վրայ հոգ տանել։ Մի քանի տարի առաջ Ֆօքշան քաղաքում կազմուեցաւ մի ընկերութիւն, որի նպատակն է ժամանակին մի կենտրոնական ազգային ուսումնարան բանալ յիշեալ քաղաքում։

ԺԷ դարու վերջերում Օսմանցոց ու Լեհաց մէջ տեղի ունեցած պատերազմի պատճառով Մոլդաւիան տակնուվրայ լինելով, 10,000-ի չափ Հայեր ապաւինեցան Տրանսիլվանիայի լեռների վրայ և բնակութիւնները այնտեղ հաստատեցին։ Սոքա իրանց աշխատութեամբ և վաճառականութեան մէջ ցոյց տուած յաջողութեամբ շուտով գրաւեցին Տրանսիլվանիայի իշխանների և Աւստրիայի կայսրների ուշադրութիւնը և զանազան արտօնութիւններ ստացան նոցանից։ Հայաքաղաք կամ Գերլա և Պաշպալով, որ իրանք շինեցին ու շէնացրին, Կարլոս Զ կայսեր հրովարտակներով թագաւորական ազատ

քաղաքներ հրատարակութեան՝ իւրաքանչիւրը իւր հայ քաղաքապետով ու դատարաններով, և այս արտօնութիւնը մինչև այժմ վայելում են նոյն քաղաքները։ Հայաքաղաքը (Արմէնիէնշտադտ) յատկապէս գրեթէ մի ինքնագլուխ փոքրիկ իշխանութիւն է կազմում, որի քաղաքապետից մինչև յետին պաշտօնեաները համարեա բոլորը հայ են։ Ծերակուտի անդամները 52 հոգուց բաղկացած են, և իրանց ձեռքն ունին ամեն օրէնք, իշխանութիւն, դատաւորութիւն, ոստիկանութիւն և այլն։ Քաղաքի եկամուտներով պահվում են երկու երկսեռ ուսումնարաններ, որոնք «Հայկազեան դպրոց» անունն են կրում։

Տրանսիլվանիայի Հայք յառաջանալով սկսան լցուել Հունգարիայի զանազան կողմերը և այս բարեբեր երկրում մեծամեծ կալուածներ ձեռք բերին։ Նիւթական ապահովութեան հետ նորա ուժան ու կրթութեան հետամուտ եղան, որով շատերը իրանց ցոյց տուած ձիրքերի փոխարէն ազնուականութեան տիտղոսներ ստացան Աւստրիայի կայսրներից։ Տրանսիլվանիայի և Հունգարիայի Հայք, որոնց մի մասն էլ Լեհաստանից գաղթած են, 18,000-ի չափ են համարվում։ Հռոմը իւր արբանեակների ձեռքով յաջողեցաւ այս ժողովրդի մեծ մասը որսալ և կաթոլիկ դարձնել, բայց և այնպէս նոքա դեռ ազգութիւնից բոլորովին օտարացած չեն. ժամերգութիւնը հայերէն լեզուով է կատարվում, և քահանաները հայերէն են քարոզում։

Մոլդաւիայի գաղթականութեան մի ճիւղն էլ կազմում են Բուկովինայի Հայք, որոնց թիւը 3,000-ի է հասնում։ Կաթոլիկ կղերը իւր բոլոր մեքենայութիւններով հանդերձ չյաջողեցաւ դաւանափոխ անել այս գաղթա-

կաններին, որոնցից 300 ընտանիքի չափ բնակում են Սուչաւա քաղաքում և նրա շրջականներում, պահպանելով մինչև այսօր հայերէն լեզուն թէ դպրոցում և թէ կեանքի մէջ։

---

## 79.

*Լեհաստանի հայ գաղթականութեան գլխաւոր ժամանակները և բնակութեան տեղերը.—Լեհ թագաւորների չնորհած արտօնութիւնները.—Նիկոլ Թորոսովիչ և իւր գործերը (1626—1681).—Լեհաստանի Հայոց բռնի միութիւնը կաթոլիկ եկեղեցու հետ (1689)։*

Հայ գաղթականութիւնների մէջ նշանաւոր տեղ են բռնում Լեհաստանի հայերը թէ իրանց թւով, թէ գործունէութեամբ և թէ մանաւանդ պատմական բաղդով, որ որքան ցաւալի՝ նոյնքան խրատական է մեզ համար։

Հայերը երեք գլխաւոր գաղթականութիւն ունեցած են Լեհաստան. 1. Բագրատունեաց թագաւորութեան անկումից յետոյ, 2. Ալփասլանի արշաւանքի ժամանակ և 3. Խրիմը Օսմանցոց ձեռքն անցնելուց յետոյ։ Այս գլխաւոր ժամանակների միջոցներում և այնուհետև էլ զանազան հատուածներ Հայաստանից կամ օտար երկրներից եկան յարեցան իրանց հայրենակիցներին, որով Լեհաստանի հայ գաղթականների ընդհանուր թիւը 40,000 ընտանիքի կամ մերձաւորապէս 200,000 հոգու հասաւ։ Սոքա իրանց բնակութիւնները հաստատեցին Գալիցիա, Պոդոլիա և Վոլինիա նահանգների քաղաքներում ու գիւղերում. բայց սկզբում մեծ բազմութեամբ բնակեցան Գալիցիայի Իլվով կամ Լեմբէրգ մայրաքաղաքի մօտերը

իբրև առանձին արուարձանի մէջ, որպէս զի օտարազգի բնակիչների հետ չխառնուին։ Իսկ երբ սկսան Լեհացոց լեզուն հասկանալ և վաճառականութեամբ ու պէսպէս քաղաքական և զինուորական պաշտօններով յառաջանալ, մտան նաև բուն քաղաքը, և անմիջապէս ձեռք զարկին եկեղեցիներ և ուսումնարաններ շինելու։ 1363-ին կառուցին մի հոյակապ մայր եկեղեցի և առանձին առաջնորդութիւն հաստատեցին, որի հոգևոր իրաւասութիւնը տարածվում էր ոչ միայն Լեհաստանի, այլ և Մոլդաւիայի Հայոց վրայ։

Լեհաց թագաւորները Հայոց ընդաբոյս ձիրքերը տեսնելով և կամենալով նոցա ձեռքով իրանց երկրի վաճառականութիւնն ու արուեստները ծաղկեցնել, կրօնի կատարեալ ազատութիւն տուին և քաղաքական արտօնութիւններ շնորհեցին նոցա։ Այսպէս Կազիմիր Գ թագաւորը Կամենեցի Հայոց իրաւունք տուեց առանձին վարչութիւն ունենալ իրանց յատուկ հայ քաղաքագլխով, որ վօյթ էր անուանվում (1344). Նոյն իրաւունքը շնորհեց նա մի քանի տարի յետոյ և Իլվովի Հայոց։ Վօյթը կամ ազգային գլուխը 12 հայ դատաւորների աջակցութեամբ ամեն տեսակ դատեր տեսնում և վճիռները տալիս էին։ Այս կարգը պահպանուեցաւ մինչև Սիգիզմունդ թագաւորը, որի հրովարտակով Իլվովի մէջ բացուեցաւ առաջին հայ դատարանը (1516)։ Լեհաստանի Հայոց լեզուն Անեցոց բարբառն էր, որի հետքը մինչև այժմ մնացած է թէ այն կողմերը, թէ Հունգարիայի ու Ռումանիայի և թէ Խրիմի ու Նախիջևանի Հայոց մէջ. այդ լեզուն գործ էին դնում նոքա սկզբում և դատարաններում։ Սակայն ԺԶ դարուց հայերէնի տեղ

կամաց կամաց սկսեց բռնել Թաթարերէն լեզուն, որովհետև նոյն ժամանակները Թաթարստանից նոր գաղթականներ եկան մեծ բազմութեամբ, որոնք բացի Թաթարերէնից ուրիշ լեզու չէին իմանում։ Այդ ժամանակներին է վերաբերում մեր մի քանի եկեղեցական գրքերի ու ժամանակագրութեան աղօթքների Թաթարերէն թարգմանութիւնը, ինչպէս նաև նոյն լեզուով գրուած դաշնագրեր և ուրիշ դատաստանական գրուածներ, որոնք մինչև այսօր պահվում են Լեհաստանի դիւաններում։ Բայց որովհետև Թաթարերէնը իբրև անկատար լեզու՝ իրաւաբանական նրբութիւնները բացատրելու անընդունակ էր, Հայերը Լեհացոց օրինակին հետևելով լատիներէն լեզուն մտցրին իրանց դատարաններում. իսկ խօսակցական լեզուն ժողովրդի մեծ մասի համար առաջուան պէս մնաց հայերէնը խառն թաթար և լեհ բառերով։

Հայ գաղթականների վայելած արտօնութիւնների արդիւնքը շուտով երևեցաւ։ Ետևէ ետև Լեհաստանում նոր նոր գիւղեր ու քաղաքներ շինուեցան, երկրի ներքին ու արտաքին վաճառականութիւնը բարգաւաճեցաւ, և շատ հայեր քաղաքական ու զինուորական պաշտօնների մէջ ցոյց տուած մեծամեծ ծառայութիւններով պայծառացրին իրանց նոր հայրենիքը։ Մինչդեռ այսպէս Հայք օրէցօր յառաջադիմելու վրայ էին յանկարծ մի անիրաւ ու անխիղճ հալածանք յարուցուեցաւ նոցա դէմ, որի նպատակն էր Լեհաստանի հայ ազգաբնակութիւնը բռնի անջատել մայրենի եկեղեցուց և Հռոմի պապին հպատակեցնել։ Այս ազգադրուժ գործին սկզբնապատճառ ու պարագլուխ եղաւ Նիկոլ Թորոսովիչ անունով

փառամոլ ու ամբարիշտ եկեղեցականը, որ 1605-ին Իլվովում ծնած և երիտասարդութեան հասակում սարկաւագութեան աստիճանը ընդունած էր Կոստանդնուպոլսում։

Լեհաստանի Հայոց առաջնորդները խսկզբանէ անտի Ս. Էջմիածնի աթոռից ընդունում էին իրանց ձեռնադրութիւնը և հաստատութիւնը։ Այս կարգը պահպանուեցաւ մինչև Մեսրոպ եպիսկոպոսը, որ վախճանուեցաւ 1622-ին և աթոռը չորս հինգ տարի դատարկ մնաց։ Այդ ժամանակները Ս. Էջմիածինը պարսկական բռնութեան ու հարկապահանջութեան տակ հեծում էր, և Մելքիսեդէկ կաթողիկոսը մի թեթևութիւն գտնելու յուսով՝ մտածեց դաղթական Հայոց օժանդակութեանը դիմել։ Նա գնաց նախ Կոստանդնուպոլիս, բայց այնտեղ լաւ ընդունելութիւն չգտնելով՝ անցաւ Լեհաստան։ Նիկոլ, որ վաղուց ձգտում էր Իլվովի առաջնորդութիւնը ձեռք ձգել, իւր կուսակիցների միջնորդութեամբ և շատ ընծաներ տալով կաթողիկոսին, յաջողեցաւ եպիսկոպոսութեան խոստումն առնել նորանից։ Զուր աշխատեցան Իլվովցիք համոզել Մելքիսեդէկին որ իւր դիտաւորութիւնից յետ կանգնի, հասկացնելով նորան Նիկոլի խռովարար ու ամբարտաւան բնաւորութիւնը և անառակ կեանքը։ Կաթողիկոսը ականջ չդրեց ժողովրդի աղաչանքներին ու բողոքներին, առաւ Նիկոլին ծածուկ քաղաքից դուրս տարաւ Ս. Խաչ վանքը, և այնտեղ գիշերով եպիսկոպոս ձեռնադրեց նորան (1626)։ Ժողովուրդը գայթակղեցաւ այս արարմունքից, բայց իւր զայրոյթը զսպեց, պատկառելով Մելքիսեդէկի թողած կոնդակից, որով նզովք էր դնում Նիկոլին չհնազանդողների վրայ։ Առժամանակ խաղաղութիւնը տիրեց, բայց պարզ

էր որ երկար տանելու չէր. մի պուխթ էր հարկաւոր միայն որ փոթորիկը բարձրանար։

Սուխթը չուտով ներկայացաւ։ Նիկոլի առաջնորդութեան առաջին տարիներում երկու նուիրակ հետզհետէ այցելութեամբ եկան Լեհաստան։ Նիկոլ ոչ միայն սովորական յարգանքը ցոյց չտուեց նուիրակներին, այլ նոցանից մէկին, որ էր Կեսարացի Խաչատուր վարդապետը, հրապարակաւ անարգեց եկեղեցում։ Վարդապետը զայրացած անիծեց Նիկոլին և եկեղեցուց դուրս եկաւ. նորա օրինակին հետևեցաւ բոլոր ժողովուրդը, և տաճարում մնաց միայն Նիկոլ իւր մի քանի կուսակիցների հետ։ Երբ ժամերգութիւնը վերջացաւ Իլվովի Հայոց դատաւորները եկեղեցու դռները փակեցին և Նիկոլին դատաստանի կանչեցին։ Ամբարտաւան եպիսկոպոսը ներկայացաւ ատենի առաջ, բայց ոչ դատուելու, այլ ինքը դատաւոր կանգնեցաւ այն անձանց վրայ, որոնք աշխարհական գոլով՝ յանդգնում էին եպիսկոպոս մարդուն դատաստանի տակ ձգել. միանգամայն կաթողիկոսական նուիրակին քաղաքական իշխանութեան առաջ ամբաստանեց՝ իբրև Թուրքաց երկրից եկած լրտես։ Ատեանը լուծուեցաւ, և Նիկոլ այս յաղթութեամբ սիրտ առած՝ սկսեց այնուհետև կեղծաւորութիւնը ձեռք առնել. մարդիկ ուղարկեց վարդապետին և իշխաններին, որ գան հետը հաշտուին և եկեղեցու դուռը բանան։ Խաչատուր վարդապետը այս հակառակութիւնից առաջ գալիք վնասները գուշակելով, կամեցաւ բանը խաղաղութեամբ վերջացնել. բայց Իլվովցիք, որոնց յայտնի էր իրանց առաջնորդի խարդախ ու նենգաւոր բնաւորութիւնը, չհաւատացին նորա խօսքերին և կամք չտուին հաշտուելու։

Թշնամութիւնը քանի գնաց սաստկացաւ, և Նիկոլ տեսնելով որ իւր հակառակորդներին յաղթելու ուրիշ հնար չունի, դիմեց Եզուիտների պաշտպանութեանը, որոնք այն ժամանակ մեծ ազդեցութեան տէր էին Լեհաց երկրում. գրաւոր կերպով խօսք տուաւ նոցա որ ինքը և իւր ժողովուրդը դուրս գան Հայոց կաթողիկոսի հնազանդութիւնից և Հռոմի պապի իշխանութեան տակ մտնեն։ Եզուիտները ուրախացած՝ անմիջապէս առին տարան նորան Իլվովի արքեպիսկոպոսի մօտ, և ամեն բան հասկացրին։ Արքեպիսկոպոսը որքան և հաւանեցաւ եղած առաջարկութեանը, խոհեմութիւն չհամարեց ուղղակի խառնուելու մի գործի մէջ, որ աւելի քաղաքական կռուի բան կրօնական խնդրի կերպարանք ունէր. ուստի եկողներին քաղաքապետի մօտ ուղարկեց։ Սա պատուէր ուղարկեց Հայոց իշխաններին որ կամ եկեղեցին բանան, և կամ դատաստանի գան. բայց իշխանները ականջ չդրին նորան։ Այն ժամանակ Եզուիտները գործը իրանց վրայ առին. զինուորներով եկան եկեղեցու դռները կոտրեցին և տաճարը մէջի սպասներովը Նիկոլին յանձնեցին։

Այնուհետև զօրացաւ Նիկոլ Եզուիտների պաշտպանութեամբը, Հայոց միւս եկեղեցիներն էլ գրաւեց, և ժողովուրդը առանց եկեղեցու մնաց։ Ձեռք դրեց նոյնպէս բոլոր եկեղեցական կալուածների, տների ու խանութների վրայ, և նոցա եկամուտները գործ էր դնում իւր անխիղճ կռիւը ժողովրդի դէմ շարունակելու համար։ Իլվովցիք ճարահատած՝ մի քահանայ և մի պատուաւոր աշխարհական ուղարկեցին Էջմիածին Խաչատուր վարդապետի հետ, որ ամեն բան տեղովը հասկացնեն Մով-

նէս կաթողիկոսին և նորա օգնութիւնը խնդրեցին։ Կաթողիկոսը աղաչանաց թղթեր գրեց Ուրբանոս Ը պապին, Լեհաց Վլադիսլաւ թագաւորին և Իլվովի արքեպիսկոպոսին, որ խղճան Հայոց և առանց եկեղեցու չթողնեն նոցա։ Թագաւորը, իշխանները և արքեպիսկոպոսն անգամ գթացին անպաշտպան ժողովրդի վրայ, և հրամայեցին Նիկոլին որ եկեղեցիները ժողովուրդին յանձնէ. բայց յանդուգն Եզուիտները նոցա ամենին հակառակ կանգնեցան։ Թագաւորը անձամբ գնաց Հայոց եկեղեցին, որ բռնութեամբ առնէ և ժողովուրդին յանձնէ. բայց Նիկոլ Եզուիտների թելադրութեամբ՝ զգեստաւորուած և հաղորդութեան խորհուրդը ձեռքն առած՝ դուրս եկաւ նորա առաջ, և Վլադիսլաւ չհամարձակեցաւ ներս մտնել։ Հայերը տեսնելով որ աշխարհական իշխանութիւնը անզօր գտնուեցաւ Նիկոլի դէմ, առին կաթողիկոսի թուղթը, թագաւորից ու արքեպիսկոպոսից էլ յանձնարարական նամակներ ստացան և գնացին Հռոմ, որ պապից օգնութիւն գտնեն։ Հասաւ ետևներիցը Նիկոլը, և Հռոմի Եզուիտների ձեռքով բանը այնպէս բերեց՝ որ պապը նորան իրաւունք տուեց և խեղճ Հայերը տրտում տխուր յետ դարձան։

Երբ այսպէս ամեն կողմից անօգնական մնացին, Իլվովցիք ստիպուեցան իրանց անօրէն առաջնորդի ոտքն ընկնել, աղաչելով որ խնայէ իրանց և եկեղեցիներից մինչև իսպառ զուրկ չթողնէ։ Բայց անգութ բռնաւորը նոցա բոլոր աղաչանքներին միայն մի պատասխան էր տալիս. «Ընդունեցէք կաթոլիկութիւնը և եկեղեցիները կը բացուին»։ Յուսահատութիւնը տիրեց խեղճ ժողովրդի վրայ, էլ ինչ անելիքը չգիտէր իւր թշուառ վիճակից

ազատուելու համար։ Նոր ծնած երեխաները տարիներէ հետէ անկնունք էին մնացել, հարսներն ու փեսաները անպսակ և մեռելները անթաղ. որովհետև անօրէն Նիկոլը արգելել էր ամեն եկեղեցական արարողութիւն կատարելու։ Եթէ ոմանց թոյլ տար մկրտութիւն կամ պսակ անելու, և կամ մեռել թաղելու, տուգանք էր առնում և այնպէս հրաման տալիս։ Ոմանք ուրիշ քաղաքներ էին գնում և այնտեղ էին մկրտում կամ պսակում իրանց զաւակներին, բայց եթէ վերստին Իլվով դառնային, ծանր տուգանքների էին ենթարկվում։ Իսկ մեռելների համար ուրիշ ճար չկար. ամեն մարդ իւր ննջեցեալը փայտէ արկղի մէջ էր դնում, հալած ձիւթով պատում և դուրս տեղ տարիներով թաղնում էր։ Այս դառն հալածանքը քսաներեք տարի տևեց (1630—1653), և այդ միջոցում շատերը հեռացան Իլվովից ու ցրուեցան Եւրոպայի զանազան երկրները՝ Սաքսոնիա, Բաւարիա, Հոլանդիա և Մեծ-Բրիտանիա, այնպէս որ 50,000 Հայերից հազիւ 5,000 հոգի մնացին Իլվովում և շրջակայքում։

Այն ժամանակ միայն տեսաւ Նիկոլ որ իւր բռնած ընթացքով նպատակին չհասաւ. ուստի սկսաւ կեղծաւորութեամբ հաշտութիւն խօսել մնացած ժողովուրդի հետ, բայց խօսքին ականջ դնող չգտնուեցաւ։ Լսեց որ Փիլիպպոս կաթողիկոսը Կոստանդնուպօլիս է եկել, մտածեց, որ ինքն էլ այնտեղ երթայ կաթողիկոսին ապաւինի, որպէս զի այս անել վիճակին մի դարման գտնուի։ Փիլիպպոս կաթողիկոսը անյիշաչարութեամբ ներեց Նիկոլին իւր բոլոր արարմունքները, այն պայմանով որ 1. Հայոց եկեղեցու վարդապետութիւնը դաւանի. 2. ե-

կեղեցական բոլոր ծէսերն ու արարողութիւնները անխախտ ու անփոփոխ պահէ, 3. Նիկոլի յաջորդները Էջմիածնի կաթողիկոսից եպիսկոպոս ձեռնադրուին և նոցա հրամանով առաջնորդ հաստատուին. 4. Եկեղեցում բնաւ չյիշատակուի պապի անունը։ Միայն Նիկոլ խնդրեց և հրաման առաւ որ ինքը պատարագի ժամանակ պապի անունը յիշէ, պատճառելով որ իւր տուած ձեռագրի զօրութեամբ Եզուիտները կարգալոյծ կանեն իրան, գուցէ և կեանքին էլ վնասեն։ Այս յօդուածները իւր ստորագրութեամբ ու կնքով հաստատեց Նիկոլ և ներկայացրեց կաթողիկոսին, նա էլ յանձնեց Խաչկօ անունով դատաւորին որ Իլվով տանի։ Սակայն Իլվովցիք, որ լաւ գիտէին Նիկոլի կեղծաւորութիւնն ու անզգամութիւնը, ամենևին հաւատ չընծայեցին նորա տուած խոստումներին, և ոչ միայն հաշտուիլ՝ այլ երեսն անգամ տեսնել չէին ուզում. կաթողիկոսի նուիրակը շատ աշխատեցաւ, մինչև որ յաջողեցաւ ժողովրդի բարկութիւնը իջեցնել և Նիկոլին իւր հօտի հետ հաշտեցնել։

Նիկոլ յոյսը կտրելով այնուհետև իւր ժամանակի ժողովրդին կաթոլիկ դարձնելու՝ մտածեց բանն այնպէս տանել, որ գոնէ նոցա որդիքը իրանց կրօնը թողնեն և ինքը իւր նպատակին հասնի. Նա առաջարկեց Աղեքսանդր Է պապին՝ որ Իլվովում Հռոմի ծախքով մի դպրանոց հիմնուի, ուր հայ մանուկները կաթոլիկական հոգւով կրթուին։ Դպրանոցը բացուեցաւ 1664-ին, և Նիկոլ իւր բոլոր խնամքը դարձրեց պասլականութեան այս սերմնարանի վրայ մինչև իւր մահուան տարին (1681)։ Նորան յաջորդեց Յովհաննէս Քարմատանեանց,

որ միայն երեք տարի առաջնորդութիւն արաւ, և ապա եկաւ Վարդան Յունանեան ազգուրաց կրօնաւորը՝ Պրոպագանդայի ու Նիկոլի աշակերտը։ Սա իւր նախորդի տուած խոստումը մի կողմը դնելով, ինքնակամ բաժանեց Լվովի հայ ժողովրդին էջմիածնի կաթողիկոսի հաղորդակցութիւնից և Հռոմի եկեղեցու հետ միացեալ հրատարակեց (1689)։— Այսօր Գալիցիայում 5,000-ի չափ կաթոլիկ հայ կայ, որ բնակւում են Լէնբէրգում և մի քանի ուրիշ քաղաքներում։ Ժամերգութիւնը հայերէն լեզուով է կատարվում, բայց ոչ ժողովուրդն է հասկանում այդ լատին հնչմամբ աղաւաղեալ հայերէնը, և ոչ իսկ շատ անգամ ժամասաց քահանան։

---

## 80.

*Հնդկաստանի հայ գաղթականութեան ծագումը և յառաջադիմութիւնը.—Հնդկահայոց ուսումնասիրութիւնը և մեծագործութիւնը.— Բարերար Հնդկահայք.— Հոլլանդական երկրների Հայք.—Հնդկահայոց այժմեան վիճակը։*

Հնդկաստանի հայ գաղթականները Պարսկաստանի գաղթականութեան մի ճիւղն են համարվում, որոնք Աֆղանիստանի վրայով կամ Պարսկային ծոցով անցան Հնդկաստան, և դեռ Անգլիացիք այդ երկիրը ոտք կոխած չէին՝ որ նորա այլևայլ կողմերը բռնեցին իրանց առուտուրով։ Գաղթականութեան բունը կազմեցին մի խումբ Նոր-Ջուղայեցի վաճառականներ, որոնց թիւը աճեցաւ ուրիշ տեղերից հետզհետէ եկած և նոցա հետ խառնուած ազգակիցներով։ Հնդկահայք թէև սակաւա-

թիւ՝ (ըստ ոմանց 20,000, և ըստ այլոց միայն 10,000)՝ բայց իրանց ճարպիկութեամբ և երկրի [թագաւորներից] ձեռք բերած արտօնութիւնների շնորհով՝ շուտով յառաջացան և մեծ անուն հանեցին թէ վաճառականութեան և թէ քաղաքական ու զինուորական պաշտօնների մէջ. այնպէս որ նոցա ազդեցութիւնը մեծ եղաւ տեղական ազգաբնակութեան վրայ։ Հայ գաղթականների կենտրոնատեղիքն էին այն ժամանակ Սուրատ, Մադրաս, Կալկաթա, Չիչրա և Սէրամպատ։

Երբ Անգլիացիք սկսան յարաբերութեան մէջ մտնել Հնդկաստանի հետ, Հայերը պատուաւոր միջնորդների դեր կատարեցին այս հզօր ազգի և տեղական իշխանների մէջ, որով հաւասարապէս պատկառելի եղան թէ Անգլիացոց և թէ Հնդկաց։ Արևելեան Հնդկաստանի ընկերութեան մի հրովարտակից երևում է որ Հայք մասն ունէին այդ ընկերութեան գործերի և նպաստների մէջ, և իբրև ազատ ազգ լիակատար արտօնութիւն ունէին Հնդկաստանի զանազան կողմերը նաւելու նոյն ընկերութեան նաւերով։ Նոյնպէս կարող էին երթևեկութիւն անել անխտիր ամեն գաւառները, բնակութիւն հաստատել ուզած քաղաքներում, գնել ու վաճառել շարժական և անշարժ կալքեր։ Այս հրովարտակի մէջ կարդացվում են, իմէջ այլոց, հայազգի Բենամին նախարարի, Յեսու փոխանակ-նախարարի և երեք ուրիշ արքունի անձանց ստորագրութիւնները, որոնք հաստատում են թէ ինչ փառասիրութեան հասած էին Հայք Հնդկաց աշխարհում։

Տնտեսական ապահովութեան և քաղաքական փայլուն դիրքի արդիւնքն եղան Հնդկահայոց մտաւորական զարգացումը և այն հասարակային հաստատութիւնները,

որոնց փառաւոր հետքերը մինչև այսօր տեսնվում են։ Հնդկաստանում, ուր մարդկութիւնը կիսավայրենի վիճակի մէջ ընկած էր և ուր ոչ ոք չէր մտածում դաստիարակութեան վրայ, Հայք եղան որ ամեն ազգերից առաջ բաց արին ուսումնարաններ ու տպարաններ, հրատարակեցին գրքեր ու լրագիրներ, հիմնեցին մարդասիրական հաստատութիւններ։ Չինսուրայի Հայոց եկեղեցին, որ շինուեցաւ 1695-ին, քրիստոնէական տաճարների մէջ հնագոյնն է համարվում։ Կալկաթայում, ուր միայն 70—80 տուն Հայք կային, մի առանձին թաղի մէջ, որ մինչև այսօր «Հայոց թաղ» է կոչվում, բարձրանում է Ջուղայեցի Խօջա Նազարէթի շինած Ս. Նազարէթ հոյակապ եկեղեցին իւր գեղեցիկ զանգակատնով, որի ճակատը երգեցիկ ժամացոյցով զարդարուած է։ Պարսպի մէջ կայ մի կրկնայարկ տուն քահանաների բնակութեան համար. իսկ պարսպից դուրս կայ մի ուրիշ կրկնայարկ մեծ շինութիւն բազմաթիւ խանութներով, ինչպէս և մի քարաշէն բաղանիք, որ Հայոց եկեղեցու սեպհականութիւններ են։ Փոքր ինչ հեռու գտնվում է «Հայոց հիւրանոցը», որի մէջ պանդուխտ Հայերը այսօր իսկ իրաւունք ունին երեք ամսի չափ ձրի բնակելու։ Բացի սրանից, Կալկաթայում Արարատեան ընկերութեան ջանքով հիմնուեցաւ «Մարդասիրական ճեմարանը» իւր տպարանով, որի մէջ ներկայ դարու կէսերին տպվում էր «Ազգասէր» օրագիրը Մեսրոպ Թաղիադեանի խմբագրութեամբ։ Կալկաթայի հետ մրցում է Մադրասը իւր դպրոցով, տպարանով, հիւրանոցով ու հիւանդանոցով և Ս. Աստուածածնի փառաւոր եկեղեցով, որ Պետրոս Ոսկանեան հայազգին շինել տուեց ըստ աւանդութեան Թոմաս առաքեալի Նա-

հաստատուած տեղը. Թող ուրիշ քաղաքները, ուր հայ գաղթականների մեծագործութեան յիշատակները դեռ կանգուն մնացած են։

Հնդկաստանի Հայոց մի մեծ արժանիքն էլ այն է, որ բոլոր հայ գաղթականութիւնների մէջ ամենից առաջ նոքա իրանց մասնաւոր շրջանից դուրս՝ ընդհանուր ազգային շահերի վրայ մտածեցին։ Ահագին հարստութիւն դիզելով և փարթամ կեանք վարելով այն հեռաւոր օտարութեան մէջ, նոքա չմոռացան մայր հայրենիքը և զանազան փորձեր արին իրանց ազգակիցներին տգիտութիւնից ազատելու համար։ Սամուէլ Մուրատեան Մատրասի հայ վաճառականը մի մեծ գումար կտակեց, որի տոկոսով գիշերօթիկ վարժարան պահուի ազգի որբ ու աղքատ զաւակների համար, և վարժարանի ուսումնական և տնտեսական մատակարարութիւնը Վենետիկի Մխիթարեան միաբանութեանը յանձնեց։ Մուրատեան վարժարանը բացուեցաւ նախ Իտալիայի Պադուա քաղաքում, ապա տեղափոխուեցաւ Փարիզ, ուր և մի քանի կարգ ընտիր աշակերտներ հանեց։ Սամուէլ Մուրատեանի օրինակին հետեւելով, մի ուրիշ հնդկաստանցի հայ վաճառական, Եդուարդ Ռափայէլ Ղարամեան, կտակով մեծ գումար թողած է, որով իւր անուամբ Վենետիկի մէջ հիմնուեցաւ Ռափայէլեան վարժարանը՝ նոյն պայմաններով և նոյն միաբանութեան տեսչութեան ներքոյ։ 1870-ին Մուրատեան վարժարանը տարուեցաւ Վենետիկ և միաւորուեցաւ Ռափայէլեան վարժարանի հետ։ Այս այնքան ցաւալի չէ, որքան այն անիրաւութիւնը, որ չքաւոր հայ պատանիները անխտիր չեն վայելում բարերարների շնորհը, այլ միայն հռոմէադաւան Հայք։ Ուրիշ շատ բա-

բարերարներ եղած են Հնդկահայոց մէջ, որոնք կտակներ թողել են ազգային նպատակների համար. այդ կտակների ոմանց արդիւնքը ներկայումս վայելում են այլևայլ հայ հաստատութիւններ, բայց շատ կան որ անհոգաբար տակաւին անգործադրելի մնացած կամ բոլորովին մոռացութեան տրուած են։

ԺԹ. դարու սկզբին հայ գաղթականները անգլիական Հնդկաստանից տարածուեցան հոլանդական երկըրները, և մասնաւորապէս Ջաւա կղզին, ուր նոյնպէս մեծ պայծառութեան հասան և այլևայլ մարդասիրական հաստատութիւններ հիմնեցին։ Սոցանից այս դարու առաջին քառորդին նշանաւոր եղած է իւր անբաւ հարստութեամբը Գէորգ Մանուկեան, որի համար պատմւում է թէ երբեմն մեծամեծ գումարներ փոխ տուած է Հոլանդացոց տէրութեան։ Սորա ժամանակակից և երկրակից էր Ցովսէփ Ամիրխան մեծ կալուածատէրն ու վաճառականը, որ 1825-ի Ջաւացոց ապստամբութեան ժամանակ մեծ ծառայութիւններ է արել Հոլլանդացոց։

Այսօր Հնդկահայք առաջուան յաջողութեան մէջ չեն, մասամբ որովհետև չկարողացան մրցել Անգլիացոց հետ, մասամբ էլ որովհետև ուրիշ տեղեր ցրուեցան. շատ տարի չէ որ հայ վաճառականների մի ընկերութիւն անցաւ Չինաստան և այնտեղ հաստատուեցաւ։ Բայց դեռ շատ առևտրական հայ տներ կան Հնդկաստանի Բոմբայ, Կալկաթա, Մադրաս, Բատաւիա և Սինգափոր քաղաքներում, որոնք Անգլիացոց իշխանութիւնից անկախ տեղերի վաճառականութեան մեծ մասը իրանց ձեռքում պահած են։

---

## Ե. ՀԱՅՈՑ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՌՈՒՍԱՑ ՀԵՏ.—ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԱՅՔ

## 81.

*Հայոց առաջին յարաբերութիւնները Ռուսաց հետ.—Ռուսաց արքունիքի քաղաքականութիւնը Հայոց վերաբերմամբ.—Պարսկաստանի Հայոց առևտրական դաշնադրութիւնը Ռուսաց տէրութեան հետ* (1659).—*Պետրոս Մեծի Հայոց ցոյց տուած պաշտպանութիւնը.—Ղարաբաղի մէլիքների քաղաքական յարաբերութիւնները Պետրոս կայսեր հետ. Իսրայէլ Օրի և Մինաս վարդապետ.—Մէլիքների ներքին երկպառակութիւնները.—Կատարինէ Բ-ի խնամքը Հայոց վրայ.-Մէլիքների հաւատարմութեան երդումը Ռուսաց տէրութեան* (1787).—*Աղա-Մահմատ-խանի արշաւանքը Հայաստան և Վրաստան* (1795—1797).

*Հայոց յարաբերութիւնները Ռուսաց հետ շատ հին ժամանակներից են սկսում, երբ որ դեռ Ռուսները իրանց երկրում ամփոփուած և այլևայլ իշխանութիւնների բաժանուած էին։ ԺԱ դարու կէսերին Աղէքսանդր Կիեվի մեծ իշխանը Լեհաց դէմ պատերազմ ունենալով, Նախոտի Հայոց օգնութեան կանչեց, կրօնի, վաճառականութեան և արհեստների ազատութիւն խոստանալով նոցա, և Հայք նորա հրաւէրը ընդունեցին* (1060)։ *Կէս դար յետոյ արդէն հայ գաղթականների թիւը բաւական մեծ էր Կիեվում, ուր մի քարաշէն եկեղեցի էլ ունէին։ Հայերը այդ ժամանակները ոչ միայն վաճառականութեան և գինուորական գործերի մէջ անուն հանած էին, այլև արքունի ամենահմուտ բժշկներն էին։*

*Ռուսաց տէրութիւնը հայ ազգի նկատմամբ հետևեալ քաղաքականութեան հետևեցաւ։ Աչքի առաջ ունե-*

*նալով իւր երկրի վաճառականութեան ու արուեստների բարգաւաճումը և իւր ապագայ աշխարհակալութիւնները Ասիայում, ռուս պետութիւնը անցեալ երկու դարերում պաշտպան ու բարեկամ հանդիսացաւ Հայոց։ Ռուսաց թագաւորները մեծամեծ խոստումներ տուին Հայոց, արտօնութիւններ շնորհեցին, աստիճաններ ու պատուանշաններ բաշխեցին որպէս զի նոցա համակրութիւնը գրաւեն։*

*Պարսկաստանի հայ վաճառականների ընկերութիւնը* 1659-*ին մի պատուաւոր պատուիրակութիւն ուղարկեց Ռուսաստան, որ Ալեքսէյ Միխայլովիչ թագաւորին գոհարեղէններով զարդարուած մի ոսկի գահ ընծայ բերեց, գործ հայ արուեստագէտների, որ մինչև այժմ պահվում է և միայն մեծամեծ հանդէսների ժամանակ դուրս է բերվում։ Այս բանի վրայ մի առևտրական դաշն կնքուեցաւ Ռուսաստանի և յիշեալ ընկերութեան մէջ, որի զօրութեամբ Հնդկաստանի ու Պարսկաստանի թանկագին ապրանքները սկսան Ռուսաց երկիրը թափուիլ Պարսկային ծոցով, Սպահանի և Կասպից ծովի վրայով։ Բազմաթիւ հայ վաճառականներ եկան բնակեցան Նովգորոդ, Արխանգէլ, Մոսկուա և փոքր ինչ յետոյ Պետերբուրգ, և առևտրական տներ հաստատեցին յիշեալ քաղաքներում։ Նոքա վաճառում էին Ռուսաստանում գոհարեղէններ և մետաքսեղէններ, անուշահոտ խունկեր ու համեմներ. իսկ այդ երկրից դուրս էին տանում թանկագին մուշտակներ և մետաղներ։*

*ԺԸ դարու սկզբին Պետրոս Մեծը աւելի հեռու գնաց։ Առանձին հրովարտակով նա պատուիրեց Ծիրակուտին պաշտպանել Պարսկաստանի Հայոց և ամեն մի-*

ջոց գործ դնել նոցա Ռուսաստան քաշելու համար։ Մի ուրիշ հրովարտակով, Պետրոս Սպրօ զմիւռնիացի հարուստ վաճառականի անուամբ տուած, Թուրքիայի Հայոց ճանապարհ էր բաց անում դէպի Ռուսաստան։ Այնուհետև շատ հայեր Լեհաստանից, Պարսկաստանից ու Տաճկաստանից անցան Ռուսաստան և իրանց վաճառականութեամբ, արհեստներով ու երկրագործութեամբ նոյն երկիրը պայծառացրին։ Սափար Վասիլեան հայազգին առաջինն եղաւ որ Պետրոսի օրով թթենիներ տնկեց Թէրէքի ափերի վրայ և նոյն տեղում առաջին մանաքանը հաստատեց։ Նոյնպէս յայտնի է թէ Հայք են եղել, որ Պետրոս կայսեր յորդորանքով առաջին մետաքսի գործարանները հաստատեցին Ռուսիայում և կերպասեղէն գործել սովորեցրին Ռուսաց։

Ահա այդ ժամանակները սկսում են Ղարաբաղի մէլիքների քաղաքական յարաբերութիւնները Ռուսաց արքունիքի հետ։ Ղարաբաղը ԺԸ դարու սկզբին բաժանուած էր հինգ գաւառների՝ Ջրաբերդ, Գիւլիստան, Վարանդա, Խաչէն և Տիզակ կամ Դուզախ, իւրաքանչիւրը մի մի հայ մէլիքի իշխանութեան տակ։ Բնակիչների թիւը 300,000 էր, որոնցից երկու մասը հայ, և մի մասը թուրք կամ պարսիկ։ Օգուտ քաղելով Պարսկաստանի անկեալ վիճակից, Ղարաբաղի մէլիքները մտածեցին օտարական լուծը թօթափել և մտնել մի քրիստոնեայ տէրութեան հովանաւորութեան ներքոյ։ Այս դիտաւորութեամբ նոքա մի գաղտնի դեսպանութիւն ուղարկեցին Եւրոպա, քրիստոնէական աշխարհի համակրութիւնն ու օժանդակութիւնը խնդրելու։ Դեսպանութեան գլուխն էին Իսրայէլ Օրի անունով հնդկաստանցի

հայ և Մինաս վարդապետը, որոնք օգնութեան խոստումն առին Բաւարիայի կայսրընտիր իշխանից և նորա յանձնարարական թղթովն ուղարկուեցան Պետերբուրգ Պետրոս Մեծի գործակցութիւնը խնդրելու համար (1706)։ Կայսրը այս գործի մէջ Ռուսաստանի ազդեցութեան և ապագայ աշխարհակալութիւնների գրաւականը տեսնելով, ուրախութեամբ ընդունեց եղած առաջարկութիւնը։ Անմիջապէս Իսրայէլ Օրին ուղևորուեցաւ Արևելք իբրև դեսպան Հիւսէին շահի մօտ, բայց իրօք Պարսկաստանի վիճակն իմանալու և Հայոց ապստամբութիւնը պատրաստելու համար։ Իսկ Մինաս վարդապետը մնաց Ռուսաստան և այնտեղ բանակցութիւնները շարունակում էր Գանձասարի վանքի հետ, ուր հայ մէլիքները ժողովում էին իրանց խորհուրդների համար։ Օրին դեռ Սպահան չհասած՝ մեծ խլրտում ընկաւ շահի պալատում, պարսիկ ժողովրդի և Հայոց մէջ։ Այս վերջինների ուրախութեանը չափ չկար. նոքա դուշակում էին արդէն Պարսից տէրութեան անկումը։ Պարսիկները մոլլաներից գրգռուած՝ պահանջում էին որ կայսեր դեսպանը չընդունուի. ամբոխի զայրոյթը գրգռում էին նոյնպէս եւրոպացի վաճառականները, որոնք վախենալով թէ մեծ վնասներ կը կրեն եթէ Հայոց ազդեցութիւնը զօրանայ, հաւատացնում էին թէ արդարև Իսրայէլ Օրին թագաւոր պիտի դառնայ, և թէ այդ ապացուցանում են նոյն իսկ նորա անուան (Israel Ori) տառերը, որոնք յետ ու առաջ դասուելով՝ կազմում են ֆրանսերէն il sera roi (նա թագաւոր կը լինի) բառերը։ Օրին շահից ընդունուելուց յետոյ՝ վերադարձաւ և յայտնեց կայսեր թէ

Հայերը պատրաստ են և միայն մի նշանի են սպասում ապստամբութիւնը սկսելու համար։

Այդ միջոցում տեղի ունեցաւ Աֆղանների ապստամբութիւնը, որի հետևանքն եղաւ Հիւսէյին շահի գահընկեցութիւնը և Կովկասեան լեռնականների Պարսկաստան արշաւելը։ Ղարաբաղը յարմար ժամանակ համարեց անկախութեան դրօշակը բարձրացնել, մանաւանդ որ Պետրոս կայսրն էլ եկել էր Դէրբէնդ։ Հայ մէլիքները Վրաց Վախթանկ թագաւորի հետ միաբանած՝ 40,000 զօրքով գնացին նորան դիմաւորելու Կուր գետի ափերի վրայ. երկու միճակակից ազգերը յոյս ունէին վերջապէս հզօր կայսեր օգնականութեամբ իրանց հայրենիքը դարաւոր բռնակալութիւնից ազատել։ Բայց Պետրոս Դէրբէնդը, Բաքուն և Գիլանը գրաւելուց յետոյ՝ դարձաւ իւր մայրաքաղաքը և Հայերը մենակ մնացին իրանց թշնամիների առաջ։ Ռուսաց միջամտութիւնը արևելեան գործերի մէջ սաստիկ գայրացրեց Օսմանցոց, որոնք կայսեր յետ քաշուելուց խրախուսուած՝ ընկան պարսկական նահանգների վրայ։ Մէլիքները իրանց երկրում և Դաւիթ Բէկ Հալիձորի առաջ մի քանի տարի քաջութեամբ պաշտպանուեցան նոցա դէմ, և այդ միջոցին անդադար դեսպանութիւններ էին ուղարկում Ռուսաց արքունիքից օգնութիւն խնդրելու. բայց ցանկացած օգնութիւնը չհասաւ, և Հայերը ընկճուելով՝ պարտաւորուեցան նախ Օսմանցոց և ապա Նադըր-շահի գերիշխանութիւնը ճանաչել։ Այս աշխարհակալ թագաւորը մէլիքներին իրանց իշխանութեան մէջ հաստատեց կրկին նպատակով, նախ՝ որպէս զի իւր թագաւորութիւնը ճանաչեն և երկրորդ, որպէս զի Ռուսաց արքունիքից հեռու պահէ նոցա։

Նադըր շահի մահից յետոյ Պարսկաստանը դարձեալ անիշխանութեան մատնուեցաւ (1747)։ Այդ ժամանակները Ղարաբաղի մելիքների մէջ էլ մի մեծ գժտութիւն ընկաւ, որ երկար տարիներ տեւեց և աղէտալի հետեւանքներ ունեցաւ Հայոց անկախութեան համար։ Վարանդայի մելիք Շահնազարը իւր անդրանիկ եղբօրը սպանելով՝ յափշտակեց նորա իշխանութիւնը։ Միւս մելիքները այս եղեռնագործութեան վրէժն առնելու համար՝ միաբանեցան և իրանց զէնքերը դարձրին եղբայրասպանի դէմ։ Շահնազարը միաբանեալ մելիքների զօրութեան դէմ դնելու համար՝ բարեկամացաւ Ջիւանշիրների առաջնորդ Փանահ խանի հետ, և Շուշուայ բերդն ու իւր հարազատ աղջիկը նորան կնութեան տուեց։ Այսպիսով մի արիւնահեղ պատերազմ սկսուեցաւ մէկ կողմից մելիք Շահնազարի և Փանահ խանի, և միւս կողմից Ջրաբերդի մելիք Ադամի և Գիւլիստանի մելիք Յովսէփի մէջ։ Տասներկու տարի անընդհատ երկու կողմի պատերազմողների երկրները ոտնակոխ եղան, մինչև որ վերջապէս Ադամ և Յովսէփ ընկճուեցան և քաշուեցան Վրաստան. Փանահ խանն էլ նոցա երկրներին տէր եղաւ։ Մի քանի տարուց յետոյ՝ Ադամ և Յովսէփ Գանձակի խանի միջնորդութեամբ հաշտուեցան Փանահի հետ և նորա իշխանութիւնը ճանաչելով՝ իրանց երկրները յետ ստացան։

Այդ ժամանակները Ռուսաց գահի վրայ բարձրացաւ Կատարինէ Բ կայսրուհին (1762), որ Պետրոս Մեծի օրինակին հետեւելով՝ սկսեց ուշադրութիւն դարձնել Հայոց և Հայաստանի վրայ։ Բայց այս անգամ խնդիրը այլևս Հայաստանի անկախութեան վրայ չէր, այլ Ռուսաստանի անբնակ տեղերը հայ գաղթականներով շէնացնելու,

մինչև որ հանգամանքները թոյլ տային քրիստոնեայ հայ-
նահանգները մահմէտականների ձեռքից կորզել: 1779-ին,
քանի որ դեռ Խրիմը Օսմանցոց տիրապետութեան ներ-
քոյ էր, 15,000 հայ կայսրուհու հրաւիրանօք գաղթե-
ցին յիշեալ թերակղզուց և երկու քաղաք հիմնեցին Ռու-
սաց հովանաւորութեան տակ, մէկը Նոր-Նախիջևան
Դօն գետի վրայ, միւսը Գրիգորիոպօլ՝ Բեսարաբիայի նա-
հանգում: Գաղթականները զանազան արտօնութիւններ
ստացան տէրութիւնից, ինչպէս որոց և իրանց առանձին
դատարանն ունենալու իրաւունքը: Միևնոյն ժամանակ
հայ գաղթականների թիւը օրըստօրէ աճում էր Ռու-
սաստանի ուրիշ քաղաքների մէջ: Աժտէրխանում այդ
ժամանակները կային 5,000 Հայք, Ղզլարում 4,000 և
Մոզդոքում 2,000, որոնք ընդհանրապէս պարապում էին
նաւաշինութեամբ Կասպից ծովի նաւարկութեան համար,
շերամապահութեամբ, այգեգործութեամբ և բրինձի մշա-
կութեամբ, և մեծ առևտուր ունէին Կովկասեան լեռ-
նականների համար:

Օգուտ քաղելով Պարսկաստանի ազմկալի վիճակից,
Կատարինէ կայսրուհին զօրք ուղարկեց և նորից գրաւեց
Դէրբէնդը, Բաքուն և Շամախին, որ նադրի շահը յետ
էր առել Ռուսներից, և այսպիսով Ղարաբաղի մէլիք-
ները իրանց աչքերը վերստին դարձրին Ռուսաց պետու-
թեան վրայ: Բանակցութիւնները նոր եռանդով սկսան
Արղութեան Յովսէփ արքեպիսկոպոսի միջնորդութեամբ,
որ այն ժամանակ Ռուսաստանի Հայոց առաջնորդու-
թիւնն էր վարում: Ջրաբերդի մէլիք Մէջլումը (Աղամի
որդին), Գիւլիստանի մէլիք Աբովը (Յովսէփի որդին) և
Դուզախի մէլիք Բախդամը ուսս կործականների խոս-

տումներից յորդորուած՝ Գանձասարի Յովհաննէս կաթողիկոսի միջնորդութեամբ հաւատարմութեան երդմնաթղթեր ուղարկեցին Ռուսաց տէրութեանը (1787)։ Իբրահիմ, Փանահ խանի որդին, այս բանն իմանալով՝ կաթողիկոսին թունաւորել տուեց և մէլիքների երկրները քարուքանդ արաւ։ Անթիւ Հայեր կատաղի խաներին զոհ եղան, ուրիշ շատերն էլ ստիպուեցան քրիստոնէութիւնն ուրանալու կամ գաղթելու Դէրբէնդ, Աժտէրխան, Ղզլար, Սղնախ և Թիֆլիս։

Այս միջոցում Աղա-Մահմատ-խան ներքինին Պարսից ներքին խռովութիւնները զսպելով՝ թագաւոր էր նստել Թէհրանում։ 1795-ին այս ահարկու մարդը արշաւեց Ղարաբաղ Իբրահիմ խանի վրայ, որ մերժել էր նորա իշխանութիւնը ճանաչելու։ Դեռ Երասխ գետը չանցած՝ մարդիկ ուղարկեց Հայոց մէլիքներին որ գան հպատակեն իրան, խոստանալով որ կը վերահաստատէ նոցա իրանց վաղեմի իշխանութեան մէջ և Իբրահիմ խանին կ՚ոչնչացնէ։ Մէլիքները, որոնք դեռ յոյս ունէին քրիստոնեաների օգնութեամբ իրանց հայրենիքը մահմէտականների լծից ազատել, լաւ համարեցին հաւատարիմ մնալ Ռուսաց. ուստի առժամանակ միաբանեցան իրանց ոխերիմ թշնամի Իբրահիմ խանի հետ, և քաջութեամբ պաշտպանուեցան Շուշուայ բերդի մէջ։ Շահը ժամանակ չկորցնելու համար՝ անցաւ Վրաստան Հերակլ թագաւորին պատժելու, որ իւր երկիրը Ռուսաց հովանաւորութեան տակ էր դրել, թողնելով որ յետոյ իւր վրէժն առնէ բերդականներից։ Վրաց թագաւորը թեթև ընդդիմութիւնից յետոյ փախաւ և Թիֆլիս մայրաքաղաքը մատնեց Պարսից կատաղութեանը, որոնք երեք օր

երեք գիշեր ամեն տեսակ անօրէնութիւններ գործեցին. 16,000 տղայ ու աղջիկ, որոնցից 12,000 հայ և 4,000 վրացի գերի տարուեցան Պարսկաստան։ Քիչ յետոյ Աղա-Մահմատ-խանը նոր զօրութեամբ եկաւ Շուշի բերդի վրայ, որ այս անգամ առանց ընդդիմութեան իւր դըռները բաց արեց։ Մինչ բանտարկեալ հայ մեծամեծները մահուան էին սպասում, ինքը ներքինի շահը գիշերով սպանուեցաւ իւր սենեկապետի ձեռքով, և Պարսից զօրքերը քաշուեցան իրանց երկիրը (1797)։

Այս անցքերի լուրը Ռուսաստան հասնելով, Պօղոս Ա կայսրը հրաման ուղարկեց Պոտեօմկին զօրապետին Ղարաբաղը զօրքով բռնելու. մի ուրիշ բանակ էլ Վրաստանը գրաւեց։ Այդպիսով Պարսից Հայաստանի մի մասը ԺԸ դարու վերջին Ռուսաց ձեռքն անցաւ։

---

## 82.

Պարսից յարձակումները Ռուսաց գրաւած երկրների վրայ. Գիւլիստանի դաշնադրութիւնը (1813).—Աբաս-Միրզայի նոր արշաւանքը (1826). Շուշիի պաշարումը.—Մատաթեանի յաղթութիւնները Շամքորի և Գանձակի առաջ.—Ռուսները Պարսից Հայաստանում (1827). Պասկևիչի յաղթութիւնները.— Ռուսաց նոր յաջողութիւնները Ատրպատականում. Թուրքմէնչայի հաշտութիւնը և Ատրպատականի Հայոց Ռուսաց երկիր գաղթելը (1828). — Ռուս-տաճկական պատերազմը (1828— 1829). —Ադրիանուպօլսի հաշտութիւնը։—Տաճկահայքից դուրս եկած գաղթականութիւնը (1830)։

Պարսիկները չէին կարող հեշտութեամբ մոռանալ իրանց կորցրած երկրները, որոնց Ռուսները տիրել էին առանց մի կաթիլ արիւն թափելու։ Թէև Աղա-Մահմատ-

խանի յաջորդը, Ֆաթալի շահը, խաղաղասէր մարդ էր, բայց նորա երէց որդին, անձնավստահ Աբաս-Միրզան, Ռուսաց յետ մղելու յուսով՝ զէնք առաւ։ Կռիւը մի քանի տարի տեւեց և մեծ վնաս հասցրեց նոր գրաւած երկըրների ժողովրդներին։ Ռուսները թէև սակաւաթիւ էին, բայց ի վերջոյ խորտակեցին Պարսից զօրութիւնը։ Այս հակառակութիւնների ժամանակ Հայերը մեծ օգնութիւններ արին իրանց նոր տէրերին, պատերազմի ժամանակ նոցա հետ հաւասար արիւն թափելով և հացի պակասութեան ժամանակ պաշար հասցնելով։ Աբաս-Միրզան ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել և Գիւլիստանի դաշնադրութեամբ Ղարաբաղը և մի քանի ուրիշ գաւառներ Ռուսաց թողնել (1813)։

Բայց այս հաշտութիւնը Պարսից կողմից լոկ մի զինադադար էր։ Աբաս-Միրզայի միտքն այն էր, որ իւր ոյժերը կազդուրէ և նորոգուած զօրութեամբ յարձակում գործէ թշնամիների վրայ։ 1826-ի ամառը Պարսից արքայորդին 80,000 զօրքով անցաւ Երասխը և Ղարաբաղ մտնելով Շուշին պաշարեց. մի զօրաբաժին էլ ուղարկեց Գանձակի կողմերը, որ նոյն քաղաքի բերդին տիրելուց յետոյ՝ յառաջացաւ մինչև Շամքորի գետը և այնտեղ սպասեց Պարսից գլխաւոր բանակին, որ միաբան զօրութեամբ Թիֆլիսի վրայ երթան։ Բայց Շուշիի պաշարումը անյաջող էր գնում։ Թէև բերդի մէջ մի բուռն ռուս զօրք կար միայն, որ ոչ բաւական պաշար և ոչ հրանօթներ ունէր, բայց Հայերը բերդապահ զօրքի հետ միանալով՝ քաջութեամբ պաշտպանվում էին թշնամիների դէմ. մինչև անգամ հայ կանայք և աղջիկունք պատնէշների վրայ կանգնած օգնում էին պաշարեալներին,

կռուի ժամանակ փամփուշտներ բաժանելով նոցա։ Պարսից արքայորդին զանազան խոստումներով փորձեց համոզել Հայոց որ Ռուսներից բաժանուին և բերդն իրանց յանձնեն. բայց Հայերը անյողդողդ մնացին իրանց հաւատարմութեան մէջ։

Այս միջոցին Մատաթեան հայազգի իշխանը մի գունդ ռուս զօրքով Թիֆլիսից ուղարկուեցաւ Պարսից արշաւանքի առաջն առնելու։ Հասնելով Շամքոր, նա այնպիսի ջարդ տուեց թշնամիներին, որ սարսափած փախան իրանց բոլոր ռազմամթերքը յաղթողին թողնելով։ Մատաթեան Պարսից ետևից ընկաւ, որ ժամանակ չտայ նոցա Գանձակի մօտ կանգ առնելու, ուր կարող էին իրանց պարտութեան վրէժը տեղացի Հայերից հանել։ Այստեղ նա Հայերից իմացաւ որ Աբաս-Միրզան իւր զօրքի մի մասը Շուշուայ բերդի մօտ թողնելով՝ շտապով գալիս է իւր վրայ։ Ճակատամարտը տեղի ունեցաւ Գանձակի մօտերը. Պարսիկները, չնայելով իրանց ահագին բազմութեանը, չարաչար յաղթուեցան և հալածուեցան, մինչև իրանց երկրի սահմանները։

Նիկողայոս կայսրը այս յաղթութիւններով չբաւականանալով, պատուէր ուղարկեց Կովկասեան բանակին որ Պարսից երկիրը արշաւէ։ Մատաթեան իւր ձեռքի տակ ունեցած սակաւաթիւ զօրքով և հայ կամաւորների օգնութեամբ անցաւ Ղարաբաղ և յաղթութեամբ հասաւ մինչև նոյն նահանգի գլխաւոր քաղաքը՝ Ահար։ Իսկ Ռուսաց գլխաւոր բանակը Պասկևիչ զօրապետի ընդհանուր հրամանատարութեան ներքոյ պարսկական Հայաստանը մտաւ. նորան ընկերանում էր Վրաստանի Հայոց առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոս Աշտարակեցին, որ ձի

նստած և խաչը ձեռին՝ առաջնորդում էր Հայոց կամաւորների գնդին (1827)։ Հայերը Պարսից գարաւոր բռնութիւններից զզուած լինելով, գրկաբաց ընդունեցին Ռուսաց և ամեն հարկաւոր օգնութիւններն արին նոցա։ Մէկ կողմից Բէնկէնդորֆ զօրավարը իւր գումարտակով դէպի Երասխ գետը յառաջացաւ և Էջմիածնին տիրեց. իսկ միւս կողմից Պասկևիչ զօրապետը մինչև նոյն գետը առաջ գնալով՝ Նախիջևանն առաւ և Աբասապատ բերդը պաշարեց։ Պարսիկները իրանց ձախորդութիւնների վրէժը Հայերից հանեցին՝ նոցա գիւղերը թալանելով ու այրելով, բնակիչներին էլ Երասխի միւս կողմը քշեցին. բայց և այնպէս շատ Հայեր ամեն վտանգ աչքերն առած՝ առաջնորդում էին Ռուսաց անծանօթ ճանապարհներով, թշնամիների բոլոր շարժումները հասցնում էին նոցա, և մինչև իսկ պատերազմի դաշտումն էին խառնվում, Պարսիկները Աբաս-Միրզայի առաջնորդութեամբ խըմբուեցան Ջէվանբուլաղի առաջ, ուր Պասկևիչը նոր յաղթութիւն տարաւ նոցա վրայ և նոյն բերդն էլ զօրքով գրաւեց։ Ապա իւր ընթացքը շարունակելով՝ Սարդարապատ բերդին տիրեց և բանակ դրեց Երևանի առաջ, որ կարճատև պաշարումից յետոյ անձնատուր եղաւ (1 հոկտ.)։

Այս յաղթութիւններից յետոյ Ռուսները անցան Ատրպատական և Մարանդ ու Թաւրիզ քաղաքներին տիրելով՝ կամեցան հաշտութիւն անել պարսից հետ։ Բայց Ֆաթալի շահը նոցա առաջարկութիւնը մերժեց, ուստի Պասկևիչ իւր յաղթական արշաւանքը առաջ տարաւ և Ուրմիոյ ու Արդեբիլ բերդերին էլ տիրեց։ Այն ժամանակ Պարսից թագաւորը ստիպուեցաւ Նիկողայոս կայսեր առաջարկած հաշտութեանը զիջանիլ և Թուրքմէնչայի

դաշնագրութիւնը ստորագրել, որի գլխաւոր պայմաններն էին՝ Ա. Երասխ և Կուր գետի մէջ եղած Հայաստանի մասը Ռուսաց թողնել և Բ. Պարսկաստանից Ռուսաստան գաղթել կամեցողներին ոչինչ արգելք չդնել (1828 փետրվարի 10)։

Վերջին պայմանը գլխաւորապէս Ատրպատականի Հայոց էր վերաբերում։ 40,000 հայ Լազարեան Լազար գնդապետի յորդորմամբ թողին իրանց տուները և անցան Ռուսաց նոր տիրած Նախիջևանի ու Երևանի գաւառները։ Զուր եղան Աբաս-Միրզայի բոլոր ջանքերը գաղթողների միտքը փոխելու, ներկայացնելով նոցա այսպիսի տեղափոխութեան նեղութիւնները և այն աղքատութիւնը որ սպասում էր նոցա օտարութեան մէջ։ «Լաւ է Ռուսաց խոտն ուտենք՝ քան Պարսից հացը», պատասխանեցին նոքա, և Ռուսաց սուինների պաշտպանութեան տակ սահմանն անցան։ Այսպիսով Պարսկաստանը արևելեան Հայաստանի հետ կորցրեց նաև մի մեծ բազմութիւն աշխատասէր ու գործունեայ ժողովրդի, որով այնուհետև Պարսից իշխանութեան տակ գտնուած Հայերը շատ նուազեցան և հազիւ 120,000 հոգի մնացին, որոնք բնակում են Պարսկահայքի անինչան մասում, Ատրպատականում, Թեհրանում և Սպահանում։

Նոր էր վերջացել պարսկական արշաւանքը, որ 1828-ի ապրիլի 14-ին հրատարակուեցաւ ռուս-տաճկական պատերազմը։ Պասկևիչը 12,000 զօրքով և 70 թնդանօթով Գիւմրիից (Ալէքսանդրապօլ) ճանապարհ ընկաւ և արագութեամբ առաջ գնալով՝ հասաւ ու պաշարեց Կարսը, որ կարճատև դիմադրութիւնից յետոյ իւր դռները բաց արեց յաղթողի առաջ։ Այստեղից

Ռուսները Ախալցխայի վրայ գնացին և նոյն քաղաքի բերդը յարձակմամբ առին, որով Արդահան քաղաքն էլ ինքն իրեն անձնատուր եղաւ։ Քրդերը երկրի խառնակ վիճակից օգուտ քաղելով, սկսան սովորականից աւելի նեղել Հայոց, և շատ հայաբնակ գիւղեր Թալանեցին։ Բայազիդի գաւառը այս նեղութիւններից ազատուեցաւ, երբ Ռուսները տարուայ վերջերը այն կողմերը զօրքով գրաւեցին։ Այնուհետև ձմեռը վրայ հասնելով, պատերազմական գործողութիւնները դադարեցան, և երկու կողմերը սկսան յաջորդ տարուայ համար պատրաստութիւններ տեսնել։ Օսմանցիք գիտենալով որ Ռուսները իրանց բոլոր զօրութիւնը Կարինի վրայ պիտի դարձնեն, 50,000 զօրքով եկան կանգնեցան նոյն քաղաքի առաջ։ Ձմեռուան խստութեան պատճառով պատերազմը հազիւ յունիսի սկզբին նորոգուեցաւ։ Պասկևիչը երկու ճակատամարտի մէջ բոլորովին խորտակեց Օսմանցոց բանակը և հասաւ Կարինի առաջ։ Այս քաղաքը, որի ամրութիւնների վրայ Թուրքերը ամբողջ ձմեռ աշխատեցրել էին Հայոց, կարող էր երկար ժամանակ դիմանալ. բայց Օսմանցիք այնքան ձախորդութիւններից վհատած՝ համարեա առանց արիւնհեղութեան բերդի բանալիները յանձնեցին Ռուսաց զօրապետին (1829 յունիսի 26)։

Սուլթան Մահմուդ տեսնելով որ Ռուսները մէկ կողմից մինչև Կարին և միւս կողմից մինչև Ադրիանուպօլիս հասան, ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել։ 1829-ի սեպտեմբերի 2-ին կնքուեցաւ Ադրիանուպօլսի դաշնագրութիւնը, որի զօրութեամբ Թուրքիան պատերազմական տուգանքի տեղ թողեց Ռուսաց կայսեր Անապան,

Փոթին, Ախալցխան և Ախալքալաքը իր շրջակայ գիւղերով։

Այս պատերազմի, ինչպէս և պարսկական արշաւանքի ժամանակ, Հայերը մեծ համակրութիւն ցոյց տուին Ռուսաց, և այս պատճառով Օսմանցոց բարկութիւնը շարժեցին իրանց դէմ։ Սոցա զայրոյթը մեծ եղաւ մանաւանդ՝ երբ ձեռք ձգեցին Եփրեմ կաթողիկոսի մի կոնդակը, որով նա յորդորում էր Կարնեցոց հարկաւոր օգնութիւններն անել քրիստոնեաներին մահմէտականների դէմ։ Թէև սուլթանը նոր դաշնադրութեամբ կեանքի ու կրօնի ապահովութիւն էր խոստանում իր քրիստոնեայ հպատակներին, բայց և այնպէս Կարինի առաջնորդ Կարապետ եպիսկոպոսը Օսմանցոց վրէժխնդրութիւնից վախենալով՝ յորդորեց իր ժողովրդին Ռուսաց զօրքի հետ միասին գաղթել Ռուսաստան։ Այսպիսով 1830-ի ամառը 90,000 հայ Կարինից, Կարսից ու Բայազիդից դուրս եկան և ճանապարհին մեծ նեղութիւններ կրելով՝ գնացին բնակեցան Ալէքսանդրապօլի, Ախալցխայի և Ախալքալաքի գաւառները։

---

# 83.

*Կանոնադրութիւն Ռուսահայոց եկեղեցական վարչութեան (պօլօժէնիա) (1836).—Ռուսահայոց նիւթական և մտաւորական յառաջադիմութիւնը.—Լազարեանց տոհմը և նոցա կառուցած ճեմարանը (1816).—Ներսիսեան դպրոց (1825).—Բարձրագոյն կրթութեան արդիւնքը.—Աղջկանց ուսումնարանները.—Տպագրութիւնը և մամուլը Ռուսահայոց մէջ։*

Ռուսաստանը Հայաստանի մի նշանաւոր մասին տիրելուց յետոյ, որի մէջ գտնվում էր Ս. Էջմիածնի Մայր-Աթոռը, հարկաւոր համարուեցաւ Ռուսահայոց եկեղեցական վարչութեան համար առանձին կանոններ սահմանել, որով որոշուէին Հայոց Եկեղեցու իրաւունքները և նորա յարաբերութիւնները կայսերական կառավարութեան հետ։ Այս մտքով Յովհաննէս Կարբեցի կաթողիկոսի օրով խմբագրուեցաւ մի կանոնադրութիւն, որ յայտնի է Պ օ լ օ ժ է ն ի ա ռուս անուամբ, և կայսերական ստորագրութեամբ վաւերացուեցաւ (1836)։ Այս կանոնադրութեան զօրութեամբ Հայոց Եկեղեցու գերագոյն տեսչութիւնը և եկեղեցական կանոնների ու ծէսերի անթերի կատարման հսկողութիւնը վերապահուած է Ս. Էջմիածնի Կաթողիկոսին, որ իբրև ընդհանրական հայրապետ Հայոց, ընտրվում է Մայր-Աթոռի տաճարում ամբողջ հայ ազգից ուղարկուած եկեղեցական և աշխարհական պատգամաւորների ձեռքով, և հաստատվում է Ռուսաց կայսեր հրովարտակով։ Կաթողիկոսին աջակից է Ս. Էջմիածնի բարձրագոյն Հոգևոր ատեանը կամ Սինոդը՝ ութ եկեղեցական անդամներից բաղկացած, որոնք իրանց պաշտօնի մէջ հաստատվում են կաթողիկոսի առաջարկութեամբ և կայսերական հաճութեամբ։ Սինոդի

առենապետն է Ս. Կաթողիկոսը։ Բացի զուտ կրօնական գործերից և դաւանաբանական խնդիրներից, որոնց վախճանական վճիռը ընդհանրական Հայրապետին է վերապահուած, Սինոդը պարտաւորութիւն ունի՝ ա) Հսկել Ռուսաստանի Հայոց բոլոր եկեղեցիների, վանքերի, դպրոցների և ուրիշ աստուածահաճոյ հաստատութիւնների բարեկարգութեան և նոցա եկամուտների գործադրութեան վրայ. բ) հրաման տալ ցանկացող աշխարհականներին եկեղեցական կարգ կամ վանականութիւն ընդունել, և իղէպս հարկին հոգևորականութիւնից արձակել նոցա. գ) վերահասու լինել ամուսնական կնճռոտ խնդիրներին. դ) հսկել ամուսնաւոր եկեղեցականների որբոց և այրեաց խնամատարութեան վրայ. ե) առանձին ցուցակներ պահել բոլոր եկեղեցիների, վանքերի ու դպրոցների, ամուսնաւոր և կուսակրօն եկեղեցականների, ծնած, մեռած ու պսակուած ժողովրդականների, և այս մասին տարեկան հաշիւ ներկայացնել Ներքին գործերի նախարարութեանը, որի վերատեսչութեան տակ է գտնվում Սինոդը. զ) քննել թեմակալ առաջնորդների և Սինոդի անդամների վրայ եկած գանգատները, և եթէ յանցաւոր համարուին՝ պատժի ենթարկել նոցա, նախապէս այդ մասին կայսերական հաճութիւն առնելով։ Սինոդի անդամութեան, թեմական առաջնորդութեան և նոյն իսկ կաթողիկոսութեան համար երկու երկու ընտրելիներ են ներկայացվում, որոնցից մէկը հաստատվում է կայսերական հաճութեան համեմատ։ Սինոդի մէջ կայ և մի առանձին պաշտօնեայ Պրոկուրոր անուամբ. որի պարտաւորութիւնն է հսկել յիշեալ ատենի վարչական և դատաստանական գործողութիւնների վրայ։ Ռուսահայոց

վիճակները կառավարվում են Թեմակալ առաջնորդներով, որոնք սոյն պաշտօնի համար առաջարկվում են Կաթողիկոսից և հաստատվում են Կայսրից։ Իւրաքանչիւր թեմի մէջ կայ մի Վիճակային ատեան (Կոնսիստորիա), որի ատենապետն է Թեմակալ առաջնորդը, և մի կամ աւելի Հոգևոր կառավարութիւն, որոնց նախագահներն են առաջնորդական փոխանորդները (յաջորդ)։ Հոգևոր կառավարութիւնները ենթարկվում են Վիճակային ատեաններին, և այս վերջինները Սինոդին, որին իւրաքանչիւր տարի հաշիւ են տալիս իրանց գործողութիւնների համար։

Պարսկական և Տաճկական պատերազմների արդիւնքըն այն եղաւ, որ Ռուսաստանը իւր սահմանների ընդարձակութեան հետ մի խաղաղ և աշխատասէր ժողովուրդ ձեռք բերեց, որ իւր խիտ ազգաբնակութեամբը տէրութեան արևելեան սահմանները ապագայ ապստամբութիւններից պիտի ապահովէր և երկրի առուտուրն ու արհեստները պիտի ծաղկեցնէր։ Եւ յիրաւի, Հայերը իրանց նոր կացութեան մէջ կեանքի ու ստացուածքի ապահովութիւն վայելելով, սկսան մեծ եռանդով վաճառականութեան ետևէ լինել, որով Կովկասի առուտուրը կարճ միջոցում մեծ պայծառութեան հասաւ։ Նիւթական ապահովութիւնը Ռուսաստանի Հայոց միջոց տուեց կրթութեան հոգ տանելու, և այս կողմից Ռուսահայք աւելի յառաջադիմութիւն արին քան Թուրքիայի Հայերը՝ իրանց կանոնաւոր ուսումնարաններով։ Տակաւին ներկայ դարու սկզբին դուրս եկան մի քանի ականաւոր անձինք, որոնք իրանց առատաձեռնութիւնն ու ազդեցութիւնը գործ դրին Ռուսահայոց մտաւոր և բարոյական կրթութիւնը

հաստատ հիման վրայ դնելու։ Նախաձեռնութիւնը այս գեղեցիկ գործի մէջ պատկանում է Լազարեանց տոհմին և Ներսէս Ե կաթուղիկոսին։

Լազարեանց նախնիքը բնիկ Հին-Ջուղայեցի էին, որոնք նոյն աւանի հարուստ բնակիչների հետ Շահաբասի օրով գաղթեցին Սպահան, և այնտեղ յառաջանալով մեծամեծ պաշտօնների հասան՝ իբրև փողերանոցի տեսուչ և արքունի գանձերի ոստիկան և իբրև ազգապետ Նոր-Ջուղայի Հայոց։ Նադըր շահի մահից յետոյ Պարսկաստանը ներքին խռովութիւնների մատնուելով, շատ Հայեր ստիպուեցան Սպահանն ու Ջուղան թողնել և օտար երկրներ ապաւինել։ Սոցա թւումն էր և Ղազար Նազարեան Լազարեանը, որ իւր ընտանիքով ու ստացուածքով անցաւ Ռուսաստան և բնակութիւն հաստատեց Մոսկվայում։ Շուտով նա այս քաղաքի շրջակայքում մի մետաքսի գործարան հիմնեց, որ կարճ միջոցում այնպիսի կատարելութեան հասաւ, որ նորանից դուրս եկած կերպասեղէնները սկսան գործածուիլ կայսերական պալատի դահլիճները զարդարելու, միանգամայն և ընծայ էին ուղարկվում եւրոպական արքունիքներին։ Այս և ուրիշ ծառայութիւնների փոխարէն՝ Ղազար Լազարեանը ազնուականութեան հրովարտակ ընդունեց Կատարինէ Բ կայսրուհուց։ Որդիքը հօր շաւղովը ընթանալով տէրութեան մատուցած ծառայութիւնների հետ չզլացան ձեռքերից եկած օգնութիւնն անել զանազան հայ հասարակութիւններին և իրանց հարստութիւնից մասն ու բաժին հանել ազգային հաստատութիւնների համար։ Նոցա միջնորդութեամբ զանազան առանձնաշնորհութիւններ ստացան Աժտէրխանի, Ղզլարի, Մոզդոկի, Գրիգորիոպօլի

և Նոր-Նախիջևանի Հայերը. նոցա ծախքով շինուեցան Մոսկուայի ու Պետերբուրգի հայ եկեղեցիները և հաստատուն եկամուտներով ապահովուեցան. վերջապէս նոցա առատաձեռնութեան արդիւնքն եղաւ Մոսկվայի Լազարեան ճեմարանը արևելեան լեզուաց, որ 1818-ցն հիմնեց արժանայիշատակ Յովակիմ Լազարեանը՝ բանիբուն ուսուցիչներ, ուսեալ եկեղեցականներ և ընդհանրապէս բարեկիրթ քաղաքացիներ պատրաստելու նպատակով։

Գրեթէ նոյն ժամանակները և նոյն նպատակով հիմնուեցաւ Թիֆլիսում Ներսիսեան դպրոցը Վրաստանի առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսի աշխատութեամբ և քաղաքի հայ բնակիչների օժանդակութեամբ (1825)։ Ներսէս իւր հաստատութեան համար բերել տուեց Փարիզից Ձահան Զըպիտ անունով դիտնականին՝ իբրև դասատու հայկաբանութեան, և Մոսկվայի Լազարեան ճեմարանից Ալամդարեան Յարութիւն վարդապետին՝ իբրև ուսուցիչ կրօնագիտութեան։ Ուսումնարանի համբաւի հետ կարճ միջոցում աշակերտների թիւը աւելացաւ և մինչև 400-ի հասաւ, բոլորն էլ ձրիավարժ և երթևեկ, մի մասն էլ յատկապէս քահանաների որդիքը՝ գիշերօթիկ։ Ընդհանրապէս Լազարեան ճեմարանը, Ներսիսեան դպրոցը, որոնց հետ պէտք է միացնել և Աժտէրխանի Աղապապեան ուսումնարանը, եղան այն սերմնարանները, որոնցից դուրս եկան Ռուսահայոց առաջին բանիբուն ուսուցիչները և եկեղեցու արժանաւոր պաշտօնեաները։ Այս կողմից մեծ եղաւ և է տակաւին Ներսիսեան դպրոցի արդիւնքը. չկայ համարեա մի գաւառական կամ գիւղական ուսումնարան, որի ուսուցիչները յիշեալ դպրոցին աշակերտած չլինին. նոյն դպրոցից

դուրս եկած են նաև Վրաստանի հայ եկեղեցականների մեծ մասը։

Ներսիսեան դպրոցի օրինակով և ազդեցութեամբ կարգաւորուեցան և միւս թեմական դպրանոցները և հետզհետէ նորանոր դպրոցներ և տարրական ուսումնարաններ բացուեցան, որոնց թիւը օր աւուր բազմանալու վրայ է. այնպէս որ ներկայումս Կովկասեան երկրի ազգութիւնների մէջ կրթութիւնը ամենից աւելի Հայոց մէջ է տարածուած։ Չբաւականանալով ազգային կամ պետական միջնակարգ ուսումնարանների մէջ ստացած կրթութեամբ, շատ երիտասարդներ դիմում են Ռուսաստանի կամ Եւրոպայի զանազան համալսարանները բարձրագոյն ուսում առնելու, որոնցից վերադառնալով քաղաքական և զինուորական պաշտօնների մէջ են մտնում, կամ ազատական արուեստների են ծառայում. Կովկասի ամենալաւ բժիշկները, փաստաբանները, արուեստագէտները Հայեր են։

Տղայոց ուսումնարանների հետ Ռուսահայք վերջին ժամանակներս սկսան առանձին խնամք տանել աղջկանց դաստիարակութեան վրայ։ Թիֆլիսը, որ Ռուսահայոց մտաւոր կեանքի կենտրոնն է, ունի մի քանի աղջկանց ուսումնարաններ, որոնք իրանց յառաջադիմութեամբ մրցում են տղայոց ուսումնարանների հետ։ Նշանաւոր են մանաւանդ Գայիանեան և Մարիամեան (Յովնանեան) ուսումնարանները, որոնցից յաջողակ վարժուհիներ են դուրս գալիս գաւառական ուսումնարանների համար։

Ռուսահայոց կրթութեանը ոչ պակաս նպաստեց տպագրութիւնը ընդհանրապէս և պարբերական մամուլը մասնաւորապէս։ Զանազան քաղաքներում այլևայլ ժա-

ժանակ հայ տպարաններ հիմնուեցան, ինչպէս Պետերբուրգ, Մոսկվա, Աստրախան, Նոր-Նախիջևան, Թիֆլիս, Թէոդոսիա, Երևան, Ս. Էջմիածին և այլն. այս տպարաններից դուրս եկած գրքերը մեծ մասամբ կրթութեան վերաբերեալ աշխատութիւններ են և մանաւորապէս դասական գրքեր։ Վերջին ժամանակներում առանձին ուշադրութիւն են դարձնում ժողովրդական ընթերցանութեան վերաբերեալ գրքերի վերայ։ 1880-ին Թիֆլիսում կազմուեցաւ մի ընկերութիւն զանազան ինքնուրոյն և թարգմանական գրքեր հրատարակելու և թեթև գնով ժողովրդի մէջ տարածելու համար։

Ռուսահայոց մէջ առաջին հայ լրագիրն եղաւ Կովկաս շաբաթաթերթը (գրաբար լեզուով), որ սկսաւ հրատարակուիլ Թիֆլիսում 1846-ին՝ Տ. Գաբր. Պատկանեան քահանայի խմբագրութեամբ։ Երկու տարի անելուց յետոյ, Կովկասը դադարեցաւ. Նորա շարունակութիւնն եղաւ Արարատ թերթը (1850), աշխարհաբար լեզուով խմբագրուած, որ միայն մի տարի գոյութիւն ունեցաւ։ 1858-ին միաժամանակ սկսան հրատարակուիլ Մեղու Հայաստանի շաբաթաթերթը Թիֆլիսում Տ. Ստեփ. Մանդինեան քահանայի խմբագրութեամբ, Ճռաքաղ բանասիրական-կրօնական ամսաթերթը Մոսկվայում՝ Մսեր մագիստրոս Մսերեանի խմբագրութեամբ, և Մասեաց Աղաւնի պատկերազարդ ամսագիրը, որ Փարիզից փոխադրեց Թէոդոսիա Այվազեան Գաբր. եպիսկոպոսը։ 1858-ին սկսաւ հրատարակուիլ Մոսկուայում Հիւսիսափայլ ամսագիրը՝ Ստ. Նազարեանցի խմբագրութեամբ և Միք. Նալբանդեանցի գլխաւոր աշխատակցութեամբ։ Հիւսիսափայլը իւր ժամանակի համար նշանաւոր երևոյթ էր, և մեծ ազդեցու-

թիւն գործեց ընթերցող հասարակութեան վրայ իւր ծանրակշիռ յօդուածներով, որոնք ընդհանրապէս ազգի քաղոյական և մտաւորական կրթութեան են վերաբերում. սակայն որովհետև խմբագիրը հայաբնակ կենտրոնից հեռու էր ապրում, նորա խորհրդածութիւնները յաճախ վերացական են և անմիջական գործադրութիւն չէին կարող ունենալ։ Այս կողմից աւելի համեստ՝ բայց և աւելի կենդանի թերթ էր Կռունկ Հայոց աշխարհի ամսագիրը, որ 1860-ին սկսաւ հրատարակուիլ Թիֆլիսում Մ. Ալաբէգեանի խմբագրութեամբ։ Նորագոյն հրատարակութիւնների մէջ նշանաւոր տեղ են բռնում Մըշակ լրագիրը Գր. Արծրունու խմբագրութեամբ (1872—1883), որ առանձին զարկ տուեց լրագրական գործին Ռուսահայոց մէջ, և Փորձ ամսագիրը՝ Արք. Յովհաննիսեանի խմբագրութեամբ (1876—1881), յայտնի իւր ճոխ բովանդակութեամբ և եւրոպական ընտիր հեղինակների թարգմանութեամբ։ Դպրոցական գործին նպաստելու յատուկ նպատակ ունեցած են վերջին տարիները հրատարակուած Դպրոց՝ Մանկավարժական թերթ և Վարժարան։ Այս բոլոր հրատարակութիւնները աւելի կամ նուազ գոյութիւն ունենալուց յետոյ դադարած են։ Ներկայումս Ռուսահայոց մէջ հրատարակվում են Նոր-Դար և Մեղու Հայաստանի լրագիրները։ Արձագանք շաբաթաթերթը, Արարատ ամսագիրը և Աղբիւր ու Մանկավարժանոց կրթական թերթերը։

Ինչպէս Թիւրքիայի՝ այնպէս և Ռուսաստանի Հայոց մէջ դպրոցը և լրագրութիւնը նպաստեցին և նպաստում են երկու կողմի գրական լեզուների մշակութեանը,

որոնք այն աստիճանի դատարկելութեան հասած են, որ ընդունակ են յաջողութեամբ բացատրելու եւրոպական գրականութեան ամենանշանաւոր արդիւնքները։

---

## Զ. ԹՈՒՐՔԻԱՅԻ ՀԱՅՔ

### 84.

*Թուրքիայի Հայոց վիճակը անցեալ երեք դարերում—Կոստանդնուպօլսի պատրիարքութեան հաստատութիւնը (1461)։—Ամիրաները և նոցա նշանակութիւնը.—Պատրիարքների գործած զեղծումները աթոռակալութեան համար—Յովհաննէս կոլոտ պատրիարք (1715—1741)։*

Օսմանցիք Մեծ Հայքի մեծագոյն մասը և ամբողջ Փոքր-Հայքն ու Կիլիկեան նուաճելով, իրանց իշխանութիւնը տարածեցին հայ ազգի մեծամասնութեան վրայ, որի թիւն երկու ու կէս միլիոնի է հասնում։ Թէև իսկզբանէ անտի Հայերը միւս քրիստոնեայ հպատակների հաւասար՝ վայելում էին իրանց կրօնական-ազգային արտօնութիւնները, բայց և այնպէս քաղաքական իրաւունքների կողմից շատ էին տարբերվում տիրապետող մահմետական տարրից, որ անարգական աչքով էր նայում նոցա վրայ՝ իբրև անհաւատների (գեավուր) ու ստրուկների վրայ։ Հայք մինչև անգամ հագուստով պարտաւոր էին զանազանուիլ բուն Օսմանցիներից և ոչ միայն զէնք կրելու իրաւունք չունէին, այլև ստիպուած էին որոշեալ գոյնի ու ձևի զգեստներ հագնել, և ով որ այս կանոնից շեղվում էր, տուգանքի և նոյն իսկ մահուան էր ենթարկվում։ Հարկերը սովորական կերպով չէին հաւաքվում,

այլ կապալով էին տրվում այն մենավաճառներին՝ որոնք խոստանում էին աւելի վճարել տէրութեան պաշտօնեաներին, որով ժողովուրդը չափից աւելի կեղեքվում էր։ Մի ուրիշ կորստաբեր սովորութեամբ՝ սուլթանի ամեն մի հպատակ իւր վեհապետի ստրուկն ու ծառան էր համարվում, և ոչ միայն ինքը, այլ և իւր գերդաստանը և բոլոր ստացուածքը նորան էր պատկանում. ուստի ոչ ոք ապահով չէր իւր կեանքի ու սեպհականութեան համար։ Այս դաժան օրէնքի գլխաւոր զոհերը Հայերն էին լինում. բաւական էր որ մի հայ քիչ շատ հարստութեան տէր լինէր, Թուրքերը անմիջապէս զանազան մեղադրանքներ էին բարդում նորա վրայ, աքսորում կամ մահուան էին դատապարտում և նորա կայքը արքունիք գրաւում։ Ոչ պակաս աղէտաբեր էր մանկաժողովի սովորութիւնը, որով ամենայն տարի հարիւրաւոր քրիստոնեայ մանուկներ լլվում էին ծնողաց գրկից և մահմեդականութեան մէջ մեծանալով՝ ենիչերի ասած զօրքն էին կազմում։ Որովհետև զինուորական ծառայութիւնը և քաղաքական պաշտօնավարութիւնը մահմէտականներին էին յատկացրած, Հայերը իրանց բոլոր գործունէութիւնը դարձրին երկրագործութեան, անասնաբուծութեան, վաճառականութեան և արուեստագիտութեան վրայ, և այս ճիւղերի՝ մանաւանդ վերջին երկուսի մէջ Օսմանեան տէրութեան բոլոր հպատակներից ամենից յաջողակն ու ճարտարն եղան. այնպէս որ ասիական Տաճկաստանի առուտուրը և արուեստը գրեթէ ամբողջապէս գրաւած են և մինչև այսօր իրանց ձեռքը պահած են։ Գաւառներից Հայերը կամաց կամաց սկսան մայրաքաղաք դիմել, և այնտեղ էլ դրամական բոլոր գործերը և արուեստագի-

տութեան զանազան ճիւղերը իրանց ձեռքն առին. Կոստանդնուպօլսի ամենից վարպետ ոսկերիչները, ակնագործները, որմնադիրները, քանդակագործները, մեքենագործները գրեթէ բոլորն էլ Հայք են եղած և մինչև այսօր էլ նոյն համբաւը պահած են։

Սուլթան Մէհէմմէտ Բ իր գահը Կոստանդնուպօլսում հաստատելուց յետոյ, Բրուսայի առաջնորդ Յովակիմ եպիսկոպոսին իւր խոստման համեմատ՝ Կոստանդնուպօլսի պատրիարք անուանեց և Օսմանեան տէրութեան հպատակ Հայոց հոգևոր և աշխարհական գլուխ կարգեց (1461)։ Այսպիսով Կոստանդնուպօլիսը Հայոց բարոյական կեանքի կետրոնը դարձաւ, ուր Հայք սկսան զանազան տեղերից գաղթել և հաստատուն բնակութիւն դնել։ Հետզհետէ նոցա թիւը այնքան աճեցաւ, որ այժմ 250,000 հայ է համարվում այնտեղ, չհաշուելով այն ժամանակաւոր պանդուխտները, որոնք Հայաստանի ամեն կողմերից դիմում են մայրաքաղաքը բեռնակրութեամբ ապրուստ ճարելու համար։

Թուրքիայի Հայոց Վարչութեան գլուխը Պատրիարքն է, որ մինչև ներկայ դարու կէսերը բոլոր ազգային գործերը տնօրինում էր մի քանի աշխարհական մեծամեծների կամ ամիրաների մասնակցութեամբ։ Ամիրա կոչվում էին այն հարուստ հայերը, որոնք մեծ մասամբ գաւառներից մայրաքաղաք եկած և այնտեղ յառաջանալով՝ կառավարիչ փաշաների սեղանաւոր (սարաֆ) ու ծախսարար էին դառնում։ Բարձրաստիճան պաշտօնեաների հովանաւորութիւնը վայելելով, նոքա միջոց էին ունենում իրանց կամքը առաջ տանելու ազգային գործերի մէջ, և որքան մեծ դիրք ունենար մի փաշայ, այնքան

մեծ էր լինում և նրան ծառայող ամիրայի ազդեցութիւնը, որ կարող էր երբեմն պատրիարք փոխել կամ ուզած անձին պատրիարք նստեցնել։ Բայց այս ազդեցութիւնը երկար չէր տևում, երբ փաշան պաշտօնից արտաքսվում և պատժի էր ենթարկվում, նորա հետ պատժվում էր և սեղանաւոր ամիրան՝ աքսորուելով, ստացուածքից և երբեմն նաև կեանքից զրկուելով։ Եղած են և այնպիսի ամիրաներ, որոնք իրանց անձնական արժանիքներով և տէրութեան մատուցած ծառայութիւններով մեծամեծ պաշտօնների հասան, և այդ պաշտօնները երկար ժամանակ վարեցին ժառանգաբար. այսպէս՝ Տատեան գերդաստանը իւր ձեռքին ունէր արքունի վառօդապետութիւնը, Տիւզեան գերդաստանը արքունի դըրամահատութիւնը, Պալեան գերդաստանը արքունի ճարտարապետութիւնը, և այլն։ Սոքա իրանց առատաձեռնութեամբ և մարդասիրական գործերով ազգի ընդհանուր յարգանքն ու սէրը վայելած են։

Պատրիարքների մէջ էլ՝ նոքա որոնք բարեմիտ ու խաղաղասէր էին, հայրաբար խնամում էին ազգին և իրանց ազդեցութիւնը գործ էին դնում զանազան վըտանգներից ազատ պահելու ժողովրդին այնպիսի ժամանակներում՝ երբ ամեն բան կառավարիչների հաճոյքից էր կախուած։ Բայց եղան և այնպիսի եկեղեցականներ, որոնք իրանց անվայել ընթացքով այս նուիրական պաշտօնին անարժան գտնուեցան։ Սովորութիւն կար որ պատրիարքները իրանց հաստատութեան փոխարէն մի տուրք հատուցանէին տէրութեան գանձարանին։ Այս բանից օգուտ քաղելով իշխանութեան հետամուտ եկեղեցականներ աշխատում էին դրամի զօրութեամբ

միմեանց ձեռքից պատրիարքութիւնը յափշտակել. որով յաճախ պատրիարքական աթոռը պաշտօնեաների շահասիրութեան և փառամոլ անձանց գահասիրութեան խաղալիկ էր դառնում։ Ով որ պատրիարք էր նստում, շտապում էր զանազան աններելի միջոցներով իւր վատնած դրամները ժողովրդից հանելու, լաւ գիտենալով որ երկար ժամանակ մնալու չէ իւր պաշտօնում. որովհետև գըտնվում էր միշտ մէկը որ նորանից աւելի էր տալիս և տեղը բռնում էր։ Այս ցաւալի դէպքերը աւելի յաճախ սկսան կրկնուիլ ԺԷ դարու վերջին կէսից, երբ սուլթանները և եպարքոսները (մեծ վէզիր) յաճախ Կոստանդնուպօլսից բացակայ էին լինում. և մայրաքաղաքը եպարքոսի տեղակալով էր կառավարվում. այնպէս որ յիսուն տարուան միջոցում (1650—1700) երեսուն և վեց պատրիարք հետզհետէ միմեանց յաջորդեցին, և նոցանից ոմանք մի քանի անգամ պաշտօնանկ եղան և դարձեալ իրանց տեղերը հաստատուեցան։

Այս զեղծումներին վերջ տրուեցաւ երբ պատրիարքական աթոռի վրայ նստեցաւ Յովհաննէս Բաղիշեցին՝ մականուանեալ Կոլոտ, որ 26 տարի ամենայն խոհեմութեամբ հովուեց իւր խնամքին յանձնուած հօտը և զանազան բարեկարգութիւններ մտցրեց պատրիարքարանի և ազգային վարչութեան մէջ (1715—1741)։ Յովհաննէս Կոլոտի առաջին գործն եղաւ Երուսաղէմի պատրիարքութիւնը, որ իւր նախորդներից մէկը Կոստանդնուպօլսի պատրիարքութեան հետ էր միացրել, բաժանել և իւր ընկեր՝ Ս. Կարապետի միաբան Գրիգոր վարդապետին Երուսաղէմի պատրիարք կարգել տալ։ Այս երկու արժանաւոր հովիւները ձեռք ձեռքի տուած գործելով, ամենից առաջ աշխատեցան Ս. Երուսաղէմի վանքը իւր

ծանր պարտքերից ազատել. և այս բանի համար Գրիգոր պատրիարքը ութ տարի շղթայ կրեց իւր վզին, որով և Շղթայակիր ասուեցաւ։ Միևնոյն ժամանակ մեծ նեղութեամբ տէրութիւնից իրաւունք առին Երուսաղէմի Ս. Յարութեան տաճարի Հայոց բաժինը նորոգելու։ Վանքը պարտքից ազատելուց յետոյ, Գրիգոր պատրիարքը նոր կալուածներ ձեռք բերեց և մի քանի շինութիւններ էլ արեց, որոնց մէջ նշանաւոր է Ս. Յակոբայ տաճարի նորոգութիւնը։ Նոյնպէս և Յովհաննէս պատրիարքը բազմածախս շինութիւններ արեց Կոստանդնուպօլսում. Միջագիւղի, Իւսկիւտարի, Սամաթիայի, Գալատի և Ղալաթիայի Թաղական եկեղեցիները, որ հնութիւնից կամ հրդեհից քայքայուել էին, որը նորոգեց, որն էլ հիմքից շինեց։ Այս շինութիւնները գլուխ տանելու դժուարութիւնը հասկանալու համար, պէտք է մտաբերել որ ամեն մի նոր եկեղեցի շինելու կամ քանդուածը նորոգելու համար՝ մեծ տուրք էր տրվում տէրութեանը։

---

## 85.

**Կաթոլիկութեան սկզբնաւորութիւնը Տաճկահայոց մէջ—Փորձ հռոմէական Հայոց ազգային եկեղեցու գիրկը դարձնելու (1820).—Հռոմէական Հայոց ջանքը առանձին ազգապետ ունենալու (1827). Հռոմէադաւանների աքսորը (1827—28).—Կաթոլիկութեան հաստատութիւնը (1830).—Յարութիւն Պէզճեան և իւր գործերը (1771—1834)։**

Հռոմը իւր արքանեակների ձեռքով շատ վաղ ժամանակներից սկսել էր հետամուտ լինել Թիւրքիայի Հայոց իւր կողմը որսալու։ Օգուտ քաղելով պատրիարքների աթոռակալութեան կռիւներից, զանազան կարգերի լատին կրօնաւորներ, և մասնաւորապէս Եզուիտները իրանց բանսարկութիւնների շնորհով յաջողեցան երկպառակութեան սերմը սերմանել ազգի մէջ։ Եզուիտները արդէն 1668-ին մի առաքելութիւն էին հաստատել Կարինում, որ երկու ճիւղի էր բաժանվում. առաջինը կոչվում էր Ս. Գրիգոր, և գործում էր Դերջան, Հասան-Գալէ, Կարս, Բայազիդ քաղաքներում իրանց գիւղերով. իսկ երկրորդը Ս. Իգնատիոս անունով, բովանդակում էր Սպեր, Բաբերդ, Տրապիզոն և Գիւմիւշխանէ քաղաքները շրջակայ գիւղերով։ Փոքրառփոքր կազմուեցաւ մի կաթոլիկ հայ հասարակութիւն, որի անդամները սկսան խորշիլ հոգեւոր հաղորդակցութիւն ունենալու իրանց ազգակիցների հետ, և միայն մկրտութիւնը, պսակն ու թաղումը ընդունում էին Հայոց եկեղեցիներից։ Պատրիարքներից ոմանք փորձեցին քաղցրութեամբ կանգնեցնել այս շարժումը, ուրիշները խիստ միջոցներ գործ դրին. բայց թէ առաջինների ներողամտութիւնը, և թէ վերջինների

խստութիւնները անզօր եղան կրօնական պառակտման առաջն առնելու։ Կաթոլիկ կղերը Ֆրանսիական դեսպանի պաշտպանութիւնը վայելելով, սկսաւ աւելի համարձակ գործել. և որովհետև Օսմանեան տէրութիւնը չէր կամենում հայ կաթոլիկների առանձին դաւանութիւն ճանաչել, որ չլինի թէ նոցա պատճառով եւրոպական տէրութիւնները իրաւունք ստանան իւր ներքին գործերի մէջ խառնուելու, այս պատճառով Պապը բաւականացաւ առժամանակ նորադարձների համար մի հայ եպիսկոպոս առաջնորդ նշանակել Կոստանդնուպօլսի լատին նուիրակի իրաւասութեան տակ (1758)։

Մինչդեռ այսպէս պապականների ցանած սերմերը օրէցօր աճում էին, գտնուեցան մի քանի բարեմիտ անձինք երկու կողմի ազգայինների մէջ, որոնք այս կրօնական բաժանման վնասները նկատելով՝ մտածեցին մի հընարք գտնել միութեան։ Այս փորձն եղաւ ներկայ դարու առաջին քառորդին, Ադրիանուպօլսեցի Պօղոս պատրիարքի օրով։ Բայց որովհետև խնդիրը փափուկ էր և հարկաւոր զգուշութիւններով առաջ չտարուեցաւ, ուստի ոչ միայն ցանկացած արդիւնքը չունեցաւ, այլև մեծամեծ չարիքների պատճառ եղաւ, մանաւանդ երբ տէրութեան քաղաքականութիւնն էլ գործի մէջ խառնուեցաւ։

Երբ 1819-ին հռոմէադաւան Տիւզեան գերդաստանը փողերանոցի գործակալութիւնից զրկուելով խիստ պատիժների ենթարկուեցաւ, ստացուածքներն էլ արքունիք գրաւուեցան, նոցա տների մէջ գտնուած պատարագամատոյց սեղանները և եկեղեցական զարդերը Օսմանեան տէրութեան ուշադրութիւնը հրաւիրեցին հռոմէական Հայոց խնդրի վրայ։ Անմիջապէս, առաջարկուեցաւ

պատրիարքին, որ այս բաժանման առաջն առնէ. որովհետև տէրութիւնը հայ ազգը իբրև մէկ մարմին է ճանաչում, և պատրիարքը բովանդակ ազգի համար պատասխանատու է Բ. Դրան առաջ։ Պօղոս պատրիարքը խորհուրդ անելով Հայոց մեծամեծների հետ, որոնց մէջ նշանաւոր էին Գրիգոր Պալեան և Յարութիւն Պէզճեան՝ փոխերանոցի նոր տեսուչը, հռոմէական Հայոց մեծերին ու արհեստաւորներին պատրիարքարան հրաւիրեց և արքունի հրամանը յայտնեց նոցա։ Գործը սիրով և խաղաղութեամբ վերջացնելու համար՝ որոշուեցաւ որ երկու կողմի գիտնականները միասին գան և վիճելի խնդիրները քննելով ընդհանուր համաձայնութիւն կայացնեն։ Ժողովը գումարուեցաւ Հ. Ստեփանոս Աւգերեան եպիսկոպոսի նախագահութեամբ, իւր նիստերն ունենալով երբեմն Պալեանի և երբեմն Պէզճեանի տանը (1820 յունուար)։ Վիճաբանութիւնները երեք ամիս տևելուց յետոյ՝ վերջապէս երկու կողմն էլ փոխադարձ զիջումներով համաձայնութեան եկան, և վիճելի կէտերը գրի առնելով պատրիարքին ներկայացրին։ Պօղոս պատրիարքը շտապեց ընդհանուր ժողով գումարել Մայր եկեղեցում, ուր կարդաց երկու կողմի գիտնականների ստորագրած թուղթը, լուսաբանութեան կարօտ տեղերը բացատրեց և առաջարկեց որ բոլոր ներկայ եղողները իրանց ստորագրութեամբ նոյն թուղթը վաւերացնեն։ Թուղթը ստորագրուեցաւ և ժողովրդականների որոշմամբ տպագրուեցաւ «Հրաւէր Սիրոյ» անունով։

Այսպիսով միութիւնը ըստ երևութին կատարուեցաւ, և կնքուեցաւ փառաւոր խնջոյքներով, ուր հայ մեծամեծները միաբանող վարդապետներին պատուասիրելով՝ թան-

կագին զգեստներ ընծայեցին նոյա։ Սակայն հայ ժողովրդի մէջ մի խուլ տժգոհութիւն կար կատարուած լիողութեան դէմ. շատերը Կոստանդնուպօլսի պատրիարքին անձեռնհաս էին համարում այսպիսի մի կրօնական խնդրի ձեռնամուխ լինելու, որ միայն Ընդհանրական Հայրապետի նախագահութեամբ և եկեղեցական համագումար ժողովով կարող էր լուծուիլ։ Նոյնպէս և միաբանող մասի մէջ տժգոհութեան նշաններ էին երևում։ Ոմանք, ինչպէս էին Վենետիկի Մխիթարեան վարդապետները, աւելի համամիտ էին միութեան և իրանց հետ ունէին հռոմէական Հայոց զարգացած մասը։ Բայց կային շատերը, որոնց սրտովը չէր ամենևին միաբանութիւնը, այսպէս էին Կոլէջցի, Լիբանանցի և Վեննացի վարդապետները, որոնք իրանց կողմն ունէին Գաղատացի մոլեռանդ ժողովրդին։ Մտքերը այս տրամադրութեան մէջ էին, երբ 1820-ի յուլիսի 12-ին Պօղոս պատրիարքը խոստացուած գիջման համեմատ՝ վերջին օծման իւղն օրհնեց և եկեղեցիներն ուղարկեց ցանկացող հիւանդներին օծելու համար։ Մի գաղատացի հռոմէական, Կուցիանտի լատին կարգաւորի թելադրութեամբ, Լուսաւորչական հայի կերպարանքը մտած՝ իջաւ շուկայ, և Հրաւէր Սիրոյ տետրը ձեռքին, որի ճակատին Լուսաւորչի պատկերի վրայ Պապի պատկերն էր կպցրած, սկսաւ Կեսարացի կօշկակարների սենեակները մտնել ելնել, և գրգռել նոցա պատրիարքի դէմ։ Հետևեալ օրը, որ կիրակի էր, խուռն բազմութիւն ժողովրդեան հաւաքուեցաւ Մայր եկեղեցին, և ամեն կողմից միաբերան սկսան կանչել որ պատրիարքը գայ և իրանց կասկածները փարատէ։ Զուր բարձրաստիճան եկեղեցականներ պատրիարքի կողմից եկան ժո-

ղովրդին հանդարտեցնելու. խօսք լսող չեղաւ։ Բազմու-
թիւնը կատաղաբար յարձակուեցաւ պատրիարքարանի
վրայ, դռները խորտակեց ու ներս թափեցաւ. բայց մարդ
չգտնուեցաւ այնտեղ, որովհետև Պօղոս պատրիարքը ամ-
բոխի վրէժխնդրութիւնից ազատուելու համար՝ պատու-
հանից փախել և մօտակայ տաճկի տունն էր ապաւինել։
Ժողովուրդը չցրուեցաւ, մինչև որ զօրքն եկաւ և խռո-
վութեան պարագլուխներին կալանաւորեց։ Բանտարկուե-
ցան և ուրիշ շատ անձինք, որոնցից ոմանք բոլորովին
անմեղ էին, և իրանց յանցանքների համեմատ զանազան
պատիժների ենթարկուեցան, ոմանք հրապարակաւ գըլ-
խատուեցան կամ կախուեցան, այլք աքսորուեցան զա-
նազան կղզիներ։ Աքսորուածների թւումն էր Յարու-
թիւն Պէզճեան, իբրև պատրիարքի գործերին ձեռնա-
մուխ եղող անձ։

Սակայն Պէզճեանի աքսորը երկար չտևեց. մի տա-
րի չանցած նա վերադարձաւ և փողերանոցի տեսչու-
թեան մէջ վերահաստատուելով՝ սկսաւ մեծ ազդեցութիւն
ունենալ տէրութեան գործերի մէջ։ Տեսնելով որ միա-
բանութեան խնդիրը, որի վրայ ինքը այնքան աշխատել
էր, ցանկացած արդիւնքը չունեցաւ, Պէզճեանը մտածեց
այնպիսի ընթացք տալ գործին որ գոնէ հռոմէական
Հայերը ազգի ընդհանրութիւնից բոլորովին չանջատուին։
Նա խորհուրդ արաւ Կարապետ պատրիարքի հետ, որ
1823-ի հոկտեմբերին Պօղոս պատրիարքին յաջորդել էր,
առաջարկելով որ հռոմէական վարդապետներից մէկը փո-
խանորդ կարգուի պատրիարքի իրաւասութեան տակ, և
տէրութեան հրամանները նորա միջնորդութեամբ հաղոր-
դուին հռոմէական Հայոց։ Սակայն սրանով Պէզճեան ոչ

միայն իւր նպատակին չհասաւ, այլ տեղիք տուեց հռոմէադաւաններին ազգից բոլորովին բաժանուելու հնարների վրայ մտածել, և առանձին պատրիարք ունենալու հետամուտ լինել։ Այս դիտաւորութիւնը գլուխ տանելու համար հռոմէական Հայք բարեպատեհ առիթ համարեցին 1827-ն Ռուսաց և Պարսից պատերազմը իրանց բանսարկութեան նիւթ առնելու և ընդհանուր հայ ազգի վըրայ քաղաքական ամբաստանութիւններ բարդելու. իբրև թէ Հայք Ռուսաց հետ միաբանելով Պարսից իշխանութիւնից ազատուեցան, և այժմ միտք ունին Օսմանեան տէրութեան սահմանների վրայ յարձակիլ և առանձին թագաւորութիւն հիմնել Ռուսաց հովանաւորութեան ներքոյ։ Արդ հռոմէական Հայերը թէև ընդհանուր ազգի հետ հոգևոր հաղորդակցութիւն չունէին, բայց որովհետև կայսերական Կառավարութիւնից իբրև մի ազգի անդամ են նկատւում, միևնոյն պատրիարքի իրաւասութեան տակ, ուստի խնդրում են որ առանձին ազգապետ ու եկեղեցի տրուի իրանց, և այսուհետև առանձին մարմին ճանաչուին. որպէս զի երբ մի ապստամբութիւն ծագի, իրանք պատասխանատուութիւնից ազատ մնան։ Սուլթան Մահմուդ, որին այս մտքով աղերսագիր մատուցուեցաւ, գործի էութիւնը Պէզճեանից իմանալով՝ բաւականացաւ լոկ պատրիարքի երաշխաւորութիւնը պահանջել։ Կանչուեցան Բ. Դուռը Կարապետ պատրիարքը և նախորդ Պօղոս պատրիարքը, որոնք երաշխաւոր կանգնելով Հայ ազգի հաւատարմութեան համար՝ ապահովացրին թէ բնաւ մէկի մտքից ապստամբութեան խորհուրդ անցած չէ. միայն աւելացրեց Պօղոս եպիսկոպոսը, մեր մէջ կաթոլիկների մի հասարակութիւն կայ, որոնք մեր

եկեղեցիները չեն յաճախում և մեր քահանաներին չեն խոստովանում, այլ Լատինացոց հետ հաղորդակցութիւն ունին,—նոցա համար չենք կարող երաշխաւորել։

Գործը այս վիճակի մէջ էր, երբ Եւրոպացոց միացեալ նաւախումբը Օսմանցոց նաւատորմիղը այրեց Նաւարինի առաջ. եւրոպական դեսպանները Կոստանդնուպօլսից հեռացան, և պատերազմը դրգռուելու վրայ էր Տաճկաց և Ռուսաց մէջ։ Այս տագնապալից հանգամանքների մէջ Օսմանեան տէրութիւնը հարկաւոր համարեց զգուշութեան միջոցներ առնել հռոմէական Հայոց դէմ, որոնք Եւրոպացոց հետ ունեցած յարաբերութիւնների պատճառով կասկածների տեղիք էին տալիս։ Սուլթան Մահմուդ հրովարտակ հանեց Հայոց Պատրիարքի անունով, որով պատուիրում էր Գաղատացի հռոմէականներին իրանց հայրենիքը աքսորել, իսկ Պօլսեցի հռոմէականներին Փոքր-Ասիայի այլևայլ գաւառները. նոյնպէս լատին կրօնաւորներին և կոյսերին Եւրոպա քշել, և ընդհանրապէս Պէրա, Ղալաթիա և ուրիշ եւրոպական թաղերում բնակող հռոմէականներին հայաբնակ թաղերը տեղափոխել։ Սուլթանի հրամանը ամենայն խստութեամբ գործ դրուեցաւ 1827-ի դեկտեմբերի վերջերին և հետեւեալ տարուան յունվար և փետրվար ամիսներին. բազմաթիւ գերդաստաններ առանց որևէ պատրաստութեան և ձմեռուան ամենացուրտ ժամանակին քշուեցան ասիական գաւառները։ Աքսորեալների թիւը 12,000 հոգու էր հասնում, որոնց մէջ քառասունից աւելի քահանայք կային։ Մօտ 400 երեխայք ճանապարհին մեռան ցրտից ու քաղցից. մնացած բազմութիւնը անասելի նեղութիւններով տարուեցաւ իւր բնակութեան համար որոշուած

տեղերը։ Բայց ինչպէս սովորաբար լինում է այսպիսի դէպքերում, հռոմէական Հայոց մեծ մասը առաջուան յամառութեան մէջ մնացին, մինչև որ հանգամանքները թոյլ տային նոցա ազատօրէն հետևելու իրանց դաւանութեանը։

Ռուս-տաճկական պատերազմը վերջացաւ Ադրիանուպօլսի դաշնադրութեամբ, որ պարտք էր դնում Օսմանեան տէրութեան վրայ իւր բոլոր հպատակ քրիստոնեայ ազգերին կրօնական ազատութիւն տալու։ Այս հիման վրայ և եւրոպական դեսպանների միջնորդութեամբ՝ հռոմէական Հայք աքսորից վերադարձան և իրաւունք ստացան առանձին գլուխ ունենալու, բոլորովին անկախ Հայոց պատրիարքարանից, այն պայմանով որ 150,000 ղուրուշ առաջուց ընծայ տան արքունական գանձարանին և 3 միլիոն 38,000 ստակ (աքճէ) տարեկան հարկ վճարեն (1830)։ Հայր Անտոն Նուրիճեան վարդապետը Հռոմից ուղարկուած էր կաթոլիկ Հայոց հովուելու. բայց որովհետև սա Աւստրիայի հպատակ էր, սուլթանը նշանակեց Մանուէլեան Յակոբ վարդապետին։ Այսպիսով հռոմէական Հայք երկու գլուխ ունեցան. մէկը հոգևոր, որ կոչվում էր Նախագահ և իւր ձեռքին ունէր գերագոյն հոգևոր իշխանութիւնը, իսկ միւսը աշխարհական գլուխ կամ Ազգապետ, որ «ազգային խորհրդի» աջակցութեամբ վարում էր համայնքի գործերը և պատասխանատու էր տէրութեան առաջ հռոմէական Հայոց բոլոր գործողութիւնների համար։ Մի քանի տարուց յետոյ հռոմէական համայնքի հոգևոր գլուխը իրաւունք ստացաւ տէրութիւնից Պատրիարքի տիտղոսը կրելու (1835)։

Հռոմէական Հայոց խնդրի մէջ, ինչպէս տեսանք,

մեծ մասնակցութիւն ունեցաւ Պէզճեան Յարութիւն ամիրան, Տաճկահայոց ամենամեծ պարծանքներից մէկը։ Պէզճեանը ծնաւ Կոստանդնուպօլսում 1771-ին հասարակ ծնողներից։ Պատանեկութեան հասակում տարրական կրթութիւն ստանալով, մետաքսավաճառի մօտ աշակերտ մտաւ. սորանից է առաջ գալիս Ղազէզ Արթին անունը, որով ծանօթ էր իւր ժամանակակիցներին։ Շուտով նա իւր աշխոյժութեամբ ու սրամտութեամբ անուն հանեց և Տիւզեանց մօտ հրաւիրուեցաւ գործակալութեան պաշտօնով. իսկ այս վերջինների դժբաղդութիւնից յետոյ, արքունի դրամահատութիւնը նորան յանձնուեցաւ։ Այնուհետև Պէզճեանի ազդեցութիւնը օր աւուր աւելանում էր թէ տէրութեան առաջ և թէ ազգային գործերի մէջ։ Բայց այդ ազդեցութիւնը գործ դրեց նա լիովին ուրիշներին բարիք անելու։ Ի բնէ օգործած և մարդասէր լինելով, իւր անսահման առատաձեռնութիւնը վայելեցին ամեն հասարակութիւնները առանց ազգի և կրօնի խտրութեան։ Իւր ծախքովը Կոստանդնուպօլսում և գաւառներում Հայոց և Յունաց եկեղեցիներ շինել տուեց, ինչպէս նաև ուսումնարաններ իւր ազգակիցների կրթութեան համար, որ և առատ եկամուտներով ապահովեց։ Նոյնպէս և Եդիրնէի Ս. Փրկչի վանքը շինեց ազգային հիմնդանոցով, և արքունի հրովարտակով հրաման ստացաւ նոյն վանքում մոմարան հաստատելու և եկեղեցիներին մոմ ծախելու, արտօնութիւն՝ որ մինչև այն ժամանակ չունէին քրիստոնեաները. մի ուրիշ հրովարտակ էլ յաջողեցաւ հանել սուլթանից, որով քրիստոնեայ ազգերի եկեղեցական կալուածները կորուստի վտանգից ազատեց։ Մեծ եղան և տէրութեան

մատուցած ծառայութիւնները, մանաւանդ 1828-ի պատերազմի ժամանակ, երբ արքունի գանձարանի դրամը նուազած և մայրաքաղաքի հացը պակասած էր. Պէզճեանը իւր հնարագիտութեամբ թէ դրամ ճարեց և թէ քաղաքը առատութեամբ լցրեց, որով և աղքատ դասը տարագրուելու առաջն առաւ։ Պէզճեանը մեռաւ 1834-ին և թաղուեցաւ Մայր եկեղեցու գաւթում։ Ամենքը՝ սուլթանից սկսած մինչև վերջին հպատակը, ողբացին նորա մահը։

## 86.

*Թանզիմաթ և նորա ազդեցութիւնը Տաճկահայոց ներքին կեանքի վրայ (1839).—Իւսկիւտարի ճեմարանը.—Յակոբոս պատրիարք և բողոքականութեան առաջին քարոզութիւնները.—Ժողովրդական հոգաբարձութիւն.—Քսանեօթների ժողով (1831).—Մատթէոս պատրիարք (1844).—Տաճկահայոց յարաբերութիւնների վերականգնումը Ս. Էջմիածնի հետ. Ներսէս Ե Աշտարակեցի։*

Սուլթան Աբդիւլ Մէջիդի թագաւորութիւնը նոր դարագլուխ եղաւ Թուրքիայի քրիստոնեայ ազգերի համար։ Մահմուդի երիտասարդ որդին գահը նստելով, 1839-ի նոյեմբերի սկզբին մի հրովարտակ հանեց, որով իւր բոլոր հպատակներին անխտիր կեանքի, պատուի ու ստացուածքի ապահովութիւն էր խոստանում և հարկերի համահաւասար բաժանման սկզբունքն ընդունում։ Այս հրովարտակի հիման վրայ պատրաստուեցան նոր օրէնքներ, որոնց բովանդակութիւնը յայտնի է Թանզիմաթ անունով։ Հաստատուեցան գաւառական ժողովներ (մէջլիս) կուսակալների նախագահութեամբ՝ խառն մահ-

մէտակններից և քրիստոնեաներից, և կառավարիչ փաշաներին արգելուեցաւ առանց այդ ժողովների դատելու կամ հարկ առնելու։ Նոյնպէս քրիստոնեաները իրաւունք ստացան քաղաքական պաշտօնների մէջ մտնել. Հայք շուտով ցոյց տուին իրանց ընդունակութիւնը այս նոր ասպարիզում, և նոցանից ոմանք կարճ միջոցում բէյութեան և փաշայութեան աստիճաններին հասան։

Նոր օրէնսդրութիւնը մեծ ազդեցութիւն ունեցաւ և Հայոց ներքին կեանքի վրայ։ Մինչև այդ ժամանակները ազգային բոլոր գործերը ամիրաներից էին կախուած, որոնք տէրութեան պաշտօնեաների հովանաւորութեան շնորհով՝ ամեն բան իրանց ուզածին պէս էին տնօրինում։ Ժողովուրդը, որ բաղկանում էր մեծ մասամբ արհեստաւորների (էսնաֆ) դասից, շատ անգամ յուզման մէջ էր ընկնում ամիրաների գժտութիւններից, բայց չէր համարձակում ձայն հանել իւր մեծերի առաջ. որովհետև գիտէր որ եթէ մի ոտնձգութեան ցոյց անէր, աքսոր կամ մահ էր սպասում նորան։ Այժմ որ նոր կարգերով ամեն մի անհատի կեանքն ու պատիւը ապահովվում էր, պարզ էր որ ժողովուրդը պիտի ձգտէր մեծամեծների ազդեցութիւնից ազատուելու և իւր իրաւունքների տէր լինելու։

Ընդհարումը տեղի ունեցաւ դպրոցական խնդրի առթով։ Մինչև անցեալ դարու վերջերը Կոստանդնուպօլսում ազգային ուսումնարաններ չկային, այլ տարրական կրթութիւնը տրվում էր խաներում, տներում և կրպակներում։ Շնորհք Մկրտիչ ամիրան եղաւ առաջինը, որ 1790-ին հասարակաց ուսումնարաններ հիմնեց մայրաքաղաքի այլևայլ թաղերում։ Այնուհետև դպրոցները

Թիւը ամիրաների օգնութեամբ և զանազան անձանց ջանքով հետզհետէ աւելացաւ։ Շուտով հարկաւորութիւն զգացուեցաւ մի բարձրագոյն գիշերօթիկ ուսումնարան ունենալու, ուր միւս դպրոցներում աւարտող աշակերտները կարողանային իրանց ուսումը շարունակել։ Այս պակասը ուզեց լրացնել Պալեան Կարապետ ամիրան իւր մի քանի ընկերներով, Երուսաղէմի վանքի մի շինութիւն նորոգելով Իւսկիւտարի թաղում և հիմնելով այնտեղ «Ճեմարան Ս. Երուսաղէմայ անունով» դպրոցը, որ բացուեցաւ 1838-ի դեկտեմբեր ամսին։

Նոյն ժամանակները պատրիարք նստաւ Յակոբոս եպիսկոպոսը, որ Մարզուանի առաջնորդութիւնից բերուել էր բողոքականութեան դէմ մաքառելու համար։ Արդէն մի քանի տարի կար որ բողոքական քարոզիչները (միսիօնար) Ամերիկայից եկել էին Կոստանդնուպօլիս իրանց վարդապետութիւնը Հայոց մէջ տարածելու։ Այս նպատակով երկու գիշերօթիկ բարեկարգ ուսումնարաններ հիմնեցին Պէրայի և Բէբէքի թաղերում, որոնց նմանը Հայերը դեռ տեսած չէին, և ուր ամեն կողմից դիմում էին աքքատ հայ մանուկները ձրի ուսում առնելու։ Քիչ յետոյ հասակաւորների համար էլ սահմանեցին Կիրակնօրեայ դասախօսութիւններ, ուր գրել-կարդալ ուսուցանելու պատրուակով՝ իրանց կրօնական գաղափարները ներշնչում էին ստորին կարգի ժողովրդի մէջ։ Փոքրառփոքր սկսաւ աճել այս մարդասէր նորեկների ազդեցութիւնը, որոնք Ս. Գիրքը ձրի բաժանում էին, աղքատներին ու որբերին ապրուստ էին տալիս, անգործ մարդկանց համար պաշտօններ էին ճարում։ Երբ իմացուեցաւ որ քարոզիչների նպատակը ազգի մէջ

մի նոր պառակտում ձգեց է, Հայերը սկսան զզուշանալ նոցանից. բայց արդէն բողոքականութիւնը բուն էր դրել Կոստանդնուպօլսի ժողովրդի մէջ և կամաց կամաց գաւառներին էր տարածվում։ Յակոբոս պատրիարքը այս չարիքի առաջն առնելու համար՝ վճռեց բուռն միջոցներ գործ դնել։ Նա աքսորեց Փոքր-Ասիա այն անձանց՝ որոնք բողոքականութեամբ խմորուած էին համարվում, և Լուտերի վարդապետութիւնը հրապարակաւ նզովեց. բայց Անգլիայի դեսպանի ազդու միջամտութեամբը Պատրիարքը յանդիմանութիւն ստացաւ Բ. Դռնից։ Այն ժամանակ Յակոբոսը մտածեց օտարական քարոզիչների դէմ նոցա զէնքով՝ այն է կրթութեամբ մաքառել, այնպէս որ Հայերը ստիպուած չլինէին այլևս իրանց որդոց բողոքականների դպրոցները ուղարկել։

Արդէն այս նպատակով հիմնուած էր Իւսկիւտարի ճեմարանը, և պատրիարքը իւր բոլոր խնամքը դարձրեց այս հաստատութեան վրայ։ Թէև Երուսաղէմի վանքը իւր գանձարանից տարեկան 120,000 ղուրուշ էր յատկացրել ճեմարանին, բայց այս գումարը բաւական չէր բոլոր ծախքերը հոգալու։ Յակոբոսը ամիրաներին օրինակ տալու համար՝ իւր վիճակից երկու չքաւոր աշակերտ բերել տուեց և իւր ծախքովը պահեց ճեմարանում. նոյնը յանձն առին անել և ամիրաներից քան հոգի։ Բայց որովհետև սոքա ճեմարանի գլխաւոր հիմնադրի դէմ թշնամութիւն ունէին, ուստի ոչ միայն իրանց խոստումը չկատարեցին, այլև աշխատեցան որ Երուսաղէմի պատրիարքը խոստացած գումարը չհատուցանէ։ Այս տեսնելով Յակոբոս պատրիարքը մտածեց որ ամեն մի ճանապարհորդ Պատրիարքարանից անցագրի վկայա-

կան հանելիս՝ 5 դուրուշ վճարէ յօգուտ Ճեմարանի։ Ապա աւելի հեռու գնալով, յաջողեցաւ ամիրաների հաւանութիւնն առնել որ ազգային հաստատութիւնների պահպանութեան համար յատուկ տուրք հաւաքուի ժողովրդից, և այդ տուրքի վրայ 24 անձինք հոգաբարձու կարգուին արհեստաւորների զանազան դասերից։ Բայց երբ քանիչորս հոգաբարձուներ ժողովեցան Պատրիարքարան և առաջարկութիւն եղաւ որ վեց հոգի էլ ամիրաներից կարգուին իբրև տեսուչ ժողովի գործունէութեան վրայ, սոքա զուարճաբար մերժեցին արհեստաւորների հետ միասին նստելը իրանց պատուին նախատինք համարելով։ Այսպիսով գործերի բոլոր բեռը քանիչորսների վրայ մնաց, որոնք չկարողանալով ազգային պէտքերի համար առձեռն պէտք եղած 80,000 դուրուշի գումարը գտնել, հրաժարուեցան իրանց պաշտօնից։ Պատրիարքը մի վերջին փորձ էլ փորձեց. ամիրաներին իւր մօտ հրաւիրեց և ազգային հաստատութիւնների ողորմելի վիճակը ներկայացնելով խնդրեց որ հօգ տանին պէտք եղած դրամը ժողովելու։ Ամիրաները յանձն առին գումարի կէսը տալ, այն պայմանով որ մնացած կէսն էլ արհեստաւորները տան. բայց երբ սոքա յօժարութիւն ցոյց տուին, ամիրաները յետ քաշուեցան, յուսալով որ այսպիսով ժողովուրդը կը յուսահատուի և ասպարէզը դարձեալ իրանց կը մնայ։ Այս բաներից յետոյ Յակոբոս պատրիարքը պարտաւորուեցաւ հրաժարուիլ, և նրա տեղն անցաւ նախորդ Ստեփան պատրիարքը, որ թոյլ ու երկչոտ մարդ լինելով՝ ամիրաների կամքը կատարում էր։

Սակայն Ճեմարանի վիճակը եթեալով վատթարա—

նում էր։ 1841-ի ապրիլին քննութեան հանդիսի ժամանակ՝ դպրոցի տնօրէնը մի ազդու ատենաբանութիւն արաւ, որի տպաւորութեան տակ ներկայ եղողների մէջ Միակամ անունով ընկերութիւնը կազմուեցաւ յիշեալ հաստատութիւնը կանգուն պահելու նպատակով։ Գործը սկսուեցաւ նորանով որ ճեմարանի աշակերտները սուլթանին աղերսագիր մատուցին, և տէրութեան հաւանութեամբ քանիչորս արհեստաւորների հոգաբարձութիւնը ընտրուեցաւ ազգային գործերի տեսչութիւնը վարելու, բայց նա գործին ձեռնամուխ լինել չկարողացաւ, որովհետև ամիրաները յաջողեցան հաստատութեան հրովարտակը կանգնեցնել։ Ժողովուրդը վշտացած աղերսագիր տուաւ սուլթանին, որ գործի քննութիւնը Բ. Դրանը յանձնեց։ Սակայն տէրութեան պաշտօնեաները յայտնի պաշտպանութիւն էին ցոյց տալիս ամիրաներին. սոցա թելադրութեամբ որոնուեցան քանիչորս հոգաբարձուները և աղերսագիր ստորագրողները և մէկ մէկ բանտարկուեցան։ Այս որ լսեցին արհեստաւորները, խանութները փակեցին և 3,000 հոգի Բ. Դուռը դիմելով՝ եղածների դէմ բողոքեցին և իրանց ընկերների ազատութիւնը պահանջեցին։ Դուռը ժողովրդին հանդարտեցնելու համար՝ ստիպուեցաւ բանտարկեալներին ազատել. բայց մի քանի օրից յետոյ շարժման պարագլուխները աքսորուեցան, Ստեփան պատրիարքը պաշտօնանկ եղաւ և նորան յաջորդեց Աստուածատուր եպիսկոպոսը. Ճեմարանն էլ իբրև պատճառ խռովութեան փակուեցաւ։ Այս լրողութիւնները փոխանակ վհատեցնելու՝ աւելի ևս զայրացրին ժողովրդին. որոշուեցաւ ամեն զոհողութիւն յանձն առնել ամիրաների բռնութիւնից ա-

պատուելու համար։ Զարհուրեցան ամիրաները այս հաստատամտութիւնը տեսնելով և այն մարդիկը որ Դրան պաշտպանութեամբ ժողովրդի բոլոր ջանքերը դերև էին հանում, այժմ նոյն Դրան միջնորդութեանը դիմում են ժողովրդի սիրտը շահելու։ Վերջապէս ժողովրդի ձայնը լսելի եղաւ, և վերջին աղերսագրի հիման վրայ՝ արքունի հրովարտակով հաստատուեցաւ 27 անձերից բաղկացած մի ժողով, որ բոլոր ազգային գործերը պատրիարքից ու ամիրաներից անկախ պիտի վարէր (1841 դեկտ. 12։)

Այս յաղթութիւնից յետոյ, ժողովրդի ներկայացուցիչները շուտով սկսան զգալ իրանց վրայ դրուած պարտաւորութեան ծանրութիւնը։ Ազգային հաստատութիւնները՝ Պատրիարքարանը, ուսումնարանները, հիւանդանոցը և որբերի ու աղքատների խնամքը մեծ ծախքեր էին պահանջում, և նորա անկարող էին այս բոլոր պէտքերը հոգալ առանց ամիրաների մասնակցութեանը։ Տրտունջը քանի գնաց սաստկացաւ, և քսանեօթները տարին չլրացած՝ ստիպուեցան պաշտօնից հրաժարուիլ և վարչութեան ղեկը ամիրաներին յանձնել։ Բայց նոքա էլ հասկացան որ առանց ժողովրդի նուիրատուութիւնների երկար չպիտի կարողանան դիմանալ. ուստի մի պատուաւոր ելք գտնելու համար՝ որոշեցին պատրիարք նստեցնել Զմիւռնիայի առաջնորդ Մատթէոս եպիսկոպոսին, որ այն ժամանակ մեծ ժողովրդականութիւն էր վայելում։ Եւ յիրաւի նոր պատրիարքը յաջողեցաւ երկու կուսակցութիւնները հաշտեցնել և մի վարչական ժողով կազմել 30 հոգուց, որոնց 16-ը ամիրաներ էին և 14-ը պատուաւոր արհեստաւորներ (1844)։

*Մատթէոս պատրիարքի առաջին գործերից մէկն եղաւ Տաճկահայոց յարաբերութիւնները վերականգնել Ս. Էջմիածնի հետ։ Հայոց կաթողիկոսները սովորութիւն ունեցած են իսկզբանէ անտի նուիրակներ և օրհնութեան կոնդակներ ուղարկել ամեն հայաբնակ երկրները։ Այս նուիրակները մի ժամանակից սկսան աւելի յաճախ երթևեկութիւն ունենալ Կոստանդնուպօլիս, ուր իբրև կաթողիկոսական ներկայացուցիչներ՝ նոքա վայելում էին ժողովրդի յարգանքը, երբեմն նաև պատրիարքական աթոռն էին բարձրանում։ Սակայն ներկայ դարու սկզբներին այս յարաբերութիւնները ընդհատուեցան քաղաքական դէպքերի պատճառով. Դանիէլ կաթողիկոսի երկու յաջորդները՝ Եփրեմ և Յովհաննէս կաթողիկոսները առանց Տաճկահայոց մասնակցութեան ընտրուեցան։ Իսկ 1828-ի ռուս-տաճկական պատերազմից յետոյ, Օսմանեան տէրութիւնը իւր հպատակ Հայոց Ռուսաստանի ազդեցութիւնից ազատ պահելու դիտաւորութեամբ՝ նուիրակների երթևեկութիւնը բոլորովին դադարեցրեց և մինչև անգամ արգելեց Էջմիածնի կաթողիկոսի անունը յիշատակել եկեղեցիներում։ Այսպէս մնաց մինչև Յովհաննէս Կարբեցու մահը, երբ Տաճկահայոց հրաւէր եկաւ նոր կաթողիկոսի ընտրութեանը մասնակից լինելու։ Նոքա իրանց կողմից պատուիրակ ուղարկեցին Էջմիածին Նիկոպօլսի առաջնորդ Պետրոս վարդապետին, որ իւր ձայնը ժողովականների մեծ մասի հետ տուեց Ներսէս Ե Աշտարակեցուն (1843)։ Յաջորդ տարին Մատթէոս Պատրիարքը Բ. Դրան հաճութիւնն առնելով ժողովով որոշեց, որ Ընդհանրական կաթողիկոսի անունը վերստին սկսի յիշատակուիլ Թուր-*

քիայի Հայոց եկեղեցիներում. միայն վճռուեցաւ, որ Նուիրակութիւնը իսպառ վերցուի և Կոստանդնուպօլսի պատրիարքը կաթողիկոսական փոխանորդ համարուի, նորա ձեռքով հաւաքուին և ուղարկուին Էջմիածնի եկամուտները և ս. մեռոնը բաժանուի եկեղեցիներին։

## 87.

*Մատթէոս պատրիարքի գործունէութիւնը.—Հոգևոր և Գերագոյն ժողովներ (1847).—Մատթէոսի հրաժարումը (1848).—Բողոքականութեան հաստատութիւնը Հայոց մէջ (1850).—Յակոբոսի երկրորդ պատրիարքութիւնը (1848—1858).—Մատթէոս կաթողիկոսի ընտրութիւնը (1858).—Գէորգ պատրիարք.—Սարգիս պատրիարք և Ազգային Սահմանադրութեան հաստատութիւնը (1860 մայիս 24).—Սահմանադրութեան գլխաւոր սկզբունքները.—Ազգային ընդհանուր ժողովի կազմութիւնն և պարտաւորութիւնները.—Կրօնական և Քաղաքական ժողովներ և խորհուրդներ.—Գաւառական ժողովներ։*

Մատթէոս պատրիարքը իւր չորսամեայ պաշտօնավարութեան ժամանակ մեծ գործունէութիւն ցոյց տուեց։ Նորա օրով զանազան ընկերութիւններ կազմուեցան թաղական դպրոցներ բանալու, գրատուն և ընթերցանութեան թանգարան հիմնելու, և այնուհետև սկսաւ սովորութիւն մտնել ազգային հաստատութիւնները ընկերութեամբ և ժողովրդի օժանդակութեամբ պահելու, և ոչ լոկ ամիրաների նպաստովը, ինչպէս որ մինչև այն ժամանակները լինում էր։ Ուսկիւտարի ճեմարանը, որ տէրութեան ձեռքն անցել և արքունի զօրքի հիւանդանոց էր դարձել, պատրիարքի միջնորդութեամբ յետ առնուեցաւ և վերստին բացուեցաւ։ Նոյն-

պէս լրագիրներ էլ սկսան հրատարակուիլ. պատրիարքի աշխատութեամբ հիմնուեցաւ մի պաշտօնական օրագիր Հայաստան անունով (1840), որ յետոյ կոչուեցաւ Մասիս (1852)։

Սակայն Մատթէոս պատրիարքը իւր գործունէութեան մէջ ինքնիշխանաբար էր վարվում և շատ քան անում էր առանց ամիրաների հետ խորհրդակցելու, և այդ հարկաւ մեծ տհաճութիւն էր պատճառում սոցա։ Դժգոհութիւնը թշնամութեան փոխուեցաւ գաւառական առաջնորդների փոփոխութեան խնդրի առթիւ. ամիրաները կամենում էին առաջուան պէս առաջնորդներ փոփոխել և ուզած անձանց կարգել. իսկ պատրիարքը պնդում էր թէ այդ իրաւունքը գաւառացի ժողովրդինն է, որ իւր ցանկացած եկեղեցականին պատրիարքի հաւանութեամբ առաջնորդ է ընդունում, և թէ աշխարհական անձինք իրաւունք չունին հոգևոր գործերի մէջ խառնուելու։ Ամիրաները ստիպուեցան առժամանակ լռել, որովհետև Պատրիարքը ժողովրդին սիրելի էր և նոյն իսկ ամիրաների մէջ պաշտպաններ ունէր, ինչպէս էր օրինակի համար Ճէզայիրլեան Մկրտիչ ամիրան, որ այն ժամանակները մեծ ազդեցութեան տէր էր։ Իսկ երբ նաէլ մի չնչին պատճառով թշնամացաւ Մատթէոսի հետ, ամիրաները միաբանեցան իրանց վրէժն առնելու Պատրիարքից։ Չհամարձակելով յայտնի հրաժարեցնել նորան, մտածեցին նորա իրաւունքները սահմանափակել։ Այս դիտաւորութեամբ արքունի հրովարտակ հանեցին, որով պատուիրվում էր երկու ժողով հաստատել Պատրիարքարանում, մէկը կրօնական և միւսը քաղաքական գործերի համար. երկու ժողովներին էլ Պատ-

բիապքը պիտի նախագահէր. բայց առանց նոցա գիտութեանը Բ. Դրան հետ ոչինչ հաղորդակցութիւն չպիտի ունենար։ 1847-ի մայիսին ընդհանուր ժողով կազմուեցաւ Մայր եկեղեցում, ուր Պատրիարքի ներկայութեանը ընտրուեցան 14 եկեղեցական Հոգևոր ժողովի համար և 20 աշխարհական անձինք Գերագոյն կոչուած ժողովի համար՝ ամիրաներից, արհեստաւորներից և վաճառականներից։ Որոշուեցաւ որ իւրաքանչիւր ժողով շաբաթը մի մի անգամ գումարուի ընթացիկ գործերը կարգադրելու։ Հոգևոր ժողովի պարտականութիւնը պիտի լինէր եկեղեցիների պայծառութեանը հոգ տանել, առաջնորդներ նշանակել և նոցա մէջ ծագած վէճերը քննել, գաւառների ժողովրդին փաշաների հարստահարութիւնից և այլազգիների անիրաւ պահանջներից պաշտպանել. իսկ եթէ մի խնդիր քաղաքական բնաւորութիւն ունենար, Պատրիարքի ստորագրութեամբ պիտի հաղորդուէր Գերագոյն ժողովին, որի պարտաւորութիւնն էր ընդհանրապէս խնամք տանել, ուսումնարանների, հիւանդանոցների, աղքատների ու որբերի վրայ։ Նոյնպէս որոշուեցաւ որ յիշեալ ժողովների անդամները երկու տարին մի անգամ փոխուին և նոցա տեղ ընտրուածները տէրութեան հրովարտակով հաստատուին։

Շատ չանցաւ, ամիրաները զգացին, որ այս կերպով Պատրիարքից վրէժ առնել չկարողացան, այլ ընդհակառակն ընտրողական և ազգային վարչութեան հիմք դնելու նպաստեցին, որի համար ժողովուրդը այնքան աշխատել և իրանք արգելք էին եղել, ուստի վճռեցին անպատճառ հրաժարեցնել Պատրիարքին։ Բայց Մատթէոսը չուզեց իւր յօժար կամքովը հրաժարուիլ. մինչև

որ Բ. Դուռը ստիպեց նորան գործից հեռանալ (1848)։

Մատթէոս պատրիարքի անուան հետ կապուած է բողոքականութեան հաստատութիւնը Տաճկահայոց մէջ։ Ցակոբոսի անյաջող փորձերից խրախուսուած՝ քարոզիչները մի քանի տարուան ընթացքում բաւական նշանաւոր բազմութիւն էին որսացել ազգային եկեղեցու փարախից։ Մատթէոս պատրիարքը իւր բոլոր զբաղմունքներովը հանդերձ չէր կարող ուշադրութիւն չդարձնել այս մեծ վտանգի վրայ։ Զբաւականանալով եկեղեցիներում խօսած յաճախակի քարոզներով, նա հրաւիրում էր իւր մօտ մոլորեալներին, քաղցրութեամբ համոզում էր նոցա հաստատ մնալ իրանց կրօնի մէջ, չքաւորներին էլ դրամական օժանդակութիւն էր խոստանում։ Այսպիսով շատերին կարողացաւ յետ դարձնել։ Մնաց միայն մի խումբ յամառեալների, որոնց վրայ ոչ համոզմամբ և ոչ խոստումներով կարելի եղաւ ներգործել. և ահա սոցա դէմ Պատրիարքը սովորական զէնքը գործ դրեց՝ բանտ և հալածանք։ 1846-ի յունվարի 12-ին մի շրջաբերական թուղթ հանեց, որով բանադրում էր բողոքականութեան հետևողներին, և պատուիրում էր իւր հօտին հաղորդակցութիւն չունենալ մոլորեալների հետ, ոչ ազգական անել, ոչ առնելիք տալիք ունենալ և ոչ անգամ տեսնուել նոցա հետ։ Բանադրեալները Բ. Դրան կողմից պաշտպանութիւն չը գտնելով, բողոքական տէրութիւնների օգնութեանը դիմեցին։ Վերջապէս Անգլիայոց դեսպանը Րէդկլիֆ յաջողեցաւ բողոքականներին Հայոց պատրիարքի իշխանութիւնից հանել կայսերական հրովարտակով, և այնուհետև Հայ-բողոքականները անջատ կրօնական հասարակութիւն կազմեցին առանձին

ազգապետի իշխանութեան տակ (1850)։

Մատթէոսի տեղ ժողովրդի ցանկութեամբ և ամիրաների կամքի հակառակ ընտրուեցաւ դարձեալ Յակոբոսը։ Յակոբոսի երկրորդ պատրիարքութեան տարիներում (1848—1858) Պօլսոյ Հայոց մտաւոր և բարոյական կեանքի մէջ մի զգալի շարժում երևեցաւ. դպրոցների թիւը շատացաւ, լրագրութիւնը սկսաւ ծաղկիլ, և այս շարժումը գաւառների ժողովրդի վրայ էլ իւր ազդեցութիւնն ունեցաւ։ Սակայն Իւսկիւտարի ճեմարանը չքաւորութեան պատճառով տեղափոխուեցաւ Եդիկուլէի Ս. Փրկչի վանքը, ուր արդէն բաւական որբ ու աղքատ երեխայք կրթութիւն էին առնում՝ թէ քաղաքի բնակիչներից և թէ գաւառներից։

Յակոբոս պատրիարքը իւր նախորդի նման որդիական յարաբերութիւն պահպանեց Ս. Էջմիածնի Ընդհանրական Հայրապետի հետ։ Երբ 1857-ին փետրվարի մէջ Ներսէս Ե մեռաւ, Տաճկահայք հրաւիրուեցան նոր կաթողիկոսի ընտրութեանը մասնակցելու. նոքա ընդհանուր ժողովով երեք ընտրելիների ցուցակ կազմեցին և Թիֆլիսի պատգամաւորներին ուղարկեցին, պատուիրելով որ իրանց քուէն երեքից մէկին տան։ Ընտրութիւնն ընկաւ նախորդ Մատթէոս պատրիարքի վրայ, որ և Ռուսաց կայսեր հրովարտակով հաստատուեցաւ (1858)։ Մատթէոս կաթողիկոսը իւր նոր կացութիւնից տժգոհ լինելով, ընդհանրապէս քաշուած կեանք վարեց և գրէթէ միայն գրաւորական աշխատութիւնների զբաղուեցաւ։ Սակայն և այնպէս նորա շնորհով դպրոցական գործը մեծ զարգացում ստացաւ Ռուսահայոց մէջ ուսումնարանների վարչութիւնը աշխարհական հոգաբարձուների ձեռ-

քըն անցաւ, և նոցա պահպանութեան համար եկեղեցիներից ու վանքերից եկամուտներ նշանակուեցան։

Տակաւին Մատթէոս կաթողիկոսը Կոստանդնուպոլսումն էր, որ Յակոբոս պատրիարքը ծերութեան պատճառով հրաժարուեցաւ և նորա տեղ ընտրուեցաւ Բրուսայի առաջնորդ Գէորգ եպիսկոպոսը։ Արդէն տասը տարուց աւելի էր, որ Հոգևոր և Գերագոյն ժողովները հաստատուել էին, և այդ միջոցում յիշեալ ժողովների անդամները մի քանի անգամ փոխուեցան, բայց և այնպէս ազգային վարչութեան եղանակի մէջ մի փոփոխութիւն չէր նշմարվում, որովհետև ամեն անգամ միևնոյն անձինքը կամ նոյն գաղափարների տէր անձինք էին ընտրվում։ Ժողովները մի որոշ կանոնադրութիւն չունէին, որով կարողանային առաջնորդուել իրանց գործունէութեան մէջ. և թէպէտ մի քանի փորձեր եղան վարչութեան մէկ կամ միւս ճիւղին վերաբերեալ կանոններ սահմանելու, բայց այդ փորձերը, ապարդիւն մնացին։ Վերջապէս Գէորգ պատրիարքի օրով Գերագոյն ժողովը մի մեծ յանձնաժողով կազմեց և առաջարկեց պատրաստել մի կանոնադրութիւն, որով որոշուէին վարչական ժողովների ընտրութեան եղանակը, նոցա իրաւունքներն ու պարտաւորութիւնները և այլն։ Ահա այսպիսով կազմուեցաւ 1860-ի Ազգային Սահմանադրութիւնը, որի խմբագրութեան վրայ աշխատեցան նոյն ժամանակի բանիբուն երիտասարդները՝ Պալեան Նիկողայոս, Օտեան Գրիգոր, Ռուսինեան, Աղաթոն և այլք։

Գէորգ պատրիարքը տժգոհ լինելով նոր օրէնսդրութիւնից, որ պատրիարքական իրաւունքները կարճում և ազգային ժողովի կամքին էր ենթարկում, հակառակե-

ցաւ Սահմանադրութեան գործադրութեանը. ուստի և պարտաւորուեցաւ հրաժարուիլ, և նորա տեղ անցաւ Արքիանուպօլսեցի Սարգիս եպիսկոպոսը։ 1860-ի մայիսի 24-ին ընդհանուր ժողով գումարուեցաւ, ուր ազգի նշանաւոր եկեղեցականների ու աշխարհականների և ժողովրդի խուռն բազմութեան ներկայութեանը կարդացուեցաւ Ազգային Սահմանադրութիւնը, և նորա մէջ կրօնի ու եկեղեցական կանոնների հակառակ ոչինչ չըգտնուելով՝ բոլոր ժողովականների ստորագրութեամբ վաւերացուեցաւ։ Այս սահմանադրութեամբ, որ յետոյ մի քանի փոփոխութիւններով տէրութիւնից էլ հաստատուեցաւ, կառավարվում են այժմ Թուրքիայի Հայերը։

Սահմանադրութեան հիմնական սկզբունքները սոքա են։

«Ա. Ազգին ամեն մէկ անհատը առ ազգը պարտաւորութիւններ ունի. Ազգն ալ իր կողմէն առ ազգային ամեն մէկ անհատ պարտաւորութիւններ ունի. դարձեալ ամեն մէկ անհատ իրաւունք ունի Ազգէն և ազգն անհատներէն։

Ուստի Ազգն ու ազգայինք փոխադարձ պարտեօք կապուած են իրարու հետ, այնպէս որ մէկին պարտաւորութիւնքը միւսին իրաւունքն են։

Բ. Ազգայնոց պարտականութիւնն է Ազգային պիտոյքը պահանջած ծախքերուն մասնակից ըլլալ իւրաքանչիւրը իւր կարողութեան չափովը. Ազգին խնդրած ծառայութեանցը յօժարակամ յանձնառու ըլլալ և տնօրէնութեանցը սիրով հնազանդիլ։

Ազգայնոց այս պարտաւորութիւնքը Ազգին իրաւունքն են։

Գ. Ազգին պարտաւորութիւնն է՝ ազգային բարոյական, մտաւորական և նիւթական պիտոյիցը հոգ տանիլ. Հայաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնն ու աւանդութիւնքը անարատ պահել. մարդկութեան հարկաւոր եղած անհրաժեշտ գիտելեաց ուսումը՝ ամեն աստիճանի մէջ մանչ և մէջ աղջիկ տղայոց հաւասարապէս ծաւալել. ազգային հաստատութիւնքը պայծառ պահել, հասոյթներն օրինաւոր կերպով աւելցնել և ծախքերն իմաստութեամբ տնտեսել։ Ազգին ծառայութեանը մըշտնջենապէս նուիրեալ անձանց կացութիւնը բարւոքել և ապագայն ապահովել. կարօտելոց խնամ տանիլ հայրաբար, ազգային մէջ ծագած վէճերն արդարասիրութեամբ լուծանել, և վերջապէս ազգային յառաջադիմութեան անձնանուէր աշխատիլ։

Ազգին այս պարտաւորութիւնքը ազգային իրաւունքն են։

Դ. Զազգը փոխանորդաբար ներկայացնող, և այս փոխադարձ պարտեաց կանոնաւոր կատարմանը տեսուչ ու մատակարար կարգեալ իշխանութիւնը՝ Ազգային Վարչութիւն կը կոչուի. որուն յանձնուած է Օսմանեան Տէրութենէն յատուկ արտօնութեամբ, և Սահմանադրութեան միջոցաւ, Թուրքիոյ Հայոց ներքին գործերի տնօրէնութիւնը։

Ե. Վարչութիւնը՝ ազգային ըլլալու համար՝ պէտք է երեսփոխանական ըլլայ։

Զ. Երեսփոխանական վարչութեան հիմը՝ իրաւանց ու պարտեաց սկզբունքն է, որ արդարութեան սկզբունք է. իր ոյժը ձայնից բազմութեան մէջ կը կայանայ, որ օրինաւորութեան սկզբունք է»։

Ազգային Վարչութեան գլխաւոր մարմինը երեսփոխանական Ընդհանուր Ժողովն է, որ բաղկանում է 140 անդամներից. սոցանից 20 եկեղեցական են, որ Կոստանդնուպոլսում գտնուող եկեղեցականներն են ընտրում. 40-ը՝ գաւառներից ընտրուած երեսփոխաններն են, և 80-ը՝ Կոստանդնուպոլսի թաղերից ընտրուած երեսփոխաններ։ Ազգային ընդհանուր Ժողովը տասը տարով է ընտրվում, և երկու տարին մի անգամ հինգերորդ մասը փոխուելով նորոգվում է։ Նա իւր վրայ առնում է ազգի ընդհանրական գործերի տնօրէնութիւնը, իսկ սովորական գործերի վարչութիւնը երկու ազգային ժողովների է թողնում, կրօնական գործերի մասը Կրօնական ժողովին, իսկ քաղաքական գործերի մասը Քաղաքական ժողովին։ Ընդհանուր ժողովը գումարվում է՝ Ս. Էջմիածնի Կաթուղիկոսի ընտրութեանը մասնակից լինելու համար. Կոստանդնուպոլսի և Երուսաղէմի Պատրիարքներին ընտրելու համար. Կրօնական և Քաղաքական Ժողովների կամ Պատրիարք ու Ժողովների մէջ պատահած տարաձայնութիւնը բառնալու համար. Ազգային Վարչութեան երկամեայ ընթացքի տեղեկագիրը լսելու, ելևտական պաշտօնատէրների ձեռքով ժողոված ու գործածուած գումարների ընդհանուր հաշիւը քննելու, և յետագայ երկու տարուան մէջ ազգային տուրքը ինչպէս տնօրինուիլը սահմանելու համար։

Կրօնական Ժողովը բաղկանում է 14 եկեղեցական, իսկ Քաղաքական Ժողովը 20 աշխարհական անդամներից։ Երկու Ժողովներն էլ ընտրվում են Ընդհանուր ժողովից. և երկու տարին մի անգամ նորոգվում են։

Քաղաքական Ժողովը իւր կողմից կազմում է չորս

Խորհուրդ՝ ուսումնական, տնտեսական ու դատաստանական գործերի և վանքերի տեսչութեան համար. երկու էլ Հոգաբարձութիւն՝ ելևմուտքի, կտակների և հիւանդանոցի հոգաբարձութիւններ։ Սոցա տեսչութեան տակ գտնվում են Թաղական խորհուրդները, որոնց պարտաւորութիւնն է իւրաքանչիւրը իւր թաղի եկեղեցու և դպրոցների պիտոյքները հոգալ, աղքատներին խնամել, և մասնաւոր անձանց մէջ պատահած վէճերը քննել ու խաղաղել։

Ազգային Վարչութեան պաշտօնական գլուխը Կոստանդնուպոլսի Պատրիարքն է և կենտրոնը՝ ազգային Պատրիարքարանը։ Պատրիարքը նախագահում է Ազգային Ժողովներին և նոյն գործադիր իշխանութիւնն է վարում։

Այսպէս և գաւառներում Առաջնորդը գաւառական ժողովների նախագահն է, և նոյն գործադիր իշխանութիւնն է վարում։ Իւր պարտականութիւնն է գաւառի մէջ Սահմանադրութեան գործադրութեանը հսկել։

## 88.

*Զէյթունի անցքերը (1862—63)։—Պօղոս պատրիարք և Սահմանադրութեան դադարումը (1863—69).—Խրիմեանի չորսամեայ պատրիարքութիւնը (1869—1873).—Ընտրութիւն Ներսէս պատրիարքի (1874).—Հասունեանց և Հակահասունեանց վէճերը։*

Կիլիկիայի բարձրութիւնների վրայ անյիշատակ ժամանակներից ապրում է մի կէս անկախ հայ հասարակութիւն, որի կենտրոններն են Զէյթունը և Հաճինը։ Զէյթունը լեռներով շրջապատած ամուր դիրքով մի երկիր է, որ ունի երեք հազար տուն և տասներկու եկեղեցի։ Նա կազմում է մի դաշնակցութիւն տասը գիւղերով, որոնց վեցը զուտ հայաբնակ են իսկ չորսը Թուրքմէնների հետ խառն։ Այս դաշնակցութիւնը կառավարւում է չորս հայ իշխաններով, որոնք իրանց ձեռքի տակ ունին օգնականներ կամ քեահեաներ (գիւղապետներ)։ Զէյթունցիք բարձրահասակ, յաղթանդամ ու քաջ մարդիկ են. յաճախ պատերազմներ ունենալով Խօզան-Օղլու ասած շրջակայ Թուրքմէն ցեղի հետ, նոքա միշտ քաջութեամբ պաշտպանուել են և իրանց անկախութիւնը պահել են։ Նոյն իսկ Օսմանեան տէրութիւնը չկարողացաւ կատարելապէս նուաճել և կանոնաւոր հարկատուութեան տակ դնել այս քաջ լեռնականներին, այլ բաւականացել է լոկ մի թեթև տուրք առնելով նոցանից ի նշան հպատակութեան։ Սակայն ներկայ դարու կէսերից՝ Կիլիկիայի կուսակալները զանազան պատրուակներով սկսան միջամուխ լինել Զէյթունի ներքին գործերի մէջ, աշխատելով մի կերպով

ճորա բնակիչներին հնազանդեցնել։ Այսպէս, Խրիմի պա-
տերազմից յետոյ, երբ Ռուսաստանից բազմաթիւ մահ-
մետականներ գաղթեցին Օսմանցոց երկիրը, Մարաշի
Խուրշիդ փաշան կամեցաւ գաղթականների մի մասը
բռնի Զէյթունցոց երկրումը բնակեցնել. բայց Հայերը
ընդդիմացան և զէնքով ստիպուեցան կուսակալին դի-
տաւորութիւնից յետ կանգնել (1859)։

Աւելի մեծ արիւնհեղութիւն տեղի ունեցաւ Զէյ-
թունի լեռներում 1862-ի ամառը, որ մինչև հեռաւոր
Եւրոպայում արձագանգ գտաւ։ Մարաշի Ազիզ փաշան
յարմար առիթ համարելով Զէյթունի դաշնակցութեան
պատկանող Ալաբաշ հայ գիւղի և Փէթման թուրք գիւ-
ղի բնակիչների մէջ ծագած կռիւը, 30,000 անկանոն
զօրքով յանկարծ կոխեց Զէյթունցոց երկիրը։ Ալաբաշը
քանդուեցաւ և հարիւրաւոր հայ բնակիչներ կոտորուե-
ցան. Ս. Փրկչի վանքը կողոպտուեցաւ ու կործանուե-
ցաւ՝ իւր փլատակների տակ առնելով անմեղ վանա-
կանների դիակները (յուլիս 28)։ Այս անգթութիւննե-
րից յետոյ Թուրքերը գնացին պաշարեցին Զէյթունը
(օգոստ. 2) Զէյթունցիք իրանց սովորութեան համե-
մատ՝ եկեղեցական թափորով դուրս եկան թշնամիների
առաջ, և պատերազմը սկսուեցաւ։ Հայերը թէև սակա-
ւաթիւ, բայց ազատութեան սիրով վառուած՝ քաջու-
թեան հրաշքներ գործեցին. Թշնամիների ահեղ զօրու-
թիւնը խորտակուեցաւ և մեծ կոտորածով յետ քշուե-
ցաւ՝ հարուստ աւար ու ռազմամթերք թողնելով յաղ-
թողների ձեռքը։ Այդ նշանաւոր օրը այլազգիներից
6,000 հոգի ընկան և իրանց դիակներով ծածկեցին ձո-
րերն ու կրճերը, իսկ Հայերը աննշան կորուստ ունե-

ցան։ Շուտով տէրութեան կողմից մի յանձնաժողով կազմուեցաւ Մարաշում իբր թէ քննելու և յանցաւորներին պատժելու համար։ Մի քանի նշանաւոր Զէյթունցիք խաբէութեամբ բերուեցան Մարաշ ու բանտարկուեցան, և երբ Զէյթունի չորս իշխաններն էլ պահանջուեցան, Հայերը բացէիբաց մերժեցին և մի պատգամաւորութիւն ուղարկեցին Փարիզ Նապոլէոն Գ կայսեր պաշտպանութիւնը խնդրելու. ուրիշ պատգամաւորութիւն էլ գնաց Կոստանդնուպոլիս ճշմարտութիւնը տեղով կենտրոնական կառավարութեանը հասկացնելու համար։ Գործը ձգձգուեցաւ մինչև որ Ֆրանսիայի միջնորդութեամբ բանտարկեալ Զէյթունցիք ազատութիւն գտան և կարգը վերահաստատուեցաւ նոցա երկրում։ Սուլթանի հրովարտակի հիման վրայ՝ Զէյթունի վարչութիւնը, դատաւորութիւնը և ոստիկանութիւնը բացառապէս տեղացիներին յանձնուեցաւ։ Տասանորդը և ուրիշ տուրքերը տեղական իշխանութեան ձեռքով պիտի հաւաքուէին և Մարաշի կուսակալին ուղարկուէին, որի հետ Զէյթունը անմիջական յարաբերութիւնների մէջ պիտի լինէր։

Առաջին սահմանադրական Պատրիարքը հազիւ տարի ու կէս մնաց իւր պաշտօնի մէջ։ Երուսաղէմի պատրիարքի ընտրութեան առթով հակասահմանադրական ընթացք բռնելով, Սարգիս պատրիարքը ստիպուեցաւ հրաժարուել, և աթոռը երկար ժամանակ պարապ մնալուց յետոյ՝ ընտրուեցաւ Զմիւռնիայի առաջնորդ Թաքթաքեան Պօղոս եպիսկոպոսը (1863)։ Նորընտիր Պատրիարքն իւր բարեսրտութեամբն ու խաղաղասիրութեամբը հանդերձ թոյլ ու դանդաղ բնաւորութեան տէր

Հէր, և այս յատկութիւնները անընդունակ էին անում նորան ազգային գործերի գլուխը կանգնելու այն դժուար ժամանակում, երբ վարչական մարմինները իրանց անկանոն ընթացքով աւելի ոյժ էին տալիս Սահմանադրութեան թշնամիներին, որոնք ամեն կերպով աշխատում էին նոր օրէնսդրութիւնը խափանել։ Անկարգութեան գլխաւոր պատճառն այն էր՝ որ Կրօնական ու քաղաքական ժողովները և Խորհուրդները առանձին դիւանական կանոններ չունէին իւրաքանչիւրի իրաւունքների սահմանը և յարաբերութիւնների եղանակը որոշող, որով և յաճախ միմեանց գործերի մէջ խառնվում, միմեանց ընթացքը պախարակում էին. ուստի և իրանց պատիւը ճանաչող ժողովականներ պաշտօնավարութիւնից հրաժարվում էին և գործերը երեսի վրայ էին մնում։

Իրերի այս վիճակի մէջ մի քանի նշանաւոր խնդիրներ առաջ եկան, որոնք շուտափոյթ լուծում էին պահանջում։ Աղթամարի և Կիլիկիայի կաթողիկոսները մեռել էին և նոցա տեղ մի մի եպիսկոպոս ապօրինի կերպով կաթողիկոս էր նստել։ Շատ չանցաւ՝ Ս. Էջմիածնի Ընդհանրական կաթողիկոսի մահուան լուրն էլ եկաւ, և Տաճկահայք հրաւիրուեցան նոր Կաթողիկոսի ընտրութեան մասնակից լինելու։ Ընդհանուր ժողովը վերջին խնդրի կարեւորութեան առաջ Սսի և Աղթամարի խնդիրների լուծումը յետաձգեց և մի յանձնաժողով կազմեց, որի պարտաւորութիւնը պիտի լինէր ա) Ս. Էջմիածնի կաթողիկոսութեան վիճակը քննել, բ) Կաթողիկոսի ընտրութեան ներկայ եղանակը քննել. և գ) որոշել Տաճկահայոց մասնակցութեան եղանակը այս ընտ-

րութեան մէջ։ Յանձնաժողովը այս խնդիրները քննեց և մի տեղակագրով իւր եզրակացութիւնները ներկայացրեց Ընդհանուր ժողովին։ Բայց և այնպէս գլխաւոր կէտերը անվճիռ մնացին և Ընտրութիւնը դարձեալ առաջուան պէս կատարուեցաւ. երկու պատուիրակ, Ներսէս եպիսկոպոս Վարժապետեան և Յակոբ Նորատունկեան, Ազգային Ընդհանուր ժողովի կողմից Էջմիածին Ընտրողական ժողովին ներկայ գտնուեցան և Տաճկահայոց ձայները տուին Բրուսայի առաջնորդ և երբեմն պատրիարք Գէորգ եպիսկոպոսին, որ և Կաթողիկոս ընտրուեցաւ Մատթէոս Ա.ի տեղ (1866) սեպտ)։

Այդ միջոցին Թուրքիայի Հայոց ներքին գործերը ցաւալի վիճակի մէջ էին. վարչական ժողովները լուծուած էին, Թաղական Խորհուրդների մէջ դժգոհութիւն էր տիրում. գաւառներից էլ անդադար հարստահարութեան գանգատներ էին գալիս, բայց այս բաների վրայ հոգացող չկար։ Նոյն իսկ Ընդհանուր ժողովը շատ քիչ անգամ էր գումարվում, գումարուած ժամանակն էլ անձնական կրքերը չէին թոյլ տալիս մի գործ առաջացնելու։ Նոր կարգերի թշնամիները օգուտ քաղեցին այս դրութիւնից։ Օսմանեան տէրութիւնը մի քանի հայ մեծամեծների դրդմամբ դադարեցրեց Սահմանադրութիւնը և ազգային գործերի վարչութեան համար իւր կուսակիցներից մի խառն ժողով կազմեց պատրիարքի նախագահութեամբ (1866)։ Այս դժբաղդութիւնը մեծ ցաւ պատճառեց ժողովրդին, և ամեն կողմից տժգոհութեան ձայներ էին լսվում Պօղոս պատրիարքի դէմ, որ չկարողացաւ Սահմանադրութիւնը պաշտպանել։ Վերջապէս ընդհանուր զայրոյթն այնտեղ հասաւ, որ սկսան հրապարա-

կաւ պահանջել պատրիարքի հրաժարականը, և մի քանի եկեղեցիներում մինչև անգամ դադարեցրին նորա անուան յիշատակութիւնը։ Զուր պատրիարքի խորհրդականների թելադրութեամբ մի քանի հայ խմբագիրներ բանտարկուեցան՝ իբրև ապստամբութեան հեղինակներ, խռովութիւնը քանի գնաց սաստկացաւ, և Աստուծոյ տաճարները կռուի ասպարէզ դարձան։ Այս անցքերից յետոյ պատրիարքին ուրիշ ոչինչ չէր մնում անել՝ բայց եթէ ժողովրդի կամքը կատարել, և նա հրաժարուեցաւ 1869-ի սկզբին։ Տէրութիւնը ժողովրդին հանդարտեցնելու համար՝ խոստացաւ Սահմանադրութիւնը յետ դարձնել, և ընթացիկ գործերի տեսչութեան համար թոյլ տուեց մի առժամանակեայ խառն ժողով կազմել ժողովրդական ընտրութեամբ, որին պիտի նախագահէր պատրիարքական փոխանորդը. իսկ Պատրիարքի ընտրութիւնը յետաձգուեցաւ մինչև Սահմանադրութեան գործադրութիւնը։

Նոյն տարին Սահմանադրութիւնը ստացուեցաւ և պատրիարք ընտրուեցաւ հանրածանօթ Խրիմեան Մկրտիչ եպիսկոպոսը, որ շատ տարիներէ իվեր Վանի ու Մուշի կողմերը ազգային լուսաւորութեան գործին էր ծառայում։ Խրիմեան այն չքնաղ անձնաւորութիւնից մէկն է, որոնք աշխարհային մեծութիւնները արհամարհելով՝ ամբողջապէս ժողովրդին են նուիրւում, և նորա օգտին իրականապէս աշխատելու համար՝ նորա շրջանումն են գործում։ Նա եղաւ որ ամենամեծ արգելքներին յաղթելով՝ առաջին անգամ Հայաստանի մէջ տպարան հաստատեց (1857), և առաջին հայ թերթը հրատարակեց (Արծուի Վասպուրական) Վանի Վարագայ վանքում, ուր և ժա-

ռանգաւորաց գիշերօթիկ դպրոց հիմնեց։ Ժողովրդի տառապանքներին ի մօտոյ ականատես լինելով, Խրիմեանը իւր ձեռքից եկած օգնութիւնը չէ խնայել նորա վշտերը ամոքելու, իբրև մի գթառատ հայր՝ որ իւր մխիթարութիւնը որդոց երջանկութեան մէջ է որոնում. որով և իրաւամբ Հ ա յ ր ի կ կոչուելու արժանի եղաւ։

Խրիմեան Հայրիկը պատրիարքական աթոռի վրայ էլ իւր սիրած ժողովրդին չմոռացաւ։ Նորա օրով առաջին անգամ լուրջ ուշադրութեան առնուեցան Հայաստանի գաւառների մէջ բնակող Հայոց կրած հարստահարութիւնները և հրապարակական քննութեան ենթարկուեցան Ընդհանուր ազգային ժողովի մէջ։ Երկու տեսակ հարստահարիչներ կան Հայաստանում. նախ՝ հայ աղաները (չօրպաճի), որոնք ժողովրդի աղքատ դասը կեղեքում են, անմեղներին տէրութեան պաշտօնեաների առաջ զրպարտում ու մատնում են՝ իրանց շահադիտական նպատակները առաջ տանելու համար. և երկրորդ՝ Քըրդերը, որոնք հայաբնակ գիւղերի վրայ յարձակելով՝ ծանր պահանջումներ են անում, և անպաշտպան Հայերը ստիպուած են նոցա ուզածը տալու։ Գալով այս վերջիններին, պատրիարքը յայտնեց ժողովին, որ նոցա անօրէնութիւնները կը շարունակուին մինչև որ տէրութեան հրատարակած հաւասարութեան օրէնքը չգործադրուի գաւառներում, և Հայերը մահմէտականների հետ հաւասար՝ վարչական բարձր պաշտօնների հասնելու իրաւունք չունենան։ Ազգային ժողովը մի ընդարձակ տեղեկագիր պատրաստեց, որի մէջ Քրդերի գործած հարստահարութիւնները և տէրութեան պաշտօնեաների զեղծումները միասին ցոյց տրուելուց յետոյ՝ զանազան

միջոցներ էին նշանակուած Հայոց երկրի բարեկարգութեան համար։ Այս տեղեկագիրը Պատրիարքի ձեռքով մատուցուեցաւ Օսմանեան տէրութեանը, որ խոստացաւ Հայաստանը բարեկարգել։

Խրիմեանի չորսամեայ պատրիարքութեան գլխաւոր արդիւնքն այն եղաւ, որ նորա պաշտպանութեամբ ժողովրդի միջին դասի ազդեցութիւնը զօրացաւ ազգային գործերի մէջ. այնպէս որ Ընդհանուր և Քաղաքական ժողովները մեծ մասամբ նոյն դասին պատկանող անդամներից էին բաղկանում, մինչդեռ առաջ այդ ժողովների մեծամասնութիւնը տէրութեան մեծ պաշտօնեաները կամ հարուստ դասի անձինքն էին կազմում։ Այս բանից աժգոհ մնացին մի կարգ եկեղեցական և աշխարհական անձինք, որոնք ազգային գործերի մէջ իրանց անձնական շահն էին որոնում. կազմուեցաւ մի կուսակցութիւն, որ Պատրիարքին տապալելու համար՝ անդադար յուզում ու գրգռում էր ժողովրդին։ Խրիմեանը կամենալով վերջ տալ այդ յուզմունքներին, մի նշանաւոր հրաժարագիր տուաւ, որ մեծ տպաւորութիւն գործեց ժողովրդի վրայ և պաշտօնից հեռացաւ (1873 հոկտ. 2)։

Յաջորդ տարուան ապրիլի 24-ին պատրիարք ընտրուեցաւ Ներսէս եպիսկոպոս Վարժապետեան, որ Սիս ձեռնադրուած լինելով՝ նախապէս Էջմիածին գնացած և Ընդհանրական Կաթողիկոսի հպատակութիւնը ընդունած էր, որովհետև ըստ Սահմանադրութեան Կոստանդնուպօլսի պատրիարք ընտրուողը պէտք է Ս. Էջմիածնում եպիսկոպոսացած կամ Մայր-Աթոռի միաբան ճանաչուած լինի։

Մինչդեռ Կոստանդնուպոլսի Հայք մէկ կողմից մաքառում էին ազգային վարչութեան հաստատութեան համար, և միւս կողմից խնամք էին տանում ազգային կրթութեան վրայ, Հռոմէական Հայոց մէջ էլ սկսան բարոյական մերձաւորութեան նշաններ երևիլ ընդհանուր ազգի հետ։ Այս ձգտման առաջին արտայայտութիւնն եղաւ Համազգեաց ընկերութիւնը, որ հիմնուեցաւ Կոստանդնուպօլսում 1846-ին Մուրատեան և Ռափայէլեան վարժարանների ուսումնաւարտ աշակերտների աշխատութեամբ։ Ընկերութեան նպատակն էր Հայաստանի մէջ ուսում ու կրթութիւն տարածել, երկրագործութիւնը ծաղկեցնել և ազգային հնութիւնների թանգարան հաստատել։ Ընկերութեան անդամ կարող էին գրուիլ ոչ միայն Հռոմէական, այլև Լուսաւորչական ազգայինք, և արդէն ընկերութեան սկզբունքն էր (ինչպէս որ անունից էլ երևում է) բառնալ ազգի միջից այդ տխուր բաժանումը։ Սակայն Հռոմէականների պատրիարքը Հասունեան ընկերութիւնը իւր նպատակներին հակառակ համարելով, սկսաւ իւր հօտին համոզել որ «հերետիկոս» Հայոց հետ հաղորդակցութիւն ունենալու զգուշանան, և սպառնաց արձակում և հաղորդակցութիւն չտալ այն անձանց՝ որոնք այդպիսի վնասակար ընկերութիւնից չեն խորշիլ։ Այս չափով գոհ չլինելով, Հասունը Հռոմի պապից կոնդակ բերել տուեց և ամեն ճիգ թափեց ընկերութիւնը կործանելու. վերջին միջոցն այն եղաւ որ Բ. Դրան դիմեց և Ընկերութեան անդամների վրայ ամբաստանութիւններ բարդեց, որով և սոքա ստիպուեցան ցրուիլ։

Այդ ժամանակներից Հռոմէական ազգայինների մէջ

սկսաւ մի տժգոհութիւն երևիլ իրանց հոգևոր գլխի դէմ, որ տարիների ընթացքում ատելութեան փոխուեցաւ՝ Հասունի հետզհետէ ցոյց տուած հակազգային վարմունքի պատճառով։ 1867-ին, երբ հռոմէական Հայոց Լիբանանի կաթողիկոսը մեռաւ, Հասունը գնաց Հռոմ և առանց իւր հօտի հաւանութիւնն առնելու՝ կաթողիկոսական աստիճանն ընդունեց։ Այս որ լսեցին Կոստանդնուպօլսի կաթոլիկ Հայերը, և յատկապէս լուսաւորեալ դասը, դէմ կացան և բողոքեցին Պապին. բայց սա պաշտպանեց Հասունին և գրեց այն հռչակաւոր կոնդակը, որով կաթոլիկ Հայոց բոլոր եկեղեցիներն ու ազգային այլևայլ հաստատութիւնները և ստացուածքը պապական աթոռի իրաւասութեան տակ էր դնում և Հասունին հռոմէական Հայոց եկեղեցու գլուխ էր հռչակում։ Կաթոլիկ ժողովրդի լուսաւորեալ մասը մերժեց պապի կոնդակը, իսկ մի կարգ տգէտ ու մոլեռանդ կաթոլիկներ ընդունեցին. սորանից առաջինները կոչուեցան Հակահասունեանք և վերջինները Հ ա ս ո ւ ն ե ա ն ք։ 1869-ի սկզբին, երբ Վատիկանում գումարուող եկեղեցական ժողովը պատրաստւում էր Պապի անսխալականութիւնը հրատարակելու, բազմաթիւ Հակահասունեանք ժողովեցան և դաւանագիր ստորագրեցին, որով Պապի անիրաւ պահանջումները մերժում էին։ Այս դաւանագիրը ստորագրողները կոչուեցան «Արևելեան կաթոլիկ Հայք»։ Նոքա Բ. դրան պաշտպանութեամբ յաջողեցան իրանց կրօնական իրաւունքները պահել և առանձին պատրիարքարան հաստատել։ Հասունը ստիպուեցաւ առժամանակ հանգամանքների առաջ խոնարհիլ և իւր կուսակիցներին հոլուելով գոհ լինել։ Բայց շուտով քաղաքականութիւնը փոխուեցաւ

և Հակահասունեանց ձեռքն եղած բոլոր եկեղեցիները Հասունեանց ձեռքն անցան։ Հակահասունեանք յուսահատուելով՝ մեծ մասը ազգային եկեղեցու գիրկը վերադարձան, իսկ մնացած փոքրագոյն մասը հաշտուեցաւ Հասունի կուսակցութեան հետ, երբ սա կարդինալ դառնալով Հռոմ գնաց և տեղը պատրիարք ընտրուեցաւ Ազարեան եպիսկոպոսը, որ մինչև այժմ կառավարում է հռոմէական Հայոց։

Հակահասունեանց շարժումը մեծ աղմուկ հանեց Եւրոպայում՝ իբրև առաջին հաւաքական բողոք Պապի անսխալականութեան դէմ. ըստ որում նոքա Պապի կոնդակը մերժելով՝ մերժած եղան նաև նորա անսխալականութիւնը։

## Է. ՏԵՍՈՒԹԻՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՆՑՔԵՐԻ

### 89.

*Արևելեան վերջին պատերազմի պատճառները։—Ռուսաց յաղթութիւնները (1877—78).—Սան-Ստեֆանոյի դաշնադրութեան Հայոց վերաբերեալ յօդուածը.—Բէրլինի վեհաժողովը.—Հայոց պատուիրակները և Բէրլինի դաշնադրութեան 61-րդ յօդուածը.—Հայոց կրած նեղութիւնները վերջին պատերազմի ժամանակ. առվ։ Զէյթունի յուզմունքը.—Տաճկահայաստանի բարեկարգութեան խնդիրը.—Կրթական ընկերութիւնները։*

Խրիմի պատերազմից յետոյ Արևելեան խնդիրը առժամանակ յետաձգուեցաւ՝ քանի տարի յետոյ նոր զօրութեամբ արծարծուելու համար։ Ռուս-տաճկական վերջին պատերազմը Օսմանեան տէրութեան անխոհեմութիւնից ծագեցաւ։ Հերցեգովինայի քրիստոնեայ բնակիչները հարկերի ծանրութիւնից նեղուելով՝ 1875-ի

ամառը ապստամբեցան Օսմանցիներից. Նոցա օրինակին հետևեցան շուտով Բոսնիացիք, և յաջորդ տարին ապստամբութիւնը տարածուեցաւ նաև Բուլղարիայում։ Մինչդեռ եւրոպական տէրութիւնները աշխատում էին խաղաղութեան մի ելք գտնել, Կոստանդնուպօլսում մի յեղափոխութիւն տեղի ունեցաւ, որի հետևանքն եղաւ սուլթան Աբդիւլ-Ազիզի գահից զրկուիլը և Մուրադ Ե-ի կայսր նստելը։ Սլավոնական երկու իշխանութիւնները, Սերբիան և Չեռնոգորիան, որոնք արևմտեան տէրութիւնների ազդեցութեան շնորհով մինչև այն ժամանակ խաղաղ էին մնացել, վճռեցին վերջապէս օգնութեան ձեռք կարկառել իրանց սլավոն ազգակիցներին։ Թուրքերը, որ մի բուռն ժողովրդի ապստամբութիւնը զսպելու անկարող էին գտնուել, երբ կարգաւորեալ բանակների հետ գործ ունեցան, ցոյց տուին որ տակաւին ընդունակ են յաջողութեամբ պաշտպանուելու. մի քանի ճակատամարտերում դաշնակիցների զօրքերը յաղթուեցան, և Չեռնոգորիայի մայրաքաղաքը արդէն Օսմանցոց ձեռքն ընկնելու վրայ էր, երբ յանկարծ գործը ուրիշ կերպարանք ստացաւ։ Թուրքաց անկանոն զօրքերի (բաշիբօզուք) և Չէրքէզների Բուլղարիայում գործած անգթութիւնները մեծ զայրոյթ պատճառեցին Եւրոպացոց, որոնք Բ. Դռնից պահանջեցին երկրի ներքին կառավարութիւնը բարեկարգել և հպատակ քրիստոնեաների ներութիւններին վերջ տալ։ Այս նպատակով մի դեսպանաժողով գումարուեցաւ Կոստանդնուպօլսում, և առաջարկուեցաւ տեղական ինքնավարութիւն մտցնել ապստամբող սլավոնական նահանգների մէջ։ Այդ միջոցում Մուրադ Ե հիւանդութեան պատճա-

ռով գահից հրաժարուել էր հազիւ չորս ամիս իշխելուց յետոյ, և նորա տեղ նստել էր Աբդուլ-Համիդ Բ։ Նոր սուլթանի կառավարութիւնը ընդունեց նախ արևմտեան տէրութիւնների առաջարկութիւնը, բայց երբ սոքա պահանջեցին որ բարեփոխումները իրանց ձեռքով գործադրուին, Բ. Դուռը մերժեց Եւրոպացոց միջամտութիւնը Թուրքիայի ներքին գործերի մէջ, պատճառելով թէ սուլթանը մտադիր է իւր բոլոր հպատակներին անխտիր ընդարձակ քաղաքական իրաւունքներ շնորհել։ Այսպիսով գեսպանաժողովը լուծուեցաւ առանց մի յաջողութիւն ունենալու, և Օսմանցիք պատրաստուեցան պատերազմելու Ռուսաստանի դէմ, որ Եւրոպայի անունով գնաց զէնքի զօրութեամբ ընդունել տալու տէրութիւնների պահանջումները (1877 ապրիլ 14)։

Պատերազմը ըստ սովորութեան Եւրոպայի և Ասիայի կողմից սկսաւ միանգամայն և փոփոխակի բաղդով մօտ տասն ամիս տևեց։ Ռուսները սկզբում մեծ ընդդիմութեան հանդիպեցան Բուլղարիայում՝ Պլէվնայի մօտ և Հայաստանում՝ Զիվինի բարձրութիւնների առաջ. բայց ի վերջոյ Օսմանցոց զօրութիւնը խորտակեցին, նոցա ամուր քաղաքները յարձակմամբ առին և արագ արագ առաջ գնալով՝ մէկ կողմից մտան Կարին, իսկ միւս կողմից Կոստանդնուպօլսի առաջ հասան։ Ասիական բանակի մէջ մեծ անուն հանեցին հետևեալ հայ զօրապետները. Լօռիս-Մէլիքեան՝ իւր ճարտար հրամանատարութեամբ, Լազարեան՝ Կարսի առմամբ, Տէր-Ղուկասեան՝ իւր հռչակաւոր նահանջովը, Շելկովնիկով և ուրիշները։

Ռուսաց գլխաւոր բանակը Նիկողայոս մեծ իշխանի

առաջնորդութեամբ՝ կանգ առաւ Կոստանդնուպօլսի մերձակայ Այա-Ստեֆանոս գիւղում. այստեղ Ցարեան գերդաստանի ամառանոցի մէջ Ռուսաց և Տաճկայ Հաւատարմատարների ձեռքով կնքուեցաւ Սան-Ստեֆանօի դաշնագրութիւնը, որի 16-րդ յօդուածը հետևեալ բովանդակութիւնն ունի. «Որովհետև Ռուսաց զօրքերը Հայաստանի մէջ գրաւած երկրներից յետ քաշուելուց յետոյ՝ յիշեալ տեղերում կարող են կռիւներ ու խառնակութիւններ տեղի ունենալ, որոնք երկու տէրութիւնների լաւ յարաբերութիւնները կարող են խանգարել, Բ. Դուռը յանձն է առնում անյապաղ իրացնել այն բարւոքումներն ու բարենորոգումները՝ որ տեղական պիտոյքները պահանջում են Հայոց բնակած նահանգների մէջ, և երաշխաւորել նոցա ապահովութիւնը Քրդերի ու Չէրքէզների դէմ»։ Այս առաջին անգամն էր, երկար դարերից յետոյ, որ Հայ և Հայաստան անունները յիշատակվում էին միջազգային դաշնագրութեան մէջ, և այս բանի համար շատ աշխատեցան Կոստանդնուպօլսի Հայոց մի քանի նշանաւոր եկեղեցական և աշխարհական անձինք, և մանաւանդ Ներսէս պատրիարքը, որ Նիկոլայոս մեծ իշխանի հետ տեսակցութիւն ունենալով, յաջողեցաւ յիշեալ յօդուածը դաշնագրութեան մէջ մտցնել տալ։

Սակայն Ռուսաստանի և Թուրքիայի մէջ կայացած հաշտութեան պայմանները չափազանց նուաստացուցիչ էին այս պետութիւններից երկրորդի համար, որ ոչ միայն ընդարձակ երկրների տիրապետութիւնից պիտի զրկուէր, այլ զրեթէ նաև իւր գոյութիւնը կորցնելու էր դատապարտվում իբրև անկախ տէրութիւն։ Այս

տեսնելով, եւրոպական տէրութիւնները, և առաւելապէս Անգլիացիք, որոնք մեծամեծ շահեր ունին Արևելքում, պահանջեցին որ Սան-Ստեֆանոյի դաշնագրութիւնը քըննութեան առնուի։ Երկար բանակցութիւններից յետոյ Բէրլինում գումարուեցաւ մի Վեհաժողով, ուր արևմտեան առաջնակարգ տէրութիւնների գլխաւոր նախարարները փոխադարձ համաձայնութեամբ մի նոր դաշնագրութիւն խմբագրեցին և երկու պատերազմող կողմերին ընդունել տուին։ Այս դաշնագրութեան զօրութեամբ՝ Ռուսաստանը, բացի դրամական տուգանքից, ստացաւ Կարսը, Արդահանը և Բաթումը իրանց շրջականերով. Ռումանիան, Սերբիան և Չերնոգորիան անկախ տէրութիւններ ճանաչուեցան. Բոսնիան և Հերցոգովինան Աւստրիայի հետ միացան. Բուլղարիան առանձին իշխանութիւն կազմեց Օսմանեան տէրութեան հարկատու, իսկ Արևելեան Ռումէլիային տեղական ինքնավարութիւն շնորհուեցաւ քրիստոնեայ նահանգապետով։

Տաճկահայոց բարեկարգութեան խնդիրն էլ Վեհաժողովի խորհրդածութիւնների նիւթ եղաւ։ Երկու բարձրաստիճան եկեղեցականներ Ներսէս պատրիարքի կողմից ուղարկուեցան նախապէս եւրոպական արքունիքների կարեկցութիւնը հրաւիրելու Օսմանեան Հայաստանի թըշուառ վիճակի վրայ. Խրիմեան Մկրտիչ սրբազանը ուղևորուեցաւ Հռոմ, Վիեննա, Փարիզ և Լոնդոն, իսկ Խորէն եպիսկոպոս Նարպէյ այցելեց Ռուսաստանի մայրաքաղաքը։ Այնուհետև երկու պատուիրակները Բէրլինում միանալով՝ մի յիշատակագիր մատուցին Վեհաժողովին, որի մէջ Օսմանեան Հայաստանի համար տեղական ինքնավարութիւն էին խնդրում, նոյն երաշխաւորութեամբ ո-

րով ապահովված է Լիբանանի վարչութիւնը, այն է՝ երկրի կառավարութիւնը հայ պաշտօնեաներին յանձնել, որոնք կարողանային հաւասարակշռութիւն պահպանել մահմէտականների ու քրիստոնեաների մէջ։ Վեհաժողովը չափաւոր ու արդարացի գտաւ Հայոց պահանջը. մասնաւորապէս Անգլիայի ներկայացուցիչ կոմս Սալիսբըրին նպաստաւոր կերպով խօսեցաւ Հայոց համար, ասելով թէ «Պէտք է պահպանել Հայոց շահերը և յառաջադիմութեան միջոց տալ նոցա»։ Այս յայտարարութեան վրայ Վեհաժողովի անդամները ընդհանուր հաւանութեամբ խմբագրեցին դաշնադրութեան 61-րդ յօդուածը, որ հետևեալն է. «Բ. Դուռը յանձն է առնում անյապաղ իրացնել այն բարւոքումներն ու բարենորոգումները՝ որ պահանջում են տեղական պիտոյքները Հայոց բնակած նահանգների մէջ, և երաշխաւորել նոցա ապահովութիւնը Չէրքեզների և Քրդերի դէմ։ Բ. Դուռը այս նպատակի համար ձեռք առնուած միջոցները պարբերապէս պիտի ծանօթացնէ տէրութիւններին, որոնք պիտի հսկեն նոցա գործադրութեան վրայ»։ Այսպիսով Եւրոպան Հայաստանի բարեկարգութեան խնդիրը իւր հսկողութեան տակ է առնում։

Վերջին պատերազմի ժամանակ Օսմանեան Հայաստանի Հայերը մեծ տառապանքներ կրեցին։ Քրդերը և տեղ տեղ նաև Չէրքէզները երկրի խառնակ վիճակից օգուտ քաղելով, իրանց վայրենի կրքերին ազատութիւն տուին և շատ յափշտակութիւններ ու սպանութիւններ գործեցին։ Ալաշկերտի և Բայազիդի Հայերը այս նեղութիւններից ազատուելու համար՝ Երևանի նահանգը գաղթեցին, բայց շատերը քաղցից ու ցրտից մեռան. մնա-

ցածները բնակութեան տեղ ու մշակելու հող չունենալով, երբ Օսմանեան կառավարութիւնից ապահովութեան երաշխաւորութիւն ստացան մեծ մասամբ իրանց տեղերը վերադարձան։ Պատերազմի մի ուրիշ հետևանքն էլ եղաւ սովը, որի աղէտներից Հայաստանի ժողովրդին ազատելու համար՝ Կոստանդնուպօլսում կազմուեցաւ «Սովելոց յանձնաժողովը», և մի առանձին ճիւղ էլ Վանում Խրիմեան Հայրիկի հովանաւորութեան տակ։ Հայերը ամեն կողմից սկսան առատ առատ նպաստներ հասցնել իրանց ազգակիցներին, որով ոչ միայն շատ խեղճերի մահուան առաջն առնուեցաւ, այլ մի բարոյական կապ հաստատուեցաւ գաղթական Հայոց և հայրենի երկրում բնակող ժողովրդի մէջ։

Պատերազմը առանց ազդեցութեան չը մնաց նոյն իսկ Կիլիկիայի հեռաւոր լեռների վրայ։ Օսմանեան կառավարութիւնը Զէյթունի վերաբերմամբ ոչ միայն 1864-ին իւր վրայ առած պարտականութիւնները անկատար էր թողել, այլև վերջին պատերազմի ժամանակ ուզեց այս երկրից զօրք առնել։ Զէյթունցիք այս նոր հարկից ազատուելու և իրանց շուրջը հաւաքուած Չէրքէզներին ու քրդերին հալածելու համար՝ ոտքի կանգնեցան և թուրք կառավարչին (կայմակամ) երկրից դուրս քշեցին։ Զինուորագրութեան սովորական հարկը մերժելով, նոքա յանձն էին առնում զինուոր տալու այն պայմանով որ իրանց տուած զինուորներից առանձին գնդեր կազմուէին քրիստոնեայ սպաների հրամանատարութեան տակ։ Նոյնպէս նոքա պահանջում էին որ ոստիկանութիւնը տեղացիների ձեռքը մնայ, տուրքերը տեղացիք հաւաքեն և յանձնեն Մարաշի կուսակալին, և ի-

րանց երկրի կառավարիչը փոփոխակի Թուրք և քրիստոնեայ լինի։ Կառավարութիւնը այս պայմանները ընդունեց, բացի քրիստոնեայ սպաների հրամանատարութիւնից. և որովհետև Զէյթունցիք հաստատ մնացին իրանց պահանջման մէջ, համաձայնութիւնը չկայացաւ։ Այս գործի մէջ զօրքն էլ խառնուեցաւ, և շատ հայեր քանտարկուեցան։ Ներսէս պատրիարքը շատ աշխատեցաւ մինչև որ յաջողեցաւ բանտարկեալներին արձակել տալ (1879 յունվ.)։

Մի ուրիշ գործ՝ որի համար Ներսէս պատրիարքը մեծամեծ ջանքեր արաւ՝ Տաճկահայաստանի բարեկարգութեան խնդիրն էր։ Հայաստանի այլևայլ կողմերում կատարուած հարստահարութիւնները գրի առնելով, մանրամասն տեղեկագրեր հաղորդեց թէ Օսմանեան կառավարութեան և թէ Բէրլինի դաշնագրութիւնը ստորագրող տէրութիւնների դեսպաններին, որոնք միանալով մի ծանուցագիր ուղարկեցին Բ. Դրանը։ Տէրութիւնը խոստացաւ շուտով Հայաստանի բարեկարգութեան ձեռնարկել, բայց այդ խոստումը չկատարուեցաւ։ Պատրիարքը տեսնելով որ իւր բոլոր ջանքերը ապարդիւն են մնում, 1881-ի աշնանը պաշտօնից հրաժարուեցաւ և մի տարուց աւելի քաշուած կեանք վարեց։ Մինչդեռ Ազգային վարչութիւնը սպասում էր որ Բ. Դուռը մի վերջնական տնօրէնութիւն անէ Պատրիարքի հրաժարականի մասին, որի պատճառով ազգային գործերը երեսի վրայ էին մնացել, սուլթան Համիդը յանկարծ մերժեց Ներսէս Սրբազանի հրաժարականը և վերահաստատեց նորան իւր պաշտօնի մէջ (1882 նոյեմբ. 29)։ Պատրիարքը հրաւիրուեցաւ կայսերական պալատը և մեծագին

ընծաներով պատուասիրուեցաւ Սուլթանից։ Այս դէպքը իբրև մի բարի գուշակութիւն՝ մեծ ուրախութեամբ ընդունուեցաւ մայրաքաղաքի հայ ժողովրդից, սակայն այն մեծ խնդիրը՝ որի համար էր իսկապէս Պատրիարքի հրաժարականը, դարձեալ նոյն վիճակի մէջ մնաց, և մինչև այսօր Բերլինի դաշնագրութեան 61-րդ յօդուածը դեռ ևս ոչ մի գործադրութիւն ունեցած չէ։

Վերջին տարիներում Պօլսում զանազան ընկերութիւններ կազմուեցան Հայաստանի ժողովրդի մէջ ուսում ու կրթութիւն ծաւալելու համար։ Սոցա մէջ առանձին տեղ ունի «Միացեալ ընկերութիւնք Հայոց», որ 1880-ին ձուլուեցաւ մինչև այն ժամանակ առանձին գոյութիւն ունեցող Արարատեան, Արևելեան-Դպրոցասիրաց և Կիլիկեան ընկերութիւններից։ Միացեալ ընկերութիւնը այսօր 27 ուսումնարան է պահում Հայաստանում, որոնցից 23 արական և 4 իգական։ Համանման նպատակ ունի Այգաբուէր Հայուհեաց ընկերութիւնը (1878), որի հաշուով և Միացեալ ընկերութեան հսկողութեան տակ երեք աղջկանց ուսումնարաններ են պահում գաւառներում, և Դպրոցասէր Տիկնանց ընկերութիւնը (1879). որ գաւառների համար ուսուցչուհիք է պատրաստում։ Ուշադրութեան արժանի է նոյնպէս Սախակեան ընկերութիւնը (1877), որի նպատակն է օգտակար գրքերի հրատարակութեանը նպաստել։

———

## 90.

*Գէորգ Դ կաթողիկոսի գործերը և մահը* (1866—1882).—*Նոր Կաթողիկոսի ընտրութեան նախապատրաստութիւնները.—Ընտրութեան արդիւնքը և հետևանքը.—Ներսէս պատրիարքի մահը* (1884 *հոկտ.* 26) *և իւր յաջորդի ընտրութիւնը* (1885 *յունվ.* 26).—*Ընտրութիւն և հաստատութիւն Տ. Մակար կաթողիկոսի (ապրիլ* 21 *և յուլիս* 18).

Ժամանակակից դէպքերի մէջ նշանաւոր տեղ են բռնում Ընդհանրական Կաթողիկոսի մահը և Նոր Հայրապետի ընտրութեան պարագաները։ Գէորգ Դ-ի տասնեւվեց տարուան կաթողիկոսութեան ժամանակ (1866—1882) մի քանի յիշատակի արժանի գործեր կատարուեցան, որ չէ կարելի զանցառութեան տալ։ Իւր օծումը ընդունելուց յետոյ, նորընտիր Հայրապետը մի ճանապարհորդութիւն յանձն առաւ Ռուսաստանի հայաբնակ քաղաքները, նոյնպէս և Լեհաստանի և Աւստրիայի մի քանի տեղերը՝ իւր ցրուեալ հօտի բարոյական և մտաւորական վիճակին անձամբ տեղեկանալու համար։ Այս երկար ուղևորութիւնից Ս. Էջմիածին վերադառնալով առաջին գործն եղաւ հիմնել Արարատ կրօնական պաշտօնական ամսաթերթը (1868), որի արդիւնքը յատկացրեց Մայր-Աթոռի տպարանի և ձուլարանի բարւոքմանը։ Նոյն թուին Ռուսահայոց օժանդակութեամբ ձեռնարկեց շինել Մայր տաճարին կից՝ արևելեան կողմից մի ընդարձակ պահարան երեք առանձին բաժանումներով, ուր զետեղուած են այժմ Ս. Էջմիածնի բոլոր սրբութիւնները, հնութիւնները և թանկագին իրեղէնները, Հայ եկեղեցիներում կանոնաւոր և մի

օրինակ երգեցողութիւնը մտցնելու հող տանելով, ամեն հայաբնակ քաղաքներից ձայնեղ երիտասարդներ ժողովեց և հմուտ երաժշտի առաջնորդութեամբ հայկական ձայնագրութեան արուեստը ուսուցանել տալուց յետոյ, իրանց տեղերը ուղարկեց նոյն արուեստը ամենայն հայ դպրոցներում ուսուցանելու համար. միանգամայն եկեղեցական երգեցողութեան գրքերը նոր ձայնագրութեամբ տպագրել տուեց և ամեն տեղ ցրուեց, որպէսզի բոլոր եկեղեցիներում գործադրուին (1874)։ Վերջապէս եկեղեցականութեան վիճակը բարձրացնելու և ազգային ուսումնարանների համար հմուտ ուսուցիչներ պատրաստելու նպատակով, Գէորգ կաթողիկոսը մտածեց իրագնել այն գաղափարը որ երկու նախորդ կաթողիկոսները յղացել էին հիմնելով Ս. Էջմիածնի Հոգևոր Ճեմարանը, ուր այսօր խմբուած են 200-ի չափ պատանիներ զանազան հայաբնակ տեղերից և պահվում են Մայր Աթոռի ծախքով։ Արդէն Ճեմարանը տասներկու տարին բոլորեց և երեք կարգ ուսանողներ հանեց, որոնց պատրաստութիւնից երևում է որ այս հաստատութիւնը մեծ բարիքներ կը տայ ազգին, եթէ կանոնաւոր յարատեւութիւն ունենայ։ Սակայն Գէորգ կաթողիկոսը իւր հիմնարկութեան առաջին պտուղները դեռ չտեսած՝ 1882-ին դեկտեմբերի 6-ին վախճանեցաւ հնդամսեայ ծանր հիւանդութիւնից յետոյ։

Ս. Սինոդը ըստ սովորութեան՝ Տաճկաստանի, Պարսկաստանի ու Հնդկաստանի Հայոց և Ռուսաստանի բոլոր հայ վիճակներին շրջաբերականներ ուղարկեց, որով ամենայն Հայոց Կաթողիկոսի մահը ծանուցանելուց յետոյ՝ ազգի եկեղեցական և աշխարհական պատ-

*դամաւորներին Ս. Էջմիածին էր հրաւիրում Գէորգ Դ-ին մի արժանաւոր յաջորդ տալու համար, ընտրութեան ժամանակը սովորական տարեոր ժամանակից ուշ նշանակելով՝ 1884-ի մայիսի 7-ի օրը։ Թուրքիայի Հայոց Կենտրոնական Վարչութիւնը Ազգային Սահմանադրութեան տրամադրութեան համեմատ՝ ձեռնարկեց ընտրութեան մասնակցութեան նախապատրաստութիւնները տեսնելու։ Կոստանդնուպոլսի Մայր եկեղեցում մի մեծ եկեղեցական ժողով գումարուեցաւ, ուր Հայոց եկեղեցու եպիսկոպոսների ընդհանուր ցուցակից գաղտնի քուէարկութեամբ եօթը արժանաւորագոյն անձինք որոշուեցան Արարատեան Մայր-Աթոռի գահակալութեան համար* (1884 *մարտի* 12 *և* 19)։ *Այս ժողովին անձամբ մասնակից եղան մերձաւոր վիճակների առաջնորդները, վանահայրերը և մայրաքաղաքի եպիսկոպոսները, վարդապետները և աւագ երէցները, ընդամենը* 96 *հոգի, իսկ հեռաւորնակ վիճակաւորները և անպաշտօն եպիսկոպոսները իրանց քուէները գրով ուղարկեցին. միայն Սսի Մկրտիչ կաթողիկոսը, որ Խրիմեան սրբազանի պատրիարքութեան օրով այդ պաշտօնի համար ընտրուած էր, նախապէս Ընդհանրական Հայրապետի գերագահութիւնը ճանաչելով և ապա նաև ստորագրութեամբ նոյնը վաւերացնելով,—առանձին գրութեամբ մերժեց առաջիկայ ընտրութեանը մասնակցելու, պատճառ բերելով թէ հանգուցեալ Գէորգ կաթողիկոսը Սսի աթոռը անվաւեր և կաթողիկոսութիւնը հեստեալ ու հերձեալ է անուանել իւր կոնդակների մէջ։*

*Եկեղեցական համագումար ժողովի կազմած եօթը ընտրելիների ցանկը բոլոր անդամների ստորագրու-*

թեամբ ներկայացուեցաւ Երեսփոխանական ընդհանուր ժողովին. որ Կաթողիկոսական յանձնաժողովի առաջարկութեան վրայ և Թուրքիայի սահմաններից դուրս եղած Հայոց ձայները չխեղդելու համար՝ որոշեց 1866-ի ընտրութեան եղանակը բարեփոխել հետևեալ կերպով. Տաճկաստանի Հայոց Երեսփոխանական Ազգային Ժողովը Կոստանդնուպօլսի պատրիարքի նախագահութեան տակ եղած առաջնորդական վիճակների անունով համագումար եկեղեցական ժողովում նախապէս քուէարկուած ցանկի միջից մէկ քուէարկութեամբ երեք ընտրելի եպիսկոպոս է ներկայացնում ամենայն Հայոց կաթողիկոսութեան համար։ Տաճկաստանի Հայոց եկեղեցին պահանջում էր որ իւր եռանուն ցանկը ամբողջապէս ընտրելների քուէների նշանակութեամբ Ս. Էջմիածնի Տաճարում կատարուած քուէարկութեան տուփի մէջ մտնէ. և այն ընտրելին՝ որի Ազգային Ժողովի ստացած քուէների վրայ բարդուելով Ռուսաստանի, Պարսկաստանի և Հնդկաստանի Հայոց քուէները ձայների մեծամասնութիւն կը ստանայ, նա է ամենայն Հայոց ընտրեալ Հայրապետը։ Այս որոշման համեմատ՝ Ազգային Ժողովը եօթնանուն ցանկից քուէարկեց երեք ընտրելի եպիսկոպոսներ, և միանգամայն որոշեց որ Պատրիարքը սոյն եռանուն ցանկը հաղորդէ Արարատեան Մայր-Աթոռի Տեղակալին առանձին պատուիրակի ձեռքով, պաշտօն տալով նորան Ս. Էջմիածնի Ժողովին ներկայ լինելու և ընտրական գործողութիւններին նշանակեալ պայմաններին մէջ մասնակցելու Թուրքիայի Հայոց անունով (ապրիլ 2)։ Ինչպէս Եկեղեցական Ժողովի կազմած եօթնանուն ցանկի, այնպէս և Ազգային Ժողովի քուէ-

արկած եռանուն ցանկի գլուխը դասուեցաւ Կոստանդնուպոլսի Ներսէս պատրիարքը, չնայելով որ նա իւր տկարութիւնն ու անկարողութիւնը առաջ բերելով՝ երկու ժողովներին էլ գրաւոր կերպով խնդրել էր որ իւր անունը ընտրելիների ցուցակից հանուի։

Սակայն Եկեղեցական և Ազգային ժողովների նիստերի միջոցում Կոստանդնուպոլսի Ռուսաց դեսպանը յայտնեց, թէ կայսերական կառավարութիւնը պահանջում է որ այս անգամ կաթողիկոսական ընտրութիւնը Պօլօժէնիայի տրամադրութիւնների համեմատ կատարուի, այսինքն Տաճկահայոց ամեն վիճակներից երկ-երկու (մի եկեղեցական և մի աշխարհական) պատգամաւոր ներկայանան Ս. Էջմիածնի ժողովին և անձամբ իրանց քուէները տան միւս պատգամաւորների հետ միասին. հակառակ դէպքում, այսինքն եթէ միայն երկու պատուիրակ ուղարկուին, լոկ իբրև Կոստանդնուպոլսի Հայոց ներկայացուցիչ պիտի նկատուին և միայն երկու ձայն տալու իրաւունք պիտի ունենան։ Այս դժուարութիւնից մի ելք գտնելու համար՝ Պատրիարքարանը Ազգային Ժողովի քուէարկած եռանուն ցանկը ուղարկեց Ս. Էջմիածին, նշանակելով իւրաքանչիւր ընտրելիի ստացած քուէները հետևեալ կարգով. Ներսէս պատրիարք (62 քուէ), Մկրտիչ եպիսկոպոս Խրիմեան (50) և Մելքիսեդէկ եպիսկոպոս Մուրադեան՝ առաջնորդ Զմիւռնիայի (42). միանգամայն առանձին թղթով Օսմանեան Հայոց կողմից պատուիրակ նշանակեց կաթողիկոսական Տեղակալ Ս. Մակար արքեպիսկոպոսին, յանձնելով նորան որ Տաճկահայոց մասնակցութեամբ իրաւունքները ներկայացնէ Ընտրողական ժողովին և Ազգային ժողովի

այս մասին արած որոշումների գործադրութիւնը խնդրել։

Նշանակեալ օրը ընտրութեան գործը սկսուեցաւ Ս. Էջմիածնի Տաճարում և ըստ սովորութեան երեք օր տեւեց (մայիսի 7—9)։ Տեղակալ սրբազանի առաջարկութեան վրայ ժողովականները որոշեցին Պատրիարքարանի եռանուն ցանկը անփոփոխ ընդունել, որով թէ օրէնքը անթերի կատարուեցաւ և թէ Տաճկահայոց պահանջմանը գոհացում տրուեցաւ. միայն Պօլօժէնիայի տրամադրութեան համեմատ՝ չորրորդ ընտրելի եւս աւելացուեցաւ, այն է՝ Ս. Երուսաղէմի պատրիարք Տ. Եսայի արքեպիսկոպոսը։ Քուէարկութիւնից առաջ կարդացուեցաւ Ներսէս պատրիարքի հրաժարագիրը, որ Համազումար և Երեսփոխանական ժողովների մատուցած հրաժարագրերի բաղդն ունեցաւ. Ներսէս պատրիարք ձայների ստուար մեծամասնութեամբ և Մելքիսեդէկ սըրբազան համեմատական առաւելութեամբ առաջին ընտրեալներ հրատարակուեցան՝ կայսերական հաստատութեանը առաջարկելի, առաջինը որպէս Կաթողիկոս, իսկ երկրորդը որպէս Կանդիդատ։ Սակայն Ռուսաց կայսրը այս ընտրութիւնը անվաւեր համարեց գլխաւորապէս այն պատճառաւ՝ որ Ս. Էջմիածնի Ժողովը Կոստանդնուպօլսի Պատրիարքի հրաժարականը ինկատի չէր առել։ Ուստի բարձրագոյն իշխանութեան կարգադրութեամբ՝ Սինոդը շտապեց նոր հրաւիրագիր ուղարկել և նոր ընտրութիւն նշանակել 1885-ի ապր. 19-ի օրը։

Այս միջոցում Ներսէս պատրիարքը, որի տկարու-

*թիւնը մի քանի ժամանակէ հետէ տատանուեցել էր, անակնկալ կերպով վախճանեցաւ (1884 հոկտ. 26) և փառաւոր յուղարկաւորութեամբ թաղուեցաւ Մայր եկեղեցում. Նորա մահը բովանդակ հայ ազգին մեծ ցաւ պատճառեց։ Ազգային Ժողովը մի ամիս սուգ պահելուց յետոյ, ձեռնարկեց նոր Պատրիարքի ընտրութեանը. ընտրուեցաւ Կարինի նախորդ առաջնորդ և Ս. Երուսաղէմի միաբան Յարութիւն եպիսկոպոս Վեհապետեան (1885 յունվ. 26)։*

*Նորընտիր Պատրիարքի հաստատութեան հրովարտակը դեռ չէր եկած, որ Ազգային Ժողովը շտապեց գումարուիլ իւր մասնակցութեան եղանակը որոշելու համար առաջիկայ կաթողիկոսական ընտրութեան մէջ. որովհետև Ս. Էջմիածնի Սինոդը Բարձրագոյն իշխանութեան կարգադրութեամբ հրաւիրագրերը Կոստանդնուպօլսի Պատրիարքարանից անկախ՝ ուղղակի վիճակաւոր առաջնորդներին էր ուղարկել։ Ժողովը որոշեց անցեալ տարուան ընտրութեան եղանակը անփոփոխ պահել և իւր եռանուն ցանկը լրացնելով վերահաստատել, երրորդ ընտրելի դնելով Արմաշու վանքի վանահայր Խորէն եպիսկոպոս Աշըգեանին (մարտ 1). միանգամայն իւր Ատենապետների դիւանին յանձնարարեց պատուիրակութեան եղանակը սահմանել և իհարկէն Կոստանդնուպօլսից պատուիրակ ուղարկել։ Եռանուն ցանկը Համազգային ընտրողական Ժողովի Ատենապետի անունով գրուած պատուիրակութեան թղթի հետ ուղարկուեցաւ Ս. Էջմիածին Տ. Յովհաննէս Մկրեան քահանայի ձեռքով։ Ապրիլի 20-ին այս ցանկի վրայ աւելացուեցաւ*

չորրորդ ընտրելի՝ Նախիջևանի և Բեսարաբիայի առաջնորդ Մակար Սրբազան, իսկ հետևեալ օրը վերջնական քուէարկութեամբ ընտրուեցան Մելքիսեդէկ Սրբազանը և Մակար Սրբազանը։ Յուլիսի 18-ին Տ. ՄԱԿԱՐ Ա հաստատուեցաւ ամենայն Հայոց կաթողիկոս։



## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԱՂԻՒՍԱԿ

| | Քր. առաջ |
|---|---|
| Հայկ | 2300 |
| Արամ | 1300 |
| Թագլաթփալասար Ա-ի արշաւանքը Նայիրիի երկիրը | 1130 |
| Սալմանասար Գ-ի արշաւանքը Ուրարդիի երկիրը | 841 |
| Սարուքինի պատերազմը Ուրարդիի Ուրսա թագաւորի հետ | 714 |
| Պարոյր թագաւոր | 606 |
| Հրաչեայի արշաւանքը Հրէաստան Բաբելացոց դաշնակցութեամբ | 600—588 |
| Տիգրան Ա-ի յաղթութիւնը Մարաց վրայ | 558 |
| Հայկազանց թագաւորութեան անկումը | 330 |
| Հայաստանը Սելեւկացոց նահանգ | 301 |
| Արշակունեաց հաստատուիլը Հայոց երկրում | 149 |
| Վաղարշակ Ա | 149—127 |
| Արշակ Ա | 127—114 |
| Արտաշէս Ա | 114—89 |
| Տիգրան Բ | 89—36 |
| Տիգրանակերտի պատերազմը | 64 |
| Տիգրանի հաշտութիւնը Պոմպէոսի հետ | 64 |
| Խառանի յաղթութիւնը | 53 |
| Բարզափրանի յաղթութիւնը Հռոմայեցոց վրայ | 40 |

Լանկթամուրի արշաւանքը Հայաստան . . 1387
Լեոն Զ-ի մահը . . . . . . . . . . . . 1393
Կաթողիկոսութեան տեղափոխութիւնը Կիլիկիայից Ս. Էջմիածին . . . . . . 1441
Կոստանդնուպոլսի Հայոց պատրիարքութեան հաստատութիւնը . . . . . . . 1461
Ուզուն Հասան միահեծան տէր Հայաստանի 1468
Օսմանցոց և Պարսից պատերազմների սկիզբը Հայաստանի տիրապետութեան համար . . . . . . . . . . . . . . 1473
Օսմանցիք գրաւում են արևմտեան Հայաստանը 1514
Օսմանցոց տիրապետութիւնը ամբողջ Հայաստանի վրայ . . . . . . . . . . 1585
Շահաբասի արշաւանքը . . . . . . . . . 1603
Հայոց տարագրութիւնը Պարսկաստան . . . 1605
Նիկոլ Թորոսովիչ . . . . . . . . . . . 1626—1681
Հայաստանի բաժանումը Օսմանցոց և Պարսից մէջ . . . . . . . . . . . . . 1639
Փիլիպոս Աղբակեցի կաթողիկոս . . . . 1633—1655
Լեհաստանի Հայոց անջատումը ազգային եկեղեցուց . . . . . . . . . . . . 1689
Դաւիթ-Բէկ Սիւնեցի . . . . . . . . 1722—1728
Նադըր շահի պատերազմները Օսմանցոց հետ . . . . . . . . . . . . . . 1733—1746
Աղա-Մահմատ-խանի արշաւանքը . . . . . 1795—1797
Լազարեան ճեմարանի բացումը . . . . 1816
Ներսիսեան դպրոցի բացումը . . . . . . 1825
Ատրպատականի Հայոց Ռուսահայք գաղթելը . . . . . . . . . . . . . 1828

# ԱՆՈՒԱՆՑ ՑԱՆԿ

